էին յայլում տան ։ Յայնժամ՝ ի միտս եկեալ իշխանն՝ ասէ․ լուեալ է իմ, թէ ամենայն ցաւոց փարատիչ է մեռոնն նշխարաց սրբոյն Անաստասայ․ եթէ օծից զիս նովիմբ, թերևս ապրեցայց․ իսկ բազմականքն անարգեցին անմտութեամբ զբանս նորա․ ոմն ՚ի նոցանէ ասէր․ չի՞ք մարտիրոս լաւագոյն քան զսուրբն Թէոդորոս․ այլ ոմն, թէ չի՞ք իբրև զսուրբն Գէորգ․ և միւս այլ, թէ չի՞ք հանգոյն սրբոյն Մերկեուրիոսի ։ Իսկ այրն ՚ի բանս նոցա եղեալ՝ անփոյթ արար զդիմել յօգնութիւն սրբոյն Անաստասայ ։ ՚Ի գիշերին յայնմիկ տեսանէ ՚ի քուն երազոյ՝ որպէս թէ բազմեալ իցէ ՚ի սեղան ընդ նոյն սեղանակիցս․ և ահա եկն եկաց սուրբն Անաստաս ՚ի ձև զօրականի և ՚ի կերպարանս համանուն զինաւորի գտելոյ յայնժամ ՚ի դասս զօրականաց՝ գաւազան ՚ի ձեռին, և ջախեաց նավաւ զգլուխս միոյ միոյ ՚ի բազմականացն․ և յորժամ կամէր հարկանել և զիշխանն զայն, սկսաւ նա պաղատիլ և ասել․ յի՛ս տէր, խընայեա՛ յիս վասն Աստուծոյ․ զի չկայ ինչ ընդ իս և ընդ քեզ ։ Ասէ ցնա սուրբն․ ո՞չ գիտես՝ զի հեղգացար կոչել զիս՝ անսալով անդուռն բերանոց ։ Զայս ասացեալ՝ ինքնին օծանէր վկային Քրիստոսի զծնօտս և զբերան նորա․ և զարթուցեալ՝

գտաւ այրն ողջացեալ ամին ։

ԺԴ․ Զինուոր մի ՚ի հնգետասաներորդ դասէ լիւրիկեցի զօրուն տանջեալ ՚ի լերդացաւէ զամս չորս, և ոչինչ օգտեալ ՚ի բժշկաց, լուաւ ՚ի ծերագոյն զինուորակցէ՝ ասել․ եթէ հաւատաս Աստուծոյ սրբոյն Անաստասայ, տաց

քեզ

քեղ 'ի մեռոնէ նշխարաց նր, և առողջացիս. և նր ընկալեալ զայն հաւատով գնաց 'ի ձմերոց իւր. և յետ չորից ամսոց դարձաւ
կատարեալ առողջութբ ։

ԺԵ. Եւս բզմ սքանչելիք եղեն յորժամ նախատացեն աբեղայն դէմ եդեն գնալ յԵղմէ 'ի Թագաւորեն քաղաքն 'ի կոստանդնուպօլիս, անցանէր Ը քաղաքս և Ը գիւղս՝ Ը իւր ունելով մասն 'ի նշխարաց սրբյն անաստասայ. չամ լիցի յիշատակել զայն՝ որ եղև 'ի նմին իսկ 'ի Թդրական քաղաքի ։ Այն ոմն էր 'ի բիւզանդիա կրօնաւորեալ 'ի վանս օգոստայ՝ հուպ 'ի տաճար սրբյն Թովմայի. սա ունէր քաղցկեղ 'ի ստինս իւր. զորոյ զճարակումն տեսեալ բժշկաց՝ անյոյս արարին զնա 'ի կենաց ։ Յայնժամ դիմեաց նա բոլորով սրտիւ առ սքանչելագործ վկայն անաստասիոս. և ետ բերել 'ի մեռոնէ նշխարաց նր, և եօծ նովաւ զստինս իւր. որով և բժշկեցաւ իսկ. և զարմանք կալաւ զբժիշկս ։

ԺԶ. 'Ի դառնալ աբեղային 'ի բիւզանդիոյ յԵղմ 'ի վանս իւր՝ այն ինչ լինէր նմ հասանել յաբիդոն քաղաք ծովեզերեայ, 'ի քաղաքի անդ աղաղակ եբարձ այսն չար 'ի բերանոյ դիւահարի միոյ, ասելով. եթէ ոչ եկեսցեն այսր նշխարք՝ որ 'ի նաւի, 'ի ծով ընկղմեմ զստեղծուածս զայս. և իբրև բերին անդր զնշխարս սրբյն՝ որ էր առ աբեղային, տագնապեցաւ դևն, և ել յանդիման ամենեցուն ։ Գործեցան զկնի և այլ բազում նշանք 'ի մնէ 'ի ձեռն նշխարաց և պատկե-

բաց սրբոյն Անաստասայ 'ի տեղիս տեղիս․ վասն ճանաչելի լինել մի 'ի նշանաւորագոյն վկայից ։

Իսկ մարմին սրբոյն և պատուական գլուխ նորա յետ ոչ բազում ամաց փոխադրեցան յարևելից 'ի Հռոմ․ քանզի որպէս գրէ Բեդա՝ որ միով և եթ դարու յետոյ էր քան զժամանակ սրբոյն, * ՙՆշխարք երանելի վկայիս Անաստա-
,, սիոսի՝ զառաջինն բերեալ եղեն 'ի վանս
,, իւր․ և ապա 'ի Հռոմ փոխադրեալ՝ պատ-
,, ուիրն 'ի վանս սրբոյն Պօղոսի առաքելոյ, որ
,, ասի առ սալվիական ջուրս՚ ։ Նոյն Հատատեն և յայսմաւուրք և ժամագիրք յունաց վասն գլխոյ վկայիս, ասելով․ * ՙՊատուա-
,, կան գլուխ վկայիս և պատկերն երկրպա-
,, գի 'ի հաւատացելոց 'ի մեծն և 'ի հինն
,, Հռոմ՚ ։ Արդ և 'ի վկայագիրն Հռովմայեցւոց գրեալ է․ * գլուխ նորա փոխադրեցաւ
,, 'ի Հռոմ՝ հանդերձ պատուական պատ-
,, կերաւ նորին․ որոյ տեսութեամբ դևք փախ-
,, չէին, և ախտք փարատէին, որպէս վկայելոյ
,, գործոց երկրորդ ժողովոյն Նիկիոյ՚ ․ իմա՛, որպէս որում վկայեցին անդ հրեշտակք Ադրիանոսի Հռովմայ հայրապետի ։ Ի․ՅԼ քաղաքի մօտ յայն տեղին՝ ուր կայր պատկեր սրբոյն Անաստասայ, էր տեղի գլխատման սրբոյն Պօղոսի, վասն պատկերն այն 'ի յետնոց ոմանց ընծայեցաւ առաքելոյն․ որ և ոչ փոքր պարծանք է սրբոյն Անաստասայ ։ Իսկ մնացեալ ոսկերք սրբոյն՝ մասամբ իւիք ասին լինել յեկեղեցւոջ սրբոյ Փրկչին 'ի Հռոմ, և մասամբ 'ի Վենետիկ քաղաքի 'ի տաճարի անուամբ Երրորդութեան․

ոմ

որպ թէ է̄ աւանդութն վենետկեցւոց 'ի կոս-
տանդնուպօլսոյ այսր փոխադրեալ իցէ, եթէ
չիցեն նշխարք այլևայլ համանուն սրբոց . զի
որպ 'ի մեզ յանձանց դնի յարութիւն անուն, նոյն-
պէս և առ յոյնս անաստասիոս :

Նաև է այսմ գրեն այլք, թէ յետ ժամանա-
կաց ենրիկոս չորրորդ կայսր եկեալ յակուիս-
գրան՝ տարաւ է այլ նշխարս սրբոց և զգլուխ
սրբոյն անաստասայ արքեղայի և վկայի 'ի հոռ-
տեսբուրգ . այլ յետ երկուց ամաց յաւերել
սաքսոնաց զայն քաղաք, աբբայն մօտակայ
վանաց 'ի վր̄ հասեալ սր̄ նշխարաց հանելոց
'ի տապանաց և անկելոց 'ի ձեռս ռամկին՝
տարաւ եդ պատուով 'ի վանս իւր . որպ և 'ի
բրունդուսիոն գտանին նշխարք ինչ յանուն
որ և է սրբոյն անաստասայ :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ :

(1) Սովորական օրինակք տօնացուցից մերոց՝ արտա-
քոյ սովորութեան այլոց ազգաց՝ քահանայ անուանեն
զսրբն անաստաս . որոյ զօրականութիւն և ապա կրօնա-
ւորութիւն յայտնի, բայց քահանայութիւն անյայտ . վասն և
բարբառք գրի յերկու և երեք օրինակս պարզապէս,
* անաստասայ և վարասի || : Ո՛չ գիտեմ, նաչապէս իւրք
քահանայ կոչեման՝ այն, որ գրի 'ի վկայաբանութն. թէ
երևեցան սրբոյն 'ի բանտի հրեշտակք նշանակօք եպսութն
և սարկաւագութն . և կմ̄ այն՝ զի արքեղայն կրօնակից
նոյն թուէր կոչել 'ի միում վայրի քահանայ . և արդարև
արքեղայն կմ̄ միայնակեացն՝ անխտիր մարթի լինել եղ-
բայր և քահանայ . այլ 'ի հաստատութն քահանայութն
սրբոյն խնդրեին մեզ հաւաստի ցուցակք, զոր չունիմք 'ի
ձեռին . և որպ նշանակեցաք 'ի վախճան նախընթացից հա-



տո

տորոյն, զարմանք են՝ զի և բասիլիսկոս զօրականն քա-
հանայ է գրեալ 'ի տօնացոյցս. նոյնպէս յետ նր և ա-
նաստաս 'ի զօրականութէ աբեղայն:

(2) Քանզի Շարժակ գրէ Հ. զպատմութի սրբյն անաստա-
սայ, անտարակոյս եմք՝ թէ գտեալ է զայն 'ի հին ճա-
ռընտիրս ազգիս. այլ քանզի մեք չունէաք 'ի ձեռին.
հարկեցաք նորոգ թարգմանել յօրինակէ թարգմանութե
բոլլանդեայ. որ ոչ միայն գտեալ է զհին թարգմանութի
լատին, այլև զյունական բնագիր 'ի ձեռս բերեալ՝ նո-
րոգ թարգմանէ. և մեք 'ի սմանէ առաք. երանի թէ
տպագէր և զյունականն, զի յայնժամ առաւել ընտա-
նի մեզ լինէր սմն: Բայց որպէս և իցէ՝ վկայաբանն է
ժամակից և ականատես. յորմէ կան հատուածք բանից
երևելի՝ 'ի չորրորդ գումարման եօթներորդ ժողովոյն
յունարէն և լատիներէն, նշանակելով զսկզբնաւորութիւնս
երկմասնեայ գործոյս. ուր առաջինն սկսանի ճառօրէն
այսպէս. * Միածին որդին և բանն այ, որով ամ ինչ
եղև ||, եւն. և երկրորդն՝ որ վս սքանչելեաց. * Զսքան-
չելեացն զպատմութի առաջի առնել կամիմ ||, եւն: Իսկ
անհա որպէս և զկարգ յառաջ բերան այսոքիկ 'ի ժողո-
վի անդ (որ եղև իբր 159 ամք զկնի կատարման սրբյն
անաստասայ), յոր և նման կան 'ի յունական մատենի անդ
գտելոյ 'ի բոլլանդեայ. ուր 'ի հին լատին թարգմանու-
թեն պակասէր երկրորդ մասն: Նոյն վկայաբանութի է,
զոր քաղեն և մետափրաստէս և բեդաս և այլք 'ի վկայա-
գրաց. թող զտարբերութի սմոյ կմ ընթերցուածոյ.
և յայսպիսի տարբերութիս ուրեք ուրեք առաւել ըն-
տրելի եղև մեզ ընթերցուած Հ. մանաւանդ ուր իցէ:

(3` Ռաժիկ եգաք՝ ոչ համաձայն այլուր հնչման ձայ-
նիս առ մեզ. որ ստանօր 'ի յն. և լտ. գրի ռասէք,
կմ ռազէք. և 'ի Հ. ռազիքոն, կմ ռազմաքայ: Ոչ և
ռաշմունի գրեցաք ըստ ուր իցէ. որ առ այլս գրի ռաշ-
մեմի, ռաշնունի, ռամշունի կմ ռամշոնի: Եւ դարձեալ
մագունդաս կմ մակունդաս եգաք. զի սմն այսպէս գրէ,
և սմն այնպէս:

(4) Այսպէս միաբանեալք զբանս այլևայլ օրինակագրաց.
զի ուր վկայաբանն գրէ վանք անաստասիոսի աբբային,
այլք ոչ սակաւք ասեն վանք սաբայի աբբայի Է Հ: Այլ
զարմանալին այն է, զի ոմանք յարևմտեան հեղինակաց
համարեցան՝ թէ այն վանք վարէր զկանոնս ոչ սրբյն սա-
բայի, այլ՝ զսրբյն բենեդիկտոսի. իսկ կարմեղականք
կրօնակից իւրեանց առնելով զսրբն անաստաս (ոչ և
զամ

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Մարոսի, և որոց ը՟ նմա :(1)

Հ. Հոկտ. 12: Յ. հոկ. 25: Լ. հոկ. 19:
Ճառընտ. Ա. դծ = դծը. և Բ. յր = յծէ:
Սեբաստացւոյն առ Ասսեմանի. հատ. Ե. երես.
948 = 953:

ԵՐՋԱՆԻԿՆ Ի ՎԿԱՅՍ առաքինին նահատակն ք՟ի Մարոս՝ էր այր զօրական յարքունի գնդէ, որ նստէր յԵգիպտոս, պատուական ՚ի զօրուն իբրև զմի ոք ՚ի գլխաւորացն ՚ի տոհմէ ազատաց, և երկիւղած ՚ի մանկութենէ յամ որոտէ ... յաւուրս Մաքսիմիանոսի փեսային Դիոկղետիանոսի, որ և կոչէր գաղերիոս վաղերիոս Մաքսիմինոս արմենտարիոս դակ՝ սարդիացի կամ սարդիկեցի, կեսար եղեալ յամի 292. և կայսր յամի 304 կամ 305: Յորում առաքեցաւ հրաման յամ երկիրն Եգիպտացւոց առ իշխանս մայրաքաղաքաց՝ ստիպել զամ մարդ, զի զոհեսցեն մեհենիցն. և զօրս հնազանդիցին՝ անպատիժս արձակել. և զանդիմակացս հրամանացն՝ յետ բազում տանջանաց և խոշտանգանաց հրով և սրով սպանանել:(2)

Յայն-

Յայնժամ նմ սրբքն ընթանային 'ի նահա-
տակութիւն երկնային կոչմանն , բազմաց քե-
րանաց և սաստիկ տանջանաց համբերեալ ,
և տօնահռչակ կատարմամբ զարքայութիւն
երկնից ժառանգեալ : Յայնպիսի աւուրս
անհնարին հալածանաց ածասէր զօրականն
վարոս յառնէր 'ի գիշերի գաղտագողի , և
երթայր անկանէր առաջի նոցն՝ որ 'ի բան-
տին պահէին մեծաւ զգուշութ . և արեամբ
նոցա կնքէր զաչսն և զլանջսն . այլ յայտնի
խոստովանել զքն երկնչէր , զի մի չարաչար
մահու կորիցէ՝ որ որոշեալ էր 'ի վր գտե-
լոցն յայնպիսի հաւատոն . ոչ և աչօք իւրովք
տեսանէր օրըօրէ , զի ոմանք հրկէզ լինէին ,
և ոմանք ծովակուր , և այլք ազգի ազգի
տանջանօք վտանէին :

Պէտք եղև հալածչաց ըմբռնել և զվէց նը-
միայնակեացս յանապատէ . որք 'ի բազում
ժամանակաց հրաժարեալք էին յաշէ , և փա-
խուցեալք 'ի դառնաձանութենէ ամպարիշտ
մարդկանն : Սոքա յառաջագոյն եօթն էին
թուով , և զերեսուն ամ յանապատի է գա-
զանս և է զեռունս էին բնակեալ . այլ մի 'ի
նոցանէ՝ որ երևելին էր 'ի նս , փոխձանեցաւ
յանապատին . և վեցեքին մնացեալքն ըմ-
բռնեալ 'ի զինուորաց՝ վարեցան 'ի քաղաքն
( եգիպտոս , կամ յաղեքսանդրիա ) . բայց
նա՝ որ և զմին զայն 'ի բանտի ասեն փոխձա-
նեալ : (3)

Իսկ իբրև պատմեցին իշխանին , եթէ վճռալք
քրիստոնէից հաւատոյն ածանն ձեռնակա-
պօք

պօք և կամ արտաքոյ ; յայնժամ խնդալից եղեն դաստառորն՝ հրամայեաց առժամն պահել զնոսա , և 'ի վաղիւն անդր ածել զառաջեաւ . միանգամայն և պատրաստել տանջանարանս և փայտս . և դահճացն առեալ առգելլոն զնա 'ի ներքին բանտին , և զոտս նց 'ի կոճեղս պնդեցին ։ Իսկ վարոսի գիտացեալ՝ եթէ 'ի մեծ վտանգի են ամենազօրք նքն , խնչս ետ պահապանացն , և մտեալ 'ի գիշերի՝ եհատ զշղթայս նց , և զոտսն եհան 'ի կոճեղէն , և առաջի անկեալ երկիր եպագ . և աղաչելով զնա հաւանեցոյց ճաշակել կերակուր . քանզի զաւուրս ութ անսուաղ մնացեալ էին , յորմէ հետէ անկան 'ի ձեռս անօրինաց ։

Իսկ սոքա ասէ ցնա . աղաչեմ զձեզ 'նք վկայք և ծառայք քո , քանզի վաղիւն ունիք կատարիլ 'ի ձեռաց անօրէն մարդկանս , աղաչեցէք զփրկիչն քո , զի տացէ խնձ մասն 'ի ժառանգութեան ձերում և 'ի համբերութե . քանզի այր զօրական եմ ես 'ի նշանաւոր գնդէ , և քրիստոնեայ՝ և 'նց ծառայ . այլ երկնչիմ խոստովանել , զի մի՛ չարաչար կորեայց . քանզի գիտեմ եթէ յո՛րպիսի մահ մատնեցան՝ որք 'ի հաւատս յայս ըմբռնեցան . և աղօ՛թս արարէք , զի անցցէ ամպրոպ խռովութեան՝ որ կայ 'ի վյ քրիստոնէութե . զի երևեացուք համարձակութբ՝ որք 'ի քն հաւատացաք ։

Ասեն ցնա 'նքն . ոչ որ հնձեսցէ , եթէ ոչ յամպրոպն սերմանեսցէ . և ոչ մարտիկ որ

պսա

պատկի ; եթէ երկչոտ ոք իցէ . և մանաւանդ զի քս̃ աղաղակէ , ամէն ասեմ ձեզ , եթէ ոչ խոստովանեսցի ոք զիս առաջի մարդկան , և ո՛չ ես խոստովանեցայց զնա առաջի հօրն իմոյ՝ որ յերկինս է . արդ եկ ճանապարհորդեա՛ ը̃ մեզ յերկինս . քանզի այսպիսի ուղեկիցս ո՛չ գտանես երբէք :

Եւ մինչդեռ նոքա զայս ասէին , մտին զինուորք առնուլ տանել զնս̃ 'ի դատաստան . և տեսեալ զվարոս՝ զի համբուրէր զոտս նց̃ և լայր վս̃ առաջիկայ չարչարանաց նց̃ , ասեն ցնա զինուորքն . մոլի՛ս այր դու . և ո՞չ երկնչիս , թէ գուցէ պատժիցի դատաւորին և կամ մեծամեծացն վս̃ քո , եթէ ը̃ նս̃ էր և քրիստոնեայ է . և այնուհետև զաստիճան քո և զանձն միանգամայն կորուսանես չարաչար : Վարոս ասէ . եղիցի ինձ քրիստոնեայ գտանիլ , և ը̃ սոսա լինել հանապազ . այլ ո՞ ոք գուշակեսցէ դատաւորին զինէն . վս̃ զի դուք ամենեքեան ընկերք իմ էք և բարեկամք , և խնայէք յիս : Եւ նք̃ խրատ տուեալ նմա զգուշանալ անձին՝ ձգեն այնուհետև զնս̃ անապատաւորսն . և կապեալ շղթայիւք զձեռս և զպարանոցս նց̃ ածեն 'ի դատաստան :

Եւ դատաւորն նստեալ էր հրապարակայատենի . և զինուորքն և այլ ռամիկ բազմութիւն պատեալ զնովաւ . հրամայեաց մերկացուցանել զնս̃ , և առիգածեալս տանել զնս̃ զառաջեաւ : Եւ իբրև ածին , ասէ ցնս̃ . որո՞յ բախտի էք , և ո՞յր որդիք , և յոր-

մէ՞

մի՞ գաւառէ : Ասեն ցնա դպքն . գաւառ յեր-
կրի չունիմք . ապա եթէ արդարև կամիս գի-
տել զքաղաքն մեր, հաւատա՛ ’ի քս . քանզի
քաղաք քրիստոնէից յերկինս շինեալ է : Եւ
նա ասէ ցնս . ուստի՞ էք և զի՞նչ անուանք
ձեր, ասացէք . ապա թէ ոչ՝ երդնում յածսն
իմ, զի կենդանւոյն կորուսանեմ զձեզ, և
յետոյ հրամայեմ զձեզ շանց արկանել, զի
վատնեսցեն զմարմինս ձեր :
Ասեն ցնա դպքն . ’ի սպառնալեաց քոց մեք
ոչ երկնչիմք . և զի՞նչ եմք՝ ասասցաք, եթէ
օտարք և պանդուխտք եմք, ոպ և ամ հարքն
մեր : Դատաւորն ասէ . զմի խորհուրդ ու-
նին վատամահքս այս . և արդ մերկացեալք
տանջեսցին : Եւ մինչդեռ ’ի տանջանսն էին,
ասէ . ո՞ւր է եօթներորդ ընկերն ձեր, որ մա-
նաւանդ խնդրելին է . զի վն նր էր առաւել
համբաւն : Եւ իբրև նա զայս ասաց, վաղ-
վաղակի վազեաց ’ի ներքս յամբոխէն դպն
վարոս . և կացեալ ’ի միջի՝ ասէ . նա կա-
տարեցաւ՝ զընթացս իւր կատարել, և զհա-
ւատն պահեալ . և զիս կացոյց փոխանակ
իւր՝ ժառանգորդ իւրոյ համբերութեան . արդ
եթէ պարտիցի ինչ նա, աւասիկ կամ պատ-
րաստեալ՝ ընդ նր հատուցանել . քանզի զար-
կեալ պատիժս հարկացն՝ ժառանգաւորքն
հատուցանեն :
Հարկացաւ դատաւորն, և ասէ . ո՞վ է դա .
ասեն՝ որք մերձն կային . զինուոր է, այլև
մի յաւագաց . ասէ ցնս . յորում գնդի կար-
գեալ է . ասեն ցնա . ’ի տիանայցւոցն (4) :
Ա-

Ասէ դատաւորն ցփարոս․ ո՞ մոլորեցոյց զքեզ և հրապուրեաց կորուսանել զգունդն քո և զմեծամեծ ուռիկն քո, և կործանել չարաչար։ Ասէ ցնա սբ փարոս․ ՚ի բազում ամաց կերակրիմ ՚ի ուռկացս յայսցանէ, և ոչինչ օգտեցայ, այլ դարձեալ քաղցնուլ յետ ուտելոյն․ այլ այժմ գտի ուռիկ յոյժ լաւագոյն քան զայն։ Դատաւորն ասէ․ զո՞ր։ Փարոս ասէ․ զհացն՝ որ յերկնից էջ, և ետ կենանս ամ մարդկան․ և փոխանակ գինւոյ՝ որ արբեցութի և շուայլութի գործէ, արիւնն քրի՝ որ աղբիւր է կենաց, և անապականութիւն գործէ՝ որոց ճաշակեսնն զնա․ և փոխ ապականելի մսոյ ունիմ զմարմին անքիծ և անարատ գառինն՝ որ եբարձ զմեղս աշի։

Ասէ դատաւորն ցսբ միայնակեացսն․ ո՞չ դուք էք՝ որ հրապուրեցիք զդա զալ յայդ․ և ահա կորուսիք զայդպիսի զօրական թագաւորին․ երդնում ՚ի մեծ ածսն, զի զոգիս ձեր յառաջ քան զնա կորուսանեմ։ Ասեն ցնա սբքն․ անմիտ, ոչ գիտես՝ եթէ ՚ի հրեշտակաց դասն կարգեցաք զնա․ և եթէ ուսար ՚ի նմանէ զփրկական թօշակն զինուորութե, անսամ վայր մի, և ուսցիս զքաջութի զօրականութե նր։ Ասէ ցնա դատաւորն․ զո՞ր զօրականութի․ թերևս զստանջանաւոր սատամբալկաց հերձելոց։ Ասեն ցնա․ զի՞նչ քաջութիւն է քան զայն, եթէ մի ևեթ ոք յաղթեսցէ քեզ իշխանիդ կորստեան և ամ զօրականաց քոց, որ յետ սակաւ միոյ ապականելոց են։ Ասէ ցնա դատաւորն․ զմարմինս

Մինչ ձեր այժմ աղաչկանեմ, եթէ ոչ անկեալ
ածոցն երկրպագանիցէք ։ Սրբքն ասեն ․
ածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կո-
րիցեն յերեսաց երկրէ ․ վն զի ամ ածք հե-
թանոսաց դևք են, այլ տր զերկինս արար ։
Յայնժամ ասէ և վարոս ցդատաւորն ․ զի՞
աշխատ առնես զմեզ շատխօսութբ անպար-
ժան խոստովանութե ․ ահա ես կամ առաջի
քո ինքնակամ պատրաստեալ և տանջա-
պարտեալ ․ արա զինչ և կամիս ։ Դատաւորն
ասէ ․ և իմ կամք այն են, զի կորուսից զա-
մենեսեան՝ որ ոչ պաշտեն զեգիպտացւոց
ածսն ․ արդ խնայեցէք ՚ի ձեզ, և ապրեցա-
րուք ՚ի պատրաստելոցն ձեզ չարեաց ։ Վա-
րոս ասաց ․ որ ՚ի քէնդ պատրաստեալ է մեզ,
ոպս սարդի ոստայն լուծանի ․ իսկ որ քեզն
պատրաստեալ է և ամ տանն քում, վախճան
ոչ ունի ։

Իսկ բարկացեալ դատաւորն հրամայեաց նախ
զվարոս կախել զփայտէ տանջանաց ․ և ասէ
ցսբն ․ եթէ դուք ինձ յաղթիցէք, մոլորե-
ցայց, և ուրացայց զածսն ։ Ասեն ցնա սրբքն ․
առ այժմ փորձեա զզօրդ ՚ի միումդ՝ որ առա-
ջի կայ ․ եթէ զմա յաղթեսցես, հաւատա՛
թէ և զմեզ վանեսցես ։ Դատաւորն ասէ
ցսբն վարոս ․ երդնում իմով գլխովս, զի
չարեօքդ՝ զոր չարչարիս, խրատեսցին այլ
եւս զինուորք և ռամիկք չթողուլ զհարեանց
զածս ; և երկրպագանել որում դուք եր-
կրպագանէք քի ։ Վարոս ասաց ․ նման լի-
ջիր ածոցն քոց՝ դու և ամ յուսացեալքն ՚ի
նոս,

նմ̅, որ ոչ լսեն և ոչ խօսին, ոչ տեսանեն և ոչ շարժին ։ Արտմտեալ դատաւորին՝ հրամայեաց իջուցանել զնա 'ի կախաղանէն, և փոկովք և բրովք 'ի չորեցունց կողմանց ծեծել զնա ։ (5)

Յայնժամ ասէ երանելին վարոս ցսբ միայնակեացս ․ օրհնեցէք զծառայ ձեր սբ հարք, և աղօթս արարէք 'ի վ̃ր իմ ․ զի զօրացայց և շիջուցից զբարկութի̃ ամպարշտիս, և զդառն տանջանս սորա լուծից ։ Եւ սբքն զաչս 'ի վեր ամբարձին առ Տր, և ասեն ․ օրհնեալ ես Տր Ած, որ զընտրեալս քո պսակես պսակաւ համբերութե̃ ․ զօրացո զծառայ քո 'ի պատերազմի նահատակութեա ։ Եւ տանջեալ վկայն քնի յերկար՝ ասէ ցսբսն ․ մի խռովիք ․ գիտէ սբ աղօթք ձեր, զի իբրև առոճի փափուկ իջեալ 'ի վ̃ր իմ զգամ մանաւանդ քան եթէ խստութի ջալոտից ։

Ասէ ցնա դատաւորն, արդ զի՞նչ օգտեցար այ թշուառական ։ Վարոս ասէ ․ այնչափ օգտեցայ, որչափ դու վնասեցար ։ Դատաւորն ասէ ․ մոլորեցուցիչքդ այդ ուսուցին քեզ այդպէս խօսել ։ Վարոս ասաց ․ ոչ երբէք մոլորեցուցիչք իրս փրկութե̃ գործեն ․ այլ սոքա վ̃ն զի բարիք են և ճշմարիտք և անմախանձ երախտագործք, 'ի գանձէ իւրեանց մատուցին ինձ զփրկութիս զայս ․ այլ մոլորեցուցիչ և կախարդ դու ես, և ամ հաւանեալքն քում անզգամութեդ ։

Եւ բարկացեալ դատաւորն հրամայեաց դարձեալ 'ի փայտն քերանաց մատուցանել զնա ։

Գ Եւ

Եւ իբրև տեսին սրբքն զկորուս վկայիցն 'ի բա-զմաժամս քերեալ, ասեն ցդատաւորն . ով ամպարիշտ զապականած քարինս արդեօք մա-շէիր և վատնէիր այդպէս քերելով և քանցե-լով ։ Ասէ դատաւորն . եկեսցէ ք̃ն ձեր և փրկեսցէ զդա (6) ։ Ասէ ցնա վարոս . մի՛ լիցի ինձ փրկիլ յայսմ տանջանացս , այլ 'ի յաւի-տենականացն փրկեսցէ զիս ։

Եւ կրճտեալ զատամունս իւր բռնաւորն՝ հրամայեաց հարկանել զլեարդակողմն վը-կային , և ասէ . հանէք զաղիս դորա առա-ջի դորա ։ Ասէ ցնա վարոս . որդի՛ սատանայի և թշնամի ա̃մ արդարութե՛՝ զաղիս իմ ահա կարես հանել , այլ կապտել զհաւատս իմ ոչ կարես ։ Իբրև տեսին սրբքն պատառեալ զորովայն նորա , լացին ։ Ասէ ցն̃ս դատաւորն . տեսանէ՞ք , զի յաղթահարեցայք . ը̃է՞ր լայք և որտմիք , եթէ արդարև անմահութի՛ հա-մարիք զմահն որ վ̃ն ք̃ի ։ Ասեն սրբքն . վ̃ն չարչարակցութե՛ լամք՝ հրաժարեալք 'ի գա-ղանաբարոյ անմարդուդ . ապա թէ ոչ՝ որը-տի՞ բերկրեալ ծիծաղիմք և տօնեմք , գի-տացէ՞ք՝ թէ սակաւ տանջանօքս զյաւիտե-նական հանգիստ ժառանգեմք ։

Եւ դարձեալ ցասուցեալ դատաւորն՝ հրա-մայեաց տանել զնոսա 'ի բանտ 'ի պահեստ տանջանաց . և զվարոս տանջել , մինչև ան-դէն 'ի փայտին մեռցի ։ Եւ իբրև ետես վա-րոս զն̃ք հարանն քարշեալ շղթայիւքն՝ ասէ ցն̃ս մեծաձայն . յանձն արարէք զիս ա̃ծն՝ ն̃ք և կատարեցէ՛ք նահատակքս ք̃ի . և վստա՛հ լե-

րուք՝ թէ ոչ եւս տաց պատասխանի անձնիս այսմ եւ ո՛չ բան մի, եւ ո՛չ բացից զշրթունս իմ առջա. այլ ահա երթամ ես առ Տէրն Քս, շնորհ ունելով ձեզ՝ որ պատճառն եղէք ինձ կենացն յաւիտենին։

Այս տանջեալ սրբոյ վկային իբրեւ ժամս երիս կմ հինգ՝ արձակեաց զոգին. այլ որք հարկանէին՝ տակաւին տանջէին զնա, համարեալ թէ կենդանի իցէ։ Այս իբրեւ տեսին դահիճքն, եթէ զլոկ մեռեալ մարմինն տանջեն, ասեն ցբռնաւորն. 'Ի վաղուց հետէ մեռաւ, արդ ո՞ւր հրամայես դնել զմարմինն նր։ Ասէ ցնա բռնաւորն. ի՛ջուցէք եւ քարշեցէք արտաքոյ քաղաքին, եւ ընկեցէք շանց. եւ նք արարին այնպէս, եւ արկին 'ի բացի՝ ուր կային դէշք անասնոց։ Այսպէս կատարեցաւ երանելին վարոս։

'Ի վաղիւն՝ անդր ետ բռնաւորն կացուցանել զառաջեաւ զայլ սրբոյն զհոգւոյ հարս վարոսի. եւ ոչ կարացեալ հաւանեցուցանել զնս 'ի կամս իւր, կմ խախտել զհաստատուն միտս նց, յետ ազգի ազգի խոշտանգանաց վճիռ ետ գլխատել զնս. եւ նք այնպէս կատարեցան ուրախութբ եւ զուարթութբ 'ի Տր՝ վեցեքին նք հարքն (7). եւ ոմանք 'ի քրիստոնէից գողացան զմարմինս նց, եւ ամփոփեցին պատուով. որ եւ յանուն սրբյն վարոսի՝ վարոսեանք կոչին։ Իսկ թաղումն վարոսի եղեւ Ծ օրինաւ կիս Ծ այսմիկ։

Կին ոմն պաղեստինացի՝ որում անուն էր Կղէոպատրա, քնաւոր եւ բարեպաշտ եւ երկիւղած

զած 'ի մէնէ, հայէր ՜ը նրան վարոս 'ի նահա-
տակութեան, և տեսանել զնա 'ի յետոյն տանն
ջանին՝ լայր գառանեալէս և ծեծէր զկուրծսն
իւր . բայց երկնչէր խոստովանել՝ թէ և
ինքն քրիստոնեայ իցէ ։ Նա շրջաւ 'ի գիշերի
համգերձ ծառայիւք իւրովք, և որդւովքն՝ որ
էր երկոտասանամեայ, և գողացաւ զմարմին
սրբոյն վարոսի, և տարաւ 'ի տուն իւր . և անոյ-
օծեալ խնկովք անուշիւք, և պատեալ պատ-
ուական համդերձիւք, փորեաց ՜ը մահճօք
իւրովք, և թաղեաց զսուրբն . և եկաց մնաց
անդ՝ զամս սպասաւորութեան հարկանելով
լուցմամբ ճրագի և բուրմամբ խնկոց ։
Իսկ եղև իբրև դադարեաց հալածումն քրիս-
տոնէից՝ 'ի զօրանալ մեծին կոստանդիանո-
սի, խորհեցաւ կղէոպատրա 'ի գաւառն իւր
դառնալ 'ի պաղեստին . և պատրաստեաց
զամենայն ինչս իւր . և 'ի ձեռն երևելւոյ ճար-
տարախօսի ուրումն մատուցեալ առ իշխանն
(եգիպտոսի կամ աղեքսանդրիոյ) ասէ . այր
իմ էր 'ի պատուական ազգէ զօրականաց .
ժիր եղեւ 'ի պատերազմունս՝ մեռաւ և աստ
թաղեցաւ վարկպարազի, և օրինաւոր թաղ-
ման չև ևս է պատահեալ . արդ աղաչեմ զքո
մեծութիւդ, հրամայեա ինձ անվտանգ հանել
զնա աստի, զի տարեալ թաղեցից օրինօք յե-
մում գաւառի . և իշխանն խոնարհեալ յա-
ղաչանս կնոջն, քանզի և ինչս բազումս եառ
'ի նմանէ, հրամայեաց տալ նմա զխնդիրն ։
Իսկ կինն թողեալ զմարմին առն իւրոյ ան-
դէն յեգիպտոս, յանուն նորա զսրբն վարոս փու-

թացեալ հանել յերկրէն՝ ուր թաղեալն էր․
և դարձեալ պայծառ հանդերձիւք զգեցու-
ցեալ զնա, և խնկօք և իւղովք անուշիւք օ-
ծեալ՝ եդ 'ի բոքի միում ( որ և քուրձ կոչի,
կմ̃ ը̃ այլոց արկղ 'ի ձիթենւոյ ), և առ շատ
է̃ նմա․ և այնպէս եհան զնա յեգիպտոսէ,
զի մի՛ ոք 'ի քրիստոնէից անգամ իմասցի և
յափշտակեսցէ 'ի նմանէ․ քանզի սկսեալ էին
այնուհետև քրիստոնեայք համարձակ եր-
ևիլ, և զնշխարս սրբոցն խնդրել, և դնել 'ի
վանս, և պիտակ նց̃ կատարել։

Մրդ եկեալ կղէոպատրայ 'ի պաղեստին՝ 'ի
գեօղն իւր, որ կոչիւր եդրա կմ̃ դրի՝ մօտ 'ի
լեառն թաբորական, եդ զպատուական մար-
մին սրբոյն վարոսի 'ի գերեզմանի նախնեաց
իւրոց, որ էր մերձ 'ի ճանապարհն․ և եղա-
նէր անդր հանապազ ընտանեօքն իւրովք՝
հանդերձ մոմեղինօք և խնկօք․ ուսան և այլ
արք և կանայք, և եղանէին է̃ նմ։ Այլ յետ
սակաւ աւուրց յայտնի եղև և որոց 'ի գա-
ւառն բնակեալ էին, եթէ ո̃ք ումն կայ 'ի դրի
'ի գեօղն մերձ 'ի թաբոր, վն̃յ բերէին անդր
զհիւանդս իւրեանց և զնեղեալս․ և ամե-
նեքեան բժշկէին։

Տեսեալ կղէոպատրեայ՝ եթէ նեղի բազմու-
թինս, որ գայ անդր, քանզի անձուկ էր տե-
ղին, խորհեցաւ վաճառել զինչս իւր, և
կանգնել սրբոյն տաճար․ ունէր և որդի միա-
ծին, որում հանեալ բաժին յընչիցն՝ առա-
քեաց երթալ 'ի դուռն արքունի, և առնուլ
զհօրն պատիւ 'ի զինուորութե․ այլ առաւել

և ս

եւ ծախեաց 'ի շինուած տաճարին ։ Այլ եղեւ ընդունելի յոյժ որդին կղէոպատրեայ յարքունիս կոստանդիանոսի. եւ ընկալաւ գիր զինուորութե 'ի թագաւորէն, եւ դարձաւ առնել տօն ուրախութե ընդ մօր իւրում, եւ այնպէս ագանել զզգեստ պատուոյն. քանզի էր կինն մեծատուն եւ 'ի նշանաւորաց պաղեստինոյ առաջին ։

Այնժամ ասաց կղէոպատրա 'ի սրտի իւրում, թէ միանգամայն 'ի կատարել տաճարիս 'ի նաւակատիս նորա յաւուր հանգստեան նշխարաց սրբոյն՝ զգեցուցից որդւոյ իմում զպատմուճան իշխանութեն, եւ ընդ իս բարձցէ զմահիճս սրբոյն՝ զգեցեալ զկերպ զինուորութե. որպ եւ սրբն վարքս ինքնին էր զօրական ։ Այլ այնպէս բազմ խնչս ծախեալ կնոջն՝ կանգնեաց զվկայարան սրբոյն, եւ տօն զարդու զարդարեաց ։ Այլ կոչեալ զեպիսս եւ զբազմութիւն վանականացն եւ այլոց եւս քրիստոնէից՝ եհան զսրբն 'ի տապանէն, եւ բերեալ մահիճս նորա՝ զարդարեաց անկողնօք եւ մեծ պաստառակալօք. եւ մատոյց զորդին իւր առ քահանայսն, եւ օրհնեցին զնա. եւ առեալ զքղամիդն եւ զգօտի մանկանն՝ եդ 'ի վերայ տապանի սրբոյն, եւ ապա ըզգեցոյց որդւոյ իւրում ։ Այնուհետեւ նախ ինքնին կղէոպատրա եւ մանուկ իւր ընդ նմա բարձին զդահաւորակ սրբոյն, եւ մուծին քահանայիւք 'ի ներքս 'ի նորաշէն տաճարն. եւ այնչափ ժողովեալ էին բազմութիւն արանց եւ կանանց, մինչեւ բնակչաց տեղւոյն հոգալ՝ թէ ուստի՞ ունիցին ջուր բաւական եկելոցն ։

Այլ եղև պաշտօն 'ի հաւախօսէն մինչև ցինն
ժամն. և իբրև եղին քահանայքն զնշխարս
սրբոյն 'ի տեղին պատրաստեալ, ուղղեցին սե-
ղան և մատուցին պատարագ. և միաբան ա-
ղօթս արարին 'ի վերայ Կղէոպատրեայ և որդ-
ւոյ նորա միածնի: Այլ իբրև կատարեցին զժամ,
անկաւ Կղէոպատրա 'ի վերայ տապանակի սրբոյն
Վարոսի. աղաչէր և ասէր. աղաչեմ զքեզ
սուրբդ Աստուծոյ վասն օգտակարաց ինձ և մանկանս
իմոյ. որ օգուտն է ոգւոյս իմոյ և որդւոյս`
և հաճոյ է, աղաչեա զՏէր օգնել ինձ և սմա,
փոխանակ զի պաշտեցի զքեզ յամենայն սրտէ
յայնմ 'ի սատանայական խռովութեանց ժամա-
նակին յերեւաց հալածանաց. և այժմ աղա-
չեա զՏէր Աստուած` խաղաղութեամբ տալ մանկանս իմոյ
առողջութիւն 'ի քէն, և շնորհս 'ի զինուորութեան
իւրում առաջի Թագաւորին. այո աղաչեմ
զքեզ, յիշեա զիս. զի ոչ պատուեցի զոք ա-
ռաւել քան զքեզ, ոչ զայր և ոչ զմանուկ և
ոչ զինչս:

Այլ ելեալ Կղէոպատրեայ 'ի տաճարէն` ետ
ճաշ մեծապէս ամենայն բազմութեան, ինքնին ծա-
ռայելով նոցա. պաշտէր ընդ նմա զժողովուրդն
և որդին իւր ուրախութեամբ. և մայրն պատուի-
րեալ էր որդւոյն իւրոյ, զի մի ինչ ճաշակես-
ցէ, մինչև յարիցեն բազմականքն. զի 'ի նշխա-
րաց նոցա ասէ ճաշակեսցուք ես և դու: Այլ իբրև
յարեաւ ամբոխն, վաստակեցաւ մանուկն
և կոզմնեցաւ: Այլ ելեալ մայրն յետ հանգու-
ցանելոյ զժողովուրդն` համբուրեաց զաչս
մանկանն և ասէ. մի առողջութիւն քո որդեակ
արար

տարայ զայդ մ̃մ, և զի յուղարկեսցես զիս 'ի կեանս քո առ ս̃րն այն. արդ արի և ճաշակեա՛ կերակուր, զի անսուաղ ես և աշխատեալ ։ Իսկ մանուկն հազիւ խօսեցաւ, զի այրէր բերան նր̃ 'ի ջերմութենէն. և մօրն անկեալ զմանկամբն՝ եդառ զնա 'ի գիրկս իւր, և ասէ. կենդանի՛ է տ̃ր և աղօթք սրբոյն, և ոչ ես ճաշակեմ, մինչև տեսից՝ թէ զի՛նչ դիպեսցի մանկանս. վ̃ն զի ես պատուիրեցի սմա չճաշակել ինչ, մինչև հանգիցեն ժողովեալքն ։ Իսկ այնպէս կալեալ զմանուկն 'ի գիրկս իւր մինչև 'ի ժամ գիշերոյ՝ խորովէր 'ի ցաւոցն. և 'ի մէջ գիշերին արձակեաց մանուկն զհոգին ։

Յայնժամ յարուցեալ կղերապատրեայ՝ եբարձ զմանուկն մեռեալ, և մտեալ 'ի տաճար սրբոյն Վարոսի՝ ընկեց զնա առաջի սեղանոյն, աղաղակէր և ասէր զանասելի բանքս. Ո՛հ հատուցումն արդարոյս այսորիկ. ո՛հ, զո՞ր ընդ որո՞յ հատոյց ինձ հիքոյս. տո՛ւր ինձ այսր զորդին իմ, զոր երկամբք սնուցի. տո՛ւր ինձ ըզմանուկն իմ միածին ։ Ո՛հ բռնութի̃ արդարոյս, որ հատոյց ինձ ընդ այնր զայս. տո՛ւր ինձ զորբն իմ, վ̃ն որոյ զայս մ̃մ տարայ. զի կեցցէ և լինիցի ինձ մխիթար. տո՛ւր ինձ զորբն. ապա թէ ոչ՝ գիտեա՛, զի աստ բեկանեմ զգլուխ իմ մերձ 'ի քեզ. աղաչեա՛ զտ̃րն քո՝ տալ զմիածինս իմ. քանզի նա և զբազմաժամանակեայ մեռեալս յարոյց. տո՛ւր ինձ զորդին իմ. ապա եթէ ոչ՝ առ՛ր և զիս առ նա ։

Նաև ամ ժողովուրդն լայր ընդ նմա 'ի լսել անոգ-
ղանակնկալ որհասն . քանզի էր մանուկն և
գեղով ազնուական . և առաւել ևս վն մօր
նր՝ երկիւղածին և քնասիրին այնորիկ լայ-
լին , ոգ թէ անարժան հատուցումն ընդ որոյ
արարն՝ ընկալաւ . և այնպէս անցոյց կենն և
զառաջիկայ օրն լալով . և ամ քահանայքն
և սովորական սիրելիքն ականածէին մխիթա-
րել զնա՝ յերեսաց արդարացի կարծեցեալ
ցաւոյն :

Նաև իբրև եղև մէջ գիշերի , խաղաղացաւ
կղէոպատրա վայր մի , գիրկս արկեալ զմանե-
կամբն . քանզի 'ի բազում լալոյն էր աշխա-
տեալ , և զօրն ամ պահեալ : Նաև ահա ե-
րևեցաւ նմա որդն վարոս , և մանուկն 'ի ձե-
ռին նր . և երկոքեանն ունէին ընդ մէջս իւ-
րեանց գօտի ոսկի , և քղամիդք նց սպիտակք
իբրև զլոյս , և շքեղք իբրև զաստեղս . և
թագ 'ի գլուխս նց , և շուրջ զթագօքն աս-
տեղք բոլորեալք : Նաև իբրև ետես , զարհու-
րեցաւ , երկիրեպագ , և բուռն եհար զոտից
որդյն աջովն , և միւսով ևս ձեռամբ զոտից
մանկանն :

Յայնժամ յարոյց զնա որդն վարոս , և ասէ
ցնա . Ով կին աղաղակես զինէն կին դու , իբ-
րև թէ անիրաւութին ինչ արարի առ քեզ ,
և իբրև թէ փոխանակ քոյոց երախտեացն
չար ինչ հատուցի քեզ . մի թէ մոռացայ զոր
արարերն ընդ իս յեգիպտոս և 'ի Ճանապար-
հին . ոչ հանապազ հոտոտէի 'ի խունկս քո .
ոչ զգացի՝ յորժամ ամփոփեցեր զիս յընկե-
ցեալ

ցեալ սոկերացն արտաքոյ քաղաքին , և թա-
ղեցեր զճ̅ մանհձոքն քո , և յորժամ եղիր զիս
'ի քրձին սոսնի . ո՜չ գիտացի՝ յորժամ թաղե-
ցեր զիս սուտ առ նախնիսն քո . ո՜չ ապաքէն
աղատեցի զայն ննջեցեալս 'ի շնորհս քո՝ ա-
ղաչելով զՏ̅ր վ̅ս քո տալ նոցա զթողութի̅ն (3) .
ո՜չ գիտացի արդեօք՝ յորժամ հանեցին զիս 'ի
գերեզմանէն , և բարձեր 'ի մահիճսն հան-
դերձ որդւովս քո . ո՜չ ես պահեցի զշինողս
մկայարանիս , զի մի՛ վնասեսցին 'ի չարէն . ո՜չ
ես պաշտեցի ընդ քեզ զժողովսն 'ի նաւակա-
տիս , և անուամբ ա̅ծս օրհնեցի զպատարա-
տունն քո . ո՜չ դու աղաչեցեր՝ յորժամ եղիր
զիս 'ի սեղանին , զի աղաչեսցիս զԱ̅ծ վ̅ս որդւոյ
քո՝ առնել ընդ նմա զհաճոյսն , և խառնել
զնա 'ի համար անդրանկաց երկնաւորաց . և
ես աղաչեցի զՏ̅ր , և նա արար մեզ զայս ա̅մ
շնորհս . որպէս և տեսանես իսկ զորդիդ 'ի
փառս . և այժմ եթէ կամիս , ա̅ռ զդա ։

Այս ընդ ասել սոյն զայս՝ իսկոյն պատեցաւ
զնովաւ մանուկն , և ասէ . մի՛ տէր իմ և վ̅ր̅դ̅պ̅ ,
մի՛ հաւանիր դմա՝ տալ զիս անիրաւ Տ̅իս ,
որ լի է ունայնութ̅բ և ամպարշտութ̅բ . յոր-
մէ հազի՛ւ ձողոպրեցայ՝ չշաղախելով 'ի պղ-
ծութիւն սորա . մի՛ հայր իմ , մի՛ 'ի բացեայ
առներ զիս 'ի քէն , և մի՛ որոշեր զիս 'ի սրբոցն՝
ճ̅ որս ընտրեալ եմք . մի՛ տէր իմ , մի՛ զրկեր
զիս յայնպիսի վայելչութենէն՝ զոր վայելչա-
պէս ժառանգեցաք . մի՛ տէր իմ , մի՛ առներ
զիս տարագիր 'ի տեսանելեացն ա̅յ ։ Այս
ցմայրն ասէ . Երթ գնա՛ յինէն կի՛ն դու . Ե՞
մայր՝

մայր՝ որ նախանձի երբէք ընդ միածին որդւոյ
իւրում, և ձգէ զնա 'ի Թագաւորութէ յաղ-
քատութե, և 'ի լուսոյ 'ի խաւար։
Յայնժամ ասէ ցնա կինն. հայրս առէք և
զիս ընդ ձեզ, զի և ես Թ͞զրեցից ընդ ձեզ. և
դարձեալ ասէ ցորդն վարոս. մի վարատեր զիս
'ի միածնէդ իմմէ։ Ասէ ցնա նր վկայն. ե-
Թէ այդր ես 'ի տանջանս, ընդ մեզ ես. այլ
այժմ երԹ խաղաղութ, և կատարեալ յերկ-
րի գլխաւորացն մեր. և 'ի ժամանակի այց ա-
րասցուք քեզ, յորժամ կամեսցի տր. առհա-
սարակ հաւանեցար, երԹ խաղաղութբ։
Նա զարԹուցեալ կղերապատրեայ զողմամբ՝
պատմեր բազմութեանն զտեսիլն. և ա-
ռեալ զգեստ նր և իւղ անոյշ՝ պատեաց և
զգեցոյց զորդին իւր. և յանձն արար նորին՝
Թաղելով առ տապանի սրբյն։ Նա տեր սիրե-
լիք նր կանայքն աղաչէին զնա, զի դիցէ ընդ
նմա զզինուորութե պատմուճանն նր. զի մի
տեսցես ասեն 'ի տան քում, և խառնեսցի
ոգի քո։ Իսկ նա ոչ էառ յանձն, այլ ասէ
ցնս. Մնացէք վաղիւն առ իս, աղաչեմ զձեզ.
քանզի առնեմ տօն մեծ, զի զինուորեցաւ
որդին իմ 'ի զինուորութի հրեշտակաց. և
արար ճաշ մեծ. և պաշտեր զբազմեղուն տծմ
ուրախութբ։ Նա յուղարկեր զամենեսին՝ ետ
զանձն այնուհետև 'ի հրաժարական կեանս,
բնակեալ 'ի վկայարանի. և անդ պաշտեր
աղօթիւք զած. և երևէին նմա բստ կիւ-
րակէի կիւրակէի նր վկայն քնի վարոս և նր
զաւակն իւր՝ փոփոխելով զփառս իւրեանց

եւ

Հ. թէ մին յեօթանց յանապատի էր վախճանեալ. բայց քանզի որն վարոս ասաց յառնէն զանձնէ լինել զաւելի վախճանելոյն, յայն հայելով արդեօք գրէ Յ. այսպէս. * Այդ քանզի մին յեօթանց անդէն 'ի բանտին վախ-
,, ճանեցաւ, կարգեաց զանձն փոխ նր որն Ոճարոս||. Նոյնպէս և Լ. յասելն. յասելն. * Յեգիպտոս (կա-
,, տարումն) որյն վարոսի զինուորին. որ առ մաքսի-
,, միանոսիմ կայսերաւ յայց ելեալ որց եօթն միայնա-
,, կեցաց բանտարկելոց 'ի դարմանել, 'ի վախճանիլ միոյն
,, 'ի նոցանէ՝ կամեցաւ մտանել փոխանակաւ 'ի տեղի
,, նր||. Ը այամ եգաւ և 'ի ծաղիկն մեր. այլ առաւել զօրէ բան ճառընտրաց:

(4) 'Ի Ճ. Բ. գրեալ էր տիտանացւոց. բայց 'ի Ա. տիանացւոց. որ է ուղղագոյն. զի և մետափր. ունի տիւյանացւոց:

(5) Իմն Ը բացատրութն մետափր. * հրամայեաց, զի
,, տարածեալ յերկրի փոկովք հարցի անխնայ, և ապա
,, 'ի ձեռն չորից արանց ձգեալ հաստ բրօք ջախել և
,, խորտակել ||:

(6) Ա՛ռ քեզ օրինակ մետափրաստեան ոճոյ. զի այսպէս գրէ պատմոր. * Քնն ձեր առէ եկեսցէ և փըր-
,, կեսցէ զդա 'ի ձեռաց իմոց. և ոչ գիտէր անմիտն,
,, զի կարօղն լինել տանել այսոցիկ մեծանձնութբ և
,, արիութբ՝ էր նշանակ, թէ մեծ կայր նա և փրկէր,
,, և զիւր ցօղն տայր 'ի բժշկութն ցաւոցն ||: Բարւոք և գեղեցիկ. այլ մեք պահեմք զբուն ոճ վկայաբանին. և զայսպիսի խորհրդածութիս թողումք հանել հոգեսէր վերծանողաց:

(7) Պակասէր 'ի ՃՃ. հատուածն վն կատարման վեցեցունց որ հարց, թէպէտև զօրութբ է իմանալ. վ՟յ եդաք Ը մետափր" անորոշ բանիւք. ուր Յ. որոշէ և ըզտեսակ տանջանացն լինել համգոյն վարոսի. քանզի ասէ. * Նոյնպէս և այլ վեց որքն Է նմա կախեալ քերին եր-
,, կաթի եղնգամբք. և այնպէս կախեալք և գալարա-
,, նաւ հարեալք ժամս հինգ՝ աւանդեցին (միաբան)
,, զհոգիս իւրեանց տն||. և Ը նմին նկարէ 'ի պատկերի զվեց հարս կախեալ զփայտէ, և հարեալ քքով ընդ եօթներորդին վարոսի:

(8) Առաւել փոխէ զոճ վկայաբանիս մետափրաստէս 'ի պատմութն կղէոպատրեայ՝ առ առաւել զգալի առնելոյ զցաւ նր և զխորհուրդ տեսլեանն. բայց երանի թէ պահէր յայամ վայրի զբառսն գլխովին 'ի հաստատու-

վե-

Հ. Թէ մին յեօթանց յանապատի էր վախճանեալ. բայց քանզի նբն վարոս ասաց յառնել զանձնէ լինել զտեղի վախճանելոյն, յայն հայելով արդեօք գրէ Յ. այսպէս. * Արդ քանզի մին յեօթանց անդէն 'ի բանտին վախ-
,, ճանեցաւ, կարգեաց զանձն փխկ նր նբն Սհարոս ||. Նոյնպէս և Լ. յասելն. յասելն. * Յեգիպտոս (կա-
,, տարումն) Նբյն վարոսի զինուորին. որ առ մաքսի-
,, միանոսիւ կայսերաւ յայց ելեալ նբց եօթն միայնա-
,, կեցաց բանտարկելոց 'ի դարմանել, 'ի վախճանիլ միոյն
,, 'ի նոցանէ՝ կամեցաւ մտանել փոխանակաւ 'ի տեղի
,, նր ||. Ը այսմ եգաւ և 'ի ծաղիկն մեր. այլ առաւել զօրէ բան ճառընտրաց.

(4) 'Ի Ճ. Բ. գրեալ էր տիտանացւոց. բայց 'ի Ա. տիանացւոց. որ է ուղղագոյն. զի և մետափր. ունի տիպյանացւոց։

(5) Իմա Ը բացատրութե մետափր. * հրամայեաց, զի
,, տարածեալ յերկիր փոկովք հարցի անխնայ, և ապա
,, 'ի ձեռն չորից արանց ձգեալ հատս բրօք ջախել և
,, խորտակել ||։

(6) Ա՛ռ քեզ օրինակ մետափրաստեան ոճոյ. զի այսպէս գրէ աստանօր. * Քնն ձեր ասէ եկեսցէ և փըր-
,, կեսցէ զդա 'ի ձեռաց իմոց. և ոչ գիտէր անմիտն,
,, զի կարօղն լինել տանել այսոցիկ մեծանձնութե և
,, արիութե՝ էր նշանակ, թէ մերձ կայր նա և փրկէր,
,, և զիւր ցօղն տայր 'ի բժշկութի ցաւոցն ||։ Բարւոք և գեղեցիկ. այլ մեք պահեմք զբուն ոճ վկայաբանին. և զայսպիսի խորհրդածութիս թողումք հանել հօգեւէր վերծանողաց։

(7) Պակասէր 'ի ՃՃ. հատուածն վն կատարման վեցեցունց ոբ հարց, թէպէտև զօրութե է իմանալ. վյ եդաք Ը մետափր" անորոշ բանիւք. ուր Յ. որոշէ և ըզտեսակ տանջանացն լինել հանգոյն վարոսի. քանզի ասէ. * Նոյնպէս և այլ վեց ոբքն ՃԷ նմա կախեալ քերին եր-
,, կաթի եղնգամբք. և այնպէս կախեալք և գաւազա-
,, նաւ հարեալք ժամս հինգ՝ աւանդեցին (միաբան)
,, զհոգիս իւրեանց տն ||. և Ը նմին նկարէ 'ի պատկերի զվեց հարս կախեալ զփայտէ, և հարեալ քքով ընդ եօթներորդին վարոսի։

(8) Առաւել փոխէ զոճ վկայաբանիս մետափրաստէս 'ի պատմութե կղէոպատրեայ՝ առ առաւել զգալի առնելոյ զցաւ նր և զխորհուրդ տեսլեանն. բայց երանի թէ պահէր յայսմ վայրի զբառսն գլխովին 'ի հաստատուն

վկ-

մկրտանք որբոտղան ննջեցելոց, ուր և հաւաքելոցն 'ի փառս հոգւով. զի Թէպէտեւ զնոյն իմաստ յայտ առնէ, այլ մեզ կարևոր էր գիտել, Թէ զինչպիսի բառք էցեն 'ի յունական օրինակի, անդ՝ ուր գրի 'ի Ճճ. * զորս և տղաւեցի զգաստապարտակաւն 'ի մեղաց՝ շնորհելով (կմ շնորհ ունելով) քեզ, աղաչեալ զնոր՝ մի քո տալ նոյ զԹողուԹ || . որ է մկայուԹի երևելի՝ ուր Աշխեղ խոր- հուրդ քահանայքն են: Գրեալքն 'ի մեզ են անժխտե- լի բաղադրուԹի Ճ. և Հ:

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբուհւոյն Թէոդոտեայ, կամ Թէոդորիտեայ այրւոյն, և Երից որդւոց նր. և որք ընդ նմ կատարեցան: (1)

Հ. յուլ. 27: Տր Էէլ. յուլ. 29: Յ. Եօ. դեկտ. 22. և Յն. յուլ. 29: Լ. օգոստ. 2: Մաքրեոս. դեկտ. 25. 'ի Հայս մենոլոգոնում: Բոլլանդեանն ղէնեոս. 'ի Թ. հտ. օգոստ. էջ. 147 = 154: (2)

ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԵՒ բարեպաշտ կին սա այս Թէոդոտէ (տր անծառուհի, որ և գրի Թէոդիտէ, կմ Թէոդորիտէ) էր յիկոնիոն քաղաքէ լիկայոնացւոց. այլ քանզի կատարեցաւ 'ի Նիկիա բիւԹանիոյ, վսյ բիւԹանիացի կոչի յայլոց: Արդ սա այրի մնացեալ 'ի ծաղկեայ հասակի՝ հանդերձ ե- րե-

բեքումբք մատաղ մանկամբք 'ի ժամանակս հալածանաց դիոկղետիանոսի , կատարէր պահօք և աղօթիւք զպատուիրանսն այ · ուսուցանէր և զորդիսն պարկեշտ և ածահաճոյ վարուք և գործովք կեալ 'ի քնական հաւատս : Սոյ կալան զնա զաւակօքն հանդերձ հալածիչքն , և վարեցին անդր ևս քան զբիւզանդիա՝ մինչև 'ի մակեդոնիա կմ 'ի սիրմիոն լիւրիկեցւոց՝ յանդիման առնել կայսեր · զի անդ էր յաւուրսն յայնոսիկ :

Անդ գտաւ յաւուրն յայնոսիկ մեծ վկայուհին և աղախինն քրի սրբուհի անաստասիա՝ կին հռովմայեցի , (որոյ յիշատակ լինի ըստ յայսմաւուրաց 'ի դեկտեմբերի իա , կմ իբ) : Որում բնակակից լեալ թեոդոտեայ՝ լուաւ 'ի նմանէ բազում բանս հոգևոր մխիթարութե , և խրատս և քաջալերութիւն՝ հաստատուն կալ 'ի հաւատս քրի , պահել զսրբութի անձին , և 'ի տանջանաց ոչ երկնչել · և այնպէս ևս քան զևս զօրացաւ 'ի տր :

Իբրև կացուցին զթեոդոտէ յատենի թագաւորին , նա համարձակ խոստովան եղև զքս ած · ըն նմին և որդիքն նր ուսեալք 'ի բերանոյ նր՝ զքրիստոնեայ եմք երկրորդէին : Իսկ եղև յետ հարցափորձի՝ յորժամ անդրէն 'ի բանտ կամէին արկանել զմայրն հանդերձ որդւովքն , և վճիռ մահու 'ի վր ածել , լեակադիոս ոմն իշխան հարեալ 'ի գեղ թեոդոտեայ՝ աղաչէաց զկայսրն չկորուսանել զայնպիսի գեղեցկուհի , այլ տալ զնա իւր 'ի կնութիւն · և թագաւորն հաւան լինէր ընդ այն ,

այն, զոր թէ սովորիմք որոշեացի կինն 'ի քրիս-տոնէութէ ։

Խոստովանեալ զնա իշխանին 'ի տան իւր՝ հրապուրէր անմտութին լինել նմբեան ։ Նաև զնա Թէոդոտէ. եթէ մեծութեց իմոց ցանկաս և ընչից, և վ՟ն այն խնդրես զիս 'ի կնութի, ահա քեզ տամ զա՟մ գոյս իմ՝ որ աստ և որ յերկրի իմում, և ինձ պահեմ միայն փոխանակ ա՟մ գանձուց զք՟ս. այլ եթէ զգեղ մարմնոյս սիրես, անհնարինս խնդրես. զի դիւրին է քեզ փոխել զկերպարանս իմ քան զմիտս իմ, որ հաստատեալ է 'ի սէր սրբութ՟՝ զկնի վախճանի զուգակցին իմոյ. ևս առաւել քանզի քրիստոնեայ եմ, և ոչ լինիմ առն հեթանոսի. և ոչ փոխիմ յայլում խորհրդոյ, թէպէտև սրով և հրով և ա՟մ տանջանօք միանգամայն վառեսցես զիս ։

Յայնժամ իշխանն ոչ կամեցաւ խստիւ գնալ ընդ նմա. այլ քաղցրութ՟բ հնարէր որսալ զնա 'ի կամս իւր ։ Նա և իբրև օր քան զօր թախանձէր զնա, խաբեաց Թէոդոտէ զիշխանն՝ ասելով. համբերեա ինձ սակաւ աւուրս, զի զմտաւ ածեալ ժողովեցից զինչս իմ զա՟մ. և նա թոյլ ետ նմա. քանզի և ինքն լեւկադիոս հանդերձեալ էր չուել ընդ արքայի 'ի բիւթանիա. վ՟յ եթող 'ի տան զԹէոդոտէ և զորդիս ն՟ր. և ինքն գնաց զճանապարհ իւր ։ Նա և իբրև յընդարձակի եղև բարեպաշտուհին Թէոդոտէ, առեալ ինքեան գործակից զորբուհին անաստասիա՝ համարձակ պաշտէր զքրիստոնէութի՟ն. և զա՟մ ինչս իւր բաշխէր

խէր

խէր յաղքատս և 'ի բանտարկեալ քրիստո-նեայսն , և դարմանէր զվէրս ն՟ց , և սրտա-պնդէր 'ի հաւատս ։ Եւ յորժամ առանձինն լինէին , պատմէր անաստասիա Թէոդոտեայ զա՟մ հալածանս և զչարչարանս՝ զոր կրեաց վ՟ն ք՟նի , և զգործսն՝ զոր արար ա՟ծ 'ի ձեռն ն՟ր ․ որով և զոգի ն՟ր վառէր 'ի հանդէս վկայ-ութեան ։

Իսկ իշխանն լեւկադիոս իբրև դարձաւ 'ի բիւթանիոյ , և լուաւ զա՟մ գործս Թէոդո-տեայ , գիտաց՝ եթէ խաբեցաւ ․ մանաւանդ յորժամ փորձեաց զնա բազում ողոքանօք և սպառնալեօք , և ետես՝ զի կայ մնայ անդրդ-ուելի 'ի սրբասէր կամաց և 'ի ս՟բ հաւատոց ․ և 'ի վ՟ն հասեալ՝ եթէ խրատատու ն՟ր է ա-նաստասիա , կալեալ քարշեաց զնա յատեան եպարքոսի լիւրիկեցւոց ․ որ և բազում չար-չարանօք մարտիրոսացաւ իսկ ։ Իսկ զԹէոդո-տէ կապեալ 'ի շղթայս՝ յանձնեաց զնա և զե-րեսին որդիս ն՟ր 'ի զօրականն արքունի , և առաքեաց հանդերձ գրով առ Թագաւորն 'ի բիւթանիա ․ և Թագաւորն մատնեաց զնա 'ի ձեռս նիկետիոսի դատաւորին , որ էր փո-խանակ բդեշխի բիւթանացւոց 'ի նիկիա ։ Եւ նա բազում ողոքանօք խրատ տայր սր-բուհւոյն և ասէր ․ ողորմեա՛ անձին քում և զաւակաց քոց , և զոհեա՛ կռոցն՝ հնազան-դեալ արքային հրամանաց , ո՟պ զի կեցցիս և բազում բարեաց հասանիցիս ․ և եթէ ո՛չ վ՟ն քո , գոնէ վ՟ն որդւոց քոց ընտրեա՛ զօգ-տակարն ։ Ախնի ես Թէոդոտէ ․ ես վ՟ն զի

յոյժ օրհնեմ զԱծ իմ և զանձն իմ և զզա-
ւակսն իմ , վն այնորիկ ոչ ուրանամ զնա , և
ոչ զոհեմ օտարոտի ածոցն , այլ՝ ճշմարիտ
հաւատով զքս խոստովանիմ :

Յայնժամ բերին առաջի մեքենայս չարչա-
րանաց , զի տեսցեն և երկիցեն : Իսկ աւագ-
որդին Թէոդոտեայ՝ անուանեալ Աւոդիոս՝
մանուկ իմաստուն՝ եթուք 'ի մեքենայսն ,
և ասէ ցիշխանն . մեք ոչ դատաւոր՝ 'ի մարդ-
կան տանջանաց ոչինչ զանգիտեմք , որք առ-
Թեն մարմնոյ զանապականութի ; և հոգւոյ
զանմահութի . մինչ զի ոչինչ է հաստ 'ի խորտ-
կալից կոչնոյ փափկանամք չարչարանօք՝ որ
վն քն . այլ առաւել յոյ երկնչիմք , որ կա-
րօղն է զոգի և զմարմին կորուսանել 'ի գե-
հենի . զայս և առաւել քան զսոյն խօսեցաւ
յաւետարանէն բան է դատաւորին :

Հայեցեալ դատաւորին 'ի մանուկն սքանչե-
լի՝ ասէ . քանզի տեսանեմ զքեզ անկատար
հասակաւ , զարմացեալ եմ՝ Թէ զիա՞րդ և
ուստի՞ ուսեալ է քո զայդոսիկ , զորս սակա-
ւուց է գիտել բազմաժամանակեայ ուսմամբ
և քրտամբ յիւրաքանչիւր դենի : Պխնի ետ
Աւոդիոս . փրկիչն մեր և Տր յս քս ինքնին
ասաց . յորժամ տանիցեն զձեզ առաջի Թա-
գաւորաց և դատաւորաց , մի զմտաւ ածի-
ցէք՝ Թէ զինչ խօսիցիք . զի տացի ձեզ 'ի ժա-
մուն յայնմիկ՝ զինչ պարտ իցէ խօսել . և
որդ ոչ եԹէ իմ ինչ են բանքս , և ոչ մարդ-
կեղէն իմաստութե գիւտք , այլ յայտնանշա-
յոյ դնեն 'ի լեզուի իմում :

Ապա անյայս եղեալ դատաւորին 'ի յաղթելոյ մօրն և անդրանկին որդւոյն, որ մերձ էր յարբունս, փորձել սկսաւ զերկուս մատաղագոյն մանկունս. բայց եգիտ և զնո հաստատունս 'ի ք՟ն, և արժանիս այնպիսում ծնողի և այնպիսում հարազատի. վ֊յ անդրէն առ մայր մանկանցն և առ աւագ եղբայրն դարձուցեալ զբանսն՝ ասէր. հայեցարուք յաղիս ձեր, և խնայեցէք 'ի փափկին և 'ի մատաղ մանկութիւն, զի մի՛ լիցի ձեզ տեսանել առաջի աչաց ձերոց զչարաչար կատարած դ֊ց։

Մինչև ոչինչ կարաց բանիւք վճարել դատաւորն, հրամանն ետ և գան հարին գաւազանօք զերկուս եղբարսն մի առ մի առաջի մօրն. և մայրն քաջալերէր զնոսա հաստատութն կալ 'ի հաւատս և համբերել ցաւոցն. ասէ. մի՛ վըհատիք որդեակք, հաստատուն կացէք զաւակք իմ 'ի տ՟ր. վ՟ն այսց հարուածոց՝ որ վ՟ն ք՟ի, մեծամեծ փառք և պսակք մնան ձեզ։

Եւ բարկացեալ դատաւորն՝ խրատու բանսարկուին յայլ խորհուրդ անօրէնութն մտաբերէր. քանզի մատնեաց զորբասէրն Թէոդոտէ 'ի ձեռս անառակ զօրականի ումեմն՝ որ կոչէր Աւրտակ կմ Հիւրտակոս տանել զնա 'ի տուն իւր և պղծել, և յետոյ արկանել 'ի պոռնկատունս։ Եւ նա քարշեալ տարաւ զնա 'ի տուն. այլ 'ի դերև ել խորհուրդ չարին. քանզի այն ինչ կամէր մերձենալ 'ի նա Աւրտակ, իսկ և իսկ լուծան երակք ընդկայց նորա, և հոսէր արիւն յորդ անդադարելի։

Ազդ եղև դատաւորին. և իբրև ոգի էառ

այրն փոքր մի, կոչեաց զնա, և հարցանէր՝
թէ զի՞ եղև քեզ : Աղաղակեաց ուրախ մե-
ծաձայն, եթէ տեսի այր մի ոսկեհանդերձ
և լուսատեսիլ, զի կայր առ Թէոդոտեայ ոտս
պահապան նորա . նա ած ինձ ապտակ ուժգին,
մինչև լուծան հաստատելիքս :

Իսկ անամօթ բանսարկուն յուշինչ գրեալ զե-
ղենլյնն՝ ետ անդրէն ածել զառաջեաւ զԹէո-
դոտէ, և ասէ . եթէ ոչ պաշտեսցես զան-
մահ դիսն, առաջի աչաց քոց դիտապատ
անկցին որդիք քո : Նա էլ վկայուհին . կարի
իսկ ծարաւի եմ այդմ՝ ի վաղուց հետէ . ոչ
զի կենդանութեան յղարկեմ յառաջագոյն զոր-
դեակն իմ առ քն, և յանկոյթ նաւահան-
գիստ ժամանն կացուցեալ զնս, հասից և ես
զկնի նց . և վայելուչ նուէագեցից, ահաւա-
սիկ ես և մանկունք իմ, զոր ետ ինձ ած :

Դառնացեալ անօրէնն, հրաման ետ, և առ-
կին զաղախինն քնի երեք որդւովն ՝ի բորբո-
քեալ հուր . և աղօթեաց Թէոդոտէ այսպէս .
օրհնեալ է անուն բարձրելոյն, որ ոչ յայսմ
կենցաղումս որոշեաց զիս ՝ի զաւակաց իմոց,
և ոչ ՝ի հանդերձեալն . և այնպէս միաբան
օրհնելով զՏր՝ աւանդեցին զհոգիս իւրեանց
առ ած ՝ի մէջ հրոյն : Կատարումն սոցա եղև
յառաջ քան զնահատակութի հոգևոր դաս-
տիարակի նց սրբուհւոյն անաստասիայ, յա-
մի տն իբր 300 . զոր ոմանք դնեն յամի 296 .
և այլք 304 :

Նու յայսմ հետէ երևէր փառօք յՄՄ գիշերի
սրբուհին Թէոդոտէ երանելւոյն անաստա-

 սիայի,

սիայի , և հրաւիրէր զնա 'ի կցորդութ̃ երկ-նային ուրախութ̃ց . և ոպ̃ նա 'ի կենդանու-թ̃ն զսա , նոյնպ̃ս և սա զնա յետ փոխմանն խրախուսէր 'ի նահատակութ̃ : Եւ 'ի ստէպ երևիլ թէոդոտեայ՝ ասէ ցնա անաստասիա , որպ̃ս կարող լինիս դու գալ առ իս յետ մահ-ճանելոյ քո : Եւ նա ասէ . և այս ևս ծիրք պարգևեալ են 'ի տ̃նէ հոգւոց վկայից , զի կարող լինիցին այց առնել՝ որոց կամիցին , խօսել ը̃ նո̃ բանս մխիթարութ̃ և յորդորա-նաց 'ի տ̃ր : Այս տեսիլք լինէին առ անաս-տասիա 'ի բանտին յե̃ին լուրիկեցւոց . ուս-տի ածեալ 'ի կղզին պալմիրայ՝ անդ կատա-րեցաւ հրով ը̃ բազմութ̃ նահատակելոց պէս-պէս տանջանօք , իբր երկերիւր արանց և եօ-թանասուն կանանց :

Նոյն և՛ս բազում վկայք եղեն յայնժամ 'ի բիւթանիա ընդ սրբուհւոյն թէոդոտեայ և որդւոց նր̃ . քանզի լուեալ դիոկղետիանոսի , եթէ տ̃մ բանտք և կապարանք լի են քրիս-տոնէիւք , մանաւանդ յե̃ին բիւթանացւոց , հրամայեաց զամենեսին 'ի միում գիշերի սպանանել . էր՝ զոր հրով , էր՝ զոր ջրով , և էր՝ զոր սրով : Այս խորհրդով դնի աստանօր 'ի տօնացուցի մերում , և որոց ընդ նմա , կա̃ և որք ընդ նմին կատարեցան (որ 'ի նոր տպագս ե-դեալ է վրիպակաւ եզակի՝ և որք ընդ նմա ) , յայտ առնելով զնահատակակիցս թէոդո-տեանց , միանգամայն և զդասս վարուեանց և անաստասեանց :

ԾՐ.-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Որ գրէ հասարակօրէն 'ի տօնացոյցս, Թէոդորիտեայ, կամ Թէոդորիտոսեայ, կամ Թէոդորիտոնեայ, և կամ Թէոդիտեայ, պարտի լինել՝ 'ի սեռականն, Թէոդոտեայ, և յուղղականն՝ Թէոդոտէ կամ Թէոդոտի. որպէս է տեսանել 'ի Հ. և Ց. և Լ. Թմղ զի՝ և յայլոց ոմանց գրի Թէոդորա, կամ Թէոդոսիա. մինչ գնելոյ լատին վերջաւորութք Թէոդոտա: Այլ ստուգաբանութիւն նորա գրեթէ է մի և նոյն, զի կին Ածատուր, կամ Ածապարգև, կամ Ածաշնորհ. զոր և նշանակէ յոյն երգարանն 'ի ժամագիրս, * Զքոյ տուածն վճարէ զԹէոդոտէ հուր հնոցին՝ հանգերձ երեք որդւովք սիրելեօք ||:

(2) Առ չունելոյ զհին վկայաբանութիւն Ծառընդարական 'ի ձեռին՝ զառաջինկայս քաղեցաք 'ի յայսմաւուրաց Հ. յաւելեալ ը ընթերցուածոյ տր իճլի, և Ց. և Լ. հայելով և 'ի մետափրաստեա սուրիուսեան և յայլ աւանդին վկայագիրս յիշատակեալս 'ի բոլլանդեանց. յորոց մին զայս բան, և միւսն զայն 'ի մէջ բերէ. և այնպէս համեմատութք երերաց հիւսեցաք զայս բովանդակութի. յորում չէք ինչ երևելի կարօտ քննուէ կամ ծանօթուէ. այլ միայն արժան է գրոշմել զասացուածն պինիոսի բոլլանդեան մՄ անցից ուրուական զօրականի. * Ա-
„ ռաջին Թերևս զարմանալիք (զի դժուարահաւատա-
„ լեք) հրիախոսաց. այլ ոչ մՄ այնորիկ և սուտք ||. որպէս և մՄ առաջեանն անաստասեայ ասէ. * եԹէ այս ան-
„ ցեալք կեղծակարծ երևեցին նոր աշխատաւորեցոսաց (զի
„ զատն հրիախոսաց) վկայաբանութեց, որովհետև ոչ
„ 'ի գետին անկանին այսու մասամբ վկայաբանութիւք,
„ չէն մեզ կամք աւարա ինչ գնել նց ||:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոց Հռիփսիմեանց :

Հ · հոկտ · 19 : Տօն էէւ, հոկ · 23 : Յ · ծՏ · յամե-վար · 29 : Դասընթ · Ա · շԷ = շխԴ : Թուղ-ւանդ յովհաննէս · 'ի 29 · յուլ · ԷՂ · 950 : (1)



ԵՕԹԱՆԱՍՈՒՆ ՓԱՌԱ-ւոր նք վկայք՝ գոգցես Հայաստանեայք , անուանեալք յանուն գլխաւորի իւրեանց Հռիփսիմեայ՝ Հռիփսիմեանք , էին 'ի սամոստիայ քաղաքէ , որ և սամուսատ կոչ շամշատ՝ յԾին երրորդ Հայոց առ եփրատացւովք , յաւուրս մաքսիմիանոսի թագաւորի · որ յերկրորդ ամի թգրութեն իւրում Հրամայեաց մատուցանել զոհս և նուէրս կռոցն փութով մեծաւ յամ քաղաքս իշխանութե իւրոյ : Դիպ եղև 'ի տանի միում Հեթանոսացն՝ գալ թագաւորին ինքնին 'ի սամոստացւոց քաղաքն · և անդ 'ի տօնին Հրամայեաց ամ բազմութե քաղաքին ժողովիլ 'ի բախտանոցն , և 'ի միաւորին տօնել : Լինէին այնուհետև լսելի ձայնք փողոց և թմբկի յամ քաղաքն , և հոտ խնկոց յամ տեղիս բուրէր · և էին մեծ խնջոյք յամ բազմութեն :

Յայն-

Յայնժամ երկու արք երեւելիք 'ի քրիստոնէից, որոց անուանք էին Հիպերիքոս և Փիլիթէոս, միաբանեալ ընդ միմեանս 'ի կարգ քրիստոնէութեան, և արհամարհեալ զհրամանս թագաւորին, զօղեալ կային 'ի վերնատան ուրեմն նորին Հիպերիքեայ. ուր էր կառուցեալ խաչ մի յորում յարեւելից կուսէ. և անդ համապազ երկիրպագանէին քնի՝ անձանձրոյթ յաղօթս կալով :

Իսկ այլ ևս հինգ անձինք 'ի հեթանոսաց՝ որք կոչեցան Յակովբոս, Պարեգորիոս, Ա- բիքոս, Պռոմնոս, և Յուլիանոս, որք էին բարեկամք և սիրելիք Հիպերիքեայ և Փիլիթէի, և էին ժամանակօք կրսերագոյնք քան զնա, եկին 'ի տեսանել զՀիպերիքոս և զՓիլիթէոս. և գտին զնա յաղօթս յիններ ժամուն առաջի խաչի 'ի վերնատանն. և ասեն ցնա. Թագաւորն հրամայեաց ժողովել զա̃մ ռածոն 'ի բախտանոցն 'ի քաղաքիս մերում հանդերձ ա̃մ քրմօքն, և ընդ ա̃մ քաղաքն տօնել մեծապէս. և ահա են ամենեքեան յուրախութեան. և դուք ընդէ՞ր իբրև զօգաւոր կայք աստ արգելեալք՝ որպէս օտարք ոմանք 'ի քաղաքէս : Այլ նք ասեն. մեք յաղօթս կամք առ ա̃ծ, որ արար զերկինս և զերկիր խնամատութեամբ իւրով :

Ասէ յակովբոս. միթէ խաչս այս փայտեղէն արար զերկինս և զերկիր, զի դմա երկիրպագանէք : Ասեն. խաչելոյն 'ի դ̃մ սարա երկիրպագանեմք. վ̃ն զի ա̃ծ է յա̃յ ծնեալ, և ոչ արարեալ. գոյակից հօր. և նմա ե-

զև ա̃մ՝ որ ինչ յերկինս. և որ ինչ յերկրի. և ահա երեամ մի է, զի ընկալաք զմկրտութի յանուն հօր և որդւոյ և հոգւոյն ս̃բյ՝ 'ի յակովբայ երիցունէ. որ և զհաղորդութի մարմնոյ և արեանն ք̃սի տայ մեզ հանապազ. և վ̃ս այնորիկ ոչ ելանեմք արտաքս, և ոչ այլ ելցուք. զի մի շաղախեսցուք 'ի ծխոյ և 'ի ձէնձերոյ՝ որ ծխին դիւաց:

Ասէ պարեգորիոս հանդերձ այլովքն. է՞ և այլ մեծ ա̃ծ քան զա̃ծսն՝ որ ժողովեալ են 'ի բախտանոցն: Հիպերիքոս ասաց. դուք ո՞չ տեսանէք, զի զանուանեալ ա̃ծսդ այլք բարձեղբերին և եղին 'ի տեղւոջն յորում կան. արդ որ զինքեանս ոչ կարեն շարժել, զի՞արդ իցեն ա̃ծք: Յակովբոս ասաց. կամէի տեսանել զա̃ծն ձեր, և երկիր պագանել նմա ը̃ ձեզ. վ̃ս զի ասէք, թէ զերկինս և զերկիր արար: Փիլոթէոս ասաց. դու զի՞նչ կարծես աբիթէ: Աբիթէ ասէ. կարծեմ՝ թէ ա̃ծք, որ 'ի մէջ քաղաքիս, որոց և տօնն կատարի, արարին զա̃մ ինչ: Հիպերիքոս ասաց. եթէ կամիս ուսանել զա̃մ ճշմարտութի՛ն, ես ցուցանեմ զնա, և զիմաստութի՛ն ա̃յ՝ որ զա̃մ ինչ յօրինեաց:

Պարեգորիոս հանդերձ ընկերօքն ասաց. եթէ դուք՝ որ երևելիք և ճոխք էք քաղաքիս և ծանօթ թագաւորին, ոչ պագանէք երկիր ա̃ծոց ն̃ր և ոչ մերձենայք 'ի զոհսն, այլ էք յայդչափ խոնարհութե, կամիմք և մեք՝ եթէ ոչ բռնութի եկեսցէ, հաղորդել հաւատոցդ ձերոց: Հիպերիքոս և փիլոթէոս ասացին.

լուա

լուարուք մեղաւորք և որդիք մեր . խեցեղէն ամանն յորժամ լինի , մինչչև 'ի հուր մտեալ է , եթէ 'ի ջուր թանաս՝ ոչ պնդի՝ , զի կաւ է բնութե̃ . այլ յորժամ մտանէ 'ի հուր , ոչ սառն լուծանէ զնա , և ոչ ջուր ապականէ . արդ եթէ կամիք հաստատել 'ի ճշմարիտ հաւատս , առէք զմկրտութի̃ն քո̃ , և նենգութ̃ 'ի ձեզ ամենևին ոչ մերձենայ :

Այս նք̃ հինգերեքեանն իբրև 'ի միոջէ բերանոյ ասեն . դուք արգելուք արդեօք . այլ մեք յորմէ հետէ եկաք և լուաք զբանս ձեր , և նայեցաք ի̃ խաչդ՝ որում երկիրպագանէք , եռացին միտք մեր իբրև զհուր : Հիպերիքոս և փիլոթէոս ասացին . արդ կոչեսցուք զյակովբոս երէց՝ որ ետ մեզ զմկրտութի̃ , զի և ձեզ տացէ , եթէ արդարև այդ կամք են ձեր . այլ երթեալ խորհեցարուք այսօր , և վաղիւն եկեսջիք : Այս նք̃ հինգերեքեանն ասացին . զի՞նչ առնէ այսօր և վաղիւն , տացի՛ մեզ վաղվաղակի կնիքն քո̃ :

Այս նք̃ յայնժամ գրեալ թուղթ առ յակովբոս երէց՝ առաքեցին 'ի ձեռն ծառայի միոյ . և այս բանն էր՝ զոր գրեցին . Վաղվաղակի և փութով մեծաւ առեալ զսպատակն պատարագաց , և զեղջիւր իւղոյդ օծման , եկ առ մեզ . զի դիցես զձեռն քո , և տացես զկնիքն քո̃ ոչխարացս յայլմէ բակէ եկելոց 'ի փարախն քո̃ : Այս յակովբոս քահանայն առեալ զթուղթն՝ լցաւ ուրախութե̃ . և մինչդեռ ընթեռնոյր՝ եղեն երեսք նր̃ իբրև ըզհուր 'ի բերկրելոյն . և խոնարհեցուցեալ ծունր՝

ծունր՝ յաղօթս եկաց այսպէս ։ Հա՛յր Տն մե-րոյ Յի՛ Քի՛ յո՛յսդ քրիստոնէից , զօրացո՛ զծա-ռայսն քո զհիւպատիկոս և զփիլոթէոս , զի լի-ցին սուրբ ճշմարտութեան , և հաւատոց՝ որ ՚ի քեզ և յորդիդ քո միածին և ՚ի Սբ հոգիդ յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Եւ յարուցեալ յաղօթիցն խնդութեամբ՝ եկն առ երանելի ժողովեալսն ՚ի վերնատունն . և գտեալ զնոսա յաղօթս՝ ասէ ցնս . խաղա-ղութիւն ընդ ձեզ ծառա՛յք քրի խաչելոյն , որ խաչեցաւ վասն փրկութեան մի ։ Եւ նոյնժամայն յարուցեալ յաղօթիցն՝ անկան յոտսն հինգեքեանն , և ասեն ցնա . գթա-ցի՛ր ՚ի մեզ , և տո՛ւր մեզ զմկրտութիւն քրի՝ որում դուք երկիրպագանէք ։ Յակովբոս ե-րէց ասէ ցնս . ապա եթէ եկեսցեն ՚ի վր ձեր փորձութիւնք և նեղութիւնք վս նր , համ-բերեցէք , ոպ և նա համբերեաց վս մեր . քան-զի և մեք եթէ համբերեմք վս նր , իբրև զպարտապանս գործեմք զայդ . վս զի յոչնչէ յինչ եած զմեզ , և կերպարանեաց զմեզ յա-րօվայնի , և եդ զձեռն իւր ՚ի վր մեր . ոպ և գրեալ է , եթէ ստեղծեր զիս , և եդիր զձեռն քո ՚ի վր իմ ։ Ինքն Տրն մեր և Ածն՝ որ ոչն էր պարտապան մեզ , էջ ՚ի բարձրուէն , և ծնաւ ՚ի կուսէն մարիամայ , մարդացաւ , և մեռաւ , և յարեաւ յաւուր երրորդի . և սպան զսատանայ՝ որ մոլորեցոյց զհայրն մեր զա-դամ , և եհան ՚ի դրախտէն ։

Եւ նքա հնգեքեանն իբրև ԶԻ մի բերան ասա-ցին . ոչ բարձրութիւն և ոչ խորութիւն , ոչ որ

կանոս

կանս և ո՛չ հանդերձեալքն կարեն մեկնել զմեզ 'ի սիրոյն քսի : Իսկ ասէ երէցն . ծունր խոնարհեցուցեալ յաղօթս կացցուք . և աղօթեցին իբրև ժամ մի . և յարուցեալ յաղօթիցն՝ ասէ երէցն . շնորհք տն մերոյ յի քի եղիցի ը՟ ձեզ ամենեսին . ամէն : Իսկ այսպէս մկրտեաց զնս յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ : Ապա յետ ուրանալոյն ըզկուռսն , և խոստովանելոյ զկենդանին քն , ետ նց 'ի պատուական մարմնոյ և յարենէն քի . և այնպէս կատարեաց զնս . և ինքն առեալ զսպասպատակն՝ չոգաւ 'ի տուն իւր :

Իսկ յետ երից աւուրց հեթանոսական տօնին ասէ թագաւորն ցսպասաւորսն իւր . մինչե ոք 'ի քաղաքիս յերևելի արանց արհամարհեաց զտօնս դիցն , և ոչ եկն : Իսկ սպասաւորքն ասացին . են աստ երկուք ոմանք յաւագաց՝ Հիպերիքոս և Փիլոթէոս , զորս ոչ տեսաք աստ յերից աւուրց հետէ յերկրպագութի դիցն : Իսկ թագաւորն վաղվաղակի առաքեաց ածել զնոսա 'ի մէջ քաղաքին , ուր զոհէին դիցն . և դահճացն երթեալ գտին զնս ոգիս եօթն 'ի տանն Հիպերիքի , և ասեն ցնս . թագաւորն կոչէ զձեզ : Հիպերիքոս և Փիլոթէոս ասացին . մեք մեր երկոցունցս եկիք , եթէ մեք եօթնեցունցս : Դահիճքն ասացին . մեք մեք Հիպերիքի և Փիլոթէի առաքեցաք :

Ասէ Փիլոթէոս ցյակովբոս և ցընկերսն իւր . եղբարք իմ և որդիք իմ 'ի տր , գուցէ ոչ կարիցէք համբերել տանջանացն և բռնութեն

փոր-

փորձուե̃ցն. քանզի մեք պատրաստ եմք ա̃մի համբերել վ̃ս անուանն ք̃սի՝ յառաջնմէ ամէ, յորմէ 'ի նա հաւատացաք. իսկ զձեզ ոչ ճանաչէ թ̃գրն և ոչ խնդրէ. և զդահիճսն աղաչեմք՝ զի մի՛ ասասցեն թ̃գրին. արդ երթա՛յք խօ՛յս տուք արտաքո՛յ քաղաքիս 'ի մերձաւոր գեօղս, մինչև անցցէ ժամանակս այս: Եւ ն̃ք ալխնի տուեալ ասեն. և մեք պատրաստ եմք ը̃ունել 'ի մարմինս մեր զա̃մ նեղութիւս և զվիշտս, որ գան 'ի վ̃ր մեր՝ վ̃ս

անուան ա̃ն մերոյ յ̃սի ք̃սի:

Եւ այնուհետև յարուցեալ եօթանեցունցն՝ չոգան զկնի դահճացն, և կացեալ առաջի ատենին (ուր կային և կուռք), ոչ խոնարհեցուցին զգլուխս իւրեանց թագաւորին. այլ յերկինս հայեցեալ առ բարձրեալն ա̃ծ՝ անտի խնդրէին զօգնութի̃: Ասէ ցնս թ̃գրն. այսպէ՛ս արհամարհէք թուէին ձեզ ա̃ծքն, և այսպէ՞ս քամահէք զիմովք հրամանօք. զի և զգլուխս ձեր անգամ ոչ կամեցայք խոնարհեցուցանել ինձ. ո՞չ գիտէք, եթէ յետ ա̃ծոյն ես ունիմ իշխանութի̃ քաղաքիս և ա̃մ

գաւառիս:

Տիպերիքոս ասաց. ո՛չ ունիս դու իշխանութի̃ 'ի վ̃ր ոգւոց. վ̃ս զի մարդ ես նմանօղ մեզ: Ասէ թագաւորն. եթէ զիս արհամարհես իբրև զմարդ, իսկ զա̃ծսն ընդէ՞ր արհամարհես: Տիպերիքոս ասաց. դու պատուականագոյն ես քան զա̃ծսն. քանզի դու արարած ես ա̃յ, և ն̃ք՝ ձեռաց մարդկան. վ̃յ և բերան ունին՝ և ոչ խօսին, աչս ունին, և ոչ

տե-

տեսանեն. որոց նմանօղք եղեն յուսացեալքն 'ի նմա, և որք երկիր պագանեն նմա իբրև ըղ-քեզդ: Ասէ Թագաւորն, զի՞ շաղակրատես Հի-պերիքէ: Հիպերիքոս ասաց. զի՞նչ ասացի (օտար 'ի ճշմարտութենէ): Թագաւորն ասէ. դու զը-հեա՛ միայն աստուծոյն, և ասա՛ զի՞նչ և կամիս: Հի-պերիքոս ասաց. Տէր՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն յերկրէ: Թագաւորն ասէ. մի՛ Թշնամաներ զաստուածսն, զի մի՛ բազմացուցա-նիցեն 'ի վերայ քո զտանջանսն: Հիպերիքոս ա-սաց. ամաչեմ փոխանակ քո Թագաւոր, զի զքարեղէնս և զփայտեղէնս աստուածս անուանես, որ եղեալ են 'ի սպասաւորութիւն մարդկան: Այլ բարկացեալ Թագաւորն հրամայեաց առ-նուլ նմա յիսուն պղեմբատ 'ի վերայ Թիկանցն, (որ է զհարուածս կապարեայ գնտից՝ որ ա-սին ԺԲ հռովմայեցւոց բլումպաձէ, և ԺԲ յու-նաց մօլիպտօդէ). զի յանդգնութեամբ Թշնամա-նեաց ասէ զաստուածսն. և 'ի խաւարչուտ տուն բանտի արգելուլ զնա: Այլ դահիճքն վաղ-վաղակի կատարեցին զհրամայեալսն. և տա-րան զնա դանակոծեալ և կոշկոճեալ 'ի բանտն: Այլ Թագաւորն հրամայեաց ածել զառա-ջեաւ զփիլոթէոս, և ասէ ցնա. փիլոթէէ՝ անուանդ քո զաստուածպաշտութիւն յայտ առնէ. (քանզի Փիլօթէոս՝ ոպ̃ և Թէօփիլոս՝ աստուածասէր լսի): Փիլոթէոս ասաց. բարիոք անուանեցայ փի-լոթէոս, քանզի զմի աստուած սիրեմ, և ո՛չ զաստուածս: Ասէ ցնա Թագաւորն. մի՛ քո ընկերին պէս կար 'ի հակառակութիւն, և բազմացուցաներ տան-ջանս 'ի վերայ քո. արդ մատի՛ր զոհեա՛ աստուածոցն,

զի

զի բազմացաւ պատիւ քո յինէն ։ Փիլոթէոս ասաց ․ ոչ դու ինչ ես , և ոչ խրատ քո ․ այլ իբրև խոտ՝ որ այգուն ծաղկի , և երեկոյն չորանայ ․ և բանք քո իբրև շիղ առաջի հրոյ ։ Թ̃գրն ասէ ․ ես պատուով խօսիմ ը̃դ քեզ , և դու թշնամանօք պ̃խնես ։ Փիլոթէոս ասէ ․ այսպէս ասաց ա̃ծ , զպատուիչս իմ պատուեցից , և զանարգիչս իմ անարգեցից ։ Թ̃գւորն ասէ ․ մի՛ 'ի շատախօսութի̃ն զառածանիր Թէո-փիլէ ։ Փիլոթէոս ասաց ․ այսպէս դժուարալսես զբանս ա̃յ կենդանւոյ ։

Իսկ Թ̃գւրն հրամայեաց բերել կնդրուկ , և ասէ ցփիլոթէոս ․ մատուցեալ յառաջ՝ արկ զխունկդ 'ի վ̃ր բագնիդ ․ և բազում պատուոյ արժանի լինիս յինէն ։ Փիլոթէոս ասաց ․ պատիւդ քո ինձ անարգանք են ։ Թ̃գւորն ասէ ․ թէ պատիւս իմ թշնամանք թուին քեզ , թշնամանքն արդեօք զի՞նչ թուիցին ։ Փիլոթէոս ասաց ․ որ վ̃ն ք̃ի գան 'ի վ̃ր իմ , մեծ պատիւ են ինձ ։ Թ̃գրն ասէ ․ ասացի քեզ , թէ մի՛ շատ խօսիր ։ Փիլոթէոս ասաց ․ դու հարցանես զիս , և ես հարկիմ պ̃խնել քեզ ։ Թ̃գրն ասէ ․ ո՞ւր վայել է իմաստութ̃ն քում , մատի՛ր արկ զխունկդ 'ի վ̃ր բագնիդ ․ և լե՛ր պատուական 'ի թագաւորութ̃ն իմում ։

Փիլոթէոս ասաց ․ ք̃ս՝ որում երկիր պագանեմք , վ̃ն որոյ և դատաստանիս համբերեմք ․ այն՝ որ բանիւ իւրով արար զերկինս և զերկիր , նաև զլերինս չափով և զբլուրս կշռով , և յորժամ կամի՝ լուծանէ զնոյն ակնարկութ̃բ իւրով , նա ինքն վ̃ն մեր մեղաւորացս համբերեաց ․

րեալ. և յորժամ կալան զնա մենամարտքն՝ որոց բաժինն նման է քումդ, և տարան առ պիղատոս դատել զնա, կարօղ էր միայն անկնարկելովն կորուսանել զխաչահանուսն. այլ գրեալ է, թէ իբրև զոչխար 'ի զենումն ածեալ, և իբրև զորոջ առաջի կտրչի ան-մռունչ կայ, այնպէս ոչ եբաց զբերան իւր: Արդ մի համարիր, թէ տկար իցէ զօրութի նր, վն զի թողացոյց քեզ խօսել և առնել զինչ և կամիս. այլ նա ուսոյց մեզ հաւատալ յինքն, և նմանել հեզութե նր, և ժառանգել զարքայութի նր, որ կայ և մնայ յաւի-տեան. այլ դու անցանես, և թշուառութի քո և ատեան լուծանի:

Թագաւորն ասէ. վն զի իմաստուն ես փի-լոթէէ, այնր ազարդաւ հրամայեմ կապել զքեզ և տանել 'ի բանտ առանց տանջանաց. քանզի իմաստնոյ՝ բան չափ է 'ի հաւանութի. իսկ անմտին տանջանք վայելեն. դոյն իսկ ի-մաստութիւն քո հաւանեցուցանէ զքեզ՝ լսել ինձ: Փիլոթէոս ասաց. որո՞վ օրինակաւ և կամիս՝ թշնամանեա. այլ զայդ միայն լուր յինէն, եթէ 'ի տէր յս քս հաւատամ, և ո՛չ ուրանամ զնա. և ո՛չ դիւաց հաւանիմ զոհել: Յայնժամ դահճացն ըստ հրամանի թգրին կապեալ զձեռս նր յետս՝ տարան 'ի բանտ. և արգելին զնա յայլում տան, և ո՛չ ուր էր երանելին Հիպերիքոս:

Կոչեաց թգրն զպակովլոս և որ Բ նմա էին, և ասէ ցնոսա. եթէ աւևորքն այնաքիկ ո՛չ խոնարհեցին 'ի մարմինն, զի անմիտք են. և

կա

կամ եթէ յագեալ են կենօքս այսուքիւք , և մերձեալ 'ի մահ վասն ծերութեան , ոչինչ են զարմանք · բայց ես ոչ հաւատամ , թէ՝ և նոքա իսպառ արհամարհեսցեն զհրամանս իմ · Եւ առաւել դուք ; զի առոյգք էք հասակաւ և մտօք ուշիմք , գիտեմ զի խնայէք յանձինս և հնազանդիք ինձ , և մեծաց պարգևաց լինիք արժանի ։

Առնի եստուն երանելիքն , և ասեն · հաւատարիմ է Աստուած՝ հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , որ եկն և խաչեցաւ 'ի փայտի վասն փրկութեան մերոյ , և փոխեաց զմեզ 'ի մոլորութենէ 'ի գիտութիւն ճշմարտութեան և 'ի մահուանէ 'ի կեանս · եթէ ոչ հարքն մեր հիպերիքոս և փիլոթէոս ծերութիւնք առնեն զկամս քո , և ոչ մեք հաւանեսցուք խոստմանց քոց · վասն զի զմարմինս և զարիւն փրկչին ընկալաք 'ի բերան մեր · և լուաք 'ի նմանէ , մի արկանել զմարգարիտս առաջի խոզից , և զսրբութիւն՝ շանց · քանզի մարմինք մեր մարմնովն նորա սրբեցան , և եղաք մարգարիտ մարմնովն նորա · ոչ է պարտ մարմնոցն՝ որ Քրիստոսիւ սրբեցան և կոչեցան յարքայութիւն նորա , յետս երթալ և երկրպագանել ձեռագործաց · քանզի ամօթ է աչօք բացօք 'ի խորխորատ անկանիլ և կորնչիլ ։

Թագաւորն ասէ · ահա քանի՞ շատ խօսեցայք , և երկայնամիտ եղէ ձեզ որպէս մանկանց · արդ խնայեցէք 'ի մանկութիւն ձեր , և արկէք խունկս դիցն · և մի աշխատ առնէք զիս · ապա թէ ոչ՝ երդուեալ յաստուածոյն , զի զմեծ տանջանաց զփորձ առցեն կողք ձեր ,

ձեր , և դառն հարուածք եկեսցեն 'ի վերայ ձեր : Այլքն ասացին . ոչ 'ի տանջանաց քոց երկնչիմք , և ոչ 'ի հարուածոց քոց զանգիտեմք . զի ասաց Տէրն մեր , թէ մի երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին , և զոգին ոչ կարեն սպանանել :

Ասէ ցնոսա Թագաւորն . արդ որովհետև զանձինս սպանելոյն յերուսաղէմ երկրորդէք , և 'ի նա յուսացեալ էք , յանծոսն երդուեալ , զի որպէս նա յերուսաղէմ խաչեցաւ 'ի փայտին , և զինքն ոչ փրկեաց 'ի խաչահանուացն , եթէ ոչ լուիցէք բանից իմոց , նոյնպէս և դուք խաչեսջիք առաջի արեգական 'ի ձերում քաղաքի աստ 'ի սամոստիա . զի տեսեալ տմի՝ որ զձեր վարդապետութիւն ունիցին , երկիցեն և զարհուրեսցին : Այլքն ասացին . շատ է աշակերտին նմանել վարդապետին : Թագաւորն ասէ . ասացի ձեզ , եթէ ոչ լուիցէք բանից իմոց , զնոյն մահ մեռջիք և դուք՝ զոր մեռաւ վարդապետն ձեր : Այլքն ասեն . վարդապետն մեր մեռաւ յերուսաղէմ , և յաւուր երրորդի յարեաւ . և ելեալ յերկինս՝ նստաւ ընդ աջմէ հօր . և ահա այժմ ծիծաղի զսպառնալեօք ձերովք . որպէս և գրեալ է , թէ որ նստի յերկինս երկնից՝ ծիծաղեսցի զնոքօք , և Տէր արհամարհեսցէ զնոսա . և եթէ՝ ուր խաչեցաւն , կործանեցաւ . և խաչահանուանքն ցրուեցան . և ձեռագործ ըծքն ձեր՝ որոց այսօր երկիր պագանէք , եղիցին իբրև զչեղեալս . նոյնպէս և ամ յուսացեալքն 'ի նա :

Հայնժամ բարկացեալ Թագաւորն հրամայեաց ձեռս յետս կապել զնոսա , և տանել 'ի բանտ ,

մինչև անցցեն տօնք ուխտոյն. և հրամայեաց ուրոյն ուրոյն պահել զնոսա 'ի խաւարչուտունս, և չտալ տեսանել ընկերի զընկեր՝ մինչև աւուրս հնգետասան։ Այլ յետ այնորիկ ել թագաւորն արտաքոյ քաղաքին երկիրպագանել ուխտոյն. և անդ պատրաստեցին նմա զատեան մերձ 'ի գետն եփրատես. կանգնեցին զխորանն, և ձգեցին զարահակն։ Այլ կոչեալ զքահանայսն՝ հարցանէր ցնոսա. մի թէ ոք 'ի քաղաքացւոցս եբեր կերակուր 'ի բանտին՝ թշնամանողաց ուխտոյն. զարդարնսա, 'ի նոսին յուխտն երդուեալ տամ քեզ։ Այլ երդուեալ քահանայսն, թէ յորմէ հետէ մտին 'ի բանտն, ոչ կերան և ոչ արբին, և ոչ տեսին զերեսս ուրուք. այլ զայս միայն լսէի յիւրաքանչիւր ումեքէ 'ի տեղւոջ՝ յորում արգելեալ կային, եթէ ոք խաչ օգնեա ինձ. և որքան անցանէին աւուրք, նուաղէին ձայնք ն̃ց։

Յայնժամ հրամայեաց թ̃րն ածել զն̃ս. և պահանջեցին երթեալ հանին զն̃ս յիւրաքանչիւր տեղւոջէ հանդերձ կապանօքն. և ձգէին ածէին զն̃ս, և կէսքն մղէին զկնի. և եկեալ եօթանեքինն կացին առաջի թ̃րին։ Այնա ասէ ցն̃ս. յաւուրս յայսմիկ՝ յորս եղէք 'ի բանտին, զի՞նչ աւելի զմտաւ ածիք վ̃ն հարցուածոյն՝ զոր հարցի զձեզ։ Ս̃քն ասացին. ոչ ունիմք զօրութիւն, և ոչ կարեմք խօսել ընդ քեզ. բայց միայն զքո խոստովանէին. իսկ հիպերիքէի 'ի վեր էին թիկունքն քան զգլուխն 'ի սաստկութէ հարուածոց

տանն

տանջանացն ։

Աբբայն ասէ ․ հաւանեցի՞ք բանից իմոց , եթէ ոչ ։ Հիպերեքիոս ասաց ․ չէ՛ն պէտք բազում բանից ․ լուար՝ եթէ ոչ զոհեմք ․ զի՞նչ և կամիս՝ արա ։ Աբբայն ասէ ․ միթէ զքե՞զ միայն հարցի , կամ թէ դու ես բերան ընկերաց քոց ։ Ապա ետուն սբքն և ասեն ․ բռնաւո՛ր և անզգամ՝ յոյժ նման ես ածոց քոց , որք ականջս ունին՝ և ո՛չ լսեն ․ զի եթէ լսէիր իբրև զմարդ , ասացաք՝ եթէ քրիստոնեայ եմք , և քի ծառայ ․ ո՛չ խոտորուիք և ո՛չ բարձրուիք , և ո՛չ որ կանս և ո՛չ հանդերձեալքն կարեն մեկնել զմեզ ՚ի սիրոյն քի ։

Եւ բարկացեալ յոյժ թագաւորն , վս զի թշնամանեցին զնա , հրամայեաց պրկել զնս , և քերել զկողս նց , և զորովայնս նց հարկանել ։ Եւ յետ կատարելոյ դահճացն զամ՝ միաբանգամ հրամայեաց տանել զվկայսն ՚ի բանտ , և ո՛չ տալ նոցա կերակուր և ըմպելի ջուր , այլ սակաւ մի , զի կեցցեն եւեթ , և մի՛ վաղվաղակի մեռցին ։

Եւ արարին ՚ի բանտին հնգետասան ամիս , յահեկանի միոյն մինչև ցքսաներորդ երրորդն մարգաց ամսոյ ․ և ՚ի քսան և չորսն ամսոյն այնորիկ առաքեաց թագաւորն և ած զնոսա յապարանսն՝ ուր ինքն էր եկեալ յետ շրջելոյ ՚ի վերնագաւառսն ․ և սբքն էին նման մեռելոց՝ որ ՚ի գերեզմանսն ։ Եւ ասէ ցնս թագաւորն ․ տակաւին կեա՞յք , հիացումն ունի զիս վս այդր ․ այլ սակայն կայք մնա՞յք ՚ի նմին խորհրդեան ․ եկա՛յք ճաշեցէ՛ք ընդ իս

յարքունիսն. և եթէ հաւանիք զոհել ածոցն, արարից զձեզ պատուականս 'ի թգրութեն իմում: Ամենին ետուն տրքն և ասեն միաբան. խցցի բերանդ՝ որ խօսեցաւ զայդ. կուրասցին աչք քո, վասն զի ողորմանօք կամեցար մերժել զմեզ 'ի ճանապարհէն՝ որ տանի 'ի կեանսն, զոր եցոյց մեզ տէր մեր յս քս:

Յայնժամ թագաւորն մեծաւ բարկութբ ասէ ցսն. մահու ցանկայք, և վս այնորիկ թշնամանէք զիս. արդ ես շնորհեմ ձեզ զայդ. զի գիտեմ, մինչ կենդանի էք, 'ի թշնամանս ածոցն մնայք. և 'ի նմին ժամու հրամայեաց զնս սպանանել ըստ յառաջագոյն խորհրդեանն: Եւ դահճացն գայլ 'ի բերանս հարեալ սբցն իբրև չարագործաց՝ ձգէին արտաքոյ քաղաքին. և 'ի հասանել նցա 'ի տեղի մի՝ որ կոչէրն չորեքճանապարհեան, ժողովեցան ամ ազգն և ծառայքն հիպերիքեայ

և փիլոթէի:

Եւ իբրև տեսին զնս գայլ 'ի բերան, համբարձին զձայնս իւրեանց և լային դառնապէս՝ կական բարձեալ 'ի տեղւոջն. մինչև լսելի եղև ձայն նցա յամ քաղաքն. և վաղվաղակի ժողովեցան գլխաւորք քաղաքին, և եկեալ առ թգրն՝ ասեն ցնա. մի ինչ զմտաւ ածեր արքայ 'ի փութանակի կորուստ արանցն այնոցիկ, որոց հրամայեցաւ մեռանիլ 'ի քաջութէդ քումմէ. վս զի ազգայինք նցա և ամ բնակիչք քաղաքիս ը նս կածին՝ տեսանելով զնս 'ի դառն տանջանս և յանարգմահս յուղարկեալս: Եւ թգրն պխնեալ

ա-

տէ ․ նչ՛ք անձամբ անձանց կուտեցին զչարիսն զայն ․ վ՛ս զի ոչ լուծան բանից իմոց , և
ոչ անսացին խրատու իմոյ ։

Եւ իշխանացն պինի տուեալ՝ ասեն ․ աղաչեմք զքաջութիւն քո , մի՛ լիցի տրտմութիւն այդ 'ի քաղաքիս մերում ․ այլ հրամայեսցէ քաջութիւն քո թողացուցանել նոցա 'ի նեղութենէն , մինչև հրամանս տայցեն ընտանեաց ը՜ զրինաց ․ այլ մեք պարտիմք հարցանել ը՜ նո ը՜ իրաւանց քաղաքիս ․ վ՛ս զի հացակիցք մեր են ։ Եւ թիֆլին ասաց ․ ահա հրամայեմ թողացուցանել ․ երթայք հարցէք զնո՝ զինչ և կամիք ։ Եւ նց հրաման առեալ զայն՝ եկին ուրախութ՛բ առ նոսն ․ և առեալ զնո 'ի կրկեսն , առանձինն եղեալ՝ նոյնժամայն թափեցին զզայլսն 'ի բերանոյ նց , և համբուրեալ զնո՝ լացին դառնապէս ․ և ասեն ցեբանեալսն ․ զի տեսցուք զձեզ և աղաչեսցուք աղօթս առնել վ՛ս մեր առ ած՝ զոր պաշտէք , այնր աղագաւ խնդրեցաք 'ի թիֆլէն թողացուցանել ձեզ , իբրև թէ վ՛ս հարկի ինչ հարցանեմք զձեզ ․ արդ ելէք արտաքս և հրամանս տուք վ՛ս տանց ձերոց ․ և օրհնեցէք ըզքաղաքս՝ յորում սնեալ էք , և զամ բնակս
սորա ։

Եւ յորժամ ելին 'ի կրկէսէն 'ի մէջ քաղաքին , կոչեցին զաղտ գլխաւորքն զամ ազգս նոցն , և ասեն ցնո ․ յորժամ հասանեն նոքն 'ի դուռն քաղաքին , աղաղակաւ մեծաւ ասասցէք ցնո , եթէ պատուիրեցէք վ՛ս տանց ձերոց , և օրհնեցէք զքաղաքս զայս ։ Եւ նց

արտաքս ելեալ արարին ուխտս ուսմանն ։ Այլ երանելիքն ասեն . խաղաղացի՛ք և լռեցարու՛ք

զբանս մեր . և սկսան ասել այսպէս .

Փրկիչն մեր՝ որ փրկեաց զմեզ ՚ի սատանայէ , պատուիրեաց մեզ՝ խնդրողացն տալ , և յաղաչողէն մի՛ արգելուլ . և մեք ըստ տկարութ մերում խնդրեմք յայ և ՚ի քէ և ՚ի սբ հոգւոյն , վս որոյ համբերեմք մեծի նեղութեան , վս որոյ և մեռանիմք զամ օր , և ոչ ձգեցաք զձեռս մեր յանձս օտարս ։ Նա խլեսցէ՛ զկռապաշտութի ՚ի քաղաքէս յայսմանէ , և տընկեսցէ՛ ՚ի սմա զքրիստոնէութի . և նա հանցէ ՚ի սահմանաց սորա զմոլարութի , և հիմնացուսցէ ՚ի սմա զեկեղեցի քո . և դադարեցուսցէ զքուրմսն սատանայի , և բազմացուսցէ զքահանայսն քո . և անցուսցէ զհոտ հեթանոսութե , և լցուսցէ զփառս և զպատիւ ճշմարտութե . և փոխանակ պաշտօնէից կռապաշտութե և մոլորութե՝ որ ՚ի սմա , բազմասցին երիցունք և սարկաւագունք . և փոխանակ կուսանաց զարդացելոց սատանայի՝ բազմասցին կուսանք քրիստոնէից . և փոխանակ պատանեկացս պսակելոց զգլուխ իւրեանց ՚ի պաշտօնս դիցն՝ բազմասցին ուխտաւորք և հաւատացեալք և ժողովրդականք , որք հանեսցեն զամ աղօթիւք իւրեանց . և փոխանակ կռոց հեթանոսաց յարուսցէ քս փրկիչն մեր թագաւորս քրիստոնեայս , որք աճեցուսցեն և զօրացուսցեն ըզքրիստոնէութի , և զեկեղեցիս բազմացուսցեն , որք հաստատուն մնասցեն մինչև ՚ի գալուստն

բնաւորն քնքի յաւիտեանս յաւիտենից . ամէն :
Նա յետ այնորիկ Հիպերիքոս և փիլոթեոս
տասացին . որք միանգամ ծառայք մեր իցեն ,
եթէ՛ ՚ի քաղաքի և եթէ ՚ի չէնս , և եթէ յա-
րաւմ տեղւոջ և իցեն , ազատք լիցին . վն զի
գրեալ է , թէ չի՛ք ծառայ , բայց եթէ որ
զմեղս առնէ : Նա իբրև նք տեսցին զայս ,
համբարձին ժողովուրդն զձայնս իւրեանց և
լացին դառնապէս : Իսկ երէցն՝ որ եւս կնիք
երանելեացն , գրեաց զայս ամ̃ , օր̃ և զժամ̃
անցս սրբյն ՚ի սկզբանէ մինչև ցվախճան , ե-
դեալ ՚ի կերպարանս աղքատի ումեմն քաղա-
քացւոյ :
Նա յորժամ հասին նքն ՚ի դուռնն , ասեն
ցնա ամենեքեան . տր̃՝ յոր յուսացայքն , նա
հանգուսցէ զձեզ վն̃ չարչարանացն՝ զոր կրե-
ցին անձինք ձեր . և արասցէ ձեզ ողորմութի :
Նա իբրև սատանիկ կուտեցաւ ամբոխն , և ա-
ղաղակ մեծ եղև , լսելի եղև ձայն առ թգ̃րն :
Նա նա̃ լուեալ և ունեալ զպատճառն՝ կո-
չեաց զգլխաւորսն քաղաքին , և ասէ . յան-
ցանք մեծ գործեցիք , զի թոյլ ետուք նմ̃ խա-
ռել ՚ի մէջ քաղաքիս : Նա նք̃ ասեն . եթէ
չէր թողացուցեալ , խռովութի մեծ էր լեալ ,
և քարկոծէին զմեզ :
Նա յարուցեալ թգ̃րն մեծաւ ցասմամբ ել
՚ի քաղաքէն . և ՚ի վայրի միում աթոռ ա-
կեղ նստաւ մերձ ՚ի ճանապարհն , և հրամայ-
եաց զնքսն ածել : Նա մինչդեռ գային նքն՝
ամբոխն ամ̃ պատառեցին զհանդերձս սրբյն ,
և առին մէն մի աւկաւ վն̃ օրհնութ̃ . և ասեն

ցմիմեանս, թէ արդարև զմեռեալսն տանիմք
մինչև 'ի գերեզմանսն, և զերանելիսն յաւ-
զարկեմք մինչև 'ի խաչն մահու ։ Այլ իբրև
եկին, ասէ ցնոս Թգ̃րն. անսասցէք ինձ, և մի
կործանիք. և մի զրկիք 'ի կենցաղոյս յայսմա-
նէ ։ Այնի տուեալ մեզ՝ ասեն. այսպէս պատ-
ուիրեաց մեզ Տ̃րն մեր և Տ̃ծն, եթէ որ կո-
րուսանէ զանձն իւր յինէս յայսմիկ, գտցէ
զնա 'ի յաւիտենական արքայութեն ։
Թգ̃րն ասէ. մինչև ցայժմ յայդ միտս կայք։
Ալեքն ասացին. ոչ մինչև ցայժմ, այլ մինչև
'ի գալուստն քո կամք հաստատուն. արդ-
արեւ ասացերն և սպառնացար, զնոյն և կա-
տարեա փաղփաղակի ։ Այլ նոյնժամայն հրա-
մայեաց Թգ̃րն բերել փայտս. վն զի յղծանն
ասէ երդուեալ, եթէ ոչ վճ̃պն ձեր խաչե-
ցաւ յեղեմ 'ի փայտի, և զձեզ նոյնպէս խա-
չեցից 'ի սամոստիա 'ի ձերում քաղաքիս ։
Իսկ երանելեացն լուեալ զայն՝ 'ի մեծի ու-
րախութեն եղեն. և ասեն ցմիմեանս գաղտ.
չեմք արժանի 'ի փայտի խաչիլ՝ որպէս և Տ̃րն
մեր ։ Այլ փիլոթէոս ասաց ընդ. խաղաղ կա-
ցէք եղբարք, գուցէ և այսօր խափանիմք և
արգելեալ լինիմք 'ի ճանապարհէն՝ որ տանի
'ի կեանսն յաւիտենից. այլ աղօթեցէք 'ի
սիրտս ձեր, զի այսօր փոխեսցուք 'ի կենացս
յայսցանէ, և մտցուք առ Տ̃ծ՝ յոր յուսացաք
և համբերեցաք ։
Այլ իբրև բերին զխաչսն, և կանգնեցին զեօթ-
նեսինն, հրամայեաց Թգ̃րն սան լի ձիթով
ջեռուցանել, և քարինս կռատել, և սուսերս
մեր

մերկացուցանել, և սուրս սրել, և տէգս շա-
ղափացուցանել, և այլ ևս գործիս տանջանաց
դնել առաջի՝ յերկիւղ նոցա ։ Ապա ասէ ցսրբն
Հիպերիքոս. խնայեա՛ 'ի ծերութիդ քո ա՛յ
անձնատանեաց, և մի՛ լինիր խաչեալ 'ի վերայ
փայտի, և կորուսաներ զկեանս քո ։ Իսկ սրբն
Հիպերիքոս քանզի բնութ̃ կունդ էր, ձգեաց
զձեռն իւր, և եդ 'ի վ̃ր գլխոյ իւրոյ, և ասէ
ցթգ̃րն. որպ̃ էս չէ հնար 'ի գլուխ իմ մազ բու-
սանել, նոյնպէս և անհնար է ինձ լսել քեզ ։
Ապա թգ̃րն հրամայեաց կախել զեօթանեսին
զփայտից. և ետ բերել մորթ ուլոյ, և ար-
կանել զգլխովն Հիպերիքի, և բևեռս երկա-
թիս հարկանել 'ի վերայ ուլենւոյն ը̃ գա-
գաթն. և ասէ. ահա բուսաւ հերք 'ի գլուխ
քո. արդ զոհեա՛ ածոցն ։ Իսկ երանելին ե-
բաց զբերան իւր, զշրթունսն շարժեաց
'ի պխնի տալ. և նոյնժամայն արձակեաց
զոգին ։

Ապա թգ̃րն ասաց ցփիլոթէոս և ցայլ ևս ըն-
կերսն. գոնեա դուք հաւանեցարուք զոհել,
և խնայեցէք 'ի ձեզ. զի մի՛ և դուք մեռանի-
ցիք իբրև զալևորդ զայդ, որ ոչ խնայեաց
յանձն իւր ։ Սրբքն ասացին. մեք աղօթս առ-
նեմք առ հայր և որդի և հոգին սբ՝ վաղվա-
ղակի հասանել ալևորին. զի ընդ նմա սպա-
նեացուք յաւուր ա̃ն միոյ յն̃ քի. և կատա-
րեսցի առ նմա գրեալն, թէ ահա ես և ման-
կունք իմ զոր ետ ինձ ա̃ծ ։ Թագաւորն ասէ.
և այժմ զի կախեալ էք 'ի վ̃ր խաչիցդ, ո՞չ
ամաչէք. և թողէք զնս 'ի վ̃ր խաչիցն՝ ինքն
եմուտ

եմուտ 'ի քաղաքն ։

Իսկ ազատ կանայք ումանք քաղաքացիք, որոց յիշատակք յօրհնութեն, առին սպունգս եւ փարշամակս, եւ ելին 'ի տօթաժամու առ նոսա. եւ տուեալ դահճացն մեն մի դահեկան՝ աղաչեցին զնա, զի թոյլ տացեն ջնջել զքիրտն նոցա, եւ մաքրել զվէրս նց. եւ զայս արարեալ՝ մտին անդրէն 'ի քաղաքն ։ Իսկ նոքին անդէն մնացին 'ի վր խաչիցն զտիւն եւ զգիշերն ամ ։

Այլ 'ի վաղիւն անդր հրամայեաց թագաւորն բեւեռս երկաթիս հարկանել 'ի գլուխ նոցա. որով ծորեաց ուղեղն ը քիթ եւ ընդ բերան նոցա. եւ այնպէս վախճանեցան ։ Իսկ դահճացն տեսեալ՝ զգացուցին թգրին, եւ ասեն. մի 'ի խաչելոցն երէկ իսկ վախճանեցաւ, զոր եւ քո իսկ քաղցրութիդ տեսես. եւ միւսն այսօր. արդ զի՞նչ հրամայես եւս առնել զմարմինս նց, զի դեռեւս 'ի խաչին կան ։ Թգրին ասէ ։ Ը երեկոյս՝ յարժամ ամբոխն խաղաղասցին, առկէք չուանս յոտս նց, եւ քարշեցէք ընկեցէք 'ի գետն եփրատ. եւ դահիճքն ելին կատարել զհրամանսն ։

Իսկ այր ոմն մեծատուն 'ի քաղաքէն՝ երկիւղած յԱյ, որ թաքուցեալ էր զինքն վս ահէ թագաւորին, նմանեալ արեմաթացւոյն յովսեփայ՝ որ թաղեաց զմարմին յՍի, իբրեւ լուաւ զհրամանս անօրէն թգրին՝ եթէ 'ի գետն հրամայեաց ընկենուլ զնոսն, յարուցեալ էառ եօթն հարիւր դահեկանս, եւ եկեալ առ դահիճսն՝ ուր էին մարմինք նոցա,

ասէ

ասէ ցնա. առէք զեօթն հարիւր դահեկանսդ,
և տուք ինձ զեօթն մարմինսդ՝ զոր թաղեցիք։
Իսկ դահիճքն ասացին. լուեալ քանիցդ կամիմք,
և դարձել արհամարհել զհրամանս թգ̃րին
երկնչիմք. զուցէ լուիցէ թգ̃րն, և հատցէ
զգլուխս մեր։

Իսկ այրն ասէ ցնա. գիտէք՝ զի համարձակու-
թիւ ունիմ առ թգ̃րն, և զինչ կամիմ՝ առ-
նեմ ’ի քաղաքիս. ես հրամայեմ փակել
զդրունս քղ̃քիս՝ մինչև յառաւօտին ժամն, պատ-
ճառս դնելով զփախուստ ծառայից իմոց.
և դահիճքն ասեն. կատարեսցին կամք քո։
Իսկ նր̃ յղեալ փաղփաղակի՝ ետ բերել ’ի կու-
տից փայտից, և արկանել շուրջն, և քար-
շել զփայտսն ’ի գետն. զի համարեսցի՝
թէ մարմինք նոցին քարշեցան և ընկեցան ’ի
գետն. և դահճացն առեալ զոսկին՝ գնացին
’ի տունս իւրեանց։

Իսկ առանն էր ագարակ մի արտաքոյ քաղա-
քին, յորում էր այր մի անգաղապահ՝ ծառայ
նր̃ ո̃մ տամբ իւրով. և էր ժամանակն հնձոց.
կոչեալ զայրն՝ ասաց. զմարմինքս զայս ժողո-
վեալ և թաղեալ. և մի՛ ոք գիտասցէ ամենևին.
և ես ազատեցից զքեզ և զկին և զորդիս քո
վ̃ն ծառայութեանն՝ զոր առնես ’ի ինձ։ Իսկ
նր̃ զայս լուեալ՝ եգիտ փաղփաղակի զշիրիմ
մի, որ անդ կայր. քակեաց զտեղին, և տա-
նէր ’ի ներքս զմարմինս նոցին փութապէս ա-
ռանց ումեք գիտելոյ։ Իսկ յետ դադարե-
լոյ հալածանացն շինեաց այրն վկայարանս
պայծառապէս ’ի պատիւ նոցին, և անդր փո-
խեաց

խնաց զնշխարս նոցին երանելեաց. յորում հանապազ (աստ վկայագիրն) փառաւորի փրկիչն մեր յս քս յմ բերանոյ յաւիտեանս յաւիտենից:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Վկայաբանութիւն փառաւորեալ վկայիցս՝ զոր անայլայլակ ընդօրինակեցաք 'ի մեծ ճառընտրէ մերմէ, որ ասկանի, * Մաքսիմիանոս թգր յերկրորդ ամի թգրութեն իւրում հրամայեաց մատուցանել զոհս || են. երեւի շարագրութի նորին իսկ յակոբայ երիցու ականատես գրչի վարուց նց, հարթ և ընտանի ոճով յօրինել. զոր քաղէ և Հ. հաւատարմութ: իսկ առ յոյնս կարի կարճառօտեալ՝ բայց իբր անվրէպ. գրի 'ի ժամագիրս նց. 'ի յնվ. 29. այսպէս. * Յայսմ աւուր յիշատակ սրց
„ եօթն վկայից 'ի սամոսատ կատարելոց, փիլոթէոսի.
„ հիպերիքիոսի, աբիբայ, յուլիանոսի, ռոմանոսի
„ (որ Ը Ծ. գոմսաս. և Ը Հ. գոմետիանոս կմ գո-
„ մեսփանոս), յակովբայ և պարեգորիոսի:
„ Յաղագս բեւեռելոյն 'ի խաչի՝ բանին,
„ եօթանց նահատակացս գլուխք բեւեռին:
„ Արգա քնի զինուորեալք, և զմոլորութին արձանա-
„ ցուցեալք (թ յաղթանակեալք), մահակօք բաղուեք
„ և ազգերք նոցա ջաղխին. այպս քերին անխնայ. և
„ չղթայս ծանունս Է պարանոցն ընկալեալք՝ 'ի բանտ
„ արկանին: Եւ անդրէն հանեալք՝ քերին. և կախեալք
„ և 'ի գլխովն բեւեռօք հեղուսեալք, զոգին այ ա-
ւանդեցին ||:

Զայս բան նեթ գտեալ բոլլանդայ՝ դնէ զլոկ լատին թարգմանութին. և 'ի վր բերէ. * Զվկայիցս զայսացիկ ոչինչ այլուր ընթերցաք ||: Յորմէ յայտ է, թէ որպիսի գանձ անգին համարէր մեծն բոլլանդ՝ որ գիտէ զպարգ հին վկայաբանութեց, եթէ 'ի ձեռս բերեալ էր նր զօրինակն ճառընտրիս մերոյ զպանծալին նմ սորայք խուռվք: Յիշատակ գրչին օրհնութք:

Այլ են և կրկին դասք նոց. յորս գտանին համանուն վկայք սմանք. որ 'ի Ց. ժմ. 'ի յանուարի 5. յիշին նր

վկայքն



# ՄԱՐՏԻՐՈՍՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Սեւերիանոսի սեբաստացւոյն :

Հ. սեպտ. 12 : Յ. Լ. սեպ. 9 : Ճառընտ.
Ա. ՆԺԲ = ՆԺԳ. և Ի. ՅԼ = ՅԼԲ : Բոլլանդեան
տոմարին. 'ի Գ. հատ. սեպտ. էՋ. 355 = 364 :
Մետափր. առ սուր. ԺԹ : (1)



ՔԱՋԱՅԱՂԹ ԵՒ ՊԵՐճապսակ զինուորն Քրիստոսի Սեւերիանոս կին սեւեռիանոս՝ էր զօրական ականաւոր յարքունի գնդին, որ 'ի սեբաստիա քաղաք փոքուն Հայոց, յաւուրս Լիկիանոսի կայսեր՝ ըն ձեռնամբ մեծի զօրավարին, ընդ Լիւսիայ դքսին, 'ի դասէ պատուհասուորաց և խորհրդականաց, որ 'ի հռովմայեցւոց կոչիւր օրտօ սէնատօրիուս, այն է կարգ ծերակուտական (2) : Սոյն և 'ի բանտարկիլ Ծոյց քառասնից՝ սա ինքն սեւերիանոս այր լի հաւատով՝ այց առնէր նց պատճառանօք յայտնի և ծածուկ, և դարման տանէր նց և այլ եւս կապելոց, և քաջալերեալ սրտապնդէր 'ի հաւատս :

Իսկ յետ մրցմանց և վկայական նահատակութեան Ծոյց քառասունն վկայիցն այնոցիկ՝ որք կատարեցան 'ի նմին սեբաստացւոց մայրա-

քա

քաղաքէին , այն ինչ տակաւին զօրացեալ կայր հալածումն 'ի վ՛ր քրիստոնէից՝ մախանօք և տղայամտալեօք շարժեալ 'ի բանսարկուէին ազդմանէ , ծաղկէր յայնմ ժամանակի ածպաշտութիւն պանծալի նահատակն քի սեւերիանոս՝ պայծառացեալ յոյժ սիրովն այ ։ մինչև 'ի զարմացման լինել ամ տեսողաց ըդ համարձակութիւն նր ։ քանզի բազումս ողոքէին զնա ձողայրել զանձն յերեսաց փառն ժամանակին , և ոչ զհամարձակութիւն 'ի կիր արկանելով մատնել 'ի վտանգ , և յայտ յանդիման 'ի տագնապ չարչարանաց մտանել ։

Իսկ քաջն սեւերիանոս ասէր ցնա ։ ոչ զանգիտեալ խորշիմ ես 'ի հելլենացւոց անածից , և ոչ տամ պարծիլ ամպարշտաց 'ի վ՛ր իմ ։ այլ յանդիմանեսցեմ բանիւք և արդեամբք զնց անածն մոլորութիւն ։ զի քի մի զինուորն զօրեղագոյն է քն զամպարիշտ թագաւորս նց ։ Եւ ասելով համարձակութբ զբանս զայսոսիկ հրապարակաւ 'ի քաղաքին սեբաստիոյ՝ պատուէր տայր ամանց 'ի ծանօթից զաւառին իւրոյ՝ որ անդն կային , զի յետ կատարման իւրոյ առեալ զնշխարս նր՝ ամփոփեսցեն ըստ օրինին ։

Ուրդ չարախօսեալ լինէր երնն առ դուքսն լիսիաս յոմանց՝ ասելով ։ սեւերիանոս մի 'ի զինուորաց՝ որ խ ձեռամբ ձերով կարգեալ է 'ի դատու սենատորաց , արհամարհէ զհրամանս թագաւորականին և զձեր՝ ասելով զինքեանէ քրիստոնեայ գոլ ։ որ և մահու պատճառ եղև քառասնիցն արիագոյն զինուորաց , խռովեցուցեալ ։

ցեալ զմիտս նց ոչ հաւանել հրամանաց թագաւորին . և այնպէս փարթամ գտանի, զի յինքեանէ կերակրէր զնա և զայլս՝ որ 'ի բանտին արգելեալք էին ։

Զայս լուեալ իշխանին լիւսիայ 'ի պաշտօնէից իւրոյ մոլորութեան՝ ահագին սաստիւ հրամայեաց փութով առաջի կացուցանել զսեբրիանոս ։ Եւ լուեալ նորա՝ լի եղև խնդութ՟բ, և արիութ՟ի ը՟ խոհեմութ՟ե խառնեալ՝ ինքնին յանդիման լինէր . և մտեալ յատեանն՝ ասէ ցդուքսն . ահաւասիկ հասեալ կամ առաջի քո խնդրեալս 'ի քէն . զի ցուցից քեզ գործովք, թէ ոչ բանից պէտս ունի յանդիմանութ՟ե ձեր ամպարիշտ անկարգութիդ . զի յանդիմանեաց զձեզ փորձիւ առաջնոց վկայիցն համարձակութիւն . մինչ զի և խափանեցան 'ի ձեռն նոցին համբերութ՟են ա՟մ հնարք տանջանաց ձերոց . և ոչ կարացիք փոփոխել զբարեպաշտ կամս նց դառն և այնչափ տանջանօք՝ զոր ածիք 'ի վ՟ր նց . այլ դուք և երկրպագեալքն առ 'ի ձէնջ դևքն յամօթ եղէք (3), և նոքա պսակեցան 'ի ք՟է ։

Յայնժամ դուքսն լիւսիայ ոչ բերելով զհամարձակութ՟ի նրյ վկային՝ մռնչեաց որպ՟ զառիւծ . և հրամայեաց մերկացուցանել զնա և տարածանել, և չոր արջառաջլօք հարկանել ։ Եւ նա ասէր 'ի տանջանսն . զթիկունս իմ հարին մեղաւորք, և երկայնացուցին զանօրէնութիւս իւրեանց ։ Եւ յետ վաստակելոյ և ակարանալոյ պաշտօնէից անօրինին՝

Օ Հրա

Հրամայեաց բառնալ զնա 'ի գետնոյն . և ասէ ցնա . տէս սևերիանէ, թէ որո՞ց իրաց առիթ եղեն քեզ տարաժամ յանդգնութիւնք քո, և 'ի քո՞ն քո վստահութիւնք :

Այս պխնի սևերիանոս և ասէ . եթէ աչս ունէիր տեսանողական, ցուցանէի քեզ զիրսն՝ որոց առիթ եղև ինձ տարաժամ անզգամութիս, որպէս դուդ ասես . բայց այժմիկ կոյր ես, և զառաջինկայ պատրաստեալ ինձ բրաբիոնն տեսանել ոչ կարես . և յայսմ իսկ տեցես աստուստ, զի 'ի նոյն անդր վերականելով՝ 'ի կրել անդ զտանջանս՝ հոգւով վերացել լինիմ . և 'ի տանջիլ մնահկանացու մարմնոյս՝ հոգիս փոխի 'ի տեղի հանգստեան, 'ի սփոփանս խոստմանցն փրկչին մերոյ յոր քեզ պատրաստեալ :

Յուսիաս դուքս ասէ . պաճուճիս պարծանօքդ սևերիանէ, և զանիմաստս ընդ քեզ յափշտակես . բայց զիս ոչ կարես . այլ այժչափ հարուածովք տանջեմ զքեզ, մինչև խոստովան լիցիս զտրութին ածոցն : Վխնել ես 'նք վկայն, և ասէ . զո՞մ տեսակ տանջանաց, զոր ինչ և կամիս հասուցանել 'ի վերայ իմ, մի հեղգար և մի յերկուանար . զի իմացեալ ծանիցես զզօրութիւն քնին իմոյ՝ տևողագոյն զտանելով զիս քան զքեզ անդամանդեայ . և մանաւանդ դու լքանիցիս զմտաւածելով զտանջանարանսն՝ որ վերն իմ, քան եթէ ես կրելով զառ 'ի քէն հասեալ ինձ չարչարանս :

Գուրքն ասէ . ոչ գիտես երկիցս թշուառա-

մինչ մի պարծիր և հպարտանար 'ի վր իմ ա-
նօրէնութեն որովք քո վարեալ. քանզի զօրի-
նաւոր իշխանութիւնդ փոխեալ 'ի գոռոզութի՝
դշխոն և զմարդասպանս անպատիժ թողուս,
և զպատուհասն՝ որ ոչ վայելէ, բարեպաշ-
տաց հասուցանես :

Իսկ դուքն սրտմտեալ չարութբ և եռա-
ցեալ ցասմամբ՝ հրամայեաց կախել զնա և
քերել. Յայնժամ պաշտօնեայք սմբարշտին
պաշարեալ զերանելւոյն յամ կողմանց՝ կախե-
ցին զնա զփայտէ, և չարաչարաքերեցին. իսկ
երանելւոյն յաղօթս կայր և գոհանայր զԱյ (6):
Ապա արկին զնա 'ի բանտ. և զկնի հնգից
աւուրց հրամայեաց դուքն ածել զառա-
ջեաւ զնա. և ասէ ցնա. զզաստացար ար-
դեօք առաջին տանջանօք և նեղութբ բան-
տի. արդ հաւանեա այսուհետև և զոհեա
ածոցն, զի մի անկցիս 'ի նորանոր տանջա-
նօք : Ասէ ցնա սբ վկայն քի. ոչ տեսանես
ամ երիցս թշուառական, զի թէպէտև վա-
տակեալ է մարմինս իմ յառաջին տանջանաց,
սակայն և այժմ զուարթ և պայծառ դիմօք՝
յօժարութբ կամ առաջի քո ատենիդ, պատ-
րաստ գոլով առ հանդերձեալ չարչարանս՝
զոր դու ինձ խոստանաս. մինչև կատարեսցես
զընթացս և զջանս իմ գեղեցիկ, ակն ունե-
լով յուսոյ կենացն յաւիտենից՝ որ կայ և
մնայ ինձ, զոր ընդունելոց եմ առ 'ի ՏԷ մեր-
մէ յՅէ քէ :

Յայնժամ եւս առաւել սրտմտեալ դուքն՝
հրամայեաց անօրէն դահճաց քարամբք հար-



կա-

կանել զբերան նորա , ասելով ցնա վկայն . Ընդէ՞ր յիշելով քո զանուն խաչելոյն՝ պղծեցեր զապարանս իմ : Իսկ քնի նահատակն ծիծաղելով ասէր . ով անմիտ և լցեալդ ամենայն անօրէնութեամբ , զաստուածն քո յիշելով՝ որ դևք են , ոչ թուի քեզ պղծել զապարանս քո . և զԱստուած որ է արարիչ և թագաւոր երկնի և երկրի , յիշելով՝ ասես պղծիլ ապարանիցդ . և ոչ գիտես , զի լսելով զահաւոր անունն՝ տանջիս և հալածիս հոգւով :

Ոչխանն ասէ . ես կարծէի հեզագոյն քեզ լինել առաջին տանջանօքն , և այնուհետև հաւանիլ մեզ . այլ զի կաս և մնաս ՚ի նմին յամառութեան՝ վիճաբանելով ընդ մեզ , և յօժարիս դարձեալ տանջիլ , զի սնափառութեամբ պարծեցիս առ քրիստոնեայսն , և ես հաւանեցուցից զքեզ՝ թէ ոչինչ շահեցիր յայնմանէ՝ յոր յուսացեալն ես : Սևերիանոս ասէ . եթէ զի մարդկան համբերէի այսոցիկ , եղկելի արդեօք և թշուառական էի քան զաստուածն քո . այլև ոչ համբերել իսկ կարէի մինչև ի սպառ՝ կրելով զայսոսիկ . այլ մեծագոյն քան զաշխատութիւս զփոխարէնսն գիտելով յԱստուծոյ՝ արհամարհեմ զմարմնոյս պատուհասն : Արդ այսուհետև մի՛ ինձ այլ լոկ բանիւք սպառնար , այլ միւսանգամ բուռն հար զտանջանաց , զի զփորձ առցես զօգնականէն իմմէ , և հաւանեալ ծանիցես դու , եթէ ոչ իբր ՚ի սնոտի իրս յուսացեալ եմ ես : Դուքսն ասէ . կախեցէք զդա զփայտէ , և սուսերաւ ծակոտեցէք զկողս դորա : Իսկ իբրև

րև կախեալ լինէր նա 'ի փայտին , առէ ցնա իշխանն . սեւերիանէ խոստովանեա՛ զահել ածոցն նախ ք զսկսանիլ տանջանացն . տես զքանդումն կողից քոց , և ողորմեա՛ եղկելի անձին քում : Ո՛չ ուստի՞ է ձեզ քրիստոնէիցդ՝ տաս ինձ , այնչափ անգթութիւն անողորմութե հակառակ անձանց ձերոց . կամ ո̃ւմ հնար է ողորմել ձեզ , որք անձանց ձերոց ոչ կամիք ողորմել : Մինի ետ Տր վկայն քի . լո՛ւր ո՛վ դատաւոր . ո՞չ գիտես դու զեղանակ մարդասիրութե , և զիա՞րդ ասես ինձ ողորմել . յայնժամ շնորհս խոստովանիցիմ քեզ , յորժամ մահուամբ զիս դատապարտիցես . զի բազում բարութեց առիթ ինձ լինիցիս , և երկնային գանձուցն ժառանգորդ զիս արասցես :

Օ այնուհետև լուեալ իշխանին՝ վաղվաղակի հրամայեաց հանել զնա 'ի վր պարսպացն և ձկտեցուցանել , և կախել քարինս մեծամեծս 'ի պարանոցն և յոտսն : Իսկ իբրև կախեցին , այսպն առնէր զնա դուքսն , և ասէր . Ջանեա՛ ջանեա՛ սեւերիանէ , զի մեծագոյն վարձս առցես : Իսկ նրն ո՛չ ետ նմա պխնի , այլ աղօթէր և ասէր այսպէս . Տր յաւիտենականն՝ որ զիմ ինչ գոյացուցեր 'ի ձեռն միածնի որդւոյ քո սիրելւոյ և հոգւոյդ Սրբ . առ քեզ կարդամ , որ եսդ Տր կենդանեաց և մեռելոց . լսելի՛ արա զիմ օրհնութիս , և շնորհեա՛ ինձ զերկնային յաղթութիւնդ քո . զի մի՛ պարծեսցի 'ի վր իմ անօրէնն լիւսիաս . այլ տո՛ւր փառս անուան քո Տր :

Այլ 'ի վաղիւ անդր՝ քանզի ընկեցեալ էր 'ի բացի մարմինն նորին արտաքոյ քաղաքին, ժողովեցան արք պատուականք և երկիւղածք 'ի նմանէ, որոց յառաջագոյն յանձն էր արարեալ նոյ վկային, և բարձեալ զնր նշխարս նր 'ի գիշերի՝ տարան 'ի հայրենի գեօղ նր, որ ոչինչ հեռի էր 'ի Սեբաստիոյ. և 'ի գաւռին և մերձ լինել 'ի տեղի վաճառի գեղջն, ազդ եղև ամենեցուն գալուստ նշխարացն։ Իսկ ծառայ նորին՝ որ բնակեալ էր 'ի գեօղն, վախճանեալ էր յաւուր յայնմիկ. և էին բնակիչք տեղւոյն ժողովեալ յողբումն և 'ի թաղումն մեռելոյն։ Իբրև լուան զգալուստ սրբոյն, թողեալ արտաքոյ գերեզմանին ըզմեռեալն՝ հանգերձ ամուսնաւ իւրով և որդւովքն, գնացին 'ի հանդիպումն նր նշխարացն օրհնութեամբ և երգովք հոգևորօք և լապտերօք բուրբուջելովք և անուշահոտ բուրմամբ խնկոց։

Յայնժամ շուրջ զիւրև հայեցեալ կինն մեռելոյն, ոչ զոք ետես յողբակցաց իւրոց. բուռն եհար զվախճանելոյ առնէ իւրմէ, և ասէր ողբալով ցնա. արի՛ փաղփաղակն, զի և մեք ժամանեսցուք արագապէս զկնի այլոցն 'ի հանդիպումն սրբոյն այնորիկ՝ նոր մերոյ. զի եկեսցէ նա պատուով, և մի՛ արհամարհողք երևեսցուք նոյ վկային։ Այս ևս յոլովագոյն բանս յաւելոյր յողբսն, մինչ օրէն է ողացելոցն։ Այս յասել զայսորիկ կնոջն՝ մեռեալն նստաւ յանկարծակի 'ի վերայ դագաղացն, անօրով զօրն երկիզասոյնդեալ կառւօքն.

ւորքն . և 'ի բաց ձգեալ յանձնէ իւրմէ զգե-
րեզմանական պատանսն , կենդանի եղեալ՝
վազելով գնայր 'ի հանդիպումն նր̄ , որ մե-
ռեալ էր վն̄ քո̄ր , ինքն 'ի մահուանէ 'ի կեանս
փոխադրեալ վն̄ մեռելոյն մաղթանացն ։
Այս տեսանելով զնա ամբոխն ա̄մ յարուցեալ
ետուն փառս ա̄յ , այնմ՝ որ 'ի ձեռն բարե-
խօսութե̄ն սր̄յ վկային շնորհեաց զյարութի̄
մեռելոյն ։ Այս սոյն սա այր՝ ծառայ նրյն՝ ե-
կեաց յայնմհետէ այլ ևս ամս հնգետասան ,
սպասաւորելով նրյ գերեզմանին 'ի կենդա-
նութե̄ իւրում վն̄ փրկութե̄ հոգւոյ իւրոյ .
և յետ այնորիկ վախճանեաց զաստի կեանս ։
Այլ 'ի ժամու թաղման նրյն պատմի և այլ
սքանչելիք . քանզի հոգ մեծ էր ժո̄ղվրդեանն ,
թէ յորում տեղւոջ արասցեն զհանգստա-
րան նշխարաց նրյն . և ասէին . եկա՛յք մա-
նեսցուք պսակ 'ի ծաղկանց , և դիցուք 'ի վր̄
մահձաց վկային . մինչև ցուցցէ մեզ զտեղին՝
զոր պատրաստեալ է սր̄յն . և արարին այն-
պէս . և մատակարարութե̄ն ա̄յ եկեալ արծ-
ուի մի՝ թռչէր 'ի վր̄ մահձացն . և առեալ
զպսակն՝ երթայր առաջի ։ Զայն տեսեալ ա-
մենեցուն՝ երթային զկնի պսակաբարձ արծ-
ուոյն հանդերձ նշխարօք սր̄յն . մինչև հա-
սեալ արծուոյն 'ի տեղի ուրեք՝ անդ եդ
զպսակն , և ոչ ևս երևեցաւ ։ Իսկ տեսօղքն
սքանչացեալ՝ փառաւոր առնէին զա̄ծ , որ
ազդեալ եցոյց զտեղին՝ ուր պարտ էր հանգ-
չել ոսկերաց նրյն . և հանդերձ մեծաւ փա-
փաքանօք կատարեցին զհանգիստն ։ Այս ա-
նէր

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Բաբելայ ծերոյն, և Գ֊ աշակերտաց նորին ։

Հ. յուլիս. 4 ։ Յ. ժամանակ. սեպտ. 5 ։ Ճառընտիր. Ա. ճլը = ճլէ. և Բ. նղա = նղէ ։ Բոլլանդեանք ՚ի յուլ. 24. և ՚ի սեպտ. 4 ։ (1)

ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ երկնից դպիր՝ աշակերտեալ երկնաւոր վարդապետին՝ սուրբ ծերունին Բաբելաս (որ և Բաբիլաս, կամ ուղղագոյն ևս՝ Բաբիւղաս), իմաստութեամբ դաստիարակ և հոգելից վարժապետ բազմութեան մանկանց անմեղաց աշակերտելոց ՚ի դպրոցն քրիստոնէական, էր ՚ի Նիկոմիդեայ քաղաքէ բիւթանացւոց՝ յաւուրս Դիոկղետիանոսի կայսեր, և աթոռակցի նորա Մաքսիմիանոսի Հերակլեայ ։

Սա եղև՝ զի Մաքսիմիանոս թագաւոր մտեալ ՚ի քաղաքն Նիկոմիդեայ՝ զոհեաց Ապողոնի. և իբրև կատարեաց զպաշտօն պղծութեան, յելանել նորա արտաքս ՚ի տաճարէ կռոցն՝ մատեան առ նա Արտեմիոս և Փիլիպիանոս քուրմքըն Ապողոնի, և ասեն. Տէր յաղթական թագաւոր, դու բազում յօժարութեամբ փութաս ՚ի

՚ի գոհ ա՟ծոցն, և զբազումս զայլս ընդ քեզ ջանաս ձգել ՚ի պաշտօն նո՟ց. յաղագս որոյ ՚ի խաղաղութե՟ բնակեալ է ծս մեր, միշտ և հանապազ զյաղթութ՟ պարգևելով նո՟ց թագաւորութեն՟դ քում։ Այլ արդ՝ են ոմանք ՚ի քաղաքիս, որք քրիստոնեայք կոչին, և ամբարշտութ՟ն իւրեանց ոչ հնազանդին օրինաց թգրութեանդ ձերոյ. այլ՝ հայհոյեն զա՟ծսն, և երկրպագանեն խաչելոյ ումեմն՝ զոր ա՟ծ անուանեն. և ասեն՝ թէ յերկինս ունի զբնակութի՟ իւր, և իշխէ ամենեցուն՝ որ յերկրի իցեն. և սոյնպ՟ խաբեն զբազումս. և ոչ զոհեն ա՟ծոցն մերոց, և ոչ պատուեն զտօնս մեր. այլև հպարտութ՟բ բերին հահառակ թգրութեն՟դ քում, և աղօթեն փոփոխումն լինել իշխանութե՟դ ձերում։
Այս առաւել է ասա ծեր ոմն ժպիրհ՝ բաբեղաս անուն նր, որ հպարտութ՟բն իւրով միշտ չարախօսէ զա՟ծոց մերոց. և գրով ձեռաց իւրոց զբազում մանկունս աշակերտէ յուսումն չարաչար վդպութե՟ իւրոյ. և ապաորէ զմիտս նց՟. մի՛ դնել միտս կրօնից ա՟ծոցն, այլ միայն հպատակ կալ օրինաց խաչելոյն, և յանուն նորա երդնուլ, և ոչ ՚ի զօրութիւնս դիցն։ Այլ փոխանակ հելլենացի ուսմանցն՝ որով մանկանցն վարդապետութիւնն յարգի, առաքելս իւրն ուսուցանէ մանկանց, զորս երգս սէրս և սաղմոս անուանեն քրիստոնեայքն մոլորութ՟ն իւրեանց. և յայտնապէս ուսումն ա՟ծ անզգամ կանայք կրթեն զմանկունս իւրեանց ՚ի ձեռն ամին այնորիկ. և
այն

այնչափ զօրացաւ մոլեգնութիւն ծերոյն այնր, մինչ զի ոչ արար մանկունս միայն ընթանալ յուսումն նորա, այլ և աղջկունս ևս անգամ կանխեսն 'ի վարդապետանոցն նորա : Եւ արդ դու տէր ինքնակալ մի՛ տար թոյլ զօրանալ մոլորութեան այնմիկ. ապա թէ ոչ՝ յանարգանս աստուածոցն և յարհամարհութիւն թագաւորութեանդ քո լինիցի :

Զայս իմն իբրև լուաւ թագաւորն 'ի քրմացն անտի, լի եղև սրտմտութեամբ. և առաքեաց վաղվաղակի զինուորս՝ ըմբռնել զԲաբիղաս հանդերձ մանկամբքն. և զամենեսեան զնոսա արգելուլ անդէն 'ի վարդապետանոցն, և զգուշութեամբ պահել, և զԲաբիղաս միայն ածել առաջի նորա. և զինուորքն կատարեցին զհրամայեալսն. և այնպէս ածաւ երանելի ծերն ձեռս յետս կապեալ առ թագաւորն՝ որ նստէր առաջի դրանց տաճարին աստուածոցն :

Իբրև ետես թագաւորն զնա, խոժոռ դիմօք նայեցեալ ընդ նա՝ ասէ. դո՞ւ ես Բաբիղաս՝ որ արհամարհես զզօրութիւն անմահից աստուածոցն, և ոչ զոհես նոցա. և ոչ այս միայն, այլ և զմանկունս անմեղս յափշտակես 'ի յանզգայ կանանց, և բարբանջանս իմն ուսուցանես նոցա, զորս և աստուածայինս նորոգս անուանես. և ոչ յօրինաց մերոց պատուականս, և ոչ 'ի սովորականաց մերոց զանգիտես. այլ նստիս 'ի հրապարակս, և ժողովես զբանս քո 'ի լսելիս այնոցիկ՝ որ զչարաչար տանջանս 'ի մէջ ածէ քրիստոնէիցն զնոսա : Ապա թէ ոչ իցէ լուեալ քո, թէ որպէս որք քոյին յիմարութեանդ աշակերտք եղեն, զանազան դա-

տաս-

տատանմանս կրեցին 'ի դատաւորաց մերոց . ո֊
մանք հրոյ և ոմանք ջրոյ մատնեցան , և կէսք
'ի ծով ընկեցան . և այլք գազանաց կերա֊
կուրք եղեն . որ և ոչ գերեզմանաց արժանի
գտան դժուարաբախտ դիակունք նց ։

Այլ արդ դու զի՞նչ ասես առ այս ով չարա֊
գլուխ ծեր . զի մեր կամք այս են , փոփո֊
խեսցիս դու 'ի յիմար կրօնիցդ քոց , և պաշ֊
տեսցես զանմահ դիսն , և երկրպագեսցես
նց ։ Այլ յաղագս մեղանչելոյդ նց՝ տուեալ
է քեզ 'ի հանդարտ ներողութենս մերմէ , զի
հաշտեցուսցես զնս 'ի ձեռն զոհից . և լինի֊
ցիս բարեգործ ալեաց քոց , և 'ի հանգստեան
և 'ի փառաւորութե բնակեսցես ։ Այլ ոչ այս֊
չափ միայն , այլև 'ի դիմոսական գանձուցն՝
որ պարգևելին քեզ յառատաձիր թգրութենէ
մերմէ , բազում հարստութիւն ընկալցիս . այլ
զի մի՛ ասիցես , եթէ ծեր եմ , և ոչ կարեմ
այսուհետև ընձեռել անձին իմոյ զպէտս
կենցաղոյս , և վս այնորիկ յօժարիմ 'ի մահ .
արդ զի՞նչ ասես առ այս ։

Այս պխնի երանելին բաբեղաս , և ասէ .
Այս ով թագաւոր 'ի մանկութենէ իմմէ պաշ֊
տեմ զՃշմարիտն ած , և նովին կրօնիւք հա֊
սի մինչև 'ի խորին ծերութիւս յայս՝ յորում
տեսանես զիս նովին բարեպաշտութեամբ վա֊
ռեալ . և արդ ո՛նցաւոր կենցաղոյս ցանկա֊
ցեալ ուրացայց զտէրն իմ և զած , զայն՝ որ
ստեղծ զիս յորովայնէ ողորմութեամբն իւրով .
և քարա՞նց և փայտի՞ց 'ի ձեռաց մարդկան ե֊
ղելոց և մեռելոտեաց անշնչի՞ց երկիր պագից ։

Ա Մաք֊

Մաքսիմիանոս ասէ . ոչ եւս ներեցից քում զօղանջանացդ՝ որով թշնամանես զանմահ գիրն, այլ հրամայեմ փշրել զոսկերս քո քարամբք . զի գոնեա այսպէս իմաստնացի խելագար ծերութիդ քո, եթէ որպէս պարտ է խօսել առաջի թագաւորաց ։ Իսկ եւ հրամանն նոյնժամայն քարամբք հարկանել ըզծնօտս նր՟ . մինչեւ ջախջախեալ մանրեցան ոսկերքն այտիցն, և հոսէր իջանէր արիւնն ը՟ ծնօտսն և ը՟ բերանն նր՟ ։

Իսկ երանելի ծերն աղաղակեաց ձայնիւ մեծաւ, և ասէ . Գոհանամ զքէն քս՟ ած իմ, զի այսպէս բարեհաճեալ յիս՝ զօրացուցեր զծառայս քո՝ ՚ի նախկին մրցմանս յայսմիկ, արիաբար մարտնչել ինձ ՚ի հաւատոյ պատերազմիս ը՟դէմ անօրէն թգ՟րիս . զի ահաւասիկ ամենազօրութբ՟ քո իբրեւ զձիթենի կանաչագեղ՝ նորակերտ դալարացեր զկնի հատանելոյն, և կմ՟ իբրեւ զծաղիկս մատաղատունկ դրախտաց, այնպէս համարիմ զզարկուածս քարանցս՝ առ ՚ի նորոգումն փառաց հնացեալ և ծերացեալ անդամոց մարմնոյս իմոյ . վս՟ զի հաւատամ նորոգ ը՟ունել զաս ՚ի փառաւորեալ գալստեանդ քո ։

Իսկ թգ՟րն իբրեւ ետես զնա, զի այսպէս և ՚ի տանջանսն գոհանալով կարդայր զքս՟, ասէ . ով պիղծ և յանդուգն ծեր՝ և դեռեւս զխաչեալն կարդաս մարտակից քեզ . և ոչ իմանաս զջախջախումն ոսկերաց երեսաց քոց . և ոչ տեսանես զյորձանահոս կարկաջումն արեան քո ՚ի բերանոյ քումմէ ։ Այս և այլ

Ի H բըռ-

բռնագոյն տանջանս ածից 'ի վր քո · զի գէթ այնու ծանիցես , թէ այն՝ որ 'ի քէն ած ասի քոյն , ոչ կարէ օգնել այնոցիկ՝ որ 'ի թշւառաց դատապարտեալք լինիցին ։

Եւ զայս ասացեալ՝ հրաման ետ և զշրթա-նակս նր , այս է զբերանս , ոտս և զկողս նր և զթիկունսն և՛ս առաւել հարկանել նորին քարամբքն ։ Իսկ երանելին բաբեղաս զայս ամ տանջանս ընդունելով՝ ոչինչ ցասնոյր · այլ հեզ և անխռով ձայնիւ՝ այսպէս սաղմոսէր · Տր է իմ օգնական , և ես ոչ երկեայց , զի՞նչ արասցէ ինձ մարդ · Տր է իմ օգնական , և ես տեսից զթշնամիս իմ · բարի է յուսալ 'ի Տր՝ քան յուսալ 'ի մարդիկ · բարի է յուսալ 'ի Տր՝ քան յուսալ յիշխանս ։

Մ՝աքսիմիանոս ասէ · 'ի փրկութի ածոցն երդ-ուեալ՝ ոչ սուտ խօսեցան զքէն արտեմիոս և փիլիպոսս , եթէ աստուածս իմն 'ի բերան առեալ՝ երգս սէրս և սաղմոս անուանեալ կարգայ հնացեալն այն , որով զամբիկան և զանզգայսն կարօղ է պատրել · արդ աւասիկ և 'ի լսելիս մեր այսպիսի խորամանկութիւ յառաջ բերել բարբանջէ , և զմեզ ևս պատ-րել կամելով՝ նովին երգով հեշտացուցանել զլսելիս մեր ։

Եւ նքն հայեցեալ 'ի նա՝ ասէ · բարւոք ասէ ածային գիրն , եթէ յիմարն զյիմարութի խօսի , և սիրտ նր զնանիրս իմասցի · և ե՞ր վս զու ոչ իմանաս ով թագաւոր , եթէ մեծ և հզօր է ածն քրիստոնէից , և յոչինչ հա-մարեալ են ամ դիք հեթանոսաց , որոց զա-

ազա

պատուաւոր լինիս 'ի կործանումն Թգրութեցքո. վՌ զի ամմ կուռք հեթանոսաց՝ ասէ գիր, դևք են. այլ տր զերկինս արար:

Յայնժամ Մաքսիմիանոս բարկացեալ՝ ետ զնա 'ի ձեռս պրիսկեղայ կամ պրիսկեայ դատաւորին, և հրամայեաց դնել անուր ծանր 'ի պարանոց նր, և զոտս նր պնդել 'ի փայտի: Այլ իբրև տարան զերանելին բաբեղաս 'ի բանտ, ահա հրաման ետ Թագաւորն ածել զամմ մանկունսն զաշակերտեալս նր առաջի իւր. և վաղվաղակի կատարեցին սպասաւորքն զհրամայեալսն. և իբրև զգանամոլս զամենեսեան ջոլորեալ կացուցին առաջի Թագաւորին. որք էին Թուով ութսուն և չորս՝ Ը արու և Ը էգ. (եօթանասուն մանկունք, և չորեքտասան աղջկունք.) որոց անուանքն են այսոքիկ:

Ա. Թէոփիլոս: Բ. պետրոս: Գ. փիլիպպոս: Դ. սերապիոն: Ե. սևերիոս: Զ. զոյլիանոս: Է. աղեքսանդրոս: Ը. ագաթոն: Թ. մովլիտոս: Ժ. սարգիպնէոս: ԺԱ. տիրանէոս: ԺԲ. արտեմիոս: ԺԳ. մաքսիմոս: ԺԴ. ամոնիոս: ԺԵ. սերապիոս: ԺԶ. նէոփիտոս: ԺԷ. տորիոն: ԺԸ. պլիկրիղիանոս: ԺԹ. կինաբիոս: Ի. բիտոն: ԻԱ. դոնատոս: ԻԲ. բիքտորիոս: ԻԳ. դուղկիտիոս: ԻԴ. դորոթէոս: ԻԵ. եւտիքիոս: ԻԶ. փիլիպպոս: ԻԷ. զենոբիոս: ԻԸ. եւգրաբիոս: ԻԹ. անտոնիոս: Լ. քրիստաբիոս: ԼԱ. զիբիոս: ԼԲ. անտիգոնոս: ԼԳ. գենեթղիոս: ԼԴ. սքողաստիկոս: ԼԵ. Թէոդոս: ԼԶ. փղորենտիոս:

լէ. գղիկերիոս ։ լը. կեղսիոս ։ լթ. պաս-
բիկիոս ։ խ. սաեփաննոս ։ խա. բամբիա-
նոս ։ խբ. ուղղաղենդինոս ։ խգ. Թէոդո-
րոս. խդ. եւտիքոս ։ խե. եւփսեբիոս ։ խզ.
եւագրիոս ։ խէ. սեերիանոս ։ խը. ղեոն-
դիոս. խթ. մարկիանոս ։ ծ. փոտիոս. ծա.
փիղիկկիոս ։ ծբ. դիոմիտիոս ։ ծգ. նէոփի-
տոս ։ ծդ. իպատիոս ։ ծե. ակակիոս ։ ծզ.
ղոտիկոս ։ ծէ. փիմինոս ։ ծը. պանքարիոս ։
ծթ. մարկոս ։ կ. աքքեղիոս ։ կա. իրինոս ։
կբ. հուպեղիոս ։ կգ. ասկանիոս ։ կդ. եղե-
Թերիոս ։ կե. այետիոս ։ կզ. ամովսիոս ։
կէ. դոնադոս ։ կը. անտիգոնոս ։ կթ. իպա-
տիոն ։ հ. պերմոն ։ հա. Ակուրիա ։ հբ. սո-
փի ։ հգ. եւսեբիա ։ հդ. Թէոդոտի ։ հե.
փաւստուհի ։ հզ. մաղիկիս ։ հէ. Թէոգու-
ղէ ։ հը. Թէոփիլուհի ։ հթ. պատրիկուհի ։
ձ. Թէոդորա ։ ձա. դիոնիսուհի ։ ձբ. սիմե-
ղիա ։ ձգ. տրիփենա ։ ձդ. դոմնա ։

Արդ սոքա ամենեքեան իբրեւ ածան առաջի Թգ՟րին, գ՟ալով զկնի նոցա եւ մարցն իրեանց՝ արտասուօք քաղցրերելին զնոսա, զի հաստատուն կացցեն 'ի հաւատս վկ՟ային իւրեանց ։ Այլ իբրեւ ետես զնն մաքսիմիանոս, ժպտեցաւ ըդ՟եմնց՟. եւ խորամանկութբ իւրով քաղցր ձայնիւ սկսաւ ասել ցնն այսպէս. Որդեակք իմ լուարուք ինձ, ոչ զի կեցջիք եւ 'ի բարութե վայելեսջիք. վս զի Թէպէտ եւ վկ՟այն ձեր՝ որ ուսուցանէրն զձեզ, անսագան եւ հաւրէ ծանեաւ զճշմարտութի ածոցն, սակայն յետոյ երկեր եպագ նց, ոչ եւ մե մար-

մերձիկ. այլ վ՟ն զի իմացեալ իմ, թէ հարկանէր զձեզ և տանջէր յանդգնաբար՝ հանապազօր պահանջելով ՚ի ձէնջ զհամարս նանիր ուսմանց գրոցն քրիստոնէից., յաղագս այնորիկ բարկացեալ ՚ի վ՟ն նր՝ արկի զնա ՚ի բանտ. զի մի այլ ևս հանդերձեսցի հարկանել զձեզ։ Արդ մտեալ ՚ի տաճար ա՟ծոցն՝ երկիր պագէք նց. և անցեալ գնասջիք խաղաղութ՟բ առ մարս ձեր. վ՟ն զի տեսանէք՝ թէ որպէս տղորմագինս կականին կողկողելով զկնի ձեր։

Իւ այս ա՟մ ողոքական բանս թ՟րին ոչ ետուն ականջ ն՟ր մանկունքն. բայց միայն իւրաքանչիւր ոք ՚ի նոցանէ սկսաւ ասել, ես քրիստոնեայ եմ։ Յայնժամ բարկացեալ թ՟րն՝ հրամայեաց ՚ի բաց տանել զն՟ն յերեսաց իւրոց. և ապա ընտրեալ ՚ի նց՟է տասն մանկունս՝ որք քան զայլսն ուշիմ երևէին առ ՚ի կարօղ լինելոյ նց առ հարցմունս նր տալ պէտսի, ետ ածել կացուցանել առաջի իւր. և ասէ ցն՟ն մաքսիմիանոս։ Գիտէք որդեակք, եթէ վ՟ն որո՞յ իրաց ընտրեցի զձեզ յա՟մ ընկերաց ձերոց՝ իբրև զմանկունս իմաստունս, և կացուցի առաջի իմ. արդ՝ մի նմանիք ապիրատութե՟ վ՟պին ձերոյ, այլ մատուցեալ երկիրպագէք ա՟ծոցն. և բազում պարգևս ընկալջիք յինէն՝ զանձս ոսկւոյ և արծաթոյ. և ուրախութ՟բ մեծաւ արձակեսջիք յինէն ՚ի տունս ձեր, կմ լինիջիք ը՟ մեզ ՚ի պալատան. ապա եթէ ոչ հնազանդիք ինձ, հրամայեմ հատանել զգլուխս

ձեր, և արկանել շանց զդիակունս ձեր : Մինչ եւս մի ոմն 'ի նոցանէ, որում անուն էր Ամովս կմ՝ Ամմոն, և ասէ. մեք քրիստոնեայք եմք, և դիմաց պղծոց երկիր ոչ պագանեմք. զոր ինչ կամիս՝ արա վաղվաղակի. զի աւասիկ պատրաստ եմք ըստ օրինակի վարդապետին մերոյ : Մաքսիմիանոս ասէ. առէք զդա և հարէք զթիկունս և զկողս դորա. ոպ զի ուսցի՝ այլրանիս, և ոչ ողջայանալ խօսել առաջի թագաւորի :

Իսկ իբրև տանջեցաւ նա այսպէս, յառաջ մատուցին զմիւսն՝ որում անուն էր դոնատոս. և ասէ ցնա Մաքսիմիանոս. տեսեր զքո աշակերտակիցն քո, եթէ որպէս ոչ հաւանեալ ինձ՝ յանհնարին տանջանս մատնեցաւ. արդ դու մի՛ նմանիր նր անմտութեն, այլ հնազանդեա՛ ինձ, և պաշտեա՛ զա՛ծսն. և անցել գնասջի՛ր առ ծնօղսն քո խաղաղութբ. զի գիտես՝ թէ որպէս այժմ տրտմեալ լինին նք վս յամելոյդ քո : Նա պխնի դոնատոս, և ասէ. ես քրիստոնեայ եմ, որպս և Ամովսիոս աշակերտակիցն իմ. և ոչ խաբեցայց 'ի փաղաքշանացդ քոց, և ոչ երկեայց 'ի բռնադատելեացդ քոց, և ոչ ուրացայց զա͞ծն իմ և զքն :

Յայնժամ լի եղև բարկութբ Մաքսիմիանոս, և զոյն երեսաց նր շրջեցաւ. և ասէ. առէք և զդա, և ըստ առաջնոյն օրինակի կրկնապատիկ տանջեցէք. վս զի սա ևս ըմբռնեալ է 'ի պատրանս ծերոյն այնորիկ : Իսկ իբրև տանջեցին զնա մանուկն սպասաւորք թագաւ-

գաւ

գասպրէն անաղորմ, մինչ զի հոսէր իջանէր արիւն նր̄ յերկիր, նա ոչինչ տայր պխնի առ բռնաւորին, այլ միայն աղաղակէր և ասէր .

Ես քրիստոնեայ եմ ։

Այս հրամայեաց թ̄գրն ընկենուլ զնա և թաղուլ 'ի յատակս տանն, և ետ ածել և զայլ եւս ընկերս նր̄, և ասէ ցնա . որպէս կամիք, հաւանեցո̄ւլ ինձ, և պարգևօք և ուրախութե̄ մեծաւ երթալ 'ի տունս ձեր, եթէ անհաւան գտանիլ, և զայդպիսի տանջանս կրել, որպ̄ տեսանէք զընկերս ձեր ։ Իսկ նք̄ մանկունքն իբրև լուան զբանս նր̄, 'ի բաց ընկեցեալ զձորձս իւրեանց՝ միաբան աղաղակեցին և ասեն . ահաւասիկ պատրաստ եմք առ տանջանս քո, որպ̄ նք̄ եղբարքս մեր՝ որք անկեալ կան 'ի յատակս տանս առաջի մեր ամօթխիոս և դժնատոս . և ոչ երբէք գարշարեմք 'ի կոչելոյ զանձինս մեր քրիստոնեայս, և խոստովանելոյ զա̄ծն մեր . որպ̄ ուսոյց մեզ

երանելի վ̄դպն մեր ։

Յայնժամ յարեաւ փաղփաղակի մաքսիմիանոս, և գնաց բարկութե̄ մեծաւ 'ի պալատն իւր . և ետ հրաման արխկիղիանոսի դատաւորի արկանել միանգամայն զա̄մ մանկունսն 'ի բանտ, և աւուրս ինչ անսուաղ պահել . զի թերևս ասէ 'ի սովոյ նեղեալ՝ ուրասցին զխրատ վ̄դպին իւրեանց . ապա թէ ոչ՝ համ դերձ վ̄դպաւն իւրեանց ընկալցին որով լրդ-

վախճան մահու ։

Իսկ դատաւորն ընկալեալ զայսպիսի հրաման՝ իբրև փորձեաց զնս, և եգիտ անդրդ-

ունելիս 'ի խորհրդոց իւրեանց, եւ ածել առ-
աջի իւր զերանելին բարեղաս հանդերձ
ութսուն եւ չորս մանկամբքն. եւ ասէ ցնա.
զի՞նչ կամիս ով բարեղաս, զգաստացա՞ր 'ի
փոխելութենէ յիմարութեան. առ 'ի զոհել մ̃ծոցն
եւ կեալ, եթէ արդ եւս 'ի նմին յամառութեան
կայցես, եւ չարաչար կորիցես դու եւ աշակեր-
տեալքդ քո. ապա եւ ինքնակալն հրամայեաց։
Այսպիսի երանելին եւ ասէ. պարտ էր ի-
մանալ քեզ ով դատաւոր զհաստատութիւն
հաւատոցն մեր յառաջին մրցարանէ անտի,
եթէ զիա՞րդ` զոր ոչ չարաչար ջախջախումն
ատակերացս ծնօտիցս իմոց ուծացոյց զիս 'ի
յուսոյն իմոյ, արդ այլով ի՞իք տանջանօք հա-
ւանեցուցանես զիս ուրանալ 'ի նմանէ։ Արդ
արա վաղվաղակի, ապա հրաման ընկալար յինք-
նակալէն քումմէ. վ՟ն զի ես պատրաստ եմ
յամ՟ տանջանս մտանել վ՟ն բարեպաշտութեան,
զոր ընկալայ 'ի մանկութենէ իմմէ, եւ պահե-
ցի մինչեւ 'ի խորին ծերութիւնս յայս։

Իսկ դատաւորն իբրեւ լուաւ զայս, ասէ. ես
ակն ունէի, թերեւս ողորմեսցիս դու ինքնին
թշուառացեալ ալեաց քոց, եւ այդոցիկ այդ-
քանեաց մանկանցդ, որ վ՟ն քո հանդերձեալ
են կորնչել. դու արդ եւս տակաւին 'ի նմին
յամառութեան կաս. արդ ես աւասիկ կակղե-
ցից զխստապարանոցութիւնդ քո։ Եւ ետ հրա-
ման պարզել ձգել զնա 'ի չորից կողմանց,
եւ արջառաջլօք հարկանել զթիկունսն եւ ըղ-
ներքանսն նր՟, յանդիման մանկանց աշակեր-
տաց նր՟ առհասարակ.

Իսկ

Յանդիման ոչինչ գրեր զտանջանս, այլ միայն համբարձեալ զաչս մտաց խորոց յերկինս՝ սկսաւ ասել այսպէս. փառք քեզ զուգահաւասար Սբ Երրորդութիւն, հայր և որդի և հոգիդ Սբ. փառք քեզ հայր Սբ, որ զօրացուցեր զտկարութիւն իմ զօրութեամբ շնորհի հոգւոյդ Սբյ, և նորոգեցեր զապականութիւն ծերութեան իմոյ չարչարանօք քոյին քո. և արդ զինչ տաց տրիտուր քեզ Տէ Տմի՝ զոր շնորհեցեր ինձ. այլ միայն գոհացողական ձայնիւ՝ օրհնեցից և փառաւորեցից զանքաժանելի և զանխմանալի զօրութիւն քո՝ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Նա յասել Սբց մանկանցն զամէնն՝ եւ հրաման պրոկիզիանոս դատաւորն զամենեցուն զգլուխսն հատանել. ոսկ և հրամայեցաւ 'ի Թագաւորէն։ Նա դահճացն առեալ զայսորինի հրամանն՝ նախ հատին զգլուխ Սբյն Բաբեղասայ, և ապա զերանելի մանկանցն մի ըստ միոջէ՝ միանգամայն զուլթսաւն և չորիցն. որոց ամենեցուն զքրիստոնեայ անուանն 'ի վՐ խուրեանց դաւանեալ՝ կատարեցան 'ի քս. Նա առեալ զմարմինս նց արանց երկխուղածաց՝ զոյգ Գ ծնօղս նց, հանին արտաքոյ քաղաքին, և արարեալ երիս դիրս 'ի նշանաւոր տեղւոջն՝ որ կոչի խզանդիոք (զոր և ոմանք կարծեցին անտիոք, և այլք բիւզանդիոն), եդին անդ զնշխարս նց, տօն մեծ կատարելով զօր յիշատակի նց յամենեանն սեպտեմբերի, որ օր չորս էր ամսոյն։ Որք սոքա այսպէս կատարեցան (յամի տն խոր 300), 'ի

հիւ-

ւոր գործէ: Շփոթեալ է զբովանդակեանս ոչ միայն յա-
նելն 'ի ձեռին զվկայաբանութիւն բաբելայ ծերոյս նիկո-
մեդացւոյ, այլև համաձայնութիւն ինչ և սխալագրութիւն
գտեալ 'ի քաղուած նորուն՝ որ 'ի ժամագիրս յունաց.
ուր 'ի սեպտ. 4. զկնի վարուց և պաշտամանց բաբե-
լայ հայրապետին անտիոքայ, գրի վն բաբելայ ծերոյն
այսպէս. * Յայսմ աւուր սբն բաբիւղաս՝ որ յանտիոք
վճռէ, հանդերձ որ Է նովաւ ուխտաւորօք և չորս մանկամբք՝
սրով կատարի||. ուր զանուն անդրոյ թագաւն սբցս, որ
կոչէր իգանդիոս կմ խասնոսիոս Ը հին վկայաբանիս մե-
րում 'ի կողմանս նիկոմիդեայ, շփոթեալ են ոմանք 'ի
գրչաց ընդ անտիոքայ. բայց սակայն նոյն իսկ ժամա-
գիրքն յայտ առնէ անգանոր ճախագոյն՝ յարեննան ճառ-
ընտրաց՝ զնահատակին նոցա առաջի կայսեր՝ որ նստէր
'ի նիկոմիդիա. թող զի անգրէն զնոյն անուն անդրոյն
իգանդիոս՝ կամի նոյնացուցանել Է բիւզանդիոնի, գրե-
լով ոչ գիտեմ յորպիսի աւանդութենէ վն թագաւն բա-
բելայ ծերոյն և ձգ աշակերտաց նորա այսպէս. * Իսկ
„ հաւատացեալք ոմանք բարեպաշտք եկեալ 'ի գիշե-
„ րի, և զնշխարսն 'ի մակոյկ բարձեալ. 'ի բիւզանդիոն
„ բերին, և 'ի հիւսիսային կողման արտաքոյ պարսպաց
„ յերիս գիրս (կմ 'ի տապանակս) եդեալ. ուր է մա-
„ նի գիւղն մականուանեալ, փառս և օրհնութիւս այ
„ վերառաքեցին||. որ եթէ ունիցի ինչ հիմն, տակա-
ւին զկատարումն նոցա 'ի նիկոմիդիա ենթադրէ լինել,
և ոչ յանտիոք. թող զի չէ հաւանելի՝ թէ ծնօղք այն-
չափ բազմութեն սբց իսկևիսկ թողացուցեալ իցեն տալ
նել զմարմինս նց 'ի բիւզանդիոն. դուցէ յետ թողելոյ
մօտ առ եւրեանս յիգանդիոս՝ յետոյ փոխադրեալ իցեն
յայլևայլ տեղիս: Միով բանիւ. գանձ մեծ ընծայեալ
լինէր բովանդակեանց վկայաբանութիւս մեր, որ բառնայ
զնմ տարակոյս. և լոյս մեծ տայ ժմ քննչաց:

Այլ ինչ փոյթ կալցուք նշանակել զդուզնաքեայ տարբերու-
թիւնս ընթերցուածոց կրկին ճառընտրաց մերոց. այլ
մեք առաւել պահեցաք զշարագրութի Բ. ճառընտրին.
ուր և ուղիղ նշանակի կատարումն նոցա 'ի չորս սեպ-
տեմբերի, յորում տօնեն և յոյնք. իսկ 'ի Ճ. Ա. վրի-
պակաւ եդեալ էր 'ի ԻԵ սեպտեմբերի:

'Ի քանի մի նոր տօնացուցս (Ը լեհացւոց) զկնի բա-
բելայ ծերոյ և ձգ աշակերտաց նր գրի. * և սբյն յո-
հաննիսի (կմ յովհաննու) նոր մարտիրոսին||. որ ան-
ծանօթ է մեզ:

ՎԿԱ.



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբ ծերունւոյն Բարաղամու կամ Բարղամու անտիոքացւոյ։

Հ. Նոյեմբ. 22։ Յ. Նոյ. 16։ Լ. Նոյ. 19։
Ճառընտ. Ա. ծսլէ = ծիւղ. և Գ. ...ահէ = ...յէ։
Մեծն Բարսեղ. և Ոսկեբ. 'ի Ներբող Բարղամու։ (1)



ՀՐԱՇԱԼԻ ՆԱՀԱՏԱԿՆ և անպարտելի վկայն Քրիստոսի Սուրբ ծերունին Բարաղամ, (որ առ նախնիս մեր գրի Բարղամ, և յայլոց Բարղաամ կամ Բարլաամ,) առ համաձայնութեն երէց կոչման՝ որ է ըստ յունաց Բրեսբիւտերոս, ոչ միայն քահանայ, այլև եպս կարծեցաւ. բայց ըստ սորա տեսութեն էր այր ծեր, ռամիկ և շինական, բայց լի հաւատով, արդար և երկիւղած 'ի մնէ, փայլեալ ածպաշտութբ 'ի կողմանս անտիոքայ սահմանաց՝ յաւուրս հալածանաց նումերիանոսի կռապաշտ կայսեր հռովմայեցւոց. որոյ հրամանաւ եղև գալ անօրէն իշխանին պռիմիանոսի 'ի կողմանս կիլիկեցւոց, և 'ի մայրաքաղաքն երկրին ասորւոց 'ի մեծն անտիոք, առեալ զեպարքոսական իշխանութին նահանգին այնորիկ, քննել և մահուամբ դատա_

պար_

պահել զմիս և գտցէ անդ 'ի հատուցանե-
լոյն 'ի տր :

Արդ պատահեցաւ ըմբռնել արքայականացն նր ընդ այլ կալանաւորսն քրիստոնէից և զերանե-լին Բարղամ, և 'ի բանտ արգելուլ 'ի քաղա-քին անտիոքացւոց : Իսկ յետ աւուրց ինչ ա-պառում իշխանն հրապարակաւ նստեալ յա-տենի 'ի վն դատողական բեմի՝ ասէ ցաւա-ջինկայ զինուորսն , ածէք այսր զաղարտեալ ծերն զայն . և վաղվաղակի կացուցին առա-ջի նր զերանելին : Ասէ ցնա իշխանն . զի՞նչ անուն է քո : Նա պխնի ետ և ասէ . եթէ վն ճշմարիտ անուան իմոյ հարցանես , կա-տարեալ անունն իմ քրիստոնեայ է , որպէս և կոչիմ իսկ . այլ 'ի ծնողաց իմոց կոչեցայ
Բարղամ :

Իշխանն ասէ . բարւոք կոչեցաւ անուն քո Բարղամ . քանզի կարող է անունդ այդ հա-ւատարիմ զմեզ առնել , թէ անունդ և ծե-րութիւնդ հասակ 'ի բազում հաստուցանէ զքեզ յանդգնութն . ( զի թերևս յունարէն ստու-գաբանէր զանունն որդին ձաս լաս , կմ ծանր տար ) : Բարղամ ասէ . ես զանունն և զքաղա-քավարութիւ գեղեցկագոյն ունիմ , քանզի խոստովանիմ զքն ած յոյյ ծնեալ նախ քան զամ յաւիտեանս , և մարմնացեալ 'ի վերջին
աւուրս :

Բարկացաւ դատաւորն ընդ համարձակ խոս-տովանութն երանելւոյն , և ասէ . անզգամ ոչ հարցի զքեզ վն այդորիկ . այլ թուի ինձ , թէ իբրև տղայ անուղղայս բարբառիս ընդ ոչ

հա

հարցմանս, Թէպէտև ծեր իցես ։ Բարղամ ասէ. մի՛ բարկանար ինձ ով իշխան. քանզի սիրելով իմ զքեզ՝ զայդ ետու քեզ պատասխանի, Թէպէտև ոչ առի հրաման 'ի քէն ։ Դատաւորն ասէ. Ես ըստ իմ ստուգութիւն և ճշմարտութիւն կամիմ հարցանել զքեզ ըստ կարգի. քանզի և ամբոխս՝ որ շուրջ կան զմեօք, զճշմարիտ հարցուածն կամին լսել, և զքոյդ տեսանել զպատասխանումն ։ Յայնժամ և ամբոխն ասեն. աւասիկ եմք ամենեքեան 'ի լսել զբանս քո իբրև տուն ծերագունի առանց հակառակութեան. զի մեր կրօնքս բռնութիւն ոչ է ։

Իսկ դատաւորն ասէ. արդ պարտ է քեզ ըստ կարգի տալ պատասխանի, և ոչ նախադրաւ ձեռներէցութիւն բարբառել. և այսուհետև զխօսքն լիցի քեզ, զի եթէ արտաքոյ հարցուածոց իմոց տացես պատասխանի, չարաչար զկենցաղոյդ քո վախճանս ընկալցիս ։ Բարղամ ասէ. Ես ըստ իմ իրօք ցանկամ, զի և դու ճշմարտութիւն հարցցես, և ես ըստ իմ ստուգութիւն տաց քեզ պատասխանի. զի կամիմ և զհասեալ ամբոխս՝ և մանաւանդ զքրիստոնեայս՝ տեսօղս ինձ լինել. քանզի գիտեմ, եթէ զխօրդ յառաջադրեալ պատմեալ եղև քեզ 'ի չարախօսաց հակառակ ճոնապարհին քրիստոնէութեան. և կամիմ զքեզ հաւատարմացուցանել բատու- դութբ, Թէ որպէս իրաւացի են օրէնք մեր. և դատաւոր յայսմիկ լիցի հոգին քո ։ Բայց եթէ ճշմարտութեան լսօղ լինել կամիս, առաջին ճշմարտութիւն՝ խոստովանել զքեզ է. և ապա մաքուր քաղաքավարութեամբ կենցաղավար

ցես՝ զոր կամիս. քանզի ես ոչ միայն ՚ի ձեռն
ռակաւ տանջանաց, այլև բազմաց՝ հաւանե-
ցուցանեմ զքեզ, թէ արարածոց և ձեռա-
կերտաց երկիր ոչ պագանեմ: Պատասխանի
ասէ. կան և մնան քեզ պատուհասք. սա-
կայն յառաջիկայիս եկեսցուք մեք ամբոխիս՝
որ շուրջ զմեօք են. արդ ասա՛, որպէս հայր
որդի ընկալաւ, կամ երբ:

Թարգման ասէ. ոչ է հնար այնմ՝ որ յառաջ քան զյաւիտեանս էր, ընդ ժամանակաւ ստորանկիլ. զի ասէ, յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ. և զիա՞րդ յաղագս ա̃յ հարցանես, թէ որպէս կամ երբ: Իշխանն պրիմիանոս ասէ. ես քանզի լուայ ՚ի քէն, թէ ա̃ծն քո որդի ունի, մեք այնորիկ հարցի զքեզ՝ եթէ այս որպիսի իցէ. ապա թէ ոչ՝ ես ա̃ծոցն երկրպագանեմ, որպէս տեարքն իմ ինքնակալ թագաւորքն հրամայեցին. և կամիմ, զի և դու զնոյն արասցես. Թարգման ասէ. և ես կամելաւ ասացի, և այժմ դարձեալ զնոյն ասել քեզ ոչ հրաժարեմ, եթէ որդւոյն ա̃յ երկիր պագանեմ, այնմ՝ որ անժամանակաբար ծնեալ է. այլ զարարածս և զձեռագործս մարդկան ոչ երբէք կալայ առ ա̃ծ, և մի՛ այլ լիցի ունել, թէև զա̃մ փորոտիս իմ ՚ի բաց հանցես, և կամ զմարմինս իմ յօշ յօշ կոտորեսցես:

Պատասխանի ասէ. ոչ ես ներեմ քեզ մե̃ շաղփաղփութիւնդ քո և յամառ կամացդ, այլ չարաչար հարուածովք պատուհասեցից զանզգամութիւնդ քո, և [illegible] մա-

Ը չե-

չեցից զկարծրութիւն կզակաց քոց . զի հաւա-
նեալ կատարեսցես զկամս հրամանաց Ամե-
նակալ մերոյ Թ̃գ̃րաց . քանզի բանիւք ողո-
քանաց կամեցեալ իմ դարձուցանել զմիտս
քո յիմաստութիւն , և խնայելով 'ի ծերութիւն
քո՝ հարցափորձեցի զքեզ . այլ դու սաէզ-
մացեր 'ի քոյին մնացաւամիտ անզգամութեան :
Բարղամ ասէ . մի՛ բարկանար ինձ ո՛վ դա-
տաւոր , քանզի մարմնոյս իմոյ ունիս իշխա-
նութիւն դու . բայց հոգւոյս ա̃ծ ունի՝ արարիչն
համայնից . յոր հաւատացեալն եմ , և կամ
հաստատուն 'ի խոստովանութեան նո̃ր մինչև 'ի
վախճան , և ոչ երբէք զոհեցից դից քոց անսա-
տեաց , և ոչ երբէք երկիր պագից խուլ և
կոյր դիւաց . որք խաւարին տանջանաց մատ-
նեն զհոգիս այնոցիկ՝ որք մոլորեալ հաւա-
տան և երկրպագանեն նց̃ :

Ասէ դատաւորն . կարծես դու՝ թէ 'ի կար-
ճոյ զրաւեցից զքեզ 'ի կենացս . այլ ա̃ծ փո-
քու փոքու և առ սակաւ սակաւ խոշտանգե-
ցից զա̃մ անդամս մարմնոյ քո 'ի ցոյցս ամե-
նեցուն . և տեսցուք՝ եթէ օգնէ՞ քեզ որդին
ա̃յ քո , զոր դու ասես : Բարղամ ասէ . և՛
օգնեաց ինձ , և՛ օգնեսցէ . և ոչ թողացուցա-
նէ զիս հեռանալ 'ի կամաց նորա և 'ի սիրոյ , և
պաշտաման [illegible]ել ձեռագործաց մարդկան՝
[illegible] ձուլածոյ պատկերաց : Դա-
տաւորն ասէ . ահաւասիկ ածեմ 'ի վ̃ր քո
տանջանս չարաչարս՝ որոց ակն ոչ ունիս , ը̃ստ
քում անզգամութեան . զի 'ի ձեռն տանջա-
նաց հպատակ լիցիս ինքնակալացն , և զոհես-

ցես ածոցն ։

Բարդամ ասէ . ո՜վ իշխան , եթէ ոչ բարկա-
ցիս , ես զճշմարիտն յայտնի ասացից քեզ .
ստուգապէս՝ երկրպագուքն արարածոց ած
անուանելոց յիմարեալք են . վա զի ածն
ճշմարիտ յաւիտենական է . իսկ ձերոց ածոց
արարողքն գլխովին սնոտի են . Համառօտ
ժամանակաւ վախճանին . և զիա՞րդ աւ՛ի
սոցունց արարեալքն իցեն յաւիտեան ։

Յայնժամ սրտմտեալ դատաւորն՝ ասէ . Հա-
րէք զնա անխնայ կաշեօք անփեղթիւք , թ
արջառաջղօք (2) . զի դեն՝ որ ընդ դմա շրջի ,
Հաւանեցուսցէ մեզ ։ Իսկ բարդամ ասէ՝ի
տանջանս անդ . ասացի քեզ յառաջագոյն ,
թէ ես մի ած պաշտեմ , որ արար զամ , և
նմա երկրպագանեմ . վա՜յ ո՞չ երկնչիմ՝ի
սպառնալեաց քոց . զի առաջի աչաց իմոց ու-
նելով զերկիւղն այ՝ մնացից առանց սասանե-
լոյ . և ո՞չ միայն ես , այլև ամենեքեան՝ որ
օրհնացս և կրօնիցս այսոցիկ հետևեն ։

Պղոփիմիանոս իշխանն ասէ . զփորձ առե՛ր՝ի
ձեռն տանջանարանացդ ։ Բարդամ ասէ .
երդնում յորդին այ , զի ո՞չ զգացի քայլին տան-
ջանացդ , առաջի աչաց ունելով զածն իմ . և
առաւել քան Ե տանջանս՝ Ե անզգամութի
ձեր վշտագնեալ լինիմ . զի զկռեալս և զկո-
փեղս մարդկան ած անուանէք . վա՜յ ըղձամ
փութապէս ազատիլ յառաջիկայ կենցա-
ղոյս , և ո՞չ լսել զայդպիսիս՝ի բերանոյ
քումմէ ։

Դատաւորն ասէ . զի՞նչ ասես բարդամ . Հա-
ւա-

ւանեալ ինձ և զոհեալ. վն զի պատկառեմ 'ի պատուհական աւետաց քոց, և 'ի վայելուչ գեղոյ պատկերի քո. և խնայելով 'ի քեզ՝ կամիմ շատանալ տանջանօքդ, զոր ընկալար:
Բարղամ ասէ. ես տանջանացս բնաւ ոչ առի զգայութին. վն պատրաստ եմ տալ զմարմինս իմ 'ի տանջանս խստագոյնս, որչափ և ածես 'ի վր իմ. և հաւանեցուցանեմ զքեզ 'ի գործոց իմոց, թէ յայ հաւատամ, և դիմաց ոչ զոհեմ. զի սէրն քի ոչ թողացուցանէ զիս մեկնիլ 'ի նմանէ. և եթէ ոչ բարկանայիր, ասէի քեզ բանս համառօտս զմերմէ բարեպաշտութէ. ներեալ արդ երկայնմտաբար: Իշխանն ասէ. ասա զոր ունիս ասել. այլ ո՞ ոք յիմաստնոց ոչ գիտէ, եթէ բանք ձեր առասպելք են պառաւանց, և դուք սուտ հետևողք. սակայն ասա, գուցէ կարիցես քրիստոնեայ զիս առնել:
Բարղամ ասէ. ըղձամ առ այծ, զի ոչ դու միայն լինիցիս քրիստոնեայ, այլ և ամենեքեան՝ որ ասեն զհաստատեածս և զձեռակերտս այծ գոլ. զի զղջասցին և խոստովանեսցին զորդին այ ճշմարտապէս ծնեալ 'ի հօրէ: Այլ յաղագս իմոյ ճշմարիտ հաւատոյս առցես ստուգութին 'ի փորձոյ տանջանացդ, զի ոչ ինչ հնար է ինձ մեկնիլ 'ի քէ. ո՞չ և 'ի գրեանսն յայտ է, զի ասէ. ո՞ մեկնեսցէ զմեզ 'ի սիրոյն քի. նեղութին, թէ անձկութին, թէ սով, թէ մերկութին, թէ հալածանք, թէ վիշտք, թէ սուր:
Լուեցոյց զնա իշխանն, և ասէ. բազում ան-

դամ անտառացի քեզ՝ կարծելով, եթէ օգտա-կարագոյնս ինչ խօսեսցիս. այլ դու՛ք անուսումնութի՛ք ձերով զայդպիսիդ ցողանջել շաղփաղփէք ՚ի լսելիս անխմաստ և տգէտ մարդկան: Յայնժամ հրամայեաց առաջի-կայ զինուորացն բռունս հարկանել զերանել-ւոյն, և կախել գլխո՛ ՚ի վայր, և քերել զնա. և նք արարին զհրամայեալսն. մինչև քան-ցեալ մերկացան ամ մարմինք նր:

Եւ ապա ասէ բռնաւորն ցնա. արդ ցոյց մեզ, եթէ օգնէ՞ քեզ Աստուծն քո և հաւատքդ: Բարղամ ասէ. օգնեաց և օգնեսցէ. ո՛չ միայն ինձ, այլ և ամենեցուն՝ որ կան և մնան ՚ի խոստովանութեան յայսմ. քանզի սատա-նոր յայսմ Քի ընդունելութեան և պատուոյ արժանացին, և ՚ի հանդերձեալ յաւիտենին զարքայութիւն երկնից ժառանգեսցեն: Իշ-խանն ասէ ցսպասաւորսն. շատ է արդ. առ այժմ ՚ի բանտ արգելուլ հրամայեմ. զի ըն-դարապուսին սուեալ՝ հզօրեզապէս տանջե-ցից զդա: Բարղամ ասէ. և այժմ իսկ նոյն Աստուծն է՝ որ եղև ինձ օգնական. և յորժամ կամիցիս չարչարել, պատրաստ եմ ես. զի ո՛չ թողու զիս Աստուծ մեկնիլ ՚ի սիրոյ իւրմէ, և յանապատ բարեացն՝ որ կայ և մնայ յուսա-ցելոցս ՚ի նա: Եւ տարան զերանելին ՚ի բանտ.

Եւ յետ աւուրց սակաւուց դարձեալ նստեալ անօրէն իշխանն պախմանեաս ՚ի վեր բարձրա-գոյն բեմի ՚ի մէջ քաղաքին, և ամ ամբոխ քաղաքին շուրջ զնովաւ, հրամայեաց զեր-

ուն

ւմպայն ածել զերանելին Բարղամ զառա-
ջեաւ. եւ նշ՟ հանեալ ածին զնա կապանօք յատեան հրապարակին : Յայնժամ ասէ ցնա իշխանն. հաւանեցուցե՞ր զանձն քո ող-ջունել աստուծոյ ազատիլ 'ի մնացեալ տառապիկայս տանջանացն : Բարղամ ասէ. բազում ան-գամ լուար յինէն, եթէ ոչ եմ զառանցել յիմաստից, եւ ոչ զոհեմ դիւաց, եւ ոչ կա-րեմ ուրանալ զանձն իմ եւ արարածոց երկիր-պագանել. եւ այժմիկ զնոյն ասեմ քեզ ոչ զանգաղիմ. արդ արա փաղփաղակի՝ զոր ինչ եւ կամիս :

Իշխանն ասէ. կախեցէք եւ քերեցէք զդա երկաթի եղնգամբք. (այլք ընթեռնուն. քանցեցէք զեղնգունս դորա). զի դեռ չարն ոչ ըմբռնել է զդա, ելցէ 'ի դմանէ : Բար-ղամ ասէ. ես դեռ ոչ ունիմ. այլ եւ ոչ ամե-նեւին իմանամ զտանջանս քո : Իշխանն ասէ. արդ ձանձրացայ ես, եւ պաշտօնեայքդ իմ վաստակեալ 'ի բաց եղեն 'ի քէն, եւ դու ոչ հաւանիս. արդ տարածեսցի դա յոտիցն 'ի մէջ երկուց ծառոց եւ ձգտեսցի : Իսկ արա-րին զխնուճորդքն փաղփաղակի, ոմ՟ հրամայեաց բռնաւորն : Իսկ Բարղամ ասէ. ճշմարիտ ա-սեմ 'ի տն՟ իմ յս՟ քս՟, եթէ բնաւ ինչ ոչ թուեցան ինձ տանջանարանքդ մեքենաւոր հնարից քոց, ոյ՟ թեթեւացուցանելով ինձ զնոսա :

Դարձեալ ասէ իշխանն. զի՞նչ ասես բար-ղամ, զոհե՞ս եւ ազատիս, եթէ ոչ : Բար-ղամ ասէ. ոչ գիտես, եթէ զի՞նչ է ասելն

ք՟ի . վա՛յ ստէպ յեղյեղես զհարցուածս անարժանութեան ։ Իշխանն ասէ . Հաւանեա՛ ինձ . քանզի յերկար կախմանեդ փականքք բե-րանոյ քո թողացեալ են, և յօդք մարմնոյդ քակեալ են . վա՛յ խնայելով՝ ՚ի քեզ՝ ողորմիմ ալեաց քոց, և ողոքեմ զքեզ՝ զի զոհեսցես և ազատեսցիս ։ Նարղամ ասէ . ա՟վ իմով՝ որ յերկինս ունի զբնակութիւն, և յերկրի օգ-նական է նահատակաց իւրոց, ասեմ, ո՛չ ի-մացայ զտանջանսդ, և ո՛չ զոհեմ ապակա-նացուա՛ց սնոտեաց ա՟ծոց . զի գրեալ է այս-պէս, ա՟ծք՝ որ զերկինս և զերկիր ոչ արա-րին, կորիցեն ՚ի ներքոյ երկնից ։

Իշխանն ասէ . պարզեցէք զձեռս դորա, և ներքո՛յ դիք բագնին . և կնդրուկ արկէք ՚ի ձեռս դորա, և ջահ վառեալ մատուցէք (՚ի ներքոյ) . եթէ անշարժ մնասցէ ձեռն դո-րա, տեսցուք . ապա եթէ թափէ՝ զոր ինչ ՚ի ձեռինն է՝ առաջի բագնին, զոհեաց ։ Այլ արիագոյն զխոնարհն ք՟ի կայր՝ ՚ի վեր ուղղելով զձեռսն, հեռացուցանելով ՚ի բագ-նէն . և զաչս ՚ի յերկինս համբարձեալ ա-սէր . Ո՛եզ Հօրդ, և ք՟ի քո տաց զմարմինս իմ . հայեա՛ց հաշտ ակամբ ՚ի պատրաստ բնա-կութէ քումմէ ՚ի ցրուեալ և ՚ի վարատեալ ժողովուրդս քո, և զհեղումն արեան իմոյ ՚ի մաքրութիւն սոցա համարեա՛ ։ (3)

Այս այնպէս առաքինաբար ժուժկալեալ ե-րանելւոյն՝ ո՛չ արկ զկնդրուկն առ բագնովն . այլ ՚ի փառամանէ հրոյն ձեռքն ն՟ր առաւել հա-ւաքեալ և կծկեալ լինէր . քանզի տոչորեալ խո-

խորտակէր կայծակն զմարմին նոյ վկային, և զպարսն 'ի միասին 'ի միմեանս ժողովէր. մինչ չև ծակէր 'ի միւս կողմանէն ձեռքն (4). և այնպէս հանդուրժելով սիրովն որ առ Ած նահատակ փրկչին, աւանդեաց զհոգին, վկայեալ յամենանն նոյեմբերի իը, յամի ՏՆ 283, կամ 284, 'ի մեծն անտիոք յաւուրս նումերիանոսի Թգրի, յիշխանութեն պուպլիանոսի հիգեմոնի (դն դատաւորի), 'ի փառս անուան փրկչին մերոյ յն քի, և 'ի պայծառութիւն եկեղեցւոյ նորա նոյ:

Օ քաջ նահատակս զայս պանծալի գովութ̃ ներբողեցին նոքա բարսեղ 'ի կեսարիա, և նոքա ոսկեբերանն յանտիոք. յորոց 'ի բանից դոյզն մի ճաշակ տացուք վկայասիրաց 'ի կարգի ծանօթութեանց: (5)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Յերկուց նշանակեալ ճառընտրաց առաք զվկայաբանութիւն ողջոյն, զկրթնութիւն և զմթութիւն ինչ բառից և բանից ուղղելով ըստ մերում մտաց: Վերնագիրն էր 'ի Ա. * Վկայաբանութիւն սրբոյն բարղամու, որ ,, վկայեաց յանտիոք մայրաքաղաքն ասորւոց ||. Իսկ 'ի Բ. * Վկայաբանութիւն սրբոյն բարղամու անտիոքացւոյ. ,, նոյեմբ. իը ||. որ և զնոյն օր ամսոյ երկրորդէ 'ի ղախճանի. և այսմ ձայնակցին յայսմաւուրք ամ ազգաց, որք 'ի նոյեմբեր ամիս յիշատակեն զայս վկայ. միոյ մեկ- պարակ ճանուչք գրեալն 'ի Ճ. Ա. մն կատարման սրբոյն. * յամենայնն զեկանեմբերի, որ օր քաղն և ութ էր ամ- ,, սոյն ||:

Մեկուզն վկայաբանութիւն է Ը ճառընտրաց. * Իւ եղև ,, Է աւուրսն (կամ Է ժամանակսն) Է արքունիկ Թագա-

„ Զի՞նչ գտեր ով քաջ քո զօրականդ յորջորջեցից .
„ անգրի՞ կոչեցից . . . . եթէ երկաթի անուանեցից . . .
„ Այլ զի՞ է ինձ մանկականօք նուաստացուցանել զքաջն
„ Թոթովանօք . . . արքք ինձ արդ ով Տարատր կենդա_
„ նագիրք նախահատակական արուեստ, զզօրականիս խա_
„ Թարեմ պատկեր ձեռովք մեծացուցէք արհեստիւք:
„ զնանմագոյն զատ յինէն գծագրելս պատկեր՝ ձե_
„ րամբ իմաստուն պայծառազարդեցէք երանգօք . . .
„ գրեցէք 'ի տախտակի անդ և մրցանաց հանդիսա_
„ գիրն քո . որում փառք յաւիտեանս . ամէն ||:

Ուր ծանօթարարն յուլիանոս գառնիէր բեննեդիկտեան
ասէ . * Ոչ ով ժխտէ զայս ճառ լինել չքնաղ և պանծա_
„ լի . այլ թէ բարսղի՛ իցէ, եթէ ոսկեբերանի, մարթ
„ է ումեք երկբայել ||. և 'ի յառաջաբանական քննութեան
այսպէս սկսանի խօսել . * Այս ճառ ներբողենի բար_
„ զամու վկային՝ Թէոդէոսի հռոմաւոս, այլ այնչափ գե_
„ րապանծ և չքնաղ գտանի, մինչ զի հեղինակ նր՝ ով ոք
„ և իցէ, երևի արժանիք ունել զգերագոյն տեղի 'ի
„ մէջ հռետորաց ||. և 'ի մէջ բերեալ զայլևայլ կարծիս
քննչաց՝ յորոց ոմանք բարսղի, և ոմանք ոսկեբերանի
կամին ընծայել, ինքն ևս ջանայ սեպհականել ոսկեբե_
րանի. Այլ մեք ոչինչ բաւական պատճառ տեսանեմք
ժխտելոյ բարսղի զգործն՝ որ զանուն նր բարձեալ բե_
րէ 'ի սկզբանէ հետէ . Թող զի կայ առանձին ճառ ոս_
կեբերանի՝ որ ըն չառ միաբանի ԺԷ ամ:

Եւ ծաղրական թուի ենթադրութիւն այն կրիտիկոսաց
բազմաց, ոյք թէ 'ի դնել զայս ճառ լինել գործ բարսղի
զնել լի իցէ նախահատակութիւն բարսղամու 'ի կեսարիա կա_
պադովկացւոց ՃԼ. ուր այսպիսի հեռաւորութիւն ոչ բառ
նիքեան զօրէ, և ոչ 'ի ճառէ աստի քաղի. զոր եթէ 'ի
քաղաքի իւրում, և եթէ այլուր խօսեցեալ իցէ բարսղի,
չիք խափ . զի նկարագրէ զտեղի կատարման սրբոյն ա_
ռանց յիշելոյ որոշակի՝ ոչ քաղաքանութ անմնեցուն լի_
նել յանախիտ: Այլ մեք լռեսցուք և զգուշեսցուք սրբոյն,
զոր խօսեցաւ յանախիտ բերանն ոսկի:

Ի կարգի գործոց յոհ. ոսկեբերանի . տպ. յն. լտ . հատ.
Ժ . երես . 681 . կայ հարազատ ճառ նորա մակագրեալ.
* Ներբող 'ի սբ վկայն բարսղամ ||. և սկիզբն և ընթացք
նր է ճր օրինակիս ճր այսմիկ:

* Համախմբեաց զմեզ 'ի սրս այս յամենահոտողավ տօն ե_
„ րանելին բարսղամ. ոչ զի զնա գովանեսցուք, այլ զի
„ նորին նախանձաւոր լինիցիմք. ոչ զի լսելիք լիցուք
„ Ներ_

,, Եթէ ոչ շնորհն էր մտատկաց և զօրավիգն նախհաստա-
,, կին, և բնութեան պատկառութեան ուղղիչ. որ ոչ զեւրան
,, կրեաց յայսմ մասին, այլ ոչ անդամանդեայ բնաւո-
,, րեալ ձեռն այն՝ այնպէս անդառնալի մնայ...
,, Դիտակն ունէին 'ի վերուստ հրեշտակք, նայէին հրեշ-
,, տակապետք. պայծառ էր ասպարանն, և գեր 'ի վեր
,, տմին քան զմարդկեղէնս բնութեն. զի ո՞ ոք ոչ ցան-
,, կանայցէ արդեօք ասպանել զմարդ ծգնեալ, և ոչ
,, կրեալ զմարդկայինս. զնոյն ինքն զօհարան և զոհ և
,, քահանայ եղեալ. վայ և կրկին ծուխ 'ի վեր գիզա-
,, նայր, կնդրկի վառելոյ, և մարմնոյ հալելոյ. և էր
,, այս ծուխ ք զայն անխարժագոյն, և այս անուշահոտու-
,, թի քան զայն գերագոյն... Այրէր աչն, այլ ոչ փա-
,, զաղէր հոգին. վառնէր մարմինն, այլ ոչ ծախէր հա-
,, ւատքն... կայծակունք ը մէջ ձեռին ծակելոյ 'ի վայր
,, անկանէին, այլ արութե ոգւոյն ոչ կործան անկա-
,, նէր.....
,, Վայ և զձեռն 'ի գիրս սրբոց վկայեցնածաք, զի և 'ի սա-
,, սութէ աղջէք զյորդոր իմն առաքինութե, և 'ի նոյն
,, նախանձ վառեսցէք.... Ձի յորժամ ասպանիցես
,, զայր այսահար զդերեզմանաւ վկայէն անկեալ, և պա-
,, տառեալ ասէպ անձամբ զանձն, ոչ ինչ այլ, ք եթէ
,, զգլուխ չարին հատեալ ասպանես.... Ուսիր արդ
,, զմրցանս, զի յաղթութեան նմանող լինիցիս. (և այլ
,, խրատք պէտնչէլեք)...... զօրական ես քնի՝ սիրե-
,, լի, սպառազինեցիր, և մի պծնիր. նահատակ ես ա-
,, ռաքինի, այրացիր, մի զարդարիր: Այսպէս նմա-
,, նեսցուք սրբոց այսոցիկ. այսպէս պատուեսցուք զքաջա-
,, զպատկաւորս, զոր բարեկամս. և զնոյն ընթանալով
,, ը նա Ճանապարհ՝ նոյն պսակաց նոցին հասանիցեմք.
,, որոց լիցի մեզ ամենեցուն հանդիպել շնորհօք և մար-
,, դասիրութ ան մերոյ յնի քնի. ը որում հօր փառք՝
,, համանգերձ սբ հոգւովն, այժմ և միշտ և յաւիտեանս
,, յաւիտենից. ամէն ||:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբոյն Ստեփաննոսի հռովմայ հայրապետին, և քահանայիցն և սարկաւագացն և ժողովրդոցն ։

Հ. տոյ. 3 ։ Յ. Լ. օգոստ. 2 ։ և և Լ. յուլիս 26 . օգոստ. 1 . և 15 ։ և հոկտ. 31 ։ Բնաշխարհեան գեանն պատմ. 'ի Քր. հարց. օգոստ. էջ. 112 = 149 ։ Մետափր. առ Սուր. հատ. Ֆ. երես. 497 = 502 ։ Մնացորդս գրոցեր ։ Ռուինարտ յաղ. 259 . և այլք ։ (1)



ՊՍԱԿ ԵԿԵՂԵՑՒՈՅ սրբն Ստեփաննոս հռովմայ հայրապետ, որ ընդ հին վկայաբանի ճառընտրաց մերոց՝ ոչինչ նուազ էր ընդ աթոռոյն օրինակի նմանօղ երևեալ առաքինութեամբ և վկայութեամբն՝ պետրոսի գլխաւորի առաքելոցն, էր ազգաւ հռովմայեցի՝ որդի յուլիոսի (կամ յովլաիոսի, կամ յովլիոսի), սարկաւագապետ եղեւ երկուց որ քահանայապետաց՝ կոռնելիոսի և ղուկիոսի. որք յառաջ քան զկատարումն իւրեանց վկայական մահուանն՝ 'ի նա յանձնառարարին զնոյն խնչս եկեղեցւոյն ։ Այս առաջ ընտրեցաւ 'ի յաջորդութի զահերինցն յամի ՏՆ

Թ 253

253 կմ 254 · քսաներորդ երրորդ եպս · եղեւ
Հռովմայ զկնի սբյն պետրոսի ։

'Ի սկզբան քահանայապետութեն սորա՝ 'ի Մեծանիլ գաղղոսի եւ վոլուսիանոսի կռապաշտ կայսերաց թշնամեաց Հաւատոյ, յորժամ Նստաւ եմիղիանոս եռամսեայ ժամանակաւ, փոքր մի դադարեաց Հալածումն եկեղեցւոյ · եւ իբրեւ Նստաւ վաղերիանոս կայսր՝ աթոռակից ունելով զորդի իւր գաղենոս, զառաջինն իբրեւ զամս երիս խաղաղութբ էր ընդ քրիստոնեայս ։ Այլ եւ ստեփաննոս Հայրապետ դիւրաւ տնանկսէր զնմ խնամս 'ի վր Հօտին քի ընդ Հոգւոր եւ ընդ մարմնաւոր պիտոյից անդամ · եւ այն մինչեւ 'ի Հեռաւոր վայրս աստուց եւ արաբացւոց, ընդ վկայելոյ սբյն դիոնեսիոսի աղեքսանդրու Հայրապետի 'ի թղթի անդ իւրում առ սա ինքն ստեփաննոս · (որպ է տեսանել 'ի պատմութե եւսեբի կեսարացւոյ · է · 5 · եւ 10)։

Այլ զոր օրինակ զմօտաւորս բանիւ բերանոյ իւրոյ, նոյնպէս եւ զբացականս գրովք մխիթարէր եւ Հաստատէր 'ի ճանապարՀս ճշմարտութե · եւ զխոստովանեալսն գուն գործէր յուղղութի ձգել · յորոց սակի իբրեւ անուղղայ գտանէր զմարկիանոս արելատայ եպս 'ի գաղղիա զզառածեալն 'ի Հերձուածս նովատիանոսաց, 'ի բաց ընկենայր յաթոռոյն, եւ զայլ ոք 'ի տեղի նր կարգէր, ընդ բողոքարկութե թղթոց իմաստուն առաջնորդաց, ընդ որս եւ սբյն կիպրիանոսի եպսին կարքեդոնայ աֆրիկեցւոց ։ Իսկ զբասիլիդէս եւ զմար-

տիրապէս եպ̃սունս սպանիացւոց՝ որք մերժել էին յաթոռոց իւրեանց 'ի ձեռն եպ̃սաց Ֆրին երբեւ յանցաւորք , 'ի դիմել նց̃ առ նա եւ յարդարացուցանել զանձինս , եւ առաւել 'ի ցուցանել զզեղջ եւ զզարձ 'ի գործոց ինչ գայթակղութեան , հաստատեաց անդրէն յիւրաքանչիւր աթոռս . բայց քանզի գաւառականքն կացուցեալ էին զայլինս ոմն 'ի տեղի բասիլիդեայ , եւ զփելիքս 'ի տեղի մարտիաղէսի , եղեւ խռովութիւն 'ի միջի . եւ նոր ձեռնադրեալքն գնացին առ Տրն̃ կիպրիանոս , եւ 'ի նմանէ եւս առին հաստատութիւն բարեկալութեան իւրեանց , եւ անարժանութե անկելոցն . ոչ̃ թէ նք̃ սուտ զղջմամբ շահեալ իցեն զսիրտ ստեփաննոսի հայրապետին :

Բայց մինչեւ էր լուծեալ այս կնճիռն դժուարին ( որոյ կատարածն անյայտ է 'ի պատմութեց ) , յարեաւ այլ երկպառակութիւն մեծ յեկեղեցւոջ վս̃ խնդրոյ մկրտութեան հերետիկոսաց . քանզի Տրն̃ կիպրիանոս յափրիկէ , եւ մեծն փերմիլիանոս արքեպ̃ս կեսարու կապադովկացւոց յարեւելս , ձայնակից գտեալ իւքեանց զոչ սակաւս յեպ̃սաց ժամանակին՝ 'ի կենդանեաց եւ 'ի վախճանելոց , ասէին՝ թէ որոց միանգամ ընկալեալ իցէ զմկրտութիւն 'ի հերետիկոսաց կամ 'ի հերձուածոց արտաքոյ կաթուղիկէ եկեղեցւոյ , պայմանպիտան պարտ է վերստին մկրտել յեկեղեցւոջ ուղղափառաց : Իսկ յայս վիճաբանական կարծիս այնպէս հաստատեալ էր կիպրիանոս եւ մառեալ

դրեալ՝ ապաւինացաւ միանգամայն ը̃ բանի՛
առնել զորս միանգամ անլսօղ գտանիցին ա-
ռաքելական աւանդիցս ։

Ո՛ւանոր թուեցաւ այս բան հայրապետին ՚ի
լսելիս կիպրիանոսի և փերմելիանոսի , և
ևս քան զևս զայրացաւ երկպառակութիւն
աւելի ք̃ զամ մի ․ բայց յետոյ ը̃ մէջ մտեալ
Ս̃րն դիոնեսիոս աղեքսանդրացի և այլք յա-
ռաջնորդաց՝ հաւանեցուցին զՍ̃րն ստեփա-
նոս հռովմայ հայրապետ քաղցրութ̃բ առա-
քել զանգիտութ̃բ սխալեալսն , քան խստութ̃բ
յանդիմանել ․ և այնպէս լռութ̃բ խափա-
նեցան առաջիկայ չարիք պառակտման եկե-
ղեցւոյ ․ իսկ ողջամիտ վ̃պութի Ս̃րյն ստե-
փաննոսի վ̃ն անկրկնելի գոլոյ մկրտութե̃
ինքնին արմատացաւ յա̃մ եկեղեցիս ուղղա-
փառաց , և էանց ՚ի սահմանս յետագայ ժո-
ղովոց ։

Ընդ հանդարտիլ ներքին խռովութե̃ եկե-
ղեցւոյ՝ դարձեալ միւսանգամ յարեաւ ար-
տաքին խռովութի սաստիկ հալածանաց յե-
րեսաց հեթանոսաց ․ քանզի վաղերիանոս
արքայ հռովմայեցւոց՝ որ յառաջագոյն ոչինչ
հակառակ զինքն քրիստոնէից ցուցանէր ,
այլև կարի ևս սիրելի՝ խորամանկութ̃բ իւ-
րով , ապա պատրեալ ՚ի կախարդաց և ՚ի
քրմաց , ևս առաւել յիւրոց չարեացն դր-
դեալ՝ զոր կեղծաւորեալ ունէր , սկսաւ հա-
լածել զհաւատացեալս ք̃ի՝ զարս ս̃րս և
զարդարս ․ զի տայր ըմբռնել զն̃ս ը̃ ա̃մ տե-
ղիս , և խստամամբք և սպառնալեօք հրա-
պու-

պաւրել 'ի մոլորութենէ կռոց . և զորս ոչն անս-
նայէին անօրէն առաջարկութեան՝ դառն տան-
ջանօք կորուսանել հրամայէր ։

Յայնժամ երանելին ստեփաննոս հայրա-
պետն հռովմայ ժողովեալ զամ ուխտ եկե-
ղեցւոյն՝ ասէ . Եղբարք իմ , այս մի լիցի 'ի
ձէնջ ծածկեալ , զի 'ի ձեռն չրթանց բռնա-
ւորաց նոյն ինքն բանսարկուն խօսի , և ածէ
զքրիստոնեայս յանձողորմելի տանջանս և
պատիժս . և զոր ինչ հալածիչքն մոռացեալ
իցեն , դևն օրըստօրէ յուշ առնէ նց . նաև զմե-
ծութն և զփառս՝ որով յաղթինն ընդմք 'ի թուլա-
ցելոց , թելադրութն չարին առաջի արկանեն
բռնաւորք . այլ դուք ով սիրելիք իմ , մանա-
ւանդ թէ ըն աւետարանական քարոզութեն
և հոգևոր վերստին ծննդեանն՝ որդիք հա-
րազատք , եկայք 'ի բաց թօթափեսցուք զեր-
կրաւորս յերկիր , և թեթևացեալք հոգւով
վերաբերեսցուք յարքայութիւն երկնից . և
մի երկիցուք 'ի մարմնական տանջանացս՝ որ
առժամանակ մի է , այլ յայնմանէ՝ որ զհո-
գի և զմարմին տանջէ , որ յաւիտենականն է։
Յայնմ վայրի նք քահանայն բռնեաս ( այս է
պօնաա , որ 'ի բարբառ հռովմայեցւոց Բարբե
լսի ) եղև բերան բազմութեն , և փոխանակ
ամենեցուն ձայն բարձեալ ասէ . Մեք ով
տր վաղու ես 'ի բաց լքեալ թողաք զազգս
և զփառս և զմեծութի և զամ որ ինչ յմխս
էր . և յայսմհետէ՝ քոյ զօրացուցանելովդ .
մեզ՝ յօժարութբ հեղցուք զարիւնս մեր վն
անուանն նր , որ վն մեր մեղաւորացս եհեղ

զարիւնն իւր նր. միայն քո նր աղօթիւքդ և
քննաւէր վկայութեդ մի դադարէր առ 'ի հաս-
տատել զմեզ ։

Սայս երբև տեսացնա, ծմ դասք կղերիկո-
սացն աղաչեցին զքահանայապետն այ, զի
որք 'ի ժողովրդեանն անկատարք էին՝ ծծ յե-
րախայից կարգի, որոց և ուսեալ էր զկար-
դապետութիւն խորհրդածութե նր, կատար-
մանն և արժանի լինիցին մերոտին ծնըն-
դեանն սբյ աւազանին ։ Իսկ նր քահանայա-
պետն անյապաղ փութով հրամայեաց առ-
վաղիւն ժողովել զամենեսեան 'ի դեսնա-
յարկն նեպոտեան կոչեցել, և լուսաւորեաց
զնս նր մկրտութեբ՝ ազնիւ հարիւր և ութ. և
յաւել հաւատարիմ բանիւ վկայութե հաս-
տատել զնս, և օրհնեաց զնս. Իսկ 'ի միւ-
սում աւուրն՝ զորս կային պատրաստեալ
յընդունելութի ձեռնադրութե, ձեռնա-
դրեաց քհնյապետն այ, երիս քահանայս,
և եօթն սարկաւագունս, և այլ եւս արս մի-
տասան յայլ աստիճանս սպասաւորութե ։

Սկսի այսօրիկ և բազումք 'ի հեթանոսաց
ընտանեաց հռոմայ լինել զքարոզութե բա-
րեպաշտութե 'ի նր հայրապետէն ստեփան-
նոսէ՝ մկրտեցան 'ի նմանէ ։ Յորոց և այր մի
իշխանութե արիքուն կամ դեմարքոս, այն
է ժողովրդապետ կամ զօրապետ [2], նեմե-
սիոս անուն նր, առաջի եկեալ քահանայա-
պետին միամօր դստերբ իւրով՝ որում ա-
նունն էր ղուկիլլա, կոյր 'ի ծնէ՝ բաց ունե-
լով աչս առանց լուսոյ, խնդրէր զբժշկութե
և

եղև ծածկեալ 'ի զօրագլխաց անտի հաւատք նր̄ և մկրտութիւն և վերատեսչութիւն սարկաւագութեան. մինչև ծանուցանէին թագաւորին։ Յայնժամ կոչեաց թագաւորն զվաղերիոս(4) և զմաքսիմոս զօրագլուխս՝ որք առաքեալ էին մոլութեամբ կռոցն մարտի կմ̄ արեսի չ̄ոյն պատերազմաց, և հրամայեաց նց̄ երթալ ըմբռնել զնեմեսիոս. և նախ հարկանել զնա ապտակմամբ, և ապա ածել առաջի դատաւորական բեմին։

Իսկ նրն̄ նեմեսիոս ա̄ծային շնորհօք զօրացուցեալ զքրիստոնեայսն՝ բաշխէր նց̄ զինչս իւր ը̄ իւրաքանչիւր պիտոյից, և 'ի գիշերի միում յերթալն նր̄ ը̄ ճանապարհն, որ կոչիւր ապպիա, և 'ի բաշխել զսովորական աղօրմութիւն առ կարօտեալսն, իբրև մերձ եղև 'ի տաճար կռոցն արեսի, ետես զվաղերիոս և զմաքսիմոս, զի զոհս պղծութեան մատուցանէին կռոցն. և զօրացեալ ա̄ծային նախանձու ծունր եդ և խնդրեաց յա̄յ, զի ամբարիշտքն անդ՝ ուր զյանդգնութիւն կռապաշտութեան գործէին, պատժեսցին ը̄ անօրէնութեան իւրեանց՝ յահ և 'ի խրատ այլոց։ Եւ մինչդեռ աղօթք նորա 'ի շրթունսն էին՝ մանաւանդ թէ յերկինս, առժամայն կալաւ ըզմաքսիմոս դիւաց ապտակումն. որոց մտեալ 'ի նա՝ զարկուցանէին զգետնի և ըլկէին յոյժ. և գոչէր 'ի մոլեգնութեան անդ այսպէս. քրիստոնեայ ոմն անուն նեմեսիոս անցանէ արտաքոյ տաճարին, և աղօթիւք իւրովք կիզէ զիս. ժամանեցէք նմա, մինչև հեռացեալ է.

է . կալէք և ապտակեցէք զնա ։ Այլ առժա-
մայն պաշտօնեայք մեհենին ըմբռնեցին ըզ-
նա , և ի դիմացն խրատու ապտակեցին զե-
րանելին սարկաւագն . իսկ պիղծն Մաքսիմոս
խեղդեցաւ յայսոյն պղծոյ ։ (5)

Յայնժամ սպասաւորքն կալան զՏըննեմե-
տիոս , և ածին 'ի պալատն առ դատաւորն
կոչեցեալ Փաղերիոս կամ Փաղերիանոս . ( որ
Թոռն էր նա ինքն ընկեր Մաքսիմոսի , բայց յա-
մանց կարծի լինել ինքնին իսկ Թգրն ) . ո-
րոյ տեսեալ զնա՝ ասէ . Ընդէ՞ր արդեօք ի-
մաստութիւնդ քո անզգոյշ գտաւ , և որ 'ի
խորհրդականս ժողովարանին քսն զամենե-
սեան ընտիր էիր , արդ զանմտութի ընկա-
լար , և զածոց սէրն կորուսեր ատելութեդ-
առ նոսա . զիա՞րդ յայդպիսի մեծ անօրէնութի
և յանմտութի անկար՝ Թողուլ քեզ զածսն ,
զոր 'ի խանձարրոց պաշտեալ պատուէիր , և
երթալ զհետ պաշտաման՝ զոր ոչ են ծանու-
ցեալ առաջին հարքն քո ։ Բայց արդ յայսմ
հետէ՝ եթէ ոչ արագ դառնաս , ուստի ան-
կար , և սԹափիս 'ի խելագարութէ , փու-
Թապէս օրէնք դատաւորաց հասցէ 'ի վր քո ,
այն որ այդպիսի պաշտօնատարաց է պատ-
րաստեալ . զորոց և զդատաստանս դու ինք-
նին քաջ գիտես ։

Իսկ երանելին Նեմեսիոս զառաջինն ոչ ետ
նմա պխնի . զի յորժամ յիշատակեցաւ առա-
ջին մոլորութեին իւր , և ծնողացն որով նջ
'ի կռապաշտութե կորեան , յորդահոս ար-
տասուս հեղոյր . և ապա արգելեալ զարտա-

սուս

տուս իւր՝ ասէ. Այդ՝ զի զմոլորութիւն իմ իմաստութիւն կոչես ո՛վ դատաւոր, և յառաջ բերես զառաջին վարս ծնողաց իմոց կորուսելոց, և զիմն՝ որ յանգիտութեան մեղանչէի, և զբազում 'ի նոցին դատապարտեալ պատժէի, տայ ինձ լալ և կոծել. և այսու առաւել բորբոքիմ 'ի սէրն ք̃ի. քանզի գիտեմ, թէ նա է քաւութիւն առաջին ամբարշտութեան իմոյ: Իսկ արդ եթէ զառաջին ամբարշտութիւն այդքան ապաշաւեմ, որչափ ևս առաւել՝ յորժամ զճշմարտութիւն ընկալայ, զամ̃ վատթարութիւն և զանմտութեան խելագարութե իբրև մանգաղաւ 'ի բաց հատանեմ: Դարձեալ այս քեզ յայտնի լիցի, զի չի՛ք ինչ՝ որ բաժանել կարիցէ զիս 'ի սիրոյն ք̃ի, ո՛չ մեծութիւն, ո՛չ փառք, ո՛չ դատաւորաց սպառնալիք, և ո՛չ գործիք տանջանարանաց. զնոյն համարձակութ̃բ ասեմ՝ վստահացեալ 'ի զօրութիւն ք̃ի, և վ̃ն դստերն իմոյ՝ թէ ոչ ոք կարող է մեկնել զնա 'ի ք̃է. որովհետև մերկացաւ զխաւար հոգւոյ և մարմնոյ վերստին ծննդեամբն որ աւազանին 'ի ձեռն քահանայապետին մ̃յ ս̃յն ստեփաննոսի:

Զայս իբրև լուաւ բռնաւորն, անհնարին բարկութ̃բ լի եղեալ՝ ասէ. ո՛չ է մնացել առ իս, թէպէտև մարդասիրութ̃բ կամեցայ բերել առ քեզ, զի դու քոյին կախարդութ̃բ զզօրագլխակիցն մեր նախ տանջեցեր, զորհուրբական իմն ցաւօք լլկեալ, և տարաժամ մահուամբ զկեանս նորա բարձեր[6]. և այժմ հակառակ մերոյ դենիս զխոստութ̃. իմն հրահան-

հանդերձ՝ դժնդակագոյն ձայնս յառաջ բերելով ։ Յայնժամ հրաման ետ զինչս տանն նորին 'ի բաց կողոպտել, և զդուստր նորին մատնել 'ի ձեռս կնոջ՝ ուրումն անառակի և ամպարշտի մաքսիմոս կոչեցելոյ (Թերևս մաքսիմոսին պատուհասելոյ):

Նա ածել և զսերեպիոն ( ըստ այլոց՝ զսեմբրոնիոս ), որ էր մատակարար տանն նեմեսիոսի, և ետ զնա 'ի ձեռս ոլիմպիոսի տրիբունի, զի քննեսցէ զնա հաւատեաւ։ Իսկ ոլիմպիոս իբրև եառ յինքն զսերեպիոն, ասէ ցնա. երկուս իրս առաջի եդեալ է քեզ 'ի հրամանէ դատաւորին. զոր կամիս կատարեա՛ նախ քան 'ի տանջանս մտանել. կամ զինչս տանն քո զնեմեսիոսի 'ի մէջ ած, և կամ զոհեա՛ կռոցն։ Պատասխանի ետ սերեպիոն. զինչս տանն իմոյ ո՛վ դատաւոր՝ յառաջագոյն ժամանեալ Քրիստոս ընկալաւ. քանզի 'ի ձեռս աղքատաց բաշխեաց զամենայն ինչս տանն իւր. այլ զոհել փայտից և քարանց՝ աղօթս առնեմ զի մի և դու իսկ ինքն յանձն առնուցուս երբեք, և ո՛չ բնաւ այլ ոք, որ ստեղծուած և պատկեր է Աստուծոյ։

Յայնժամ ոլիմպիոս հրամայեաց սաստիկ հարկանել զնա բրօք ստուարօք, և քարշել 'ի մէջ երեսաց իւրոց, և ածել 'ի գարշելի տաճարն արեսի. և հրամայեաց նմա խնկօք զոհ մատուցանել ոսկիապատ կռոցն։ Իսկ երանելին վկայն Քրիստոսի սերեպիոն կացեալ յաղօթս՝ խնդրէր յԱստուծոյ ցուցանել զզօրութիւն իւր առ 'ի կործանումն դիւական պատկերացն. և

և

և առժամայն անկեալ կործանեցան կուռքն ։ Զոր տեսեալ ողիմպիոսի՝ 'ի հիացման եղեալ զարմացաւ յոյժ ընդ զօրութիւն քրիստոսի ։ և զվկայսն քրիստոսի զսերեպիոն տուեալ ցտերտիւղոս վերակացու տանն իւրոյ՝ ինքն փութանակի գնաց 'ի տուն իւր, և պատմեաց զսքանչելիսն կնոջ իւրում եքսուպերիայ, և որդւոյ իւրում թէոդուղոսի ։ Եւ որ եկաց զմիտս նոցա՝ իմանալ զճշմարիտն աստուած ։ վասնորոյ կոչեալ 'ի գիշերի զսուրբն սերեպիոն 'ի ներքսագոյն տուն մի առանձինն՝ սկսան խոստովանել զմոլորութիւն իւրեանց՝ որ յանգիտութենէ ։ և 'ի զղջման եղեալ լային դառնապէս, և յանձն առնուին ապաշխարել ։ միայն զի փրկութեան արժանասցին ։

Եւ ապա մտեալ ողիմպիոսի 'ի յարկն՝ ուր լցեալ կային կուռքն իւր զանազան զարդուք զարդարեալ, եհան արտաքս զամենայն, և եդ առաջի սերեպիոնի ։ և զնա կացուցանէր տէր ամենայն կենաց իւրոց ։ Իսկ նա զփայտեղէնս և զքարեղէնս և զխեցեղէնս 'ի կռոց հրամայէր ողիմպիոսի իւր իսկ ձեռօքն խորտակել, և զոսկեղէնսն և զարծաթեղէնսն հալել և մանրել և տալ աղքատաց ։ Եւ 'ի կատարել նորա արագապէս զամենայն հանդերձ ընտանեօքն, ձայն եղև յերկնից՝ որ յայտնի լսելի լինէր ընդ ամենայն տունն, զի ասէր ։ երանի է ձեզ, յայսմհետէ 'ի ձեզ հանգիցէ հոգի իմ ։ և զկատարեալն ընդունիցիք զփրկութիւն վերստին ծննդեամբն ։ Զոր լուեալ ողիմպիոսի և ընտանեաց նորա՝ առաւել հաստատե-

տեցան 'ի հաւատս . և աղաչէին զսերեպիոն ,
զի արժանասցին նք մկրտութե :

Իսկ սերեպիոն 'ի ձեռն հաւատարիմ արանց ծանուցանէ զայս ամ ուն իւրում նեմեսիոսի սարկաւագի , և նեմեսիոս՝ մեծի քահանայապետին ստեփաննոսի : Այլ նա ուրախութի լի եղեալ՝ առանց յապաղելոյ եկն 'ի տունն ողիմպիոսի . և տեսեալ զհաւատս նց և ըզփոյթն , և զխոնարհութիւն կուսին , վաղվաղակի մկրտեաց զնս , և որդեգրեաց հօրն երկնաւորի . ը նոսին և զամ բնակիչս տանն , որք արժանի եղեն լսել զերկնաւոր ձայնն հնչեալ 'ի տան անդ :

Այլ յորժամ այս գործեցաւ , զկնի երից աւուրց համբաւ հասանէր մն այսց իրաց առ վաղերիոս դատաւոր . և նա ծանուցանէր դադեանոսի թգրի որդւոյ վաղերիանոսի արքայի . իսկ նա հրամայէր զերանելին նեմեսիոս հանդերձ լուսաւորեալ դստերբն իւրով սպանանել : Արդ յորժմ տարան զերանելին 'ի տեղի սպանման՝ 'ի մէջ երկուց ճանապարհացն , որ կոչին ապպիայ և լատինայ , խորհուրդ առեալ անօրինաց՝ նախ զդուստր նր կամեցան սպանանել . քզի ասէին , եթէ յաղագս խանդաղատելոյ գթոյն խարշին աղիքն . թերևս յողոքանս դարձցի : Իսկ երանելին նեմեսիոս զմահ դստերն իւրոյ ևս առաւել մխիթարութի վարկանէր . վն և յորժամ ետես զնա սպանեալ , ցնծայր ուրախութի մեծաւ , և գոչէր ասելով . ընկալ քն զբանաւոր պատարագս՝ զոր յօժարութի
քեզ

քեզ մատուցանեմ զառաջին պտուղ որովայ-
նի իմոյ. Ընդ նմին օրինակի և զնա սպանին ՚ի
նմին տեղւոջ։ Զոր լուեալ մեծի քահա-
նայապետին ստեփաննոսի՝ եկն գիշերի, և
զնոր և զնահատակական մարմինս նց զսպեալ՝
եդ ՚ի պատշաճ տեղւոջ ՚ի ճանապարհի անդ
լատինայ՝ ոչ ինչ հեռի ՚ի քաղաքէն հռովմայ,
զարժանաւոր օրհնութիւս նոյ կատարելով ՚ի
վր նց ըստ մարտիւրոսական յարգի. և ՚ի գալ
առաւօտին գնայր ՚ի տեղի իւր։

Իսկ ՚ի վաղիւն անդր հրաման ետ բռնաւորն
վաղերիոս զերանելին սերեպիոն ածել առա-
ջի իւր. յայնժամ դահիճքն ըստ հրամանի դա-
տաւորին կապեցին զնա երկաթի կապանօք՝
մեքենայ ինչ եդեալ ՚ի պարանոցն. և այն-
պէս ածէին առաջի դատաւորական բեմին
վաղերիանոսի՝ յանդիման գաղեննոսի արքայի։
Երթայր զհետ բարեպաշտութէ վկային իւ-
րոյ և զինուորն քի ուլիմպիոս՝ հանդերձ
կնաւ իւրով եքսուբերիաւ, և որդւովն իւ-
րեանց թէոդուղոսիւ։

Այս երեքեան կացին առաջի, ասէ դատաւորն.
վս էր ՚ի փրկարար ածոցն մերոց ապստամ-
բեցիք, և զայլ ումն օտար քան զնոսա նա-
խապատիւ արարէք՝ երկրպագանելով նմ։
Իսկ երանելին սերեպիոն յառաջ մատու-
ցեալ՝ ասէ. մեք անարժան ինչ ո՛վ դատա-
ւոր ոչ գործեմք, այլ այնպիսեաց՝ որ իբրև ըզ-
քեզդ են. որք թողեալ զմիոյ և զճշմար-
տին այ զպաշտօն՝ երկրպագանէք դիւաց
պղծոց, և նոցին պատկերաց՝ որք կազմեալ
են

ձն 'ի փայտից և 'ի քարանց և 'ի խեցեղէն անօթոց ․ իսկ մեք ոչ կարեմք սեղանակապուտք լինել օրինաց և մերոյ փրկութեն , և զօրհնութիւն մեր պղծութբ կռոցն ապականել ․ և թողել զՃշմարիտն և զանսկիզբն և զմշտնջենաւորն ած՝ առժամայն եղելոցդ և արարդ կործանականացդ երկիրպագանել ․ քանզի ածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին , կորիցեն ։

Նու քանզի թգրն գաղենոս բարձրագոյն գահոյիւք նստէր յաթոռին , և 'ի ձեռն փղերիոսի դատաւորի կատարէր զդատաստանն , դարձաւ 'ի յոլիմպիոս , և ասէ ․ այլ դու որովհետև 'ի սկզբանէ և այսր հասու գտանիս լաւուն ածոցն , որ և զբազում առանց ցմեզ իսկ հարցանելոյ ածէիր 'ի պաշտօնս նց , այժմ ընդէր ոչ ճանաչես զնս ։ Ոլիմպիոս ասէ ․ ես զայն քաջ գիտեմ , զի բազում պղծութբ և աղտեղութբ զոհէի երբեմն անշնչոց , և պարտաւորէի և տանջէի զարս նոր և անմեղս , և պղծէի զոգիս իմ , և զայնոցիկ՝ որ ինձ լսէին ․ սորին աղագաւ հառաչանօք և արտասուօք պաղատիմ ձեզ , զի լուացէ և մաքրեսցէ զիս յառաջին աղտոյ մեղաց իմոց , որով դառնապէս աղտեղացուցի զիս անգիտութբ ։ Իսկ այժմ որովհետև գիտացի զՃշմարիտն ած , և 'ի նմանէ ողորմութիւն գտի , յայսմհետէ ո՞ր բան կամ զի՞նչ տանջանք կամ դառն մահ կարասցէ զիս մեկնել 'ի սիրոյ նորա , և դարձեալ յայնպիսի մեծի կորստեան արկանել ։

Յայն-

Յայնժամ Թգրն մրմռեալ իբրև զգազան վայրենի՝ խորհուրդ արար ը վաղերիոսի դաստաւորի, կամ ը վաղերիանոսի կայսեր, և վճիռ եհատ 'ի վ՟ր նց՟, զի կենդանւոյն այրեսցին. և արագ հրամանն կատարէր։ Արդ յորժամ արկան 'ի հուրն չորեքին քաջ զինուորքն քրի՝ սերեպիոսն, ոլիմպիոս, եքսուպերիա և Թէոդուղոս, սկսան փառաւորել զած, և ասէին. փառք քեզ զուգահաւասար երրորդութին որ, որ արժանի արարեր զմեզ՝ բոլորապտուղ քեզ ընծայել մատուցանել զանձինս ողջակէզ բանական՝ հրով կատարեալ. արդ ընկալ զոգիս մեր 'ի հոտ անուշից. և զայս ասացեալ՝ հատուցին զոգիսն։ Իսկ 'ի գալ գիշերին, երանելի քահանայապետն ոյ ստեփաննոս՝ որ միշտ իբրև անքուն ակամբ հոգայր վ՟ն հօտին քրի, առեալ արս երկիւղածս 'ի ժառանգաւորաց եկեղեցւոյն՝ եբարձ զմարմինս բարեյաղթ վկայիցն գաղտաբար. և զօրհնաւոր սրբաբանութեան կատարեալ՝ թաղեաց զնս մերձ 'ի տեղի ատենին և ամփիթէատրոնին, ուր կայր պատկեր արեգական, միով մղոնաւ հեռի 'ի Ճանապարհէն լատինայ։

Յետ այսորիկ ապա համօրէն իսկ հալածումն շարժեցաւ 'ի վ՟ր քրիստոնէիցն. և խնդրեցին զստեփաննոս զեպս՟ն և զամ՟ դասս կղերիկոսացն. և եթէ ոք զեկուսցէ, խնչս բազումս խոստանային։ Այլ յետ ոչ բազում աւուրց ըմբռնեալք արք երկոտասան 'ի նոյն կղերիկոսացն՝ սրով կատարեցան, պսակա-

ւորեալք 'ի քն . որոց անուանքն են այսոքիկ .
Բոնիսոս , փաւստոս , մաւրոս , պրիմիտիոս ( կմ պրիմիտիւոս ) , կամիոսիոս ( կմ կալումնիոսոս ) , յովհաննէս , եքսուպերանտիոս , կիւրեղղիոս ( որ և կիւրղոս ) , թէոդուղէոս ( կմ թէոդուղոսիոս ) , բասիլլիոս , բասսոս , կաստոս ։

Սոցա զճգնաւորական զմարմինս առեալ ոմն , որոյ անուն էր տերտիւղոս ( ըստ այլոց տերտուղղինոս ) կատարեալ հաւատովք , ամենայնիւ պատուով թաղեաց 'ի ճանապարհին լատինայ , ուր կատարեցան ևս 'ի ջրմուղս ։ Իսկ վկայասէրս այս տերտիւղոս էր մատակարար տանն ողիմպիոսի . որ և ը նովին լուսաւորեցաւ սբ. մկրտութն . և սպասաւորէր սբ. վկայիցն . յետ սակաւ աւուրց ապա և ինքն հետևեցաւ նց ։

Բղի եպարքոս ոմն յեպարքոսական դատուցն ( ըս ոմանց մարկոս անուն ) կալեալ զվկայասէրն տերտիւղոս՝ տարաւ ընդ առաջի վաղերիանոսի դատաւորի . զոր իբրև ետես թագաւորն՝ զդէմսն իւր այլայլեալ՝ ասէ ցնա . զինչս ողիմպիոսի տն քո կամօք քո 'ի բաց տուր աւանց տանջանաց և չարաչար լլկանաց ։ Տերտիւղոս ասէ . եթէ զինչս տն իմոյ ստուգապէս խնդրես , երանի է քեզ . միայն թէ կամիցիս զայն քեզ սեպհականացուցանել . քանզի այնպիսի գանձանակ է այն , զոր չէ հնար յայլ ումեք առնուլ , եթէ ոչ ինքնին անձին իւրում ոք ընձեռեսցէ . վս զի նա յերկինս ունի զանկողոպտելի գանձն 'ի ձեռն

աղքատաց բաշխելով զինչս իւր, և 'ի ձեռն հրոյ զինքն պատարագ մատուցանելով այ . և արդ դու ո՛վ դատաւոր՝ եթէ լուծանես զվիշտս տնանկաց, և փախչիս 'ի դիմաց դառ-չելի պաշտամանէն, առ ձեռն վաղվաղակի գտանիցես զգանձս տն իմոյ :

Յայնժամ կ՛ս առաւել բարկացեալ վաղե-րիոս՝ հրամայեաց դալար բրօք հարկանել զնա սաստիկ յոյժ : Իսկ նա առ ոչինչ համա-րելով զտանջանսն՝ մեծապէս ուրախութբ գոհանայր և փառաւորէր զած . և որչափ յաւելուին 'ի տանջանսն՝ կ՛ս առաւել սըր-տապնդէր արիանալով 'ի բարեպաշտութիւն : Իսկ ածամարտն և 'ի վն վիրացն հրամայէր ջահս լուցանել . բայց երանելին այնչափ ջեռեալ էր 'ի սէրն այ, և հոգւով սբվ զօ-րացեալ, մինչ զի և երեսք նր ոչ այլայլեցան . ուր բռնաւորն ոչինչ վիրաւորեալ՝ յանհնա-րինս տանջէր, յորժամ տեսանէր զանփոփո-խելի միտս վկային :

Ապա առաքէ զնա առ սպրիկիոս կմ սա-պրիկոս, որ էր Եպալզոս քաղաքին (7), զի 'ի ձեռն հնարից փորձեսցէ զնա, որպս զի 'ի ձեռն խոստմանց կամ տանջանաց զոհեսցէ կռոցն, և տացէ զինչս տն իւրոյ : Իսկ սա-պրիկոս նստեալ 'ի բարձր բեմի յանդիման ամ հրապարակին՝ սկսաւ հարցանել ցվկայն զանուն նր և զբախտ : Եւ նա պխնի ետ, և ասէ . եթէ զանուն իմ կամիս գիտել, քրիս-տոնեայ եմ . իսկ եթէ զբախտ, մեղաւոր ծառայ եմ ծառայիցն այ : Ապա դարձեալ

ե-

եպարքոսն . ծառա՞յ ես , եթէ ազատ ։ Ասէ երանելին . ասացի միանգամ , եթէ ծառայ եմ ծառայիցն Քի . արդ եթէ զյառաջագոյն պատասխանին 'ի միտ ունիցիս , երկրորդ հարցմանդ ընդէ՞ր է . ապա եթէ զառաջինն 'ի միտ ոչ ունիս , զուր ուրեմն փութաս կեղծաւորիլ ։ Սարգիկոս ասէ . զոհեա՛ կռոցն , և հաւա՛տ ինձ զինչս Տն քո . և 'ի բա՛ց մերժեա զքեզ 'ի տանջանաց , և փառաց և պատուո՛յ արժանաւոր լինիցիս ։ Իսկ երանելին քամահեաց զբանս նր՝ դևս կոչելով զդիս նց և մոլորեցուցիչս ։ Յայնժամ եպարքոսն զայրացեալ՝ հրամայեաց քարամբք ջախջա՛խել զբերան նր ։ Բայց նա առ ոչինչ համարելով և զայն ևս տանջանսն՝ գոհութիւն ևեթ մատուցանէր Քի յաղագս արժանի լինելոյ վն անուա՛ն նորա չարչարիլ ։ Իսկ ապա հրամայեաց բռնաւորն տարածել զնա 'ի վերայ պնայտի տանջանաց , և զ ջիղս նորա ստուա՛ր ջալատիւք ձաղկել , և հրով ևս խանձողել ։ Իսկ քաջ վկայն Քի և զայն ևս տանջանսն ծաղր արարեալ՝ և ո՛չ հայել անգամ 'ի բռնաւորն արժան համարէր ։ Իբրև ետես սարգիկոս զինքն յաղթեալ յերանելւոյն՝ ետ հատ 'ի վր նր վճիռ սրով սպանանել զնա . և առժամայն հատաւ գլուխ բարեյաղթ վկային Քի տերտիւղայ՝ յայնմ տեղւոջ , ուր մրն իւր երանելին ողիմպիոս իւրովքն կատարեցաւ 'ի Ճանապարհին լատինայ ։ Իսկ զմարմին նր Տր քահանայապետն Քի ստեփաննոս ըստ վկայական պատուի՛ն արժանաւոր կարգօք

զօք թաղեաց՝ ոչ հեռագոյն 'ի տեղւոջէ կատարմանն :

Յետ ոչ սակաւ աւուրց ըմբռնեցաւ և նոյն ինքն երանելին ստեփաննոս մեծ քահանայապետն ա̃յ, համանման գտեալ նախավկային իւրում անուանակցի, և նախաշաւիղ բազմաց առ երկնային պսակն. և որոց առաջնորդ եղև, նոցին և բարւոք յղարկաւոր՝ իբրև զանուշահոտ պատարագ ա̃յ մատուցանելով. ապա և ինքն հետևեաց զկնի հետոց նց̃ :

Արդ՝ իբրև ածաւ առաջի դատաւորականն բեմին վաղերիանոսի արքայի (8), և ը̃ նմա այլ բազմութիւք քահանայից և սարկաւագաց՝ հանդերձ այլ սպասաւորօք եկեղեցւոյն, հայեցեալ 'ի նա բռնաւորն լի ցասմամբ՝ ասէ. դո՛ւ ես ստեփաննոսն՝ որ շարժէիր ըզհռոմայեցւոց քաղաքս, և յա̃ծոցն սպասաւորութենէն 'ի բաց խոտորեցուցանէիր զժողովուրդս բազումս : Պ̃խնի ետ երանելի հայրապետն, և ասէ. ես ո՛վ թագաւոր՝ ոչ միայն թէ չշարժեմ զհռոմայեցւոց քաղաքս, այլև յարաժամ հաստատեմ. վ̃ն զի հանապազ պաղատանս մատուցանեմ՝ զշարժեալ խռովութիւս դիւական ամպարշտաց բառնալ. և ճանաչել ամենեցուն զմիայն ճշմարիտն ա̃ծ, և զորդի նր̃ միածին, և զհոգին նր̃ հաւասար հօր և որդւոյ. և զայս դաւանութիւս ոչ երբեք դադարեցի ամենեցուն յայտ յանդիմանն քարոզել, և այլ ոչ ևս դադարեմ. և յայսմ խոստովանութեան հաստատեալ :

տեսալ, թէպէտև բիւր մահս անցես 'ի վ՟ իմ, զմահ առանց դժուարութեան ընդունիմ : Յայնժամ ածամարտն վաղերիանոս հրամայեաց ածել զերանելին բռնութեամբ 'ի դարշելի տաճար կռոցն, և անդ բռնադատել, զի թերևս զոհեսցէ. ապա թէ՝ ոչ հաւանեսցի, որով բառնալ 'ի կենացս : Իսկ նա հայրապետն իբրև մերձեցաւ 'ի պատկերս կռոցն, ամբարձ զաչս իւր յերկինս, և 'ի լսելիս ամենեցուն աղօթէր այսպէս. Տէր ած իմ, որ 'ի քաղդանէ զաշտարակն խախտեցեր, և զորս միաբանութեամբ ամբարտաւանեալք ածամարտ լինել խորհէին՝ 'ի ձեռն խառնակման լեզուացն խափանեցեր 'ի գործոյ անտի, դու նոյն ինքն այժմ խափանեա՛ ըզ-դիւական մոլորութիւն կռապաշտութեան սոցա՝ յայտնելով զամենազօր զօրութի քո կործանմամբ կռոցն. որք ոչ միայն խորհրդով ամբարտաւանութեան ընդիմանան ամենազօրիդ, այլև յայտնապէս ածամարտ լինին, փոխանակ արարչիդ՝ արարածոց երկրպագանելով. արդ ամաչեցո՛ զնոս քոյին անքննելի իմաստութեամբդ. զի թերևս ծանիցեն զքեզ միայն Ճշմարիտդ ած :

Եւ մինչդեռ նա զայս աղօթէր, ձայն եղև ահագին որոտմանց, և թնդմունք սաստիկ շարժմամբ, և սարսափելի իմն փայլատակմունք հրացանութե. ուստի և մասն՛ տաճարի կռոցն շարժեալ կործանեցաւ հանդերձ դիւական արձանօք : Իսկ զինուորքն զարհուրեալք յահագին շարժմանէն՝ թողին զնա, և

և 'ի բաց փախեան ։

Յայնժամ բարեյաղթ վկայն Քնի Տր քահանայապետն անցեալ գնայր 'ի վկայարան սրբյն ղուկիանայ աշակերտուհւոյ առաքելոցն . և ժողովեալ զամ քրիստոնեայսն՝ որ էին 'ի քաղաքին, մխիթարէր զնս բանիւք բարեպաշտութեան, յոյժ առնելով նոցա զտրունական բանն . մի՛ երկնչիք ասէր յայնցանէ՝ որ զմարմին սպանանեն, և այլ աւելի ինչ ոչ կարեն առնել . այլ պա՛րտ է յայնմանէ երկնչիլ, որ զհոգի և զմարմին կորուսանէ 'ի գեհենի ։

Զայս և առաւել քան զսոյն խօսէր ընդ հօտն իւր . և անդէն 'ի տեղւոջն սկիզբն առնէր կատարել զխորհրդական պատարագն՝ համդերձ սպասաւորութեամբ սրբոց քահանայիցն և սարկաւագացն որ ընդ նմա էին . զի ոչ եթէ հոգելից վարդապետութեամբ միայն սրտապնդէր զաշակերտեալսն իւր, այլ և կենդանարար մարմնով և արեամբն յի քի սրբէր զանձն իւրաքանչիւրոցն, և հաստատէր 'ի հաւատս ։

Ազդ եղև այս ժմ յականջս վաղերիանոսի կայսեր . վյ հրամանաւ նր եկեալ զինուորս, բաց բազմաց սպառազինելոց՝ շրջապատեցին զտաճարն այ, յորժամ Տր հայրապետն զպատարագն մատուցանէր . և այնչափ աղաղակս հնչեցուցանէին շուրջանակի, և զսուսերսն շողացուցանէին, մինչև համարել նց՝ որ 'ի ներքս էին, թէ շարժի տաճարն այ ։ Իսկ երանելի քահանայապետն այ առ ոչինչ համարէր զձայն աղաղակին, այլ բոլորով սրբտիւ զՏր խորհուրդն կատարեալ՝ ճաշակէր ինքն,

յինքն, և բաշխէր ամենայն քրիստոնէիցն 'ի մեղ-
սաքաւիչ խորհրդոյն :

Այլ մինչդեռ չև ևս էր քաջ զխորհուրդն աւարտեալ, խորտակեցին զինուորքն զդրունս եկեղեցւոյն . և մտեալ 'ի ներքս՝ բարձին սուսերաւ զգլուխ սրբոյ հայրապետին . և անդէն խառնեցաւ վկայական արիւնն ընդ անապական արեանն քրիստոսի . որ և հրաշալի իմն խորհուրդ ցուցաւ հաւատացելոց, և մեծաց բարեաց առհաւատչեայք . քանզի յայտնի եղև ամենեցուն, եթէ որք վասն անուանն քրիստոսի չարչարանս և մահ ընդունին, ոչ միայն նման նորա լինելոց են, այլև ընդ նմա միանալոց են, ըստ ինքեան իսկ տեառն ձայնի, զոր ասէր առ հայր 'ի ժամանակի կենարար չարչարանացն, թէ որպէս դու հայր յիս, և ես 'ի քեզ, այսպէս և սոքա 'ի մեզ իցեն : (9)

Այլ յորժամ կատարեցաւ սուրբ այրն այն այսպիսի մահուամբ, թողեալ զինուորացն զայլ բազմութիւնն՝ 'ի բաց գնացին . քանզի վասն նորա միայն ունէին հրաման սպանմանն : Յայնժամ առեալ բազմութեանն զպատուական մարմին երանելւոյն՝ ողբերգական ձայնիւ լային զորբութիւն իւրեանց . և արարեալ նմա դիր արժանաւոր ընդ վկայական պատուոյն՝ թաղեցին զնա 'ի գետնայարկի նոյն վկայարանին ղուկինեայ ('ի տեղւոջն՝ որ յետոյ կոչեցաւ կիւմետրիոն, այսինքն ննջարան՝ կալլիստեան (10) . ) : Այլ փոխանակ նորա՝ կամօք ամենայն բազմութեանն և ընտրութեամբ հոգւոյն սրբոյ ձեռնադրեցաւ յաթոռ հայրապետութեանն հռով-

մայեցւոց Տերն քանատոս, որ էր Հռոմայատանս արժանաւոր սրբոյն ստեփաննոսի յաջորդութեան՝ վկայութեան և առաքինութեան :

Իսկ այր մի երանելի 'ի պաշտօնէից եկեղեցւոյ՝ տարսիկոս կամ Թարսիկիոս անուն՝ դաղտաբար սպասաւորէր Աստուածազգեաց մարմնոյ երանելւոյն ստեփաննոսի : Նա յետ սակաւ աւուրց անցանելոյ կատարման սրբոյն՝ խորհուրդ արարեալ կռապաշտիցն՝ կամէին 'ի բաց առնուլ զՏեառն մարմինն . ( ուր այլք իմանան զՏեառն խորհուրդ մարմնոյն Քրիստոսի (11), զոր տանէր ուրեք դաղտ տարսիկոս ) . և ըմբռնեալ զերանելին տարսիկոս՝ նեղէին զնա ցուցանել նմա . իսկ նա անարժան համարէր արկանել զպատուական մարգարիտն առաջի խոզիցն . և այնքան դժնդակ հարին զնա արիւնարբու կռապաշտքն բրօք, և քարամբք ջախջախեցին, մինչև առժամայն 'ի ձեռս նոցա նուաղեալ աւանդեաց զհոգին 'ի Քրիստոս . և եղեն սքանչելիք 'ի տեղւոջն . զի Թէպէտև մեռաւ, սակայն իբրև զկենդանի պահապան եղև սրբոյն ( կամ սրբութեան . զի ոչ այլոց՝ ոչ դտին զՏեառն խորհուրդն, որ էր 'ի ձեռին նորա ), ոչ տալով 'ի ձեռս անսրբոցն . քանզի ահագին արհաւիրք անկաւ 'ի վերայ անօրինացն, և Թողեալ 'ի բաց գնացին . իսկ վկայասէրք ոմանք 'ի քրիստոնէիցն զԱստուածազգեաց մարմինն տարսիկոսի առեալ Թաղեցին օրհնութեամբ յարժանաւոր տեղւոջ 'ի նմին վկայարանի .

Արդ այսպէս վկայեաց երանելին ստեփաննոս Հռովմայ հայրապետն 'ի չորրորդ ամի քահա-

Հայրապետութեան իւրոյ՝ յամի տն 257, Հան-
գերձ նախընթացայց և զուգընթացաց նահատա-
կակցօք իւրովք յամ̃ վիճակէ՝ եկեղեցակա-
նաց և Ճականաց · զորս ոչ յոյնք, նոյնպէս
և ամանք 'ի լատին վկայագրաց միահամուռ
յիշատակեն յօգոստոսի 2 · և յայսմաւուրք
մեր 'ի նոյեմբերի 3 ։ Իսկ 'ի վկայագիրն
հռովմէական կատարումն սորին ստեփաննո-
սի դնի յօգոստոսի 2 · և միով աւուրբ յա-
ռաջ քան զնա՝ նահատակութի ժէ քնէից
նորա · և վեց աւուրբք յառաջ՝ նր̃ 'ի յուլիսի
26 · կատարումն չորից վկայից հրով · այլ
յիշատակ նեմեսիոսի և դստեր նր̃՝ որք կա-
տարեցան յառաջ քան զայլս, լինի 'ի հոկ-
տեմբերի 31 · որ է օր փոխադրութե նշխա-
րաց նր̃ առ քսեստոսիւ, ուր և 'ի մեզ յայն
միջոց անկանի տօն սոցա ։

Իսկ նշխարք սորին ստեփաննոսի հայրապե-
տի, որք զառաջինն ամփոփեցան 'ի գետնա-
յարկ գամբարանի՝ սորին կալիստոսի ասա-
ցեալ, յորոյ վր̃ շինեալ է եկեղեցի սորին ստե-
փաննոսի, ընդ հարաւակողմն 'ի ճանա-
պարհին ապպեայ՝ երկու մղոնաւ հեռի 'ի
քաղաքէն հռովմայ, յետ ժամանակաց փո-
խադրեցան 'ի ներքս 'ի քաղաքն · քանզի յա-
ւուրս պատերազմաց ոտնահար լինէր յօտա-
րաց և գամբարանն այն վկայից · մանաւանդ
յութերորդ դարու յերեսաց լոնգոպարտաց-
ւոց իբր աւերակ էր դարձեալ, և ամայա-
ցեալ, նմին իրի քհնյապետն պօղոս առաջին՝
որ յաջորդեաց ստեփաննոսի երկրորդի յամի
757,

757, ետ շինել 'ի մէջ քաղաքին 'ի սեպհա-
կան տան իւրում նոր վանս և եկեղեցի 'ի
հիմանց՝ յանուն երկուց մեծանուն հայրա-
պետաց հռովմայ, այ՟ն սրբյն ստեփաննոսի ա-
ռաջնոյ, և սրբյն սեղբեստրոսի. որ այժմ
պարզանգ նորա սեղբեստրոս կոչի 'ի մարտեան
կամ յարեսեան դաշտի. և անդր փոխա-
դրեաց մեծաշուք հանդիսիւ զերկոցունց նց
զպատուական նշխարս ըստ երևելի մասին,
յամի 761։

Սակայն յետ անցանելոյ դարուց՝ յամի 1596,
յորժամ առ կղեմաւ ութերորդիւ նորոգե-
ցաւ 'ի հիմանց տաճարն այն, գտան նշխարք
սրբց հայրապետացս 'ի ներքոյ աւագ բեմին,
և դարձեալ անդանօր պատուով ամփոփե-
ցան. և պատուական գլուխք նց՝ սեղբես-
տրոսին ամբողջ, և ստեփաննոսին կիսամ-
բողջ, եդան 'ի զանազան գլխաձև անօթս
արծաթիս ճարտարագործս։ Բայց մասն
ինչ 'ի նշխարաց նրյն ստեփաննոսի՝ որ կայր
յաւագ բեմի եկեղեցւոյ նրյն սեբաստիա-
նոսի, ընդ և աթոռ նորա արիւնաներկ, փոխա-
դրեցաւ յամի 1700, 'ի պիզա քաղաք ետրու-
րիոյ յերկրին տոսկանայ. ուր կայր և կարգ-
ասպետաց յանուն սրբյն. Թող և զայլ մանր
նշխարս սփռեալս յայլ տեղիս. յորոց գոյր
և մասն տարեալ 'ի բիւզանդիա. ուստի միա-
անգամ ևս բերեալ եղև յարևմուտս։ Սակայն
զայսցանէ ճոխագոյն են բանք առ յիշատա-
կագիրս՝ հանդերձ պէսպէս սքանչելեօքն
նշխարաց նր հայրապետին ստեփաննոսի։

ԾԱ-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Սկիզբն պատմութեան սրբոյն Ստեփաննոսի Հռովմայ Հայրապետի յօրինեցաւ 'ի մէնջ ԺԹ քաղուածոյ եկեղեցական պատմագրաց. իսկ բուն վկայաբանութիւն է այն, զոր ունիմք 'ի մեծ Ճառընտիր մերում Թարգմանեալ 'ի յունէ 'ի ձեռն գրիգորի վկայասիրի. որ և արձանագրէ զայս յիշատակարան. * 'Ի շխթ Թուականութեան Հայոց (այն է ամ Տն 1100. հինգ ամօք յառաջ քան զմահ վկայասիրին), Թարգմանեցաւ պատմութիւն նր. հայրապետին Ստեփանոսի ||։

Խորագիրն էր. * Վկայութիւն սրբոյն Ստեփանոսի Հռովմայ • Հայրապետի, և որք ընդ նմա վկայեցին ||. և սկիզբն. * 'Ի ժամանակին յայնմիկ առեալ զիշխանութիւն Հռով֊ • մայեցւոց՝ վաղերիանոսի հանդերձ գաղղիոսիւ (որ • յընթացս գրի գաղղինոս) որդւով իւրով, զառաջինն • ոչինչ հակառակ զինքն քրիստոնէից ցուցանէր, այլև • կարի եւս սիրելի՝ խորամանկութբ իւրով. ապա պատ֊ • րեալ 'ի կախարդաց || ևն։ Եւ կատարածն. * Արդ • այսպէս վկայեաց երանելին Ստեփանոս՝ քահանայա֊ • կան և մարտիրոսական արժանաւորութբն Ճոխացեալ. • որ ոչ թէ միայն զինքն արժանաւոր պատարագ մա֊ • տոյց Այ, այլև 'ի ձեռն վարդապետական բանի զբազումս • ընծայեաց Այ 'ի կենդանութեան իւրում և զկնի մահ֊ • ուանն. որ և զյիշատակս նր յօր կատարման նր տօ֊ • նեմն առ բազմութիւնսն հռովմայեցւոց, և առ նմին՝ որք • 'ի ձեռն նր ընծայեցան՝ 'ի փառս ամենասուրբ երրորդու֊ • թեան յաւիտեանս յաւիտենից, ամէն ||։

Զայսոսիկ նշանակեմք 'ի յայտ առնել՝ թէ այլ օրինակ է, բայց ոչ առաւել վաւերական քան զմերս զայս՝ այն, զոր Լատիններէն գտեալ պոսքիոսի բոլլանդեան 'ի հին մագաղաթեայ մատենի, և բաղդատեալ ընդ այլ ձեռա֊ գիրս և տպագիրս, յառաջ բերէ՝ կէս մի հատուածով և կէս մի անհատուածով։ Թողեալ զվերնագիրն՝ որ չէ միօրինակ, կամ է անվերնագիր, սկիզբն առնէ այսպէս. * 'Ի ժամանակս վաղերիանոսի և գաղղիենոսի բազումք • 'ի քրիստոնէից խոյս տուեալ 'ի դժնդակութենէ բռնա֊ • ւորաց՝ թաքչէին. իսկ այլք զանձինս յառաջ մատու֊ • ցեալ՝

„ Թէ, զմաքսիմոս սպանէր քոյին կախարդական ար-
„ հեստիւք ||:

(7) Այս ձև բանից Ծ. եպարքոս ոմն յեպարքոսական դասուց, գեղեցիկ ուղղագրէ զլատին օրինակն. ուր բացարձակ Բուէֆէկտուս գնի ՚ի նշանակ քաղաքապետի. վն չհաւանելն քննիչք, զի յայնժամ զայն իշխանութիւն ունէր ասեն այլ ոք: ՚ի դէպ գայ այսմ և ԺՀանուր ձև բանից սբյն կիպրիանոսի ՚ի Նաւուղին. ՅԷ. գրեալ յամի 258. առ սուկեսոս. * Այսմ համաձայնաց զօր համապատ-
„ ուշ ունէին եպարքոսք (բռէֆէկտի) ՚ի քաղաքին հռով-
„ մայ. զի թէ ոք բերցի առ նա || են. յորմէ յայտ է թէ պէսպէս եպարքոսք կմ բռէֆէկտի լինէին՝ բաց ՚ի բուն քաղաքապետէ: Աղամտ է մերս ընթերցուած և ՚ի գծուծարութէ անտի, զոր նշմարեն այլք ՚ի լտ. վն քահանայանալոյ տերտուլիանոսի կմ տերտուլինոսի:

(8) Յայսմ վայրի ևս՝ գտաւոր գրեալ էր ՚ի Ծ. այլ հետևեցաք լատին ընթերցուածոյ՝ գնելով թագաւոր, որպ գնէ յայտնապէս և Հ. Մէկսիէռն Ե՛ զի ուղերիանոս և Է՛ զի աւրեղիանոս գրէ՝ փոխ գրելոյ ուաղերիանոս կմ վաղերիանոս:

(9) Զայս վայելուչ խորհրդածութիւն Ծ. զոր պահէ և Հ. ոչ ունի լտ. այլ Է հակառակն և զպարագայ պատմութեան փոխէ, որպ թէ ՚ի նստիլ ՚ի վր աթոռոյ և կմ առընթեր աթոռոյ գլխատեալ իցէ սբ հայրապետն. և այն աթոռ արիւնաներկ ասէ թաղեցաւ Է մարմնոյ սբյն ՚ի գետնափոր գամբարանս. զոր այսպէս պարտ է մտաբանել Է ընթերցուածոյս մերում. իբր զի առմորութիւն է հայրապետաց հռովմայ ՚ի հանդիսաւոր պատարագի առնել զճաշակումն ՚ի վր աթոռոյ կմ առընթեր աթոռոյ՝ ՚ի բերել զնմանութիւն տէրունեան ընթրեաց:

(10) Զկայլիստեան գամբարանի անունն ՚ի փոխ առաք ՚ի լատին օրինակէ. որ է նշանակ՝ թէ է բացատրութիւն յաւելեալ զկնի դարուց, որպ յայտ է ՚ի քննչաց:

(11) Թէպէտև կարգ պատմութեան ՚ի դէպ գայ մարմնոյ սբյն ստեփաննոսի Ը Ծ. բայց սոյգ ևս երեւի ընթերցուածն լատինական համադիսացեալ ՚ի վկայագիրն հռովմէական յօգոստ. 15. որոյ և նշմարանք կան ՚ի սաղն ընծայեալ դամասոսի պապին. և զնոյն պահէ նաև Յ. բս: Արդ լատին օրինակն ունի աստ այսպէս: * Իսկ ՚ի միւսում աւուր դտին զօրականք հեթանոսաց
• զպաշտօնեայն Թարսիկիոս անուն, որ բարձեալ տա-
• նէր զքնի մարմնոյն զխորհուրդ. զոր կալեալ հեթա-
• նո-

« նոցա՝ զննելին, զի ցուցցէ՝ թէ զինչ ունի. բայց
« նր անարժան համարել խոզից մատնել զմարգարիտս՝
« ոչ իշխէր յանձն էառ մատնել զնա խորհուրդս. զոր
« բրօք և քարամբք այնչափ խոշտանգեցին, մինչև փշել
« զոգին. և շրջշրջեալ զանշունչ մարմին նր՝ ոչինչ կա-
« րացին գտանել 'ի ձեռս նր և 'ի հանդերձս սեղանա-
« կապուտ խուզողքն. և թողեալ զմարմին նորա՝ անհե՛
« փախեան ||։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Ակեփսիմեայ եպսի, և Յովսեփայ քահանայի, և Այիթալայ սարկաւագի ։

Հ. նոյ. 4 ։ Յ. և Ասոր. նոյ. 3 ։ Լ. ապր. 22 ։ Ճառընտ. Ա. խԲ = Է ։ Սբն ճարտասնեա ա-սորէք. Եւոդիոսի Ասսեմանեայ. հատն. Ա. երես. 168 = 210 ։ Սուրիոսն. Բ. 10 ։ Բոլլանդեանն Հենսքենիոս 'ի Գ. հատ. ապր. եՂ. 19 = 29. և դարձեալ. Գ = Է. 'ի Մարտիրոլոգիոնն ։ (1)



ՍՈՒՐԲ ՆԱՀԱՏԱԿՔՆ քաջայաղթ վկայք մեծամեծք՝ 'ի խոր ծերութե արիական նահատակք՝ եկին յԱծէն պարսից 'ի հալածանս շապհոյ կամ սաբիւռոսի արքայի երկայնակեաց կոչեցելոյ ։ Սրբն Ակեփսիմաս (2) եպսն հոնիտայ քաղաքի ասորեստանեայց՝ Էր արքեպսուն աղիաբենաց, եր 'ի գեղջէն փա-

փակայ (3) , ալեւոր պատուական՝ անցեալ զութսունամենիւք • բայց ժիր և առողջ մարմնով , և փառացի անձամբ , յազնուական ծնողաց սերեալ • ողորմած առ աղքատս , յանձանձիչ և ապաւէն կարօտելոց ։ Նու ածային շնորհօք՝ որ բնակեալ էր ՚ի նմ, բազումք ՚ի հեթանոսաց դառնային առ ած ՚ի ձեռն վկայութե նր և անբիծ և ճշմարիտ քաղաքավարութեն • քանզի էր բանիւ կատարեալ , և հոգւով լցեալ • և հանապազորդէր յածայինսն մշտամռունչ աղօթիւք • և ճնշէր զմարմին իւր պահօք՝ որ բնութե էր թանձրամիս • և ունէր շնորհս արտասուաց , որովք թանայր զերկիր յաղօթել իւրում ։ Իսկ ՚նքն յովսէփ քահանայ՝ էր երեց գեղջն բեթկաթուբայ ՚ի գաւառին ադիաբենաց , ծերունի եօթանասնամեայ , երկիւղած յայ և քաջ նախանձաւոր փառաց ան , պատկառելի յաչս ամենեցուն վս առաքինի և իմաստուն քաղաքավարութե իւրոյ ։ Նու ՚նքն այնթալաս սարկաւագ՝ էր ՚ի գաւառէն բեթնուհադրայ , կամ ՚ի քաղաքէն նահարդայ (որ ասի լինել յերկրին բաբելացւոց առ եփրատաւ ) , այր ծեր՝ անցեալ զվաթսնամենիւք , ճարտար ՚ի բանս և հզօր ՚ի պնդնատուութիս • միանգամայն և պարկեշտ և շնորհալի անձամբ՝ սիրելի ամենեցուն , և վառեալ ՚ի սէրն քի ։

Արդ ՚ի բորբոքիլ միւսանգամ հալածանացն շապհոյ ՚ըդէմ քրիստոնէից՝ մօտ ՚ի վերջին ամս թգրութե նորա , զոր ՚նքն մարութա

առաջնորդ վկայաբանութեան կոչէ երեսնե-
րորդ. եօթներորդ ամ հալածանաց մերոց,
յայնմ ժամանակի հոտապետք և առաջ-
նորդք հաւատացելոց համարձակութ̄ և ա-
ներկիւղ պաշտէին զքրիստոնէութիւն . և ոչ
թաքուցանէին զանձինս յերեսաց սպառնա-
լեաց մոգաց և մոգպետաց , որոց առեալ էր
իշխանութիւն պատել զնս̄ մահուամբ : Ա̄յ
յաճախէին զնոցանէ ամբաստանութիւք առ-
դատաւորս , եթէ ա̄մ փոյթ նց̄ բերի 'ի դե-
րև հանել զդենն պարսկական . քանզի զմի
և եթ ա̄ծ ուսուցանեն պաշտել , և ոչ երկիր
պագանել արեգական և հրոյ . զջուր պղծեն՝
լուանալով զաղտեղի իւրս . արգելուն կա-
նայս առնուլ և որդիս ծնանել , զինուո́րել
արքայի , և սպանանել զոք . ուր զանասունս
անխտիր թողացուցանեն զենուլ , և 'ի հող
թաղել զգիակունս մարդկան . և զա̄մ զե-
ռուն և զսողուն չնասակար՝ 'ի բարերարէն
ա̄յ ստեղծեալ ասեն , և ոչ 'ի սատանայէ . և
զյոլովս պատրանօք ձգեն՝ նաև յարքունի
սպասաւորաց՝ 'ի կախարդասար վ̄դպութիւս
իւրեանց , զոր ինքեանք գիրս սրբս անուա-
նեն :

Այսպիսի բանիւք եւս քան զեւս բորբոքեալ
դատաւորաց ընդդէմ գլխաւորայն քրիստո-
նէից՝ արձակեցին զինուո́րս արքունի հրա-
մանաւ ունել զնս̄ . ը̄ն որս և զո̄բ եպ̄ն ակեփ-
սիմաս : Այլ նախ քան զգալուստ զինուո́-
րացն առ նա , 'ի միում յաւուրցն դէպ եղև
մանկան միոյ՝ որ էր մի յեղբարց , ք̄ 'ի միա-

ձանց կի̃ 'ի պաշտօնէից եպ̃սարանին , և անուն նր̃ պապ , մաքրել զգլուխ ակեփսիմեայ սանտրով (4) . և անդէն համբուրեալ զգագաթն նր̃՝ ասէ . ո՛վ երանելի գլուխս , որ 'ի ձեռն վկայութեան քն̃ի կատարելոց է ։ Իսկ եպ̃սն ակեփսիմաս ողջագուրեաց զպապ , և ասէ . իցէ՛ թէ կատարեսցի ո՛րդեակ գուշակութի̃ քո . զի հաճեսցի ա̃ծ ը̃ունելի առնել զքանդ , և պարգևել ինձ զայնպիսի բարեմասնութի̃ ։

Նստէր անդ ը̃ ակեփսիմեայ և այլ ոմն եպիսկոպոս . որոյ ժպտեալ ասէ ցպապ . որովհետև գուշակ հանդերձելոց իրաց եղեր 'ի միջի մերում , ա՛ղէ ասա՛ և զոր ինչ անցք ը̃ իս անցանելոց իցեն . և նա ասէ . և դու 'ի մտանելն 'ի գաւառն խառան՝ զձպ̃հոյն փախձանիս (5) ։ Իսկ կատարեցաւ բան մանկանն 'ի վր̃ երկոցունց . զի եպ̃սն այն մեռաւ 'ի ձպ̃հորդութե̃ իւրում . և երանելին ակեփսիմաս եպ̃ս 'ի նոյն աւուրս ըմբռնեցաւ 'ի հալածչաց , և կապեալ երկաթի կապանօք ձգեցաւ յատեան ։

Իսկ մինչդեռ գայր անցանէր ը̃ դրունս տան իւրոյ , ոմն յայնցանէ՝ որ ը̃ նմա էին , ասէ ցնա . ո՛վ երանելդ̃ 'ի վկայս՝ ահաւասիկ մերձեալ է ժամանակ ելից քոց . պատուիրեա՛ վն̃ տան քո և ընչից քոց , զի մի՛ աւար հարկանիցեն . Իսկ նր̃ տարածել զձեռս 'ի վե՛ր՝ ասէ . տունս այս ո՛չ է տուն իմ , և ժառանգութիւնս այս ո՛չ է իմ ժառանգութիւն , այլ տուն իմ և ժառանգութի̃ իմ քն̃ է . զի ո՛չ

ոք

սիրեցի զոք բաց ՚ի նմանէ ։

Արդ՝ առեալ տարան զինուորքն զերանելի եպսկն ՚ի քաղաքն արբիլ, որ և արբէղայ. և կացուցին առաջի մոգպետին, որոյ անուն էր ադրաքուսիթ կիմ ատրքուրքաշար նախարար (6). և նա եհարց զնա մեղմով, և ասէ. քրիստոնեա՞յ ես ։ Պտնի ետ եպսն ձայնիւ մեծաւ, և ասէ. քրիստոնեայ եմ, և երկիրպագանեմ միոյ և ճշմարտին այ՝ հօր և որդւոյ նր, և հոգւոյն նր սբյ ։ Ասէ մոգպետն. ապա ուրեմն ճշմարիտ են ասացեալքն վն քո, զոր լուա՛յ, եթէ ուսուցանես զմարդիկ հակառակ կալ օրինաց մերոց, և արհամարհել զհրաման արքայից արքայի ։

Ակեփսիմաս ասէ. զոր միանգամ պատմեալ են քեզ զայդպիսիսդ զամ վն իմ, արդարև այդպէս են. զի զմի ած ճշմարիտ քարոզեմ մարդկան, և խրատեմ զի զղջասցին և դարձցին առ նա ՚ի չար ճանապարհաց իւրեանց՝ առնել զհաճոյս նր յամ ժամ, ոք և զխարդ-դրեալ է յածապատուամ կտակարանս մեր ։ Մոգպետն ասէ. լուա՛յ ես վն քո, թէ այր իմաստուն ես դու. և տեսանեմ զքեզ այր լի աւուրբք և կատարեալ ամի՛. և զիա՞րդ ոք մանուկ մոլորեալ՝ ոչ երկիրպագանես արեգական, և ոչ պատուե՛ս զհուր և զջուր (7), որ պատուեն և պաշտեն զնս թագաւորք պարսից և ամ արևելից ։ Ա. եպսն ակեփսիմաս ասէ. թագաւոր յիմարութն լցեալ է երկիրս պարսից. զի թողեալ զարարիչն իւրեանց զած՝ երկիրպագանեն արարածոց

նդ՟ . քանզի դուք նախ մոլորեցայք , և մոլո-
րեցուցիք զայլս չար և անօրէն վ՟դ՟պութ՟բ
ձերով՝ ՚ի թիւր արկեալ ա՟ծս բազումս , որ
են արարածք միոյ արարչի . և ն՟ր մշտնջենա-
ւոր զօրութ՟բ և վերին տեսչութ՟բ հաստե-
ցաւ Յս ա՟մ մասամբք իւրովք ՚ի սկզբանէ ,
և նովին տնօրինեալ լինի ա՟մն յամ ժամա-
նակի :

Սաստեաց ՚ի նա մոգպետն , և ասէ . ով չա-
րագլուխ ծեր և արժանի կորստեան , չար
և անօրէ՞ն կոչես զճշմարիտ ուսումն մեր ,
որով ՚ի հաստատութե կայ ա՟մայ այսպիսի
թ՟գ՟րութի յաղթական ա՟մ թ՟գ՟րութեց որ ՚ի
վ՟ր երկրի : Ասէ եպ՟սն . զո՞ր ուղղու՟ն ունի-
ցի ուսումն ձեր , որ ահաւասիկ ուրանայ
զճշմարտութի՟ն , և համարի թէ յարարածս և
՚ի ստացուածս կայցէ լինել բնութի՝ ա՟ծայնն
պաշտաման և երկրպագութե արժանաւոր .
և զանշունչ տարերս խոստովանի իշխան բնա-
նաւորաց , և անօրէն ա՟մն՝ որ գործին յծ՟ի :
Մոգպետն ասէ . առժամայս թողեալ զայս-
սոսիկ՝ լո՛ւր ինձ , և երկի՛րպագ արեգական
ը՟ստ հրամանի թ՟գ՟րին , և կեա՛ց և ճողոպրեա՛
՚ի տանջանաց՝ որ կան և պահին քեզ . քան-
զի խնայեմ ես ՚ի ծերութի քո , զի մի՛ իջա-
նիցես արեամբ ՚ի դժոխս : Սր՟ն ակեփսիմաս
ասէ . խի՛ց զամենամպարիշտ բերան քո , և
մի՛ յաւելցես խօսել և երկրորդել առ իս ըզ-
բանդ անօրէնութե ո՛վ բռնաւոր . քանզի ես
՚ի մայրական խանձարրոց և ՚ի մանկութէ
իմմէ մինչև ցայժմ ՚ի հաւատս յայս սնեալ
եմ

եմ և զարգացել. իսկ այժմ 'ի ժամանակի
ծերութեան առաւել պարտ է ինձ քաջութեամբ
և բարիոք խոստովանութեամբ հաստատուն կալ
և մնալ 'ի ճշմարտութեան, զի պսակեցայց 'ի
ճշմարտէն Աստուծոյ իմմէ. վասն և զոր Աստուած հակա-
ռակն հաւանեցուցանել ինձ հնարիս զամ-
պարիշտ մտածութիս, առ ոտն հարկանեմ ։
Յայնժամ բռնաւորն լցեալ սրտմտութեամբ՝ հրա-
մայեաց յորսայս արկանել զծերն 'ի վերայ երկ-
րի, և պրկել զնա չարաչար շղթայիւք քսոռա-
կուսի յոտից և 'ի ձեռաց. և ապա այնչափ
հարին զնա անխնայ հարուածովք, մինչև
պատառոտիլ մարմնոյն, և պատուական ա-
րեան նորա ողողանել զերկիրն ։ Իսկ յայնմ
վայրի ասէր ամպարիշտն ցծերն. ո՞ւր ուրեք
յածի այժմ Աստուածն քո. աղէ եկեսցէ և փրր-
կեսցէ զքեզ 'ի ձեռաց իմոց ։ Իսկ երանելի
եպիսկոպոսն Ակեփսիմաս ասէ. ամենայն ուրեք գոյ Աստուածն
իմ, որ կարող է փրկել զիս 'ի ձեռաց քոց.
և դու մի՛ պարծիր բանիւք քո սնոտւովք.
այլ 'ի միտ առ, զի թարշամելոց ես իբրև
զծաղիկ վաղանցուկ 'ի վայրի անյիշատակ.
մանաւանդ այժմէն իսկ մեռեալ զքեզ ծա-
նիցես, զի ոչ վայելես օրինօք յԱստուածատուր
կեանսդ. և զայն ևս յորժամ կողոպտիցէ 'ի
քէն յեղակարծ մահն ժամանակեաւ, հուր
մշտնջենաւոր փոխանակեսցէ, և անչափ ցա-
ւօք լլկեսցէ զքեզ այն՝ զոր Աստուածացուցեր. զի
հուր անշէջ պահի ձեզ փոխանակ կրակիդ՝
զոր պաշտէք, տոչորել զհոգիդ ձեր և զմար-
մինն՝ արդար դատաստանաւն Աստուծոյ ։ Յայնժամ

բարկացեալ մոգպետին՝ ետ տանել զնա, և պահել 'ի խաւարչտին բանտի ծանր շղթայիւք :

'Ի նոյն աւուրս անկեալ էին 'ի ձեռս հալածչաց և ոք քահանայն յովսէփ և ոք սարկաւագն այիթալաս, և ածել 'ի նոյն քաղաքն արբեղայ · վ՟յ և 'ի վաղիւն անդր կացուցին և զնոսա առաջի մոգպետին այնմ : Խօսել սկսաւ ՟ը նոսա, և ասէ · ո՞յ չարագլուխք և պատժապարտք, վ՟ն էր պատրէք զպարզամիտս և մոլորեցուցանէք զկնի կախարդութ՟ե ձերոյ : Նա պ՟խնի երանելին յովսէփ և ասէ · չարարուեստ մոգութ՟ե և կախարդութ՟ե ատեցողք եմք, քանզի քրիստոնեայ եմք · այլ ողջամիտ վ՟դպութ՟բ դաստիարակեմք ըզմարդիկ, զի թողեալ զպաշտօն մեռելոտի կռոց՝ սկսցին գոնեա անաղան կեալ զճշմարիտ կեանս : Մոգպետն ասէ · և արդ ո՞չ է սաստ ո՛վ անմիտ, ո՞ր օրէնք ճշմարիտ իցեն · ա՞յն՝ զոր ունի արքայից արքայ և մեծամեծք նր՟, և ազատորեարն և ամ՟ ձոխք և պատուականք, եթէ զոր դուքդ ունիք սակաւք եք ոմանք, աղքատք և փառատահմիկք և անմարդիկք :

Պ՟խնի ետ երանելի երէցն յովսէփ, և ասէ ցնա · ա՟ծն մեր ոչ հաճի ՟ը մեծութ՟ի և ընդ ամբարտաւանութ՟ի, այլ ատեայ զամբարտաւանս, և սիրէ զխոնարհս · վ՟յ և մեք կամակատար նր՟ լինել կամեցեալ՝ արհամարհեմք զմեծութ՟ի ձի և զփառս, և սիրեմք զաղքատութ՟ի · զի անանց փառացն արժանի լիցուք
և

և կենացն յաւիտենից , որ հիմն 'ի վեր առ-
դալէ և ցրէ զաղցաւորս զայս կենցաղ ։ Ո՛ղ-
պեան ասէ . վա զի ոչ է ձեզ գործել և վա-
տակօք ապրել առ հեղգութեն և վատութեն
ձերոյ , այլ շրջիլ տանէ 'ի տուն և մուրանալ ,
միայն պատճառանօ յօդել և աղքատութ՟բ
պարծել ։ Երանելին յովսէփ ասէ . և վա զի
նախատեցեր զմեզ կոչելով հեղգս և վատս
և ծոյլս , գիտեմ զի եթէ կամեցեալ էաք
վաստակոց և ձեռագործաց զհետ երթալ ,
մեծք և փարթամք լինէաք քան զձեզ , որ 'ի
յափշտակութէ և 'ի զրկանաց աղքատաց էք
մեծացեալ . այլ մեք զոր ինչ ժողովեալ էաք ,
ք՟ի նուիրեցաք՝ աղքատաց բաշխելով զա՟մ .
իսկ դուք վա ագահութե կողոպտէք զաղ-
քատն և զանանկն ։
Ծիծաղեցաւ մոգպետն և ասէ . ամ՟ մար-
դոյ ցանկալի է և սիրելի ճոխութի , և ոչ
ոք է՝ որ ատեայ զնա . և որպէս արդեօք հա-
ւատացոյք՝ որոց ասեմն, մեք քրիստոնեայքս
ատեամք զմեծութի ։ Յովսէփ ասէ . վա զի
իմացեալ ծանեաք ճշմարտութ՟բ հաւատա-
ցեալքս 'ի ք՟ս , եթէ ինչք կենցաղոյս ոչ՟ փո-
շի յանցս ճանապարհաց են սփռեալ , և դիւ-
րաւ ցրուին . վա զի ոչ միայն ումեք մեծութի
իւր , զի և մեզ ցանկալի լինիցի , այլ իբրև
ստուեր խուսափէ , և որպէս զանիւ հոլովի .
քանզի 'ի բաց փախչի ձեռօքով մեծութի 'ի մե-
ծատանց , և իշխանութի յիշխանաց , և թա-
գաւորութի 'ի թգ՟րաց . վա զի առ հաստա-
րակ հանդոյն ամ՟ հողածնելոց է մահու ան-

կեալ մարմինք՝ 'ի հող դառնան և կոխան լի-
նին ոտից. վն այն և մեք ոչ ցանկամք ան-
ցաւորիս, այլ յաւիտենականին. զոր ակն
ոչ ետես և ունկն ոչ լուաւ, և 'ի սիրտ մար-
դոյ ոչ անկաւ. զոր պատրաստեաց ած սիրե-
լեաց իւրոց ։

Մովպետն ասէ. թո՛ղ զայդ տէր աւելորդ
շաղփաղփանս և զառասպելս անմիտ մար-
դոց. և զոր հարցանեմն՝ ասա՛ ինձ. առնե՞ս
զկամս և զհրամանս արքայի՝ երկիր պագա-
նելով արեգական մեծի, եթէ՝ կամիս չա-
րաչար մեռանել ։ Պատասխանի ետ տէրն յովսէփ (8)
և ասէ. մի՛ մոլորիր ո՛վ ամպարիշտ, և մի՛ ակն
ունիր՝ եթէ ես երկրպագից արեգական,
որ միշտ ուսուցանէի ամենեցուն, թէ ան-
շունչ տարր է արեգակն, և անմասն յածա-
կան զօրութենէ ։

Յայնժամ ցասուցեալ մովպետն հրամայեաց
պարզել զյովսէփ 'ի գետին, և հարկանել
զնա արանց տասանց փոխանակաւ՝ հաստ գա-
ւազանօք նռնենեօք. մինչև կարծէին զնա-
հատակն յոգիս ապաստան ։ Իսկ նա զաչս
յերկինս ամբարձեալ՝ լռիկ խնդրէր օգնութիւն
և զօրութիւն 'ի տեառնէ. և շուրջ հայեցեալ յա-
րիւնն աղբերացեալ յամ կողմանց մարմնոյ
իւրոյ՝ ասէ մեծաձայն. գոհանամ զքէն յան-
չափ, քս որդի այ, որ արժանի արարեր զիս
այսպիսի մեծի շնորհաց կրկնակի մկրտութեամբ՝
'ի լուանալ միւսանգամ զանձն իմ, և մաք-
րել զաղտեղութիւնս յանցանաց իմոց ։

'Ի բանից աստի յառաւել կատաղութիւն բերբերեալ
դահ-

դաւաճանաց՝ եւս խստագոյն հարկանէին զնա . մինչեւ չմնալոյ ողջ տեղւոյ 'ի մարմնի նորա . եւ այնպէս լուծեալ 'ի տանջանաց՝ արկաւ կապանօք 'ի նոյն բանտ , յորում էր ակեփսիմաս :

Յետ այսորիկ 'ի քննութիւն ածեալ զառաքինի սարկաւագն զայիթալաս՝ ասէր ցնա մոգպետն . սուղ բանիւ կամ է ինձ վճարել զքո դատաստան . երկիրպագ արեգական , ճաշակեա՛ յարենէ , առ քեզ կին , եւ հնազանդ լեր արքայից արքայի . եւ այնուհետեւ ամենայն ինչք քո քեզ լիցին , եւ զանձն քո ապրեցուսցես 'ի տանջանաց եւ 'ի դառն մահուանէ , որ սահմանեալ է ընդդէմ քրիստոնէից : Աճի եւ այիթալաս համարձակաձայն բարբառով , եւ ասէ . լաւ է ինձ մեռանել՝ զի յաւիտեան կեցից , քան եթէ կեալ՝ զի յաւիտեան մեռայց . այս խորհուրդ խորին հաստատեալ է 'ի սրտի իմում . իսկ զարիւն դու կերիցես՝ շուն անյագ , եւ արեգական դու երկիրպագցես այր խելագար . որովհետեւ ոչ տեսանես զգերապայծառ լոյսն՝ որ վառու եւ երեւեցաւ մեզ յերկրի , եւ անուն նորա եհաս ծագաց 'ի ծագս ընդ ամենայն տիեզերս :

Ասէ մոգպետն խորամանկեալ չարութեամբ . ցաւ է ինձ 'ի վերայ քո , որ մահու ցանկաս իբրեւ լաւագունի քան զկեանս . եւ ո՞ հաւանեացի քեզ՝ որ ուսուցանես ատել զկեանս եւ սիրել զմահ , եթէ ոչ որ կամիցի մոլիլ ո՛չ ըզքրիստոնեայսդ : Այիթալաս ասէ . մոլեգնեալ դու զքեզ ծանիր եւ զամենայն համակրօնս

քո

քս անծանօթս գլխովին ՚ի ճշմարտութենէ . Մեր վիճակն երկնաւոր զԷդէմն ուսմանց ձե-րոց ուսոյց մեզ՝ սիրել զկեանս, զոր դուքդ մահ անուանէք, և խորշել ՚ի մահուանէ ան-տի՝ զոր դուք կեանս կարծայք :

Յայնժամ ապա Թափեաց ՚ի նա բռնաւորն զմթերս բարկութե իւրոյ . Հրամայեաց եւս դահ-ճաց կապել զերանելի վկայն զձեռս ընդ-ծնգովք յետոյ կողմանէ, և զերան մեծ ՚ի թիկանց կուսէ անցուցանել ԸՆ մէջ բազկաց և քամակին . և արք երկոտասան ճնշէին ստորև և անտի զծայրս զերանին . որով ճար-ճատէր մարմին նոյ ծերոյն, և յոմն անդամն նր տրոհէր ցաւ անհնարին . և յաւելլին ան-րենք զան եւս հարկանել զնա յերկար : Բայց երանելլին ոքանչելի համբերութբ տարեալ ամն՝ համարձակ յանդիմանէր զբռնաւորն, մինչև կոչել զնա պիղծ շուն լափլիզօղ ա-րեան, և գարշ ագռաւ շաղղակեր :

Իսկ բռնաւորն կրճտեալ զատամունս իւր՝ նա-խատէր զդահիճս իւր իբրև զկնամարգիս, զի չկարացին յաղթել քաջ նահատակին, և թողացուցին նմա խօսել իսկ : Նմին իրի և դահիճք այնչափ հարին խստագոյն զայրեա-լոս, մինչև խախտիլ ամն անդամոց նր և ան-պիտանանալ . և այնպէս հարկ եղև այլոց բառնալ զնա և տանել ՚ի բանտ, ուր կային ակերփոփմամբ և յոմնէփ :

Յետ աւուրց հնգից եառ հանել մազապետն ՚ի բանտէ զվկայն, և նստեալ ՚ի պարտիզի (9), խօսել սկսաւ ԸՆ նմա, և ասէ . չե՞ ՚ի բաց ե-դիք

դէք որդեօք զկարծիս յիմարութե ձերոյ ով չարարուեստ կախարդք , կմ թէ տակաւին չիցէք հաւան այ թշուառականք հնազան-դիլ որքունի հրամանաց : Ապնի եսուն միա-բանութբ վկայքն , եւ ասեն . մի է խորհուրդ երեցունցս ամենազօր . եւ մի կամք անկեղծ , եւ մի հաւատք ուղղութե . եւ որչափ այսպի-սի յոյզս խնդրոյ մեքենայեսցես ընդդէմ մեր , ես պնդագոյն եւ անդրդուելի զմեզ գտցես ՚ի նոյն ՚ի միտս . քանզի հաստատեալ է մեր չանսալ հրամանաց անօրէն թագաւորի . իսկ դու ընդ քում դ բարձրամտութե եւ խստասրտ-ութե արա ընդ մեզ զոր կամիս եւ զոր կարես : Յայնժամ հրաման ետ բռնաւորն , եւ արկին դահճիճք զվկայսն ՚ի գետին , եւ պրկեցին ա-ռասանօք . եւ եդեալ ՚ի կրնկունս ոտից նց եւ յոլոգ. եւ ՚ի կոզս մի մի ձողս՝ ոլորեցին պնդա-պէս , մինչեւ քայքայիլ ոսկերաց նց եւ ճռնչել ճարճատմամբ . եւ յայնպիսի տանջանս սաստկ հարցանէին զնս արբանեակք չարին , եթէ կամիցին յանձն առնուլ զհրաման թգրին եւ կեալ . իսկ քաջ նահատակքն զուարթ ե-րեսօք եւ համարձակ բարբառով գոչէին . ՚ի մի ած եմք հաւատացեալ եւ յուսացեալ . ոչ լսեմք հրամանի թագաւորին : Եւ այսպէս յաղթող լինէին ընդդէմ բռնաւորին արիա-կան նք վկայքն . եւ ած փառաւորեալ լինէր ՚ի նոսա :

Եւ դահճացն բարձեալ զնս իբրեւ զմեռեալս՝ միւսանգամ տարան ՚ի բանտն . ուր յերկա-րեալ յաւուրս բազումս՝ որ ընդ օրէ տանջեալ լե-

լինէին երանելիքն յանողորմ դաՀճաց գա-
նիւք, Հանդերձ սովու և ծարաւու, գետ-
նախշտի լինելով և մերկութ՟բ, և ազգի ազգի
տառապանօք. զի և չէր իշխանութ՟ի մտանել
ումեք առ նս, և դարմանել մարմնական կե-
րակրովք կամ վերարկուօք. և Հրաման սաս-
տիկ էր եղեալ 'ի մոգպետէն, զի թէ ոք
մտցէ առ նս, իբրև յանցաւոր ըմբռնեսցի,
և Հարիւր թուով գան արբցէ, և 'ի ձեռաց
և յընչաց կամ յականջաց ծայրատեսցի:
Եւ այնպէս մնացին երանելի ծերունիքն 'ի
բանտին զամս երիս անտանելի ձգնութ՟բ՝
Հանդերձ ամ՟ յօժարութ՟բ վ՟ս սիրոյն ք՟ի:
Այլ առ սաստիկ նեղութե սովոյն՝ գթացեալ
'ի նս որք ը՟ նմ՟ կալանաւորք կային 'ի բան-
տին, ելանէին շրջէին կապանօք՝ Հանդերձ
պաՀապանօք՝ տանէ 'ի տուն, և մուրանային
վ՟ս նց կերակուր դաւզնաքեայ՝ ը՟ ներելոյ
բանտապաՀաց. որոց տեսեալ զանՀնարին
նեղութիս վկայիցն ք՟ի անցելոց զաւուրբք,
և զողորմելի կեանսն՝ կարեկից լինէին, և
աշխարՀէին իբրև զընտանիս:
Իսկ զկնի երից ամաց չարչարանաց ս՟բց վկա-
յիցն՝ լու եղև, եթէ արքայն եկեալ է յ՟ն
մարաց 'ի գաւառն կոչեցեալ իդաբիդմադան
կամ բիթմադա (այն է տուն մարաց). յայն-
ժամ մոգպետն՝ որ իշխան էր տեղւոյն և չար-
չարէր զս՟բսն, արձակեաց զնս 'ի կապանաց,
և ետ տանել 'ի տուն արքունի ապարանից:
Եւ էր տեսանել զերանելիսն այլագունեալ
և տկարացեալ յոյժ. զի 'ի բազում նեղութե
տանջ

տանջանաց և կապանաց էին նմանն դիականց. մինչև անգութ հեթանոսացն լալ և աշխարել զնոսա ։

Եւ իբրև տարան զնա յարքունի պալատն, կացուցին առաջի մեծի մոգպետին, որ էր իշխան ամ մոգուց և նախարարաց արևելեայց Յին առ հասարակ. և անուն նր առշապուհ կմ դեբրաբուռ. և առ նմ նստեալ էին մեծամեծք աւագանոյն Յին պարսից և մոգք բազումք ։ Եւ մտեալ սրբցն առաջի նր՝ կացին խոնարհութբ. այլ ոչ կամեցան երկիր պագանել (10)։ Եհարց զնս իշխանն և ասէ. ասացէք, թէ որո՞յ պաշտաման ծառայէք, և կմ թէ ոպ լսեմ՝ քրիստոնեա՞յ էք դուք ։ Պտխնի ետուն արհագոյն վկայքն քնի. քրիստոնեայք եմք, և միոյն այ ճշմարտի արարչի և ամն տիեզերաց պաշտօն մատուցանեմք ։ Իշխանն ասէ. ոպ տեսանեմ զձեզ, արք ծերք էք, և զբզմ ձգանաց զփորձ առեալ են անձինք ձեր. վսկ խրատ տամ ձեզ իբրև զբարեկամ ձեր, լուարուք ինձ յայսմ հետէ, և խնայեցէք յանձինս ձեր, և մի տարապարտուց մեռանիք. այլ հնազանդ լերուք օրինաց թգւրին, և երկիր պագէք արեգական. ոպ զի զօգուտ ձեր և զկեանս շահեսջիք. քզի մձիռ մահու սահմանեալ է 'ի վր ամենեցուն՝ որ կամակորութբ գնան 'ի ճանապարհս քրիստոնէից ։

Պտխնի ետ երանելին ակեփսիմաս. բազում աշխատութէ քեզ պէտք են, զի կարօղ լինիցիս որսալ զոք 'ի մէնջ 'ի կամս մոլորութե քո. գիտեմ զի բազում փոյթ յանձին ունիս

դու

դու վրէժխնդիր լինել ծնողացն քո՝ զոր սպա-
ռես . արդ մի՛ յամեր և յապաղեր յանօրէն
խորհրդոցդ՝ զոր խրոխտացեալ ես 'ի վ՟ր մեր .
զոր ինչ առնելոց ես՝ արա՛ վաղվաղակի . զի
ոչ զարհուրիմք 'ի սպառնալեաց քոց , և ոչ
երկնչիմք 'ի տանջանաց քոց . զի հաստատուն
է յոյս մեր առ ք՟ի ա՟յն մերոյ . և զհրամանս
անօրէն թագաւորին ոչ առնումք յանձն : Ասէ
ցնոսա բռնաւորն . գիտեմ զի զմահ խնդրէք
դուք քրիստոնեայքդ , զոր և հանգիստ կո-
չէք . և ոչինչ են զարմանք , զի մահ լուծա-
նէ զպատիժս պատժապարտից . այլ զոր ցան-
կայքդ՝ ոչ արարից վաղվաղակի . և մինչև
առով բարձեալ զգլուխս ձեր՝ նորահնար տան-
ջանօք կտտամահ արարից զձեզ . զի մ՟մ կա-
խարդաւար քրիստոնէից լինել զարհուրեցո-
ցին , և ուսցին մի՛ ևս հակառակ կալ օրինաց
արքայի :

Ասէ երանելի եպսն . 'ի զուր սպառնաս՝ զոր
չեն մեզ երկիւղալի . զի ոչ 'ի տանջանաց քոց ,
և ոչ 'ի սրոյ քումմէ , և ոչ 'ի դժնդակ մահ-
ուանէ զարհուրիմք . վ՟ս զի որ զօրացուցանէն
զմեզ՝ ա՟ծ է . և ոչ մինչև ցայս ժամ նա ետ
մեզ զօրութի զուժկալութե՝ տանել վշտաց և նեղ-
ութեց , դարձեալ և այժմ նա է՝ որ օգնէ մեզ ,
որ՟ յուսացեալ եմք . և արդ փորձեա՛ զտկա-
րութի ծերութեն մերոյ՝ որ ա՟վ զօրացեալ . և
ծանի՛ր զհանդէս ա՟ծութե՟ն նր՝ ո՛վ թշուառական ;
զի յամօթ լինիցին յերեսաց համբերութե յա-
տոյն մերոյ ունայն խորհուրդք քո , և յանդի-
մանեսցի մոլորութի քո՝ 'ի ճշմարիտ հաւատոցս :

Ասէ

Յայնժամ անօրէն իշխանն լի եղև սրտմտու-
թեա՛, և հրամայեաց բերել ՚ի հրապարակէ
ջալաւսին և արջառաջիլս նորս՝ չորեքտասան.
և ասէ. երդուեալ իմ ՚ի մեծ ղծն արեգական,
և ՚ի ճակատագիր մեծ արքայից արքայի շապ-
հոյ, զի թէ ոչ առնէք զկամս թագաւորին,
ապականեմ տանջանօք զմարմինս ձեր, և
թաթաւեցուցից արեամբ զալիս ձեր. և ոչ
ամենելին խնայեցից ՚ի ձեզ, մինչև ՚ի ձեռն
չար տանջանաց աւանդիցէք զհոգիս ձեր:
Մնեքսիմեան ասէ. մի զի երդուար յարե-
գական, արտամեցայ՝ զի ոչ է ած. նոյնպէս և ՚ի
թշուառական բախտ բռնաւորին. երկնչիմ
եթէ ոչ կատարեսցես զերդմունս քո, և լի-
նիցիս օրինազանց և սուտ. այլ թէ ոչ՝ ա-
հաւասիկ ասացաք, եթէ կեանս խոստանայ-
ցես, և եթէ մահ սպառնայցես, մեք զճշմա-
րիտ հաւատս՝ յոր կամք հաստատուն՝ ոչ ու-
րանամք. այլ մատնեմք զմարմինս մեր ՚ի
ձեռս քո տանջանաց. իսկ զհոգիս մեր ՚ի ձեռս
ածյ աւանդեսցուք՝ որ ետ զսա. զոր ինչ առնե-
լոց ես՝ մի յապաղեր, այլ կատարեա՛ վաղվա-
ղակի. զի մեք պատրաստ եմք:
Յայնժամ աղաղակեաց բռնաւորն ցասմամբ
մեծաւ, և հրամայեաց դահճացն քառակու-
սի պարզել ՚ի գետնի զերանելին՝ ձգելով
զնոսա երեսուն արանց՝ հինգ հինգ ՚ի կողմանց
կողմանց. և հրաման ետ երկուց արանց զօ-
րաւորաց տանջել արջառաջլօք զորովայն նց
և զթիկունս. մինչև արիւնախառն մարմինն
պատառ պատառ յերկիր անկանէր: Եւ ամ
բոխ

բոխս մարդկանն աղաղակէին առ վկայսն. կա-
տարեա՛լ զկամս Թ՟գրին, և ապրեցո՛ զանձն
քո 'ի տանջանացդ: Իսկ քաջ նահատակն
ձայն արձակեալ՝ մինչդեռ կարօղն էր բար-
բառել, ասէ ցբազմութիւն. ես 'ի մանկութենէ
ուսայ առնել զկամս ա՟յ. և ո՛չ զկամս անօրէն
Թ՟գրի և բռնաւորաց:

Իսկ իբրև 'ի սաստկութենէ տանջանացն ոչ ևս այլ
կարէր խօսել, ը՟դդէմ չար խրատտուաց նշա-
նացի առնէր գլխովն՝ թէ ո՛չ լսեմ ձեզ. և
այնպէս աչօքն 'ի վեր նկատէր, և 'ի սրտի իւ-
րում աղօթէր. մինչև 'ի տանջանս անդ ան-
պարտելի համբերութ՟բ և կատարեալ խոստո-
վանութ՟բ աւանդեաց զհոգին: Իսկ սակայն
յետ վախճանելոյ իսկ ն՟ր փոխեցան հարկա-
նող դահիճքն, և տակաւին տանջէին զմե-
ռեալ մարմինն. մինչև փշրեցան ա՟մ ոսկերք
ն՟ր. և ընկեցին զնա 'ի բարձանց 'ի խոնարհ,
և քակտեցաւ պարանոց ն՟ր. և քարշեալ ըն-
կեցին զնա 'ի փողոցամէջս քաղաքին կիս ար-
տաքոյ ք՟ զպարիսպն. և պահապանքն շուրջ
նստեալ պահէին: Իսկ զկնի երից աւուրց գո-
ղացան զպատուական նշխարս ն՟ր գաղտա-
բար՝ հրամանաւ Թ՟գրազինն դստեր Թ՟գրին
հայոց, որ է՟ր այն աւուրս կայր 'ի պատանդի
յամուրն մարայ (11): Արդ կատարեցաւ երա-
նելին ակեփսիմաս եպ՟ս 'ի տասներորդ ա-
ւուր ամսեանն հոկտեմբերի:

Զկնի վկայական մրցանաց սո՟յն ակեփսի-
մեայ՝ ածեալ լինէր ն՟ա քահանայն յովսէփ
առաջի անօրէն իշխանին ատրշապհոյ. և ասէ

ցեալ իշխանն. տեսե՞ր արդեօք զանմիտ և զամ-
պարիշտ ընկերն քո, թէ ո՞րպիսի անարգ մահ-
հու և տանջանօք մեռաւ՝ ոչ կամելով հնա-
զանդել օրինաց մերոց և հրամանաց թագաւորին.
և արդ խրատ տամ քեզ զգօն լինել, և մի
կալ հակառակ հրամանաց մերոց. այլ վաղ-
վաղակի հաւանեալ երկիրպագ արեգական.
զի փրկեսցես զքեզ 'ի տանջանացն՝ որ պատ-
րաստեալ է քեզ :

Պատասխանի ետ սուրբն յովսէփ և ասէ. արեգական
եւ երկիր ոչ պագանեմ, զի չէ Աստուած, այլ՝ ա-
րարած Աստուծոյ. և հրամանաց թագաւորին ոչ
հաւանիմ, քանզի անօրէնն անօրէնս ուսու-
ցանէ, և հեռացուցանէ յարդար օրինացն
Աստուծոյ. արդ զոր ինչ խորհեալ ես վասն իմ, արա՛
վաղվաղակի : Յայնժամ ցասուցեալ իշխանն՝
հրամայեաց երեսուն արանց ընդ օրինակին ա-
ռաջնոյ լարիւք պարզել զմկայն 'ի չորից կող-
մանց. և հարկանել զնա դահճաց փոկովք.
և այնչափ հարին անխնայ զթիկունս նորա
և զկողս, մինչև յերեսաց հարուածոց վիրա-
ւորիլ բովանդակ անձինն միապաղաղ, և
յարիւն թաթաւիլ : Յայնժամ որք մերձն
կային, աղաղակ բարձեալ ասէին ցնա. ողոր-
մեա՛ց քեզ ով թշուառական, և արա՛ զկամս
թագաւորին. զի բարձցի 'ի քէն տանջանքդ, և
ապրեսցիս :

Իսկ երանելին համարձակ պատասխանի առնէր 'ի
լուր ամենայն ռամկին, և ասէր. ես ոչ զոք խոս-
տովանիմ Աստուած բաց 'ի միոյն Աստուծոյ մշտնջենաւո-
րէ և ճշմարտէ. մի հաւատք գիտեմ. և մի

ճշմարտութի. զոր պինդ ունիմ և դաւանեմ
ՃԷ նահատակակիցս իմ. երեք ընկերքդ եմք,
և 'ի մի կամս և 'ի միտս կամք: Իսկ իբրև
բազում հարուածովք տանջեցին զնա, մինչ
զի և 'ի սաստկութէ տանջանացն անբարբառ
և անշշունչ երևէր, այնուհետև համարե-
ցան զնա մեռեալ. և քարշեալ ընկեցին զե-
րանելին կիսամահ արտաքոյ պարսպացն 'ի փո-
ղոցամիջի անդ. այլ իբրև իմացան՝ թէ դե-
ևս ոչ է մեռեալ, զգուշութբ պահէին զնա
պահապանքն:

Յետ այսորիկ հրամայեաց իշխանն յառաջ
ածել զերանելին այլթալաս սարկաւագ, և
ասէ ցնա. արդ անսա՛ ինձ դու յայժմհետէ,
և մի՛ պնդեր 'ի նմին յամառութեդ և 'ի նմանիր
խորհուրդս, որպէս և ընկերքդ քո՝ որ դառն
տանջանօք ելին յոէ և զրկեցան 'ի կենաց.
այլ մատուցեալ երկի՛րպագ արեգական, և
տո՛ւր զկամս արքային. և փառք և պատիւ
ընկալցիս 'ի նմանէ:

Պատասխանի ետ սուրբն այլթալաս, և ասէ
ցնա. սքանչանամ յոյժ հիացմամբ ՇԷ կու-
րութի քո ով հեգգ և Թշուառականդ. զի իբ-
րև անբան և անզգայ խօսիս, և ոչ հայիս և
նկատես աչօք մտաց քոց զՃշմարիտն և զէա-
կանն ԱԾ, զոր մեք պաշտեմք. և չար բանիւք
կամիս պատրել զանձն իմ իբրև զմանուկ տղա-
մար. քանզի թէ ՆՔ՝ որք ծերագոյն քան զիս
էին հասակաւ և տկարագոյն մարմնով, քա-
ջութբ յաղթեցին տանջանաց, և կատարեալ
մահուամբ որ վս ԱԾյ՝ ժառանգեցին զփառս
երա

Երանելի և յաւիտենական կենաց, և՛ս առաւ-
ել ես՝ որ կրսերագոյնս եմ քան զնա, ընդ-
դուբ համբերեմ ամ նեղութեանց և չարչարա-
նաց, և հաստատուն մնամ 'ի ճշմարտութե
հաւատոյ, ոչ առնելով զկամս անօրէն թա-
գաւորին, որ հակառակ է ամ իրաւանց և
արդար օրինացն այ, և օտարացեալ 'ի լուսոյ
կենացն յաւիտենից :

Զայս իբրև լուաւ ամպարիշտ իշխանն, խաւ-
վեցաւ յոյժ, և 'ի դողման եղեալ ամ անդա-
մօք իւրովք՝ լցաւ սրտմտութբ և բարկութբ, և
շրջեցաւ գոյն երեսաց նր : Հրաման ետ ա-
րանց քառասնից զօրաւորաց պարզել զնա
քառակուսի ձգմամբ 'ի բազկաց և յոտից,
և հարկանել զնա խստագոյն վայրենի փշե-
ղէն մահակօք, կմ ըս այլոց թարմ ջալոտիւք
կամ փոկովք. Մինչև արիւնն՝ որ իջանէր 'ի
նմանէ, ռոոգանէր զերկիրն : Իսկ առաքինի
վկայն աղաղակեալ ձայնիւ մեծաւ ասէ. ով
պիղծ և անմաքուր, հէգ և թշուառական
քան զամ մարդիկ, որպէս դու անզօր ես և
թոյլ, նոյնպէս և տանջանքդ քո և սպառնա-
լիքդ՝ տկարք և անոյժք են. որք ոչ կարացին
յաղթել ինձ. արդ եթէ ունիցիս այլ չարա-
չար տանջիչս խստագոյնս քան զսոսա, այնու-
ցիկ հրամայեա միւսանգամ չարչարել զիս.
զի 'ի ձեռն առաւելագոյն տանջանաց յաւել-
ցին ինձ զօրութիւնք 'ի տնէ, և մեծագոյն
վարձս ընկալայց յարարչէն իմմէ :

Յայնժամ որք բազմեալն էին ը իշխանին,
զարմացեալ 'ի վր համբերութե և համար-

ձակութեն սրբոյ վկայիցն՝ ասելով. զիա՞րդ ամբարտաւան քրիստոնեայքդ միշտ ծարաւի են մահուան և չարչարանաց, մի՞թէ ոչ հացի և ջրոյ կարօտանայ: Ասէ իշխանն ցնա. քանզի կատարեն գործովք զգրեցեալն 'ի գիրս իւրեանց, որք և առաքելաբանեն՝ թէ գոյ այլ կեանք անվախճան, և հատուցմունք անսպառ՝ որ ոչ անցանէ:

Իսկ 'ի սաստկութէ տանջանացն անդամք սրբոյն քակտեալ լինէին 'ի միմեանց, և մարեալ ոսկերք զօդուածոյն յանհնարին և 'ի դառն հարուածոցն. և ապա բարձեալ երկուց արանց՝ բերին զնա առաջի իշխանին: Ասէ ցնա ատրշապուհ. արդ յայսմ հետէ հնազանդ լեր, և արա զկամս արքայի. և ես կոչեցից բժիշկս՝ զի ողջացուսցեն զվէրս քո: Մխիթար երանելին այխթալաս, և ասէ ցնա. ծաղու են արժանի խրատք քո, որ ասացեր ինձ 'ի ձեռն բժշկաց առողջանալ, որք դեղոց կարօտին առ 'ի տալ զբժշկութիւս յաւուրս բազում. բայց թէ և բանիւ քո միայն առժամայն զիս լռոստանայիր բժշկել և առողջացուցանել, սակայն ոչ մեկնէի ես 'ի սիրոյն քրի, այն՝ որ արար զերկինս և զերկիր. և չառնուի յանձն երկիրպագանել արեգական՝ որ կարգեալ է յայ մերմէ 'ի սպասաւորութի մարդկան:

Ատրշապուհ ասէ. զայդպիսի յամառութի և զհպարտութի մտաց թողեալ՝ արա զկամս թգ՞րին, զի թողցին քեզ հայհոյութիւնք դատաստանքն. և եթէ ոչ լսես մեզ, այժմ ա-

րա-

ըարից զքեզ առակ նշաւակի ամ՛ քրիստո-
նէից չարաչար հարուածովք , զի մի՛ այլ ոք
համարձակիցի Թշնամանել զմ՜ծսն և զԹա-
գաւորն ։ Մ.յիԹալաս ասէ . ով երից Թըշ-
ուառական , ուստի՞ է քեզ այդ՝ զի ակամայ
մարգարէացար , զի օրինակ բարի եղէց քրիս-
տոնէից՝ ոչ անսաս առնել նոցա զարիաբար
համբերուԹիս իմ , այլ զի քաջալերեսցին և
նք , և կոխան արասցեն զամբարհաւաձու-
Թիւնս ձեր . և անուն և յիշատակ բարեաց
Թողից որք գալոցն են զկնի իմ՝ զհամբերու-
Թիս իմ , և զնահատակուԹե պատերազմ
և զյաղԹուԹիս՝ զոր կրեմք ես և ընկերք իմ
ծերունի մարտնովք . և զանապական և զա-
նեղծուԵ պսակն ժառանգեմք՝ ի պալատեան
տն մերոյ յի քի ։
Յայնժամ դենպետ իշխանն ատրշապուհ
կոչեաց առ ինքն զմոգպետն ատրքուրքաշար՝
որ իշխանն էր նահանգին ադիաբայ , ասէ
ցնա . եԹէ դեռևս կենդանի կայցեն մոլո-
րեցուցիչքն այն , տար զնոսա ՚ի հայրենիս
իւրեանց ՚ի քաղաքն քո արբէլ , և ժողովեա
զքրիստոնեայս՝ որ ՚ի նմա . և Թէպէտև ոչ
կամիցին , սպառնալեօք և ցասմամբ հրա-
մայեա նց քարկոծ առնել զնոսա . մինչ ոչ
ետու դց զմՀիւ մահու սրով ըռունել ։ Եւ
վաղվաղակի հրամայեաց պատրաստել եր-
կուս գրաստս , և դնել զսյովսէփ և զայիԹա-
լաս ՚ի վՀի նց , և շուրջ պնդել յամ կողմանց ,
զի մի ՚ի վայր անկցին . զի լուծեալ էին ամ
անդամքն նց և փշրեալ ոսկերք . ( Նմին իրի

ամանք գրեցին՝ 'ի սայլ բարձեալ ) ։ Իսկ յոր-
ժամ հասին զճանապարհայն 'ի տեղի մի օ-
թեւանացն , անա՜ծ զինուո՜րքն ընկեցին զնա
յերկիր իբրեւ զբեռինս փայտից կմ՜ քարանց ։
և յամ՜ գնացս ձգհացն այնպէս անխնամ և
անողորմ տանջանօք տանէին , մինչեւ եկեալ
հասին 'ի քաղաքն արբեղայ՝ որ և արտաւիլ
'ի սահմանին եղնեզ ։ և արգելան 'ի խաւար-
չըտին բանտին ։ յորում տեղւոջ անկեալ
դնէին երանելիքն իբրեւ դիակունք անշարժք
չարաւալից և արիւնաթաթաւ ։ և նստեալ
զինուո՜րքն պահէին զնա , զի մի ոք 'ի քրիս-
տոնէիցն մտցէ առ նա ։

Այն ոմն էր 'ի քաղաքի անդ արբեղայ , որում
անուն էր յեզանդուխտ՝ որ և յստրնտուխտ
կմ՜ եազտունդուխտ , որ թարգմանի դուստր
ա՜յ , բարետոհմ՞ քրիստոնեայ հաւատով ։
որոյ յիշատակ լինի գովութ՜բ և 'ի փառս ար-
լոց նահատակաց ըստ յայսմաւուրաց ։ Սա
խնամ տանէր ամ՜ խոստովանողաց և վկայից
և ամ՜ կալանաւորաց , որ արգելեալ էին 'ի
բանտի վն՜ քի՜ի , շուրջ գալով և դարմանե-
լով , և կերակուր և աղպէտ մատուցանելով ։
Իբրեւ լուաւ նա վն՜ որ՜յն յովսեփայ և այի-
թալայ , եթէ յոյժ նեղեալք են 'ի բանտին ,
առաքեալ կոչեաց զբանտապանսն , և ետ
նմ՜ ոսկի բազում ։ և աղաչեաց զնա , զի մտեալ
ինքնին տեսցէ զս՜րբսն ։ և եթէ այսմ անհնար
է լինել , գոնեա թողացուսցեն 'ի տուն իւր
բերել զնա 'ի միում գիշերի ։

Իսկ նք՜ ահիւ մեծաւ զարհուրեալք մտածա-

նել

նել զնա 'ի բանտն՝ խոստացան նմա առնել
զկամս նր զմի միայն գիշեր . վյ առաքեաց
քնասէր կինն զաղախինայսն իւր 'ի գիշերի .
և բարձեալ զերանելին վերամբարձ՝ բերին
զնա 'ի տուն նր : Իբրև ետես զնոսա յեղան-
դուխտ այնպս չարաչար վիրաւորեալս տմար-
դի հարուածովք , առեալ կտաւս բարակս
և մաքուրս մաքրեր զարիւնն և զթարախն .
պատէր զվէրս նց , և համբուրէր զլուծեալ
անդամս և զվէրս նց , և օծանէր անույշ իւ-
ղովք . և լայր դառնապէս զգիշերն ամ . և
այսպէս կայլն նքքն անշշուկ՝ իբրև անզգայ-
ացեալք 'ի ցաւոցն :

Սպա 'ի միում եկեալ նրյն յովնեփայ , և տե-
սեալ զկինն՝ զի լայր , ասէ . Ընդէր այդպէս
դառնապէս ողբաս կին դու . և ոչ մխիթա-
ւանդ ուրախանաս իբրև քրիստոնեայ առա-
քինասէր մտօք ընդ չարչարանս մեր և ընդ մահն
որ վս քո : Պատասխանի ետ առաքինի կինն , և
ասէ . ոչ վս մահուան ձերոյ լամ ես ով տր
վկայք քո . ուր ցանկալի էր ինձ բազում
դոհութն խնդակից ձեզ լինել՝ վասնվաղակի
տեսանելով զձեզ կատարեալս վկայութն .
այլ վս այնորիկ հառաչեմ և լամ դառնապս
ցաւակցութն , զի տեսանեմ զձեզ թողեալ
յայդպիսի չարաչար նուաղութն և 'ի տանջ-
անս , և մղձկիմ թախծութն սրտի իմոյ :
Պատասխանի ետ տրն յովնէփ նուաղ ձայնիւ , և
ասէ ցնա . ով քոյր իմ մի տրտմիր . քանզի
նուաղութիւս այս՝ զոր տեսանես այժմ , ե-
թէ հաւատաս , ուրախութի և ցնծութի է

'ի հանդերձեալ երկրին . ո՜վ և տասց փրկչին մեր ք՞ս, թէ նեղ և անձուկ է ճանապարհն՝ որ տանի 'ի կեանսն յաւիտենից , և սակաւք են՝ որ մտանեն 'ի նա . և դր՞ձլ թէ՝ որ համբերէն իսպառ , նա կեցցէ ։ Այլ երանելին առաքեալն ասէ , թէ երիցս ձաղկեցայ , և միանգամ քարկոծ եղէ . և դարձեալ ասէ . ինձ այսպէս թուի , թէ ոչինչ են արժանի չարչարանք ժամանակիս այսորիկ հանդերձելոց փառացն՝ որ յայտնելոց է 'ի մեզ ։ Արդ դուով կին հաւատացեալդ 'ի ք՞ս՝ յորժամ տեսանիցես զոք հաւատացեալ՝ 'ի նեղութի և 'ի չարչարանս մտանել վս ք՞սի և համբերել նեղութեն , ցնծա՛ և ուրախ լեր մանաւանդ , և գոհացի՛ր զն՞յ . զի որչափ նեղին և համբերեն , նոյնչափ առաւելուն պսակքն և հատուցմունքն ։

Յետ այսորիկ ընդ այգանալ առաւօտուն եկեալ պահապանացն՝ առեալ տարան զն՞ս անդրէն 'ի բանտն . և արարին նոքա անդ այլ ևս ամիսս վեց մինչև ցամիսն ապրիլ , կապեալ յարգելանս բանտին մեծ և դառն նեղութ՞ , զոր ոչ ոք կարէ 'ի մարդկանէ ճառել բանիւ ։ Այլ 'ի միջոցի անդ ժամանակին մեռաւ կն՞ 'ի բաց գնաց յիշխանութէ մօգպետն , որ դատէր զվկայսն . և փոխանակ նր՞ եկն այլ ոմն մոգպետ՝ զիրուդ կն՞ զարուշաւ անուն , չար և դառնագոյն բարուք քան զնա . և էր նր՞ հրաման առեալ յարքայէ՝ առաւել կտտանօք չարչարել և նեղել զվկ՞այս հաւատացելոց , այլև վս ծիկ քրիստոնէից պատուէր

ա-

տանել էր նո՛ր , զի ակամայ կամօք հաղոր-
դակից լինիցին անօրէն հեթանոսաց և մո-
գուց ’ի քարկոծել զքահանայս և զառաջ-
նորդս քրիստոնէութե՛ն :

Յայնժամ խռովութի՛ մեծ և տրտմութի՛ անհնարին անկանէր ’ի մէջ հաւատացելոց և երկիւղ յոյժ վ՛ն այսպիսի հրամանաց , որ եւ յերեւաց անօրէն թգ՛րին . վ՛յ քրիստո-նեայքն ցրուեալ լինէին ’ի լերինս և ’ի յայրս և ’ի փապարս , թերեւս կարասցեն ապրե-ցուցանել զանձինս իւրեանց յայսպիսի ան-տեղի գործոց . զի մի՛ ’ի հարկէ հաղորդիցին անօրինացն՝ ը՛ նո՛ց քարկոծելով զնո՛ս վկայս քնի :

Արդ իբրև եհաս ’ի քաղաքն արքեղայ մոգ-պետն զարուշատ , ’ի մտանել նո՛ր ’ի տաճար հրոյն յերկրպագութի՛ ասեն ցնա սպասա-ւորք ատրուշանացն . են աստ արք երկու-գլխաւորք յաղանդոյն քրիստոնէից արգե-լեալք ’ի բանտի , և այս երեք ամք են , և ամիսք վեց , զի բազում անգամ տանջեաց զնո՛ս ատրքուրքաշար մոգպետն՝ որ յառաջ քան զքեզ էր . և ոչ կարաց ամենևին թու-լացուցանել զնո՛ս , և տալ հնազանդիլ օրէ-նաց մերոց , և լսել հրամանաց թգ՛րին :

Զայս լուեալ մոգպետին՝ հրամայեաց զա-ռաջեաւ ածել զնո՛ս . սկսաւ խօսել ը՛ նո՛ս ա-հարկութ՛ք , և ասէ . ո՛վ ազգ յանդուգն և խստապարանոց և ամբարտաւան . զի դեռ ևս ոչ հիացոյց զձեզ սպառնալիք և ահ թգ՛րին մեծի՝ շապհոյ արքայից արքայի , որ հնազան-
դե-

դեղոյցն զա̃մ թշ̃ուառութիս ազգաց և ըմբռ-
նեաց զքաղաքս մեծամեծս և զգաւառս. և
դուք հպարտացեալք բնակէք յերկրի նր̃ և
և 'ի քաղաքի, և անարգէք զնա և արհամար-
հէք զօրէնս նր̃, և առ ոտն հարկանէք զհրա-
մանս նր̃:

Ախնի եւ երանելին յովսէփ (12), և ասէ. ե-
թէ արդարև զթագւորն քո արհամարհեմք
ստամբակութբ̃ մր̃ և ասացեր, և թշնամիք
և ոսոխք նր̃ եմք, զի՞ է՝ զի ոչ սպառազինե-
ցաւ 'ի պատերազմ ը̃ մեզ հանդերձ կազ-
մութբ̃ զինուց և զինուորաց, որ ը̃ այլ թա-
գաւորսն՝ զորս դու յուշ արարեր. այլ զքեզ
զհեգդ և զթշուառականդ և զտկարդ քան
զա̃մ մարդիկ առաքեաց, որոյ դողայ սիրտդ
և 'ի տերևոյ շարժելոյ 'ի հողմոյ. և ոչ պա-
տերազմ առեալ է քո, կա՞մ զինեալ ը̃ քաջ արս
յորս էրէոց եղել յանտառս. այլ ա̃մ զօրծք
քո պղերգութբ̃ և ամօթալի աղտեղութբ̃
ը̃ կանայս է. վա̃ որոյ ամաչեմ ասել զա̃մն.
այլ դու անամօթ լրբութբ̃ եկիր այսր ո՛չ
յաղթել մեզ, այլ յաղթիլ 'ի մէնջ. զի որք
Ճշմարտութեն ա̃յ հաւատացեալք են, և զօ-
րութբ̃ նր̃ զինուորեալք, ո՞վ կարիցէ նոցա
յաղթել. վա̃յ եկիր դու ո՛չ զառ 'ի թագւորէ
ապստամբս նուաճել, այլ կարծելով մոլա-
րեցուցանել զմեզ՝ նմանն քեզ առնելով թշ-
ուառականս և որդիս գեհենին. այլ մեր
յոյսն հաստատուն է առ ա̃ծն մեր և ա̃ր,
և առ սէր նր̃ համբերեմք ա̃մ տանջանաց՝
որ գան 'ի վե̃ մեր. և արդ մի̃ լինիր ժամա-

վաւ

պսակաւ, զոր բանք քո լի թունիւք դառնութէ
ոչ մտանեն յականջս մեր:

Մոգպետն ասէ. ով աղանդաւոր և ամբա-
րիշտ կախարդ, ես երկայնամիտ լինիմ առ
քո թշնամանս և անարգանս՝ զոր թափես
'ի վերայ իմ. քանզի դու ակն ունիս, զի 'ի
սրտմտութէ շարժեալ՝ փութապէս վճիռ մա-
հու հատից 'ի վ҃յ քո՝ բառնալ սուսերաւ ըզ-
գլուխ քո, որպ զի ազատեսցիս 'ի պատրաս-
տեալ քեզ տանջանաց. ոչ այդպէս. այլ առ
փոքր փոքր չարչարանօք մաշեցից զմարմին
քո, եթէ ոչ 'ի զգաստութի եկեսցես, որպ
հրաման ընկալեալ յարքայէ:

Յովսէփ ասէ. գիտեմ ճշմարտութբ, զի
լցեալ է սիրտ քո դառնութբ 'ի ներքոյ, և
նենգութբ չարին բովանդակ մարմին քո ներ-
կեալ է՝ վիշապ ապականիչ, որ ծարաւեալդ
ես արեան անմեղաց. սրտ յայտնեա ապա-
հետև զնենգութի քո, և ցոյց զզօրութ իշ-
խանութէ քո. մերկացո զվաղակաւոր քո ով
արիւնարբու, և խողխողեա պատենազէն
սուսերաւդ. և զսրտմութի քո փարատեա
խմով անպարտ մահուամբս. զի դատապար-
տեսցիս իրաւամբք յաւուրն դատաստանի,
և 'ի հուր գեհեննին մատնեսցիս յաւիտեան.
և զմեզ առաքեա ուրախութբ և փառօք յար-
քայութին երկնից, առ որ ունիմք զյոյս
մեր. նա ինքն խորտակէ զժամանակաւոր և
զանցաւոր թգրութիդ ձեր և զիշխանութիդ:

Յայնժամ սրտմտեալ յոյժ անօրէնն՝ հրա-
մայեաց կախել զնա զծայրից մատանց ոտից

գլխի

գլխ՛ իմայր․ և զբովանդակ մարմինն հարկանել և քանցել արջառայջլօք և փոկովք և այլ փշալից գաւազանօք․ մինչև 'ի թիկանց ոսկերն և 'ի կողից և 'ի լանջաց հոսէր արիւն շարաւախառն իբրև զվտակ․ և չհանդուրժեալ այնպիսի տեսլեան ամբոխին՝ որ շուրջ կային, արտասուս հեղեալ 'ի վ՟ր ն՟ր լային դառնապէս ։ Յայնմ վայրի մոգքն շշնջէին յունկն վկային՝ ասելով․ ահաւասիկ ա՟մ ժողովուրդըս գթայ 'ի վ՟ր քո, և խրատէ յետս կալ 'ի յամառութ՟էդ․ և եթէ ամօթ համարիս զեղջ յանձին ցուցանել առաջի բազմութ՟ե, առեալ տարցուք զքեզ 'ի ծածուկ 'ի տաճար հրոյն․ զի երկիրպագցես անդ, և ազատեսցիս 'ի տանջանացդ ։

Իսկ երանելին վկայն յա՟մ զօրութ՟էն իւրմէ աղաղակեաց, և ասէ․ 'ի բա՟ց կացէք յինէն ա՟մ մշակքդ անիրաւութ՟ե, որ գործէք զանօրէնութ՟ի․ զի 'ի հուր գեհեննին մատնելոց էք դուք՝ որք կամիք կորուսանել զիս երկրպագութ՟ հրոյ․ դուք արծարծեցէք զհուրն և ծառայեցէքնմա, որ յաւիտեան ունի տաչորել զձեզ ։ Եւ այնպէս կայր ն՟ա ծերունին կախեալ զոտիցն, և բրածեծ առնէին զանձն ն՟ր 'ի կախաղանի անդ մինչև յերրորդ ժամ աւուրն․ և նա ուրախ էր յոյժ վ՟ն չարչարանացն այնոցիկ ։

Եւ ապա հրամայեաց մոգպետն իջուցանել զնա 'ի կախաղանէ անտի, և ասէ ցնա․ բայց արդ հաւանեա՛ այժմ և կեա՛ց, կատարելով զհրաման արքայից արքայի ո՛վ աղձատեալ ծեր ։

ծեր ։ Սկայն ասէ . այդու կենօքդ՝ զոր դուք կեյք , մի՛ լիցի երբէք ինձ կեալ ։ Մոգպետն ասէ . եթէ տաց քեզ զվճիռ մահու , ախորժելով յանձն առնուս , եթէ դժկամակ լինիս ։ Սէն ասէ . մահն՝ զոր 'ի ձեռաց քոց ընդունիմ , այն ինձ և որ իբրև զիս քաջասիրտք են՝ կեանք են յաւիտենականք . ուր եթէ կեանս ինձ տայիր , մահ համարէի զայն ։ Մոգպետն ասէ . ահա մարմինդ քո ապականեցաւ իսպառ . և եթէ զհոգիդ՝ որ մնայ 'ի քեզ , կորուսից 'ի քէն՝ բաժանելով 'ի մարմնոյդ , ոչ ևս կարէ դառնալ 'ի դա ։ Յովսէփ ասէ . հոգւոյս իմոյ ոչ ունիս իշխանութիւն ոչ դու և ոչ թագաւորն քո առ 'ի կորուսանել . քանզի գրեալ է 'ի նոր աւետարանին մերում , եթէ մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին , և զհոգի ոչ կարեն կորուսանել . այլ երկերուք յայնմանէ՝ որ կարող է զհոգի և զմարմին կորուսանել 'ի գեհեննի ։ Իսկ արդ՝ որոյ դու իշխանութիւն ունէիր , այն է մարմնոյս , զայս 'ի ձեռն տանջանաց կորուսեր . իսկ հոգւոյս իմոյ Տէրն և Աստուածն իմ ունի իշխանութիւն կորուսանել և կեցուցանել յաւուրն դատաստանի իւրոյ յերկնից . և ահա մեզ հաւատացելոցս և յուսացելոցս 'ի նա գանձեալ պահի անճառ բարութիւն 'ի միւսանգամ նորոգութեան մարմնոցս . իսկ ձեզ ամպարշտացդ պատրաստեալ է հուրն անշէջ և որդն անպականելի և կրճտումն ատամանց և խաւարն արտաքին ։

Իսկ անօրէն մոգպետն այսպէս արարեալ զսանիւք

նխուք սրբյն՝ ասէ. Եթէ արդարև այդպէս իցէ, զի անդ պսակք և պատիւ մեծամեծ քեզ, ապա երախտիք բազում են իմ առ քեզ, զի հասուցի զքեզ այդպիսի մեծի բարութեց. ապա թէ ոչ՝ զո՞ր պատիժ ունիս տալ ինձ 'ի վրէժ ցաւոցդ: Երանելին յովսէփ ասէ. ո՛չ այդպէս է, որպէս դու զմտաւ ածես՝ յերկին յայնմիկ, զո՛ր օրինակ այժմ աստ առնեն ողորմութի կէս առելուն է ընկերի իւրում. այլ հատուցումն բարեաց և անապական կեանք է՝ բարեաց. և չարաց հատուցումն 'ի մեծ է ի գործոց նց: Արդ յածապատում գիրն մեր գրեալ է բանիւ ամենահեզ փրկչին մերոյ և այ, թէ աղօթս արարէք 'ի վր այնոցիկ՝ որ հալածեն և ըլլեն զձեզ. վրյ ես աղօթեմ վր քո, զի դարձցիս դու 'ի մոլորութենէդ յայդմանէ, և հաւատասցես յած ճշմարիտ յամ արարէ քումմէ, զի ընկալցի զդարձ քո, և թողցէ քեզ զամ յանցանս քո, և անանց բարութեցն արժանի արասցէ:

Ասէ անօրէնն. առ ժամայս թո՛ղ անդր զայդպիսի խնդիրդ, և երթ յերկին յայնմիկ խօսեսցի զայդ ամ, յոր ակնունիս երթալ. այլ զայս գիտեա՛, զի թէ ոչ արասցես զկամս թգրին, բազում տրտմութբ և նեղութբ առաքեմ զքեզ անդ: Յովսէփ ասէ. և իմ փափաք ցանկութե այն է, զի վաղվաղակի առաքեսցես զիս անդ. և վն այնր յուսոյ համբերեմ չարչարանացս: Մոգպետն ասէ. այժմ ոչ արարից զայդ՝ զոր խնդրես դու. այլ 'ի ձեռն զանազան և անկարծելի տանջանաց՝

զոր

զոր ածելոց եմ 'ի վ[երա] քո, զարհաւրեցուցա-
նեմ զա[մենայ]ն քրիստոնեայս, զի դառնացին 'ի մի
օրէնս Թ[ագաւո]րին մեծի։

Ապանի եւս ա[ս]ն յովսէփ, և ասէ. զչարչարանս՝
զոր ածիք 'ի վերայ իմ դու և որ յառաջ քան
զքեզ էին բռնաւորքն, ա[յլ] շնորհելոյ զօրութե-
ա[ն]յն իմոյ՝ տարայ և համբերող գտայ. և զոր
դուլ խոստանաս ածել 'ի վ[երայ] իմ քով չարիմաց
դառնութ[եամ]բ, ընկալայց սիրով. զի ունիմ
դարձեալ զա[ստուա]ծն իմ օգնական, որ զօրացու-
ցանէ զիս, և պարգևէ ինձ համբերութ[իւ]ն.
որով հակառակն գործի խորհրդոց քոց. վ[ասն]
զի տեսանելով զիս քրիստոնէից՝ մեծաց և
փոքունց՝ ծերութ[եամ]բս իմով այսպէս համբե-
րող լեալ չարչարանաց, մեծապէս օրինակ
առեալ զիս՝ զօրանան արհամարհել զպատ-
նասիս ձեր, և կործան առնեն զամբարտաւա-
նութ[իւ]ն ձեր, և զանօրէն օրինադրին ձերոյ,
որ այն ինքն է բանսարկուն. որում յաղթե-
ցի յանձին քում զօրութ[եամ]բ փրկչին իմոյ, և նո-
վաւ յաղթօղ գտայց մինչև 'ի մահ։ Յայն-
ժամ հրամայեաց բռնաւորն զգլխաւորաց տա-
նել զնա 'ի բանտ վերամբարձ, զի ոչ կարէր
գնալ ոտիւք իւրովք։

Սապա եւս ածել զառաջեաւ զայխթալսա, և
ասէ ցնա. ասա՛ դու ցիս. դեռևս 'ի նմին յա-
մառութ[եա]ն կաս, եթէ հնազանդիս մեզ, և եր-
կիր պագանես արեգական, և այրիս 'ի տանն
Ջանեաց։ Ա[յ]ն այխթալսա ասէ. կենդանի է
քնն իմ որդին ա[ստուծո]յ կենդանւոյ, յոր յուսացեալ
եմ ճշմարտութ[եամ]բ, և վ[ասն] նո[րա] համբերեմ այսմ
անի

տմի՝ զոր ածիք 'ի վ̃ր իմ. զի ոչ փոխեցից զա-
մենեցուն արարիչն Ա̃Ծ արարածոց, և ոչ մա-
տուցից նմ̃ երկրպագութիւն: Յայնժամ հրա-
մայեաց վաղվաղակի կախել զնա գլխիվայր,
և տանջել սաստկապէս. և նա յերկար տան-
ջանան աղաղակէր սաստիկ 'ի ձայն մեծ, և ա-
սէր. քրիստոնեայ եմ, քրիստոնեայ եմ.
չուր լիցի առ ամենեսին, զի քրիստոնեայ
եմ, և վ̃ ք̃ի այսպէս չարչարիմ:

Մանիքեցի ոմն կայր անդ կապեալ 'ի բան-
տին. զոր հրամայեաց մոգպետն ածել զա-
ռաջեաւ. իսկ զայիթալաս հրամանն ետ իջու-
ցանել 'ի կախաղանէն, զի տեսանիցէ զուրա-
ցութիւն մանիքեցւոյն, և լիցի նմանօղ նմա:
Արդ իբրև տանջեցին զմանիքեցին, և սաս-
պէին ուրանալ զհաւատս իւր և զոհել, նա
զառաջինն ը̃գիմացեալ՝ ոչ զոհէր. իսկ յոր-
ժամ սաստկացաւ տանջանքն 'ի վ̃ր նր̃, աղա-
ղակեալ 'ի ձայն մեծ՝ նզովէր զհաւատն իւր և
զվր̃պութիւն մանեայ: Իսկ ածին առաջի նր̃
մրջիւն բ̃զմ, զի սպանցէ զնա. քանզի մանի-
քեցիք զմրջիւնս պատուէին իբրև զշնչաւոր
կենդանիս, ևս և ա̃ծական պատուոյ արժա-
նիս. իսկ նա վաղվաղակի սպան զնա: Յայն-
ժամ ասէ մոգպետն զայիթալաս. տեսեր,
թէ որպէս վաղվաղակի ուրացաւ մանիքեցին
զհաւատս իւր:

Իսկ ք̃սասէր ն̃ա վկայն տեսեալ զմոլորա-
միտ զառն զայնորիկ զվաղվաղակի ուրացու-
թիւն, և զինքեան 'ի վ̃ր ճշմարտութն զհաւա
բերուն, ուրախանայր յոյժ 'ի մտ̃ր. և 'ի բա-

զուամ խնդութե՟ն իբրև վարդ պայծառ երևէին դէմք ն՟ր, կամ իբրև զնշոյլս արեգական. և ուրախութի՟բ գոհանայր զա՟յ. և ասէր. վա՟շ մանեայ, Թշուառական մանիքեցին յաղթեցաւ, և սպան զո՟ծ իւր. այլ երանելի եմ ես, և երիցս երանելի, զի յաղթեցի, և յաղթեաց ինև յս՟ քս՟՝ որդին մարիամու, որ և որդի ա՟յ իմոյ բարձրելոյ, փ՟ծ կենդանի՝ նախ քան զյաւիտեանս՝ ի հօրէ ծնեալ:

Իբրև լուաւ զայս անօրէն մոգպետն, փոխեցաւ գոյն երեսաց ն՟ր ՝ի սրտմտութե՟ բարկութե՟ն. և հրամայեաց միւսանգամ տանջել զնա ջալատիւք. մինչև համարէին զնա մեռեալ. և ոչ կարէր յառնել ՝ի սաստկութե՟ տանջանացն, զի լուծեալ էին բազուկք ն՟ր ՝ի թիկանց նորա. յայնժամ քարշեցին զնա մերկ և կիսամահ, և ընկեցին յանցս ճանապարհին՝ ը՟ն որ երթային և գային ամբոխք քաղաքին: Եւ տեսեալ զնա ոմն ՝ի մոգուց անտի, զի այնպիսի այր և պատուական այր՝ չարալլուկ և մերկ դնէր, ախտակցեալ գթացաւ ՝ի վ՟ր ն՟ր. և մերկացեալ յիւրմէ ըզվերարկուն իւր՝ ծածկեաց զանձն ն՟ր: Իսկ չարաբարոյք ոմանք ՝ի մոգուց անտի իբրև տեսին զայն, բարկացան, և ձգեալ զայրն՝ ածին յատեան մոգպետին. և նա հրամայեաց տանջել զնա. և եարբ այրն գան երկերիւր թուով մինչև ՝ի նուաղիլ: Ապա ետ մոգպետն հանել զայրն յերեսաց իւրոց (13). և զայիթալաս հրամայեաց բառնալ ՝ի տեղւոջէն, և արկանել անդրէն ՝ի բանտ:

Իսկ յետ աւուրց հնգից լուր եղեւ, թէ Թամ՟շապուհ եկեալ է յաւանն Բեթթաբաւ. յայնժամ հրամանաւ մոգպետին հանեին 'ի բան-տէ զերկոսին վկայսն՝ զյովսէփ քահանայ եւ զայիթալաս սարկաւագ, եւ յանդիման կա-ցուցին թամշապհոյ, որ էր ո՟մ գլուխ դատաւ-որաց. եւ նա ասէ ցնս. կերայք յարենէ, եւ արձակեմ զձեզ. քանզի խնայեմ 'ի ծերութե՟ ձեր։ Իսկ նքքն ասեն. ձեզ մոլեկան գազա-նացդ 'ի դէպ է արիւն ճաշակել, որոց հեշ-տալի է արիւնհեղութի՟։ Իբրեւ ոչ կարաց ի՞նչ հաւանեցուցանել զնոսա, հրամայեաց

գան հարկանել։

Յայնժամ ոմանք յորոց շուրջն կային՝ գթա-ցեալ ասէին ցնս. կամիք զի բերցուք ձեզ խորտիկս արիւնանման. կմ՟ զմուզ խաղողոյ չորացելոյ թանձրացեալ արիւնանման, եւ արբէք առաջի իշխանիդ, եւ սովիմք զեր-ծեալք ապրեսջիք. եւ մի 'ի տարապարտուց մեռանիք։ Իսկ սք՟քն աղաղակեցին եւ ասեն. քա՛ւ լիցի մեզ պղծել զծերութի՟ս մեր, եւ վ՟ն երկիւղի մարդկան աչառութ՟ անկանել 'ի բարձրութէ հաւատոյս մերոյ, եւ սատել ճըշ-մարտութէն։ Այ՟ տանջեցին զս՟նս՝ առեալ

միոյ միոյ քառասուն հարուած։

Տեսեալ բռնաւորին՝ թէ ոչինչ օգտի, ասէ ցնս. կամիք, զի բերցեն ձեզ միս՝ որ ո՛չ է հեղձուցիկ եւ ո՛չ 'ի զոհիցն. կերայք զայն, եւ արձակեմ զձեզ։ Սք՟քն ասեն. ա՟մ՝ որ հրամանաւ քով բերցի, ո՛չ է նք. զի եւ լսեսցեն իսկ քոց բանից՝ զա՟մ յինքն բերէ պղծութե՟

եւ

և ամպարշտութի. վա՛յ ո՛չ ե՛մք լսելոց քեզ.
արդ վճի՛ռ տուր մեզ որպէս և կամիցիս՝ վն
մահուան մերոյ ։

Յայնժամ խորհուրդ արարեալ Մոգպետին
և Թամշապհոյ և այլոց իշխանացն 'ի միա-
սին՝ հրաման հանին ժողովել զբազմութի.
քրիստոնէիցն արանց և կանանց՝ ազատաց
և ծառայից և ռամկաց, զի քարկոծ արաս-
ցեն զվկայսն ։ Նա և յոչ առնուլ նց յանձն՝ հար-
կանէին բռնութբ անօրէն զինուորքն զհա-
ւատացեալսն՝ արկանել քարինս 'ի վր սրբցն ։
Ըմբռնեցաւ ը այլ քրիստոնեայսն և նախա-
յիշատակեալ ազնուական և առաքինի կինն
յազդունդուխտ, կամ կին մի ազատ դան-
դուլ անուն. որ ոչն առնոյր յանձն զհրա-
մանս դառնունն, այլ խնդրէր զաղօթս սրբցն ։
Յայնմ վայրի կամէին միւսանգամ տանել
յանդիման առնել իշխանին զսբն յուսկեփ.
և զի ոչ կարէր ինքն սբ վկայն ոտնփոխ լի-
նել, բուռն հարեալ 'ի ծառայից՝ ածաւ մօտ
յատեանն. ուր յեցեալ 'ի մին 'ի սպասաւո-
րաց՝ ակնարկեաց Մոգպետին գալ առ նա.
և նա հանդերձ փութով և զուարթութբ յա-
րեաւ յաթոռոյն և եկն առ սբն՝ համարե-
լով թէ արասցէ զհաճոյս իւր ։ Իսկ սբյն
լցեալ զբերան իւր խխով ը մերձեցեալ Մոգ-
պետին եթուք յերեսս նորա, և ասէ ցնա.
պիղծ և անմաքուր՝ ո՞չ ամաչես, զի գրեա՛լ
թէ մեռեալ եմ, և դարձեալ յատեա՛ն կո-
չես զիս 'ի քննել. տակաւին ո՞չ գիտացեր,
զի այսքան չարչարանս ընկալեալ 'ի քէն՝ ան-

տասանելն պահեցաք զհաւատս մեր, և համբերեցաք և համբերեմք մինչև ցօր մահուան մերոյ: Յայնժամ Թամշապուհ և որ ը̅ն նմա նստէին մոգքն և ա̅մ իշխանքն՝ ծաղր առնէին զմոգպետն այպանելով, նախատէին և ասէին. ո՞ հարկ արար զքեզ գնալ մերձ 'ի նա, և կրել զայդպիսի անարգանս. և նա ամաչեաց յոյժ:

Եւ ապա ել հրաման քարկոծման նոյն յամսեփայ (14). զոր հանեալ դահճայ արտաքոյ քաղաքին՝ վարեցին զհետ նո̃ր բռնութ̃ և զքրիստոնեայս արս և կանայս իբրև հինգ հազարս հանդերձ լալով և ողբալով. և բրեցին տեղի մի փոս, և կապեալ զվկայն՝ նստուցին անդ. և ստիպէին զժողովեալսն՝ քարաձիգ լինել 'ի նա: Նեղէին ը̅ն նոսա և զկինն զայն զառաջասացեալ՝ արկանել քարինս 'ի 'ի վ̃ր նո̃ր. իսկ նա մեծաձայն աղաղակէր և ասէր. ո՛չ երբէք կանայք պատերազմ վանեցին, կամ արս սպանին, ո̃պ դուք զմեզ ստիպէք առնել. և ձեր թողեալ զպատերազմելն ը̅ն թշնամիս՝ 'ի քաղաքացիս անդր դարձուցանէք զզէնս. և զծի̃ խաղաղուն բարձեալ՝ խռովութ̃ և արիւնհեղութ̃ լնուք զգաւառս:

Իսկ անօրինաց լուեալ զայս՝ մատուցանէին 'ի ձեռս կնոջն եղէգն ասղանածայր, և ասէին. եթէ ոչ կամիս քարինս արկանել 'ի վ̃ր դորա, գո՛նէ հա՛ր այսու եղեգամբ ըզգլուխ առնդ. զի ծանուսցուք արքայից արքայի զհպատակութ̃ քո: Իսկ աքանչելին կինն

ա

ասէր ․ քաւ լիցի ինձ առնել զայդ ․ մանաւանդ զսիրտ իմ պատրաստ եմ վիրաւորել այդու՝ քան եթէ զնորա նահատակն քնի ․ եթէ իշխանութիւն առից՝ ՚ի վերայ իմ սպանանել զիս, անհաւատալի պատրաստ եմ յօժարութեամբ մեռանել ․ այլ ոչ եղէց հաղորդ արեան արդարոյ ։

Այսու օրինակաւ ազատ պահեաց զանձն առաքինի կինն ․ յորում վայրի այլ ամենայն բազմութիւնն ակամայ կամօք քարկոծեցին զնորա քահանայն յովսէփ ծերունի ․ և բարձրացան դիզացան քարինքն ՚ի վերայ նորա ՚ի խորափոսի անդ մինչև ՚ի գլուխն ․ և զի տակաւին կենդանի կայր, մին յիշխանաց ոմն թէ գթացեալ է տագնապիլ նորա յերկար ՚ի հոգեվարս՝ հրամայեաց դահճի միոյ վիրդ մի առնուլ, և հարկանել զգլուխ սորին ․ և այնպէս վաղվաղակի աւանդեաց երանելին զհոգին ։

Եւ նստեալ պահապանքն պահէին զնշխարս նորա զաւուրս երիս ․ և յաւուրն երրորդի կամ չորրորդի եղեն շարժմունք և ձայն մեծ որոտման և կարկուտ և հողմ ․ մինչև զարհուրեցան ամենայն բնակիչք երկրին և զդողանի հարան ․ և իջեալ հուր յերկնից՝ կիզեաց զոմանս ՚ի պահապանաց ․ և քարինք բագնաց տաճարին կործանեցան (15) ։ Եւ յայնպիսի պահու նշխարք նորա աներևոյթ լինէր ՚ի տեղւոջն ․ մինչև չգիտել ումեք՝ թէ զի՞նչ եղև, եթէ չիցէ գողացեալ ՚ի վկայասէր անձանց ։ Որ այսպէս գրէ ճառընտիրն մեր ․ * պատառեալ տեղւոյն՝ ծածկէր զնշխարսն, զի մի

այրեացի Վ յանօրինաց ։ Իսկ քաղդէական
վկայաբանն կմ՟ նքն մարտուլթաս ասէ ։ * յայ՟
արդեօք, եթէ 'ի մարդկանէ ծածկեցաւ Ը
հողով, անգիտելի է մեզ մինչև ցայսօր. զի
և ցարդ ոչ գտաւ տեղի դերեզմանի նր՟ [16] ։
Կատարեցաւ նք վկայն քհ՟ի յովսէփ քահա-
նայն յաւուրն վեցերորդի առաջին եօթնե-
կի պենտեկոստէին, որ է յինանց. ( որ լինի
երկաւուրբ յառաջ քան զնոր կիւրակէն ),
յամի տն՟ 380 ։

Յետ կատարման սբ՟յն յովսեփայ առեալ
դահճաց հրաման 'ի թամշապհոյ և 'ի մոգ-
պետէն վն՟ սբյն այխթալայ սարկաւագի՝ տա-
րան զնա 'ի գաւառն բեթնուհադրայ կամ
բեթնադարայ 'ի մարդաշատ գեօղաքաղաքն
դաստկարայ [17]. և ժողովեցին նոյնպէս և
անդ արս և կանայս քրիստոնեայս՝ յաղատաց
և 'ի ծառայից, հանդերձ գլխաւորաւն՝ որ
'ի հաւատացելոց անտի էր. և հանեալ զնքն
'ի լեառն կմ՟ 'ի տեղի մի բարձր՝ կապեալ ո-
տիւք և ձեռօք, նեղէին յոյժ զժողովեալս
քրիստոնեայսն՝ քարկոծ առնել զնա. և նք
ակամայ կամօք բերեալ յայն գործ անար-
ժանութե՝ արկին 'ի վր՟ նր՟ զբազմութիւն քա-
րանց, մինչև առնել կարկառակոյտ մեծ. և
այնպէս դառն տանջանօք աւանդեաց երա-
նելին այխթալաս զհոգին 'ի ձեռս այ՟ 'ի չոր-
րորդ աւուր վերջին եօթնեկի պենտեկոս-
տէին, որ է յինանց [18]. այն է 'ի մայիսի 27.
( թէպէտև ոմանք յունիս գրեն, և այլք յա-
պրիլի ԺԶ ) ։ Ի նուատել պահապանքն պահէին

զնք

զնոր մարմին վկային մինչև ցաւուրս երիս ։ Յետ այսորիկ եկեալ քրիստոնէից գողացան զնշխարս նորին, և պատեալ պատատանակալօք եդին 'ի գերեզմանի յանքոյթ տեղւոջ ուրեք ։

Այլ եղեն սքանչելիք 'ի տեղւոջ կատարման սրբոյն ․ քանզի առ ժամայն բուսաւ անդէն ծառ մի Ճշդարենի, այս է մրտենի ․ յորոյ տերևոցն բժշկութիւն լինէր ամենայն ցաւոց ․ մինչև զկնի հինգ ամաց 'ի Նախաճն բերեալ անօրէն մոգուցն՝ հատին զծառն և խլեցին յարմատոց ։ Այլ դարձեալ ոչ հաստատեցին բազումք յարժանահաւատ անձանց մինչև ցաւուրս նորին Մարութայի բանիցս պատմողի, տեսիլք զարմանալիք երևեցան նոցա մօտ 'ի տեղի քարկոծման նորին Այիթալայ սարկաւագի ․ քանզի ասէին, եթէ յայտնապէս տեսանէաք 'ի գիշերի դունդս հրեշտակաց, որք իջանէին յերկնից, և ելանէին անդրէն յերկինս, և 'ի ձայն սաղմոսաց օրհնէին և փառաւորէին զԱստուած ․ որում վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

Յայսմ ամի եղև յերեսներորդ եօթներորդ ամի հալածանաց Շապհոյ մինչև ցամն քառասներորդ ․ զի քառասնամեայ ժամանակաւ հալածեաց Շապուհ զքրիստոնեայս ․ այս է ասելն սրբոյն Մարութայի ․ * Յերեսներորդ առաջնորդ ամի իւրում սկսաւ զհալածանս, և յեօթանասներորդի նորին վճարեցաւ 'ի կենաց ․ զարգացաւ 'ի մէջ կոտորածից, և

՛ բոլոք հարկանել, քարամբք կոչկոճել, և անարգանօք
՛ Թշուառացուցանել ||. ԵՆ:

Երկրորդն է օրինակն ճառընտրին մերոյ մեծի, ուր Թէպէտև Թուղթ մի պակասի յընթացս, և 'ի տեղիս տեղիս առ հնութեան և փտութեան անվերծանելի մնան տողք ինչ կամ բառք, բայց ուր ուրեք ամբողջ գտանի՝ է յար և նման տառաճնոյն ըստ պատմական մասին՝ ոչ միայն ըստ իմաստից, այլև գոգցես ըստ եղերաց. միայն յառաջաբանն ներբողական է տարբեր՝ օրինակ զայս. * Անքան-
՛ չելի է ած 'ի վրյ սրբց իւրոց. որպէս ամենահայր մար-
՛ գարէն՝ ընակարան հոգւոյն սրբյ՝ արքայն գաւիթ. և
՛ գրեալ՝ պարծեսցին սրբք փառօք, և ցնծասցեն 'ի հան-
՛ գիստս իւրեանց: Իսկ ես զկնի նորին բանից հետևե-
՛ լով, և նման մօրք առ խորս ծովացեալ անբաւ ի-
՛ մաստից նր նորաձայն լեզուով բարբառ արձակեցից,
՛ լինելով գրիչ հոգւոյն սրբյ արագագիր դպրի ճար-
՛ տարի. և այսպէս աղաղակելով ասեմ, թէ սքանչելի
՛ է ած 'ի վրյ սրբց իւրոց: Եւ մրգալիցն է բանս. զի թէ
՛ ած սքանչելի սրբովք իւրովք, և յորժամ ոչ գոյին սրբք՝
՛ ոչ էր սքանչելի. 'ի բաց տար զբան ապիրատութեան.
՛ այլ յորժամ սքանչելիս գործէ ինքն 'ի ձեռն սրբց իւ-
՛ րոց, յայնժամ անուն նր փառաւոր և սքանչելի եր-
՛ ևեալ լինի 'ի մէջ սրբց իւրոց: Որպէս և 'ի ժամանակս
՛ նաբուքոդոնոսորայ արքայի՝ յորժամ կամեցաւ հա-
՛ կառակ այ կանգնել զպատկերն ոսկի, յորդորեաց (զե
՛ Թագաւորաց) զնա ած հրով փորձել զերիս մանկունսն.
՛ զի զայն զոր ինքն ած պաշտէր, անսաներ արհամար-
՛ հել...(անվերծանելի), և այնպէս սքանչելի ... իւր:
՛ Այլ ես որ որ ... ցունց, և տգէտս 'ի գ...ստից,
՛ աղաչեմ զերանելին ակնփախմաս, զի տացէ ինձ զ... և
՛ զայնթալաս՝ շնորհել պարզութի մտացս. և զորն յովսէփ՝
՛ զի օժանդակեսցէ տկարութեան իմոյ, գրով յօրինել
՛ զճառս պատմութեան... նոցա. և զձեզ առ... զար-
՛ թուցանեք զականն.. ձերոց՝ առ 'ի լսել յօժա... նա-
՛ հատակութեան նց, և փառաւորել զած՝ որ փառա-
ւորէ զփառաւորիչս իւր ||:

Այս անշամէջ սկիզբն լինի պատմութեան այսպէս. * Յե-
,, րեքհարիւրորդի (փոխանակ գրելոյ ըստ այլոց՝ Յերես-
,, ներորդի) եօթներորդի ամի հալածանաց մերոց՝ զկնի
,, անճառ ծագման բանին այ (այս հաստատէ զերեք-
,, հարիւրորդն), եւ հրաման դառնաւն յարքայէն շափ-
,, հոյ, և առնու իշխանութեան մոգաց և մոգպետաց 'ի վրյ
,, ած

,, ամ քրիստոնէից . ոչ զի ամ օրինակօք տանջանաց պատ_
,, ժեցին և չարչարեցին հաւատացեալսն , և ապան_
,, մամբ չարչարանօք զվճիռ մահու ընկալցին || ԵՆ : Արդ
քանզի այսուհետև միօրինակ ընթանայ ճառընտիրս մեր
է առաջին օրինակին սկզբն մարտութեան , մեք հասարակօ_
րէն պահեցաք զշարագրութի ճառընտրին ՚ի միայնա_
նութն մերում . և միայն զպակասութիւս լցուցաք , կամ
զխրթնութիւս պարզեցաք և կամ զսխալանս ուղղագրեցաք՝
՚ի միւս օրինակէ անտի : Իսկ տարբերութի ճառընտրին
՚ի քաղդէականէն երևի պատճառաւ թ երկուց . մի՝ զի
հեղինակ ՚ի հեղինակէ առեալ՝ նորոգ է շարագրեալ թ
իւրում ոճոյ . և միւս ևս՝ զի մերս ոչ է անմիջական թարգ_
մանութի ՚ի քաղդէացւոյն կամ յասորւոյն , այլ ՚ի յունա_
կանէ . և այն ևս՝ հնագոյն է զմետափրաստէս . զի սա
՚ի նախընթաց օրինակաց առեալ՝ յայլ ձև մերձէ իւ_
րում ոճով . զորմէ ժամ է ասել : Այս՝

Երրորդ օրինակն է այն՝ որ կրէ զանուն մետափրաստե_
սի , լատիներէն ևեթ յառաջ բերեալ ՚ի սուրիոսէ , և
յունական բնագիրն յաւելեալ ՚ի հենշքենիոսէ բոլլան_
դեան՝ թ մետիկեան կոչեցեալ մատենի արքունի դրա_
տան փարիզու . զորոյ և մեք զերիս այլ օրինակս գտաք
՚ի վենետիկ ՚ի գրատան սբյն մարկոսի՝ ՚ի յունագիր մա_
տեանսն յծա , յկա , և շԾԳ . և սորա սկիզբն է այսպէս .
* Մոլեգնէր Յուդէմ քրիստոնէից շապուհ ( որ գրի սա_
,, ւուրոս ) պարսից արքայն . և մոգուց մասն եղելոց
,, պարսից զՅուդէմ նշ հրամայէր զհալածումն . որք և
,, խստագոյն՝ իբրև նախանձաւորք հայրենի սովորու_
,, թեց՝ ըկեալ զհալածեալսն , հրոյ և արեգական պաշ_
,, տօն մատուցանել բռնադատէին || . ԵՆ :

Զայս գործ՝ զոր այլք ընդ ալլատիոսի ընծայեն մետա_
փրաստեսի , եւոդիոս ժխտէ լինել նր՝ յայն սակս ևեթ ,
զի կարծէ թէ որք առեն զսա լինել գործ մետափրա_
ստեսի՝ նովին իսկ առաջին հեղինակ առնիցեն զմետափրա_
ստէս միայնաբանութե ակեփսիմեանց . որ է սուտ և ան_
հիմն ենթադրութի . զի մետափրաստէս և ոչ միոյ միայնա_
բանութե հեղինակ գտանի , այլ միշտ հետևօղ հեղինա_
կաց և հաւաքօղ ևեթ . ո՞չ և առաջինկոյս գործ նր է
հետևօղութի նախընթաց երկուց օրինակաց՝ յն նշյն մա_
րտութեան և ճառընտրին մերոյ . մինչ զի գրեթէ ոչինչ
նոր լոյս կամ տեղեկութի ընծայեցաւ մեզ ՚ի մետափրաստէ_
սէ . այլ միայն սատար եղև ՚ի հաստատել երբեմն զըն_
թերցուած մեր , և երբեմն զընթերցուածն եւոդիոսի :

Զոր_

ռևանն Հ. վասն քարկոծելոյ սրբց ՚ի քրիստոնէից. * և
,, սրբքն աղաչէին զնա, զի մի համարեսցի քրիստոնէիցն
,, այն ՚ի մեղս ||. զի յակամայս բռնադատեցան առնել:

(16) Մետափր. համաձայն որոյն մայրութեան խօսի մի անգիտելի լինելոյ իրացս:

(17) Ասա ևս զգաւառն և զքաղաքն միացուցեալ՝ պատրիաս գիւղ կոչէ Մետափր:

(18) Եւագ. Ծանուցանէ, թէ ասորիք՝ հանդէտ յունաց՝ պենտեկոստէ՞ յիսներորդ կոչեն զմիջոցս յինանց. զնոյն նշանակէ և ՚ի մեզ բառդ յինունք, որպ թէ յիսներորդք կամ յիսնակք աւուրց՝ ՚ի զատկէ մինչև ՚ի հոգեգալուստ:

(19) Կամեցաք տուգեալ այլուստ կմ որոշ ևս գիտել ըղձրեալն ասացեալս ՚ի Հ. թէ յետ ժամանակաց յայտնեցան նշխարք սրբոյն ակեփսիմեայ, յովսեփայ և այիթալայ. և զարմանալեաց գլուխս նց տարեան ՚ի բիւզանդիա, և շինեցին ՚ի նմ վայելուչ եկեղեցի:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Պղատոնի վկային անկիւրացւոյ ։

Հ. նոյեմ. 14 ։ Յ. նոյ. 18 ։ Լ. յուլ. 22 ։ Ճառընտ. Ա. չհԲ = չՅԷ ։ Բոլլանդեանն ըն-տիրս. 'ի Է հատ. յուլ. էջ. 226 = 235 ։ Լ եգիպ-տանս. նոյ. 18 ։ Ասորիս. յուլ. 22 ։ (1)

ԲԱԶՄԱՀԱՆԴԷՍ ԵՒ նշանագործ վկայն Քրիստոսի Պղատոն՝ էր 'ի քաղաքէն անկիւրիոյ գաղատացւոց, որդի հաւատա-ցեալ և բարետոհմիկ ծնողաց՝ որք մնացեալ 'ի նմէ, և ըստ ոմանց՝ եղբայր փառաւորեալ նահա-տակի ուրումն անտիոքոս կոչեցելոյ (2), մինչև հասակաւն՝ գեղեցիկ յոյժ, և լի իմաստութեամբ աստուածային գրոց, անուանի ընդ ամենայն գաղատիա՝ յաւուրս հալածանաց մաքսիմիանոսի կայ-սեր ։ Քանզի վառեալ պղատոնի 'ի սէրն Քրիստոսի, և ձեպեալ 'ի բրաբիոն նահատակութեան՝ ինքնին բաշխէր աղքատաց զինչս, զոր թո-ղին նմա ծնողքն իւր. և ամենայն կարօտելոց 'ի թի-կունս հասանէր, բարերար լինելով բազմաց 'ի պէտս հոգւոյ և մարմնոյ. մինչև ձգել և զոմանս 'ի հեթանոսաց 'ի հաւատս Քրիստոսի ։ Իսկ քանզի անպատկառ քրիստոնեայ զանձն խոստ-

խոստովանէր հրապարակաւ, մատնեցաւ 'ի նոցունց իսկ՝ որք երախտաւորեալ էին 'ի նմանէ։ Արդ իբրեւ կալան զերանելին պղատոն, նստեալ յատենի ագրիպպինոս դատաւորն անկիւրիոյ՝ որ եւ բեկար (ըն փոխանորդ) գլխաւոր 'ի կողմանէ թրուէ, առաջի ապարանից իւրոց յանդիման մեհենին արամազդայ, հրամայեաց գօտելոյծ առաջի իւր կացուցանել զնա. եւ եմոյծ զվկայն 'ի ներքս իբրիդիոս կմ բիկեննտիոս դահճապետն. եւ ասէ. ահաւասիկ առաջի քոյոյ բեմիդ տր իմ Թշնամանօղն ածոց, որ պարծի 'ի կրօնս քրիստոնէից։

Այլ դատաւորն իբրեւ ետես զպղատոն, ասէ. ամ տիեզերք 'ի խաղաղութե վարին. իսկ դու ըէր յայդչափ մոլորութի յամառիս, եւ զբազումս ըն քեզ մոլորեցուցանես 'ի պաշտօն խաչելոյն։ Սբն ասէ. ո՜վ դատաւոր՝ դուք էք մոլորեալ, որ թողեալ զարարիչն երկնի եւ երկրի՝ քարանց եւ փայտից երկրպագանէք։ Դատաւորն ասէ. մանկութիդ քո յանմտութե զքեզ ածէ. եւ ոչ կարծեմ, բազում տանջանաց մատնել զքեզ. արդ ասա վաղվաղակի, թէ որո՞ց կրօնից ես, յորմէ՞ քաղաքէ, եւ զի՞նչ անուն է քո։ Սբն ասէ. եթէ զկրօնս իմ կամիս ուսանել, քրիստոնեայ եմ՝ սնեալ 'ի քաղաքիս յայսմիկ. եւ անուն իմ պղատոն կոչի 'ի ծնողաց իմոց, այլ եւ ծառայ քսի յորովայնէ մօր իմոյ։

Դատաւորն ասէ. ոչինչ օգտէ զանունն քեզ 'ի վն քո կոչել. վն զի բազումք՝ որք խոստա-

վանեցին յանուննն յայն, մահու մատնեցան ։ Իսկ որք ուրացանն, մեծամեծ պարգևս ընկալան 'ի Թ͞գրացն. և արդ ես Թելադիր եղէց քեզ, հաւանեա՛ ինքնակալացն, և մեծամեծ շահս շահիս, և 'ի մեծամեծ տանջանաց զերծանիս ։ Պղատոն ասէ. ես Թագաւորին իմոյ ք͞ի հաւանեալ եմ. վ͞ն զի նա իշխէ ժամանակիս և յաւիտենականիս ։ Դատաւորն ասէ. մի այդպէս պնդիր տար, այլ իմաստու͞թ խորհեա՛ զօգուտն քո. վ͞ն զի պատուհական հրաման ինքնակալին եղաւ 'ի վ͞ր ա͞մ քրիստոնէից՝ կամ զոհել, կամ մեռանել ։ Պղատոն ասէ. այլև հրաման եղաւ յ͞յ 'ի վ͞ր մեր՝ նմա՛ երկիրպագանել ։

Յայնժամ բարկացեալ դատաւորն հրամայեաց չորից զինուորաց զ͞ըն պարզել, և արջառաջլօք հարկանել. և այնչափ յերկար տանջեցին զ͞ըն, մինչև զինուորքն երկոտասան զմիմեանս փոփոխէին 'ի հարկանելն. իսկ նա միայն գոհանայր և խոստովանէր զանուննն ք͞ի ։ Ասէ դատաւորն. ո՛յ Թշուառական՝ փութա՛ 'ի մահուանէ 'ի կեանս ։ Ս͞րբն ասէ. բարիոք խրատես ով դատաւոր. վ͞ն զի և ես այսպէս կամիմ, փախչել 'ի յաւիտենական մահուանէն, և 'ի մշտնջենաւոր կեանս մտանել ։

Դատաւորն ասէ. ո՛յ Թշուառական՝ և երկու մա՞հք իցեն, և երկո՞ւ կեանք ։ Ս͞րբն ասէ. այո ։ Դատաւորն ասէ. և ո՞ր այն իցեն երկուքն ։ Ս͞րբն ասէ. մի առժամանակեայն, և միւսն յաւիտենական ։ Դատաւորն ասէ.

սէ. մի՛ շատախօս լինիր, այլ մատի՛ր զօրհեա՛ ա͞ծոցն, և զերծի՛ր 'ի տանջանաց ։ Ա՛սն ասէ. զոր ինչ կամիս, արա՛ վաղվաղակի ը͞ն իս. վ͞ս զի զիս ոչ հուր և ոչ սուր, ոչ գազանք և ոչ այլ ինչ տեսակք տանջանաց կարեն հեռացուցանել յս͞իրյն իմմէ յ͞յսէ ք͞սէ, որ մեռաւ վ͞ս մեր և յարեաւ ։ Յայնժամ հրամայեաց դատաւորն տանել զնա 'ի բանտ. և ն͞ըն ուսուցանէր զամենեսեան՝ որ երթային առ նա ։ (3)

Իւ յետ վեց կ͞մ եօթն աւուրց (4) հրամայէր դատաւորն միւսանգամ առաջի իւր ածել զերանելին, կազմ և պատրաստ ունելով բ͞զմ տանջանարանս առ 'ի զարհուրեցուցանելոյ զն͞ըն ։ Իւ ասէ. աւասիկ այս ա͞մ տանջանարանքս վ͞ս քո պատրաստեցան. բայց եթէ կամիս, ոչ միայն զերծանիս 'ի նոցանէ, այլև բազում պատուո՛յ և փառաց հասանես. վ͞ս զի է իմ դուստր միամօր (5), գեղեցիկ իբրև զքեզ, զայն տաց քեզ 'ի կնութ͞ն, և բազում վարձանս ը͞ն նմին, և եղիցիս իմ որդի փեսայացեալ. միայն մատի՛ր զօրհեա՛ ա͞ծոցն, և ճաշակեա՛ 'ի նուիրականս զոհիցն ։ Պ͞տնի ետ ն͞ըն և ասէ. սպասաւո՛ր լեգէոնին և Թշնամի ք͞սի՝ նմանեալդ հօրն քում սատանայի, մեքենայիւք կամիս պատրել զիս. այլ ն͞ա իմով ոչ 'ի պատրանաց քոց խաբիմ, և ոչ 'ի սպառնալեաց քոց երկնչիմ ։

Արտմտեալ դատաւորն ագրիպպինոս՝ ետ բերել մահիճս պղնձիս, և պարզել զն͞ըն 'ի վ͞ր նո͞ր, և 'ի ներքոյ մահճացն խարոյկ արկանել,

նել, և հեղուլ 'ի վ՟ր սրբոյն ձէթ և ծծումբ և կուպր և մոմ (6) : Յայնմ վայրի սոփրոնիոս թանտապետն յորդորէր զվկայն՝ հնազանդ-լինել իշխանին, և ազատիլ յանքերելի տանջանաց անտի. իսկ նա յանդիմանեաց զայրն, և մերժեաց զչար խրատ ն՟ր : Եւ իբրև այսպէս պատրաստեցաւ տանջանարանն, և ըսպասաւորքն լուցին զհուրն ը՟ն հրամանի դատաւորին, ամբարձ երանելին պղատոն զաչս իւր յերկինս 'ի վ՟ր հրեղէն մահճացն՝ կամ կասկարային, և ասէ այսպս. Տ՟ր իմ յ՟ս ք՟ս՝ ա՟ծ հրեշտակաց և ա՟մ անուանս անուանելոց, դու ես՝ որ ա՟մ ուրեք զծառայսն քո զօրացուցեր, և համբերութի յուսացելոցն 'ի քեզ շնորհեցեր. դու և 'ի բաբելոն զզօրութիւն ա՟ծութե քո ցուցեր՝ փոփոխելով զհուրն 'ի ցօղ. արա՛ և այժմ առ իս զնշան սքանչելեաց քոց, և առաքեա՛ զհրեշտակ քո, և ցրուեա՛ զբոց հրոյս այսորիկ. ոչ զի ծանիցեն ամենեքեան՝ որք մոլորեալ են 'ի կուռս, եթէ դու միայն ես ճշմարիտ ա՟ծ՝ միշտ փառաւորեալ ը՟ն հօր և ս՟բ հոգւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն :

Եւ յերկրորդել բազմութե քրիստոնէից՝ որ մօտ կային, զամէնն, նոյնժամայն հուրն շիջաւ. և լոյս սաստիկ ծագեաց 'ի վերայ սրբոյն (7). և թուրեաց հոտ անուշութե : Յայնժամ ա՟մ ամբոխն սկսաւ աղաղակել, մե՛ծ է ա՟ծն քրիստոնէից. և նա միայն է ա՟ծ, և այլ ոք չիք : Իսկ անօրէն դատաւորն 'ի վ՟ր այսր ա՟մի ոչ ծանեաւ զճշմարտութիւն. այլ կու-

րացեալ 'ի լուսոյ յայտնի սքանչելեացն՝ տա-
կաւին կախարդութեան զեղեալսն կարծէր ։
Այս հրաման, և իջուցին զնահատակն 'ի
պղնձի մահճացն, և կացուցին առաջի նր ։
Ասէ ցնա դատաւորն. երդուեալ 'ի յաջո-
ղոն ածն իմ, ոչ տայրիս 'ի ձեռաց իմոց, ե-
թէ ոչ ուրասցիս զխաչելեալն՝ զոր դու ած
կարդաս ։ Ասէ ծերն պղատոն. ով սիրտ թմբ-
րեալ և միտք կուրացեալ, զինչ է զոր խօ-
սիս զհայհոյութիւն. 'ի վր այսր ամի ոչ ծա-
նեար զզօրութիւն ածյ իմոյ, այլ տակաւին
լրբիս ։

Յ'ւս առաւել բարկացեալ դատաւորն՝ ետ
հրաման պրկել զնա յորսայս, և ժ չափոյ
հաստակի երկայնութեամբ նր փոկս փոկս հանել
'ի նմանէ՝ քերթելով և մորթեզերծ առնե-
լով զմորթ մարմնոյ նր 'ի թիկանց կուսէ և
'ի կողից նր (8) ։ Իսկ իբրև սկսան անողորմ
դահիճքն առնել զայս այսպս, ձկնազգեաց
վկայն քի ոչինչ տայր պատասխանի առ հարցուածս
անօրինաց. բայց միայն սաղմոսէր և ասէր.
համբերելով համբերի տն, նայեցաւ առ իս,
և լուաւ ձայնի աղօթից իմոց ։

Զայրացեալ դատաւորին յանտանելի համբե-
րութեան սրբոյն՝ առաւել զչարեցաւ, և ետ կա-
խել և քերել զլանջս նր, այլև զատամն ան-
գամ և զծնօտս նր. մինչև ոչ մնաց ամենևին
տեղի ողջ. և այնպէս հոսէր իջանէր արիւն
վկային, և առոգանէր զվայրսն ։ Ապա յետ
այսորիկ ետ հրաման իջուցանել զնա 'ի կա-
խաղանէ քերանաց, և ետ բերել զուն
եր-

Երկաթիս, և ջեռուցանել զնոսին և շանթացուցանել 'ի քուրայս դարբնաց, և դնել յանթս ն՟ր և 'ի վ՟ր սռեանց. և այսպէս այրեցին խորովեցին զմնացեալ մարմին նորա ։ Եւ ապա 'ի վ՟ր այսր ա՟մի ետ հրաման բռնաւորն արկանել զերանելին 'ի բանտ, պատուէր տուեալ բանտապանացն ոչ թողացուցանել զոք 'ի քրիստոնէից մտանել առ նա 'ի բանտն. բայց միայն օր ըստ օրէ նոքին խոկ տային նմ՟ ունկի մի հաց, և բաժակ մի ջուր ։ Իսկ երանելին պղատոն կացեալ այնպէս 'ի 'ի բանտին աւուրս տասն կամ տասնևութ անսուաղ, ոչինչ առնոյր 'ի բերան, այլ միայն յաղօթս կայր զցայգ և զցերեկ. և այնպէս կերակրէր հոգւով՝ յիշելով զբան փրկչին, թէ ոչ հացիւ կեցցէ մարդ, այլ՝ ա՟մ բանիւ, որ ելանէ 'ի բերանոյ ա՟յ ։

Եւ յետ աւուրց այնոցիկ ետ հրաման դատաւորն ածել զվկայն անդրէն զառաջեաւ. և հարցեալ զնա խրրև զառաջինն՝ ամենևին ոչ կարաց հաւանեցուցանել զն՟րն. ապա եդ 'ի վ՟ր վճիռ մահու՝ բառնալ սրով զգլուխ ն՟ր ։ Եւ դահճացն առեալ հանին զնա արտաքոյ քաղաքին 'ի տեղի մի դաշտավայր (9). անդ աղաչեաց ս՟բն զդահիճսն, որ՟պ զի ներեսցեն սակաւ մի կալ յաղօթս. և ն՟ք թողացուցին նմա ։

Եւ ամբարձեալ զձեռս իւր յերկինս ը՟դ արևելս՝ եկաց յաղօթս առ տ՟ր ա՟ծ 'ի միտս իւր հարուստ մի ժամ (10). և ապա 'ի կատարմանն աղօթիցն փառս տուեալ, և զամէնն

առաջեալ՝ աղաղակեաց և ասէ, Տր յս ըն-
կալ զոգի իմ խաղաղութբ. և զայս ասա-
ցեալ՝ խոնարհեցոյց զպարանոցն. և ձգեալ
դահճին զսուրն՝ անդէն եհատ զգլուխ նորին.
և այսպէս կատարեցաւ նա վկայն քի պղա-
տոնիոս 'ի փառս այ՝ յամսեանն նոյեմբերի,
որ օր ԺԸ էր ամսոյն, յամի տն իբր 300 կամ
303 ։

Ա. Նշխարաց և Նշանագործութե Աշտարակի Վկայից ։

Յետ կատարման սրբյն 'ի դաշտին անկիւ-
րիոյ՝ գողացեալ հաւատացելոց զպատուա-
կան մարմին նր և զգլուխն՝ եդին ամ պատ-
ուով և զգուշութբ 'ի տեղւոջ ուրեք. մինչև
զկնի ամաց ինչ առ մեծն կոստանդիանոսիւ
շինեցաւ վկայարան 'ի վրա տապանի բազմա-
յաղթ վկային. և սկսան լինել զօրութիւնք
և բազում սքանչելիք, որովք ցուցաւ սրբն
պղատոն մի 'ի նշանաւոր և 'ի նշանագործ
վկայից. զոր բազում գովութբ պանծացու-
ցանէ սրբն նեղոս աբբայ որդս քաղաքակից՝
'ի թուղթն առ հեղիոդորոս սիլենտիարիոս,
կմ լռակեաց. որ և վերծանեցաւ 'ի հանդէ-
սի եօթներորդ ժողովոյն, այն է երկրորդ
նբ ժողովն նիկիոյ, 'ի գործն դ. արդ այս բանք
են նեղոսի 'ի դ գիրս. Ուղբ. կէ. Երես. 492 ։
* 'Ի ձեռն՝ որոց ԾԹ տեղւոյ և տեղւոյ ԾԸ ժա-
մանակս ժամանակս անցնիւրաբար եղելոց
սքանչելեաց՝ տրն զսակաւահաւատս և զանհա-
հա-

հաւատս գլխովին 'ի հաւատս հաստատուն կոչէ, և զհաւատացելոցն զհաւատս առաւելապէս՝ և զյոյսն աճեցուցանէ, և ամրակուռ և անշարժելի ներգործէ զխոհականութիւն ։ Այլ արդ կամիմ քեզ զմի 'ի բիւրուց պղատոնին մերոյ քաջայաղթ վկայի յայտմուս ճառել ․ այն՝ որ ոչ միայն 'ի նահանգի մերում, այլև յա̃մ քաղաքի և 'ի գաւառի, որոց 'ի ձեռն նր̃ հայցեն զա̃ծ, ամենապատրաստ պարգևէ զշնորհսն, և զնորահրաշ ցուցանէ զօրութիւն ։

Քանզի 'ի լերանն կոչեցեալ սինայ՝ ուր մովսէս զօրէնսն ընկալաւ յա̃յ, միայնակեացք բնակէին՝ է որ յերկրէից անտի, և է որ յեկաց ․ և մի ոմն այր գաղատացի ազգաւ՝ հանդերձ որդւով իւրով՝ զմիայնութիւն յանձին կալեալ զվարս՝ քաղաքավարէր անդանօր, կրթեալ 'ի ճգնութեան մրցանս զբազում ժամանակս յանապատին ։ Այլ յաւուր միում յանկարծակի յարձակեալ 'ի լերանն անդր բարբարոսք ոմանք՝ հեթանոսք ը̃ս կրօնի և գարշելիք, ըմբռնեն դիւրաւ զ'ի պատրաստի գտեալ միայնակեացս հանդերձ որդւով ծերոյն գաղատացւոյ, և վարեն 'ի գերութիւն ․ զորս և կապեալ ձեռս յետս՝ ը̃ յոլովս անցանեն ամայի օթևանս, ստիպեալս և մերկս տանելով զն̃ս, բոկս և առանց իրիք ագանելեաց, ը̃ անմխիթար և անջրդի և դժուարուտ վայրսն՝ բռնի և հարկաւ յածեալս, և անհուն ահիւ պաշարեալս ։

Այլ միայն ծերն 'ի ծածուկ փապարի ուրեք

զօղեալ՝ կոծելով՝ հաշէր՝ չհանդուրժեալ ը̃
բաժանումն ա̃ծասէր որդւոյն . և զտ̃ր թա-
խանձէր քն̃ 'ի ձեռն պղատոնի հայրենակից
վկայի զիջանիլ 'ի գութ ։ Զնոյն և որդին
'ի ձեռն նորին ամենանո̃բ մարտիրոսի աղաչէր
զա̃ծ՝ կապեալ 'ի գերութե̃, ողորմիլ նմա,
և կատարել զսքանչելիս ։ Այլ իբրև երկո-
ցունց ևս աղօթք լսելի լինէին, հօրն 'ի փա-
պարս լերին, և որդւոյն 'ի գերութեան,
ահա յանկարծակի մերս պղատոն 'ի վր̃ հա-
սանէր, երևեալ 'ի ձի աշտանակեալ, ունե-
լով և զայլ երիվար պատրաստական . և ցու-
ցեալ զանձն իւր մանկան, որ կայր յարթնու-
թե̃, և ճանաչէր զսա 'ի բազում անգամ
տեսանելոյ զկերպարանս սբ̃յն 'ի պատկերա
անդ, վաղվաղակի հրամայէ նմա յառնել 'ի
միջոյ ամենեցուն, առնուլ զերիվարն և հեծ-
նուլ 'ի նա ։ Այլ անդէն լուծան կապանքն
իբրև զսարդի ոստայն . և նա միայն ազա-
տեալ վերակարդալովն (զսբ̃ն) յօգնակա-
նութի̃, և ակնարկութե̃ն ա̃յ յարուցեալ,
նստի յերիվար, և ընթանայ զհետ առաջ-
նորդողին՝ սբ̃յ վկային՝ անվեհեր և խնդա-
միտ ։ Այլ 'ի սուղ ժամու և արագութ̃ երկո-
քեանն՝ սբ̃ն պղատոն և երիտասարդ միայ-
նակեացն իբրև թևաւորք հասանեն 'ի բնա-
կութի̃ ծերոյն, որ յաղօթս կայր և ողբայր .
և ողջամբ յանձնեալ քաջայաղթ վկայն հօրն
սրտի̂ ցուցանելոյ զցանկալի որդին՝ եղև
աներևոյթ ‖ ։

Այս զայսպիսի արագահաս զօրութի̃ սբ̃ վկային
պղա-

պղատոնի քաջ գիտելով սա ինքն երանելին նեղոս՝ բանիցս պատմող, համարձակ վստահութբ գրէ յայլում նամակի . Գիր . Է . Թղթ . ձղէ . Երես . 210 . առ տաւրիանոս ոմն հեթանոս բանաւոր, թէ դու՝ որ իշխեցեր * զապաւինեալս 'ի տուն պղատոնի բարեյաղթ վկային զբարեխոհս՝ յանդգնութբ և անբերելի բռնութբ յափշտակել, և 'ի բանտ արկանել հրապարակաւ . . . . ծանիր արդ, թէ ոչ դիւրին է արհամարհել զամենանուր վկայն, և պատրաստեա՛ զանձն քո 'ի կրել զպատրաստեալն քեզ դժնդակս . և նախ զբարկութն մահկանացու թգրի . որով և հարկաւորեալ ապստաման լինիցիս 'ի սեամս անդր պատկառելիս՝ որ 'ի քէն թշնամանեցան և անարգեցան . և ապա զխօթութիւն ծանր և դժուարին 'ի վր անձին քո և տմ սիրելեաց քոց . և յետ տմի այսորիկ զկապտաւմն յամ մեծութէց քոց ցանկալեաց ‖ . իսկ 'ի հանդերձեալն ասէ յայտնի են մշտընջենաւոր կապանք և յաւիտենից խաւարն սանդարամետին ։

Այլ ոչ եթէ յանկիւրիա միայն պատուեալ էր նշխ պղատոն, այլ և յանաստասուպօլիս գաղատիոյ՝ ուր շինեցաւ 'ի հին դարս այլ վկայարան յանուն նբյն, այլև 'ի կոստանդինուպօլիս . ուր անաստաս կայսրն 'ի սկիզբն վեցերորդ դարու ետ շինել յանուն նր տաճար հոյակապ, բերեալ անդր տասն սիւնս քանդակագործս 'ի թեսաղոնիկեայ ։ Այլ զայս եկեղեցի նբյն պղատոնի՝ որ մերձ էր

'ի

’ի Հրապարակն Կոստանդիանոսի , ը̃արձա-
կեաց և եւս պայծառ յօրինեաց մեծագործ
կայսրն Յուստինիանոս . և արար զերկրորդ
նաւակատիս նորա ’ի Ի աւուր դեկտեմբերի՝
Հանդերձ նախատօնակաւ և Հսկմամբ նա-
խընթաց գիշերոյ ։ Այլ յետ ժամանակաց
’ի վտանգիլ շինուածոյ յերեսաց սասանութե՝
նորոգեաց և ամրացոյց զայն վասիլ կայսրն
արշակունի ։ Սող և զմիւս մկայարան սրբյն
պղատոնի ’ի բիւզանդիա ’ի գաւիթս գոմնե-
նոսի ։

Իսկ ’ի վենետիկ քաղաքի իտալիոյ Հանդի-
սացաւ առանձին պատիւ սրբյն պղատոնի մը-
կային , յորմէ Հետէ բերեալ եղև անդր պատ-
ուական գլուխ սրբյն ’ի վաղ ժամանակաց , և
եդաւ ’ի Հռչակաւոր վանս սրբյն լաւրենտիա-
սի . որ ’ի սկզբանն էր միանձնաստան արանց ,
իսկ յիններորդ դարէ և այսր եղև կուսաս-
տան աւագուհեաց . որք առանձին պաշտա-
մամբք կատարէին զտօնախմբութի սրբյն պղա-
տոնի ’ի 24 յուլիսի , և դնէին զգլուխ սրբյն
’ի բազմոցի ’ի յարգութի ժողովրդեան . զոր
և մեզ եղև տեսանել առանձինն ը̃ փափաք-
ման մերում ։ Քանզի յամի տն 1801 . և ’ի
թուին մերում , ՌՄԾ , ’ի սկզբան ամսեանն
սեպտեմբերի երթեալ անձամբ՝ ետու բե-
րել կուսանաց զնշ գլուխն զայն՝ իբրև իրա-
ւամբք քաղաքակից լինելոյ նոյն . և եդին
առաջի իմ ը̃ վանդակ պահարանին արծա-
թի սկտեղք . և տեսի՝ զի էր գանկն ողջոյն
պատեալ կարմիր թաւրնջաւ ը̃ խատիֆէիւ ,
բայց

բայց բա՛ց թողեալ վերնակողմն ճակատուն . ուստի երևէր ողորկ ոսկր թխագոյն վերուստ 'ի վայր գծաւոր իբր ճեղքեալ . և ոչ գանկն շուրջանակի զարդարեա՛լ էր մարգարտայեա-յօրինուածով, նոյնպէս և 'ի ճակատն կոյս գրեալ մարգարտովք անուն վկային լատի-ներէն՝ սբ Պղատոն ։

Այլ նշխարաց սրբոյն չիք որոշ տեղեկութի . այլ 'ի ժամագիրս յունաց ճառարձակ են յոյժ ներբողանի պանծալի յօրինեալ իբրև շարա-կան 'ի Թէոփանեայ երգաբանէ . ուր սկզբ-նատառք երգոյն յօդեն զայս բան . * Ըզ-քոյոց դրոշմատեաց, ո՛վ Պղատոն, նուագեմ արձակավայր ||, կմ հրապարակ . որ յունարէն ասի Ելլոգօս . ոչ և պղատոնն՝ Ելլոգծն ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Օ պանծալի վկայիս պանծալի ունիմք վկայաբա-նութի 'ի մեծ ճառընտիրն մեր, մակագրեալ . * Վկայա-
,, բանութի սբյն պղատոնին, որ վկայեաց 'ի քաղաքին
,, անկիւրացւոց ||, սկիզբն ունելով այսպէս . * 'Ի քա-
,, ղաքին անկիւրացւոց նստեալ յատենի ագրիոս (իմա
,, ագրիպպինոս), հրամայեաց առաջի իւր կացուցանել
,, զերանելին պղատոն ||. որ և գրի պղատոնեայ՝ ան-
խտիր՝ յուղղականն և 'ի հոլովականն ։ Այս օրինակ է անշուշտ՝ կամ առաջին աղբիւր այլոց վկայագրաց, և կմ յառաջին աղբերէ բղխեալ անայլայլակ . Ի որում ատեանի 'ի նմա անպայմանոյն և հաւատարիմ ատենախօ-սութի 'ի գիւմանական մատենից հանեալ 'ի ձեռն ժա-մանակակից դպրի . վասն և մեք տառադարձապէս զսոյն օրինա-կեցաք՝ բաց 'ի յառաջաբանական տեղեկութեց, և 'ի

քա

քանի մի մտանաւոր բանից և բառից՝ զոր յայլ օրինա-
կաց առաք:

Քանզի են և այլ չորս օրինակք առ յոյնս և առ լա-
տինս. որք ըստ իւրեք իւրեք տարբերին յիրերաց, նոյնպէս
և առ հասարակ զանազանեալ են 'ի միմեանց ձևով ճո-
խաբանութեն. Իսկ սկիզբն Ծ օրինակի առ բովանդակեանս
լոկ լատիներէն տպագրեալ՝ ունի այսպէս. * Ո'չ են
,, տար կմ անծանօթ յամ բնակչացն անկիւրիոյ, և ոչ
,, 'ի միջնակայ տեղեաց առ հասարակ, եթէ որպէս
,, գժնգակ և խիստ հալածումն եղև 'ի ժամանակս մաքսի-
,, միանոսի ինքնակալին յԵին գաղատացւոց Ը.դ.եմ կրօնից
,, քրիստոնէից. մինչև եղբայր զեղբայր, և հայր զորդիս
,, իւր, և բարեկամք զբարեկամս և զդրացիս՝ որք զՔս
,, խոստովան լինէին, հալածէին և 'ի մահ մատնէին:
,, Յորում ժամանակի երանելին պղատոն թողեալ եղև
,, 'ի ծնողաց մանուկ փոքր հանդերձ մեծաւ հարստութ.
,, և ստացուածովք բազմօք. զի յերևելի և յազնուականս
,, ազգէ էին: Եւ էր նա գեղեցիկ տեսլեամբ, և լի
,, հոգւով սբով անդստին 'ի տղայութէ.... Եւ իբրև ազդ
,, եղև ագրիպպինոսի դատաւորի, հրամայեաց տանել
,, յարդարել ||, ևն:

Նոյնօրինակ սկսանի և միւս վկայաբանութի Բ, լոկ յու-
նարէն, զոր գտաք 'ի գրատան սբյն մարկոսի 'ի վենե-
տիկ՝ յերկս մատենանս՝ յծ. յծբ. և յծգ. 'ի նոյեմբ. 18.
զոր գրապետն 'ի ցանկի իւրում դնէ Է անուամբ սի-
մէոնի մետափրաստեսի՝ հետևելով կարծեաց լէոնի ալ-
լատիոսի 'ի գիրսն յաղագս սիմէոնից. էջէս. 125. և սա
է առաւել ճոխաբան Ը օրինակին:

Եւս առաւել բազում մասամբ երկարապատում գտա-
նի օրինակն Դ. նովին սկզբնաւորութբ, զոր սուրիոս
ընդ լիպոմանոսի բերէ լոկ լատիներէն յանուն մետա-
փրաստեսի: Եւ քան զառ երկայնաբան գոլ վկայեն բո-
վանդակեանք զօրինակն Դ, զոր գտեալ են 'ի յունական
մատենանս վատիկանու: Մինչ զի եթէ տեսանէին բո-
վանդակեանքն զմերս օրինակ, իրաւամբք նախադասէին առ-
նէին քան զԴմ: Այլ որպէս և իցէ՝ ոչ միայն էութեն
պատմութե նոյն է յամենեսին, այլև մեծագոյն մասամբ
Ը բառիցն անդամ միաձայնին. վոյ չէ հարկ զնիւթա-
կան տարբերութիւնս ոճոյ կմ զընդլայնումունս միոյ միոյ
'ի նոցանէ նշանակել: Այլ թէ կայցէ ինչ կարևոր՝ ծա-
նօթութեն արժանի, ոչ զանց առնեմք 'ի կարգիս:

(2) Զեղբայր սբյն պղատոնի զանտիոքոս վկայն ոչ գտա-
նեմք

Նոքա յիշատակեալ և ոչ 'ի միում 'ի նախանշանակեալ վկայաբանութեանց. այլ միայն 'ի մասնաւորաց ոմանց յայն և լատին վկայագրաց։

(3) Վկ. ա. և գ. գնեն՝ թէ նաև զճանապարհայն քա-ջալերեր սրն զհաւատացեալս. և 'ի մէջ բերեն զխօսս 'ի բերանոյ սրյն՝ նման և աննման իրերաց. որպ և զբանս աղօթից նր 'ի բանտի։

(4) Ծ. յետ վեց աւուրց ասէ. իսկ վկ. ա և գ. որպ և ժամերգութիւն կուսաստանի սրյն լուսերեւնախօսի՝ յետ եօթն աւուրց գրեն։

(5) Այսպէս է 'ի Ծ. իսկ այլք Է ա վկ. գրեն. * մեռ-մոր դուստր եղբօրն իմոյ ||։

(6) Ծ. և վկ. ա. ցուցանեն զձէթ և զծծումբ եռ, որ-կեալ 'ի վր սրյն. քանզի ենթադրի այնձի մաշիճն իբ-րև կասկարայ. Է որոյ վանդակս անցանել ունէր բոցն և բոցակիզել զմարմին սրյն. բայց մարթ է իմանալ՝ արկեալ և 'ի վր հրոյն. որպ երևի ցուցանել գ վկ. ուր և ասի, թէ հարկանէին միանգամայն զսրն բարակ գա-ւազանօք։ 'Ի ժամերգ. լուսերեւ. երկաթի մաշիճք ա-սին։ Իսկ զատփրոնիոս բանտապետ յիշատակեցաք ըստ վկ. ա. և գ. որ պակասի 'ի Ծ։

(7) 'Ի ժամերգ. լուսերեւ. փոխանակ լուսոյ գնի երե-ւումն հրեշտակի. զնոյն ցուցանէ և վկ. ա. որ և զոյգ Է գ ասէ, թէ զերիս ժամս եկաց վկայն յայն տանջանս այնձի մաշճաց։

(8) Ոմանք գրեն, թէ զբովանդակ մարմինն մորթեցին, և ապա 'ի փոքս փոքս կտրատեցին։ Եւ բազումք յաւե-լուն Է վկ. ա. թէ առեալ վկային զմի 'ի փոկիցն՝ ձգեաց յերեսս դատաւորին. որ երևի առեալ 'ի վարուց սրյն բասիլիոսի քահանայի անկիւրացւոյ, և այլոց ոմանց՝ որ զնոյն գործեցին։ Դրձլ գրեն, թէ սրն 'ի կշտամ-բել զդատաւորն ասացեալ իցէ, բարւոք կոչեցաւ ա-նուն քո ագրիպպինոս, զի վայրենամիտ գազան. (որ ա-ռաւել յարմարի սխալ կարծեցեալ գրչութեն Ծ. ուր դատաւորին անունն է ագրիոս. իսկ ագրիոս յունարէն վայրենի լսի)։ Որպ և յերկար խօսակցութեն՝ որ կէք 'ի Ծ. գրեն առել դատաւորին ցվկայն. * Թէև զպղատոնի
,, փիլիսոփայի զիմաստասիրութիւն ունիցիս, ոչ խնայեմ
,, 'ի քեզ. այլ համբերեմ վն կրելոյ քո զանուն նր. և
,, սրն ասէ. զանուն ունիմ զպղատոնի, այլ ոչ զմոլո-
,, րութիւն նր ||։ Սմին նման խօսի և Հ. առեալ 'ի նոյն-ոյնի Է արձանկ գրչաց։ Զոր օրինակ գ վկ. նաև 'ի յա-

ռա-

ռամկաբանի սասցեալ էր. * զի ոչ յայնմ՝ յորում ան-„ ռէանակեցն Նիկ պղատոն, կրթեալ էր յիմաստասիրու-„ թե, և ոչ ՚ի նմին վարպութե էր իմաստասիրեալ. այլ „ գերազանցեալ էր յամ իմաստութե բանի, և հաւա-„ տովք գեր ՚ի վերոյ լինէր՝ քան զորս եղենն երբէք ||: Այլ այսպիսի բանք՝ ճառաբանից են անկ, քան հարազատ վկայաբանից:

(9) Ճ. գնէ անորոշ՝ արտաքոյ քաղաքին ՚ի տեղի մի. բայց այլ ամ օրինակք յաւելուն և զբառդ դաշտ կամ դաշտավայր, կէսք իբրև յատուկ անուն տեղւոյ, և կէսք հասարակ առմամբ. որ եթէ հայեցի ՚ի տեղին անմիջապէս արտաքոյ պարսպին, ՚ի դէպ գայ տեղւոյն՝ որ այժմ կոչի ռամկօրէն հէօտար էօնի. ապա եթէ արտաքոյ արուարձանին դիցի, հայի ՚ի մեծ դաշտն գերեզմանոցի. և ցուցէ յայս միտ գրեն ոմանք, * տարան արտաքոյ քաղաքին ՚ի տեղին կոչեցեալ դաշտ պուարձալի ||: Թող զի և անուն սբյն Թարգմանի հրապարակ կամ դաշտ. մոյ ցուցէ ուխտատեղին սբյն անխտիր կոչէր բլադօն կմ բլադօս:

(10) Վկ. ա. և բ. յօրինեն զաղօթս ՚ի բերանոյ վկային, զի ենթադրեն ՚ի ձայն աղօթել. այլ մեք ոչ ՚ի յոլով տեղիս՝ նոյնպէս և աստ առաւել է մեր ընթերցուած համիմք:



ՎՀԼԻԲ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ

Հայրապետացն բիւզանդիոյ՝ Մետրոփանու, Աղեքսանդրոսի, և Պօղոսի խոստովանողի. և սոցին նոտարացն Մարկիանոսի և Մարտիրոսի :

Մետրոփ. Հ. Յ. յունիս. 4 : Աղեքս. Հ. Յ. յունիս. 4 : Յ. ծն. օգոստ. 30 : Լ. օգոստ. 28 : Պօղոս խոստ. Հ. Յ. նոյեմբ. 6 : Լ. յունիս. 7 : Նօտարք. Հ. Յ. Լ. հոկտ. 25 : Ճառընտ. Մ. ութե = ուլ. և Բ. ութ4 = ուլա. և Օ. էե = խբ : Բոլլանդեանք. 'ի ա. հատ. յունիսի. էջ. 384 = 395. և 'ի Զ հատ. օգոստ. էջ. 195 = 198 : Սուրիոս 'ի յունիսի 7. և 'ի հոկտ. 25 : Նշանեմ. տոնքով. տաղմ. կենսագրութ կնշանեսցի. և այլք ընդ նորոնեան : (1)

ԱՐԴԻՈՅ ԵՒ ՊԱՆԾԱԼԻ 'ի հարս՝ առաքելանման և մարգարէաշնորհ Տր. հայրապետն Մետրոփանոս կամ միտրոփանէս, ԶԻ աւանդութե՛ բիւզանդացւոց՝ էր 'ի Թագաւորական զարմէ 'ի տանէ հռովմէական ինքնակալաց. Քզի ասի՝ Թէ եղբայրն պրոբոսի կայսեր դոմետիանոս կմ դոմետիոս անուն՝ այր իմաստուն և առաքինի՝ ծանուցեալ

ցեալ զստուգութիւն կռոց, հաւատաց 'ի քս՟, և մկրտեցաւ հանդերձ երկու որդւովք իւրովք, որոց անուանք էին պրոբոս և մետրոփանոս. և զկնի եղեալ նոքօք հանդերձ՝ եկն 'ի բիւզանդիոն քաղաք. ուր կալաւ մտերիմ ընտանութիւն ը՟ նր՟ եպ՟սի տեղւոյն, որ կոչիւր տիմոթէոս կմ՟ տիտոս և կմ՟ տրատոս. և կարգեցաւ 'ի նմանէ 'ի դասս պաշտօնէից եկեղեցւոյ. և յետ ննջման նր՟ նստաւ փոխանակ նորա յաթոռ եպ՟ս բիւզանդացւոց ամս իբր ի՟է. Եւ յետ նր՟ եղև եպ՟ս քաղաքին որդի նր՟ պրոբոս ամս ժ՟բ. Եւ յորժամ հանգեաւ պրոբոս 'ի տր՟, կալաւ զաթոռ նր՟ եղբայր նր՟ երանելին մետրոփանոս ամս Ժ՟, կմ՟ Ժ՟դ,
և կմ՟ Ժ՟ե.

Ի սորա աւուրս մեծն կոստանդիանոս թագաւորն հռովմայ՝ յետ հաւատալոյն 'ի քս՟ դնայ 'ի պատերազմ ը՟դդէմ լիկիանոսի փեսային իւրոյ 'ի նիկոմիդիա բիւթանացւոց. և հանդիպեալ 'ի բիւզանդիա սբ՟յն մետրոփանոսի՝ էառ զաղօթս նր՟, և երթեալ քաջապէս յաղթեաց լիկիանոսի. և իբրև դարձաւ անդրէն 'ի բիւզանդիա, անդր փոխեաց ըզթագաւորութիւն 'ի հռովմայ. և մեծացոյց զբիւզանդիոն քաղաքն՝ ամրացուցեալ պարըսպաւ. և անուանեաց զայն նոր հռոմ. իսկ այլք անուանեցին ըստ անուան նր՟ կոստանդինուպօլիս, այ՟ կոստանդիանոսի քղ՟ք. Եւ յայնմ հետէ սկսաւ մեծանալ նաև պատիւ եպ՟սին բիւզանդացւոց կմ՟ հայրապետին կոստանդինուպօլսոյ. զի քաղաքն այն՝

որ յառաջագոյն էր լոկ եպիսկոպոսն՝ նուաս-տագոյն քան զմերձակայ աթոռս արքեպիսկոպոսաց և մետրապօլտաց, եղև աթոռ գլխաւոր մե-տրապօլտի, յետ դիտապետութ մայրաքաղաքին մեծի. վ՟ս որոյ և ոմանք զսբն մետրոփանոս հաշուեն իբրև առաջին պատրիարգ կոստան-դինուպօլսոյ. իսկ պատրիարգն անուն՝ հայրա-պետ թարգմանի. մանաւանդ զի ինքնակալն կոստանդիանոս հայր իւր անուանեաց ասեն զսբ հայրապետն մետրոփանոս, և եղև նմա յորդեգիր վ՟ս ծերունի հասակին և պատկա-ռելի սրբութեն ։ (2)

Յաւուրսն յայնոսիկ երևեցաւ ամպարիշտն Արիոս եգիպտացի՝ աւագերէց աղեքսան-դրացւոց եկեղեցւոյն, որ հայհոյեաց զսբ երրորդութեն՝ ասելով ոչ գոլ զՈրդի ՚ի բնու-թէ Հօր, և ոչ համագոյ և միաանական, այլ՝ արարած և յետ ժամանակի գոյացեալ. վ՟ս գումարեցաւ ՚ի բիւթանիա մեծ և տիե-զերական սբ ժողովն նիկիոյ. ուր հերքեցաւ մոլորութի չարին, և սահմանեցաւ հաւատք ուղղափառուե ։

Այլ քանզի յայնմ ժամանակի երանելին մետրոփանոս ծերացեալ էր յոյժ և տկարա-ցեալ մարմնով, ոչ կարաց գնալ անձամբ ՚ի սբ սիւնհոդոսն նիկիական, այլ՝ փոխանորդ իւր առաքեաց զաւագերէց եկեղեցւոյն իւ-րոյ՝ զայր գիտնաւոր և առաքինազարդ, Ա-ղեքսանդրոս անուն. զոր և ընկալան ամ՟ եպիսկոպոսունք իբրև զնոյն ինքն մետրոփանոս ։ Եւ յորժամ արձակեցաւ ժողովն, առեալ

աղեքսանդրոսի զտումար ն՚ք ժողովոյն ուղղափառ խոստովանութե՛ք՝ գայր ուրախութե՛ք 'ի կոստանդինուպօլիս . և զճանապարհայն 'ի քաղաքս և 'ի գեօղս քարոզէր և հաստատէր զուղղափառ դաւանութի՛ն ։ (3)

Այլ հասեալ առ երանելին մետրոփանոս՝ ետ զտումար հաւատոյն 'ի ձեռս նորա . և նորա առեալ ընթերցաւ և ընկալաւ , և ձեռամբ գրով իւրով հաստատեաց . և զարիոսն նզովեաց , և զհերձուածս նո՛ր արմատախիլ արար 'ի միջակէ իւրմէ ։ Այնն իրի անդրէն առաքեաց զաղեքսանդրոս երիցապետ , ը՛ նմին և զպօղոս դպիր հայրապետանոցին՝ շրջիլ ը՛ ա՛մ տեղիս գաւառաց իւրոց , և յեկեղեցիս ա՛մ կղզեացն կիկղադայց , և քարոզել զուղղափառութի . զի մի՛ իւիք տեղի գտանիցէ ուրեք մոլորութի՛ն արիոսի ։

Իսկ ա՛ծասէր թ՛գրն կոստանդիանոս զա՛մ եպս՛ունս ն՚ք ժողովոյն նիկիոյ հրաւիրեաց 'ի նորաշէն քաղաք թ՛գրուե՛ իւրոյ 'ի կոստանդինուպօլիս իբրև 'ի հանդէս նաւակատեաց . և ն՛ք եկեալ օրհնեցին զքաղաքն և զթագաւորութիւն բարեպաշտ ինքնակալին ։ Յետ մեռեալ միաբան ն՚ք հարցն 'ի հայրապետանոցն առ երանելին մետրոփանոս հանդերձ թ՛գրաւն , գտին զհայրապետն 'ի մահիճս անկեալ 'ի յոյժ ծերութե՛ն . և առհասարակ երկրպագեալ ողջունեցին զնա իբրև զկենդանի ն՚ք . նոյնպէս և թ՛գրն երկրպագեաց և ողջունեաց . և օրհնեալք 'ի նմանէ նստան . և պատմեցին նմա զա՛մ եղեալսն 'ի ս՛բ ժողովն .

զաշխ. և նա գոհանալով զայն՝ օրհնեաց ան-
դրէն զնա։

Իսկ թգւրն անկեալ 'ի վր՝ դարձեալ համբուրեաց զոտս աջ նր և զգլուխն, և ասէ. աղա հայր իմ երջանիկ՝ յոյժ ծերացար, և ցաւք և տկարութիւնք քո զփոխումն քո գուշակեն. արդ հրամայեա, եթէ զկնի քո ո՞վ իցէ արժանի յաջորդելոյ զաթոռ քո՝ վերընդունակ լինել քահանայապետութեան և վարդապետութեան եկեղեցւոյ քո։ Իսկ նա տարածեալ զձեռս իւր՝ ասէ. օրհնեա՛լ է Այծ՝ որ դեա՛կ իմ և աթոռակիցք իմ, զի ո՛չ եմ դադարեալ առ 'ի խնդրելոյ յԱյ վս այդր խնդրոյ. և եցոյց ինձ Տր՝ թէ ո՛վ է նստելոց յաթոռ իմ փոխանակ իմ։

Իսկ նք դարձեալ հարցին, եթէ ո՛վ է՝ զոր յայտնեաց քեզ Այծ։ Իսկ նա ասէ. աղեքսանդրոս աւագերէց եկեղեցւոյս, զոր առաքեցի փոխ իմ 'ի Նիկ ժողովն. որ և այժմ մեծաւ աշխատութեամբ շրջի ԺԲ ամ քաղաքս և ԺԲ գիւղս գաւառս, և քարոզէ իմով հրամանաւ, և ուսուցանէ ուղղափառ հաւատս ա՛ռյ առաքելական եկեղեցւոյ քոյ. և զա-րիոսի պիղծ հերձուածն յամ տեղեաց հալածական առնէ։ Իսկ նք ասեն. արժանի է։ Իսկ դարձեալ հարցին ցնա և ասեն. ասա՛ մեզ, եթէ զկնի նր ո՞վ է։ Ասէ նոցա մետրոփանոս. պօղոս է՝ ընթերցողն և դպիրն իմ։

Իսկ ապա դարձաւ առ աղեքսանդրոս հայրապետն աղեքսանդրացի, և ասէ. եցոյց ինձ Տր և որ զկնի քո նստելոց է յաթոռ քո։ Իսկ



նա

նաեհարց, թէ՝ ո՞վ իցէ ։ Ո՞ւ է մետրոփանոս .
աթանասիոս նախասարկաւագն քո, նա հով-
ուեսցէ ուղղափառութի զժողովուրդն ա-
ղեքսանդրացւոց . և բազում աշխատութեանց
և հալածանաց հանդիպեսցի՝ կցորդութի

դպրի իմոյ պօղոսի ։

Եւ զայս ասացեալ՝ հրամայեաց, և բարձին
զնա մահճօքն կից պատգարակօք, և իջուցին
յեկեղեցին . և կալեալ ոբ եպսացն՝ կանգ-
նեցին զնա 'ի վերայ ոտից իւրոց . և մատոյց
զա̃ծային ոբ խորհրդական պատարագն . և
հաղորդեցաւ ինքն, և ապա թ̃ջ․ւորն և ա̃մ
եպսունքն 'ի ձեռաց ոբյն . և ուրախացեալք
գոհացան զա̃յ ըստ միաւորութի հաւատոյն և
ը̃ս հերքուածն արիոսի ։ Իսկ երանելւոյ եպիս-
կոպոսապետին մետրոփանոսի մերկացեալ
յինքենէ զձև հայրապետութե հանդերձին՝
դնէր 'ի վ̃ր ոբյ սեղանոյն ա̃յ, և ասէր ցե-
պիսկոպոսունսն . ահա եղբա՛րք և աթոռա-
կի՛ցք իմ՝ ժամանակ դարձի իմոյ փոխմանս
յա̃յէ մերձեալ է, և կոչէ զիս հովուապետն
քո, և գնամ զճանապարհ հարց իմոց . աղա-
չեմ զձեզ զամենեսեան սիրով ա̃ծ մերոյ յի
քի, անսացէ՛ք աստ զկնի ննջման հանդըր-
տեան իմոյ ցաւուրս ինն . զի մինչ յայն օր
հասեալ լինի այսր աղեքսանդրոս . ձեռնա-
դրեցէ՛ք զնա, և դուք ինքնին նստուցէ՛ք յա-
թոռ իմ . և ապա երթիջի՛ք և դուք խաղա-

ղութե 'ի վիճակս ձեր և յաթոռս ։

Եւ զայս ասացեալ՝ աւանդեաց զհոգին իւր
առ ա̃ծ 'ի յունիս ամսոյ 'ի չորսն, ըս̃ ամենեց
'ի

'ի նմին իսկ ամի ժողովոյն , ՅԺԸ յամի Տն 325 . և ըստ այլոց ուղղագոյն եւ՝ 'ի յաջորդ ամին 326 : Իսկ ՅԺԸ եպիսկոպոսունքն հանդերձ Թգրաւն սաղմոսիւք և օրհնութբ և երգովք գովաբանութե և արտասուօք հանգուցին զպատուական մարմինն 'ի քնարան տապանի սբց հարցն . այս է 'ի շիրիմս եպսաց նախորդաց նորա , 'ի տեղւոջն՝ որ եղև տաճար յանուն նորին սբյն մետրոփանոսի . ուր և տօն նորա կատարիւր՝ մօտ 'ի վկայարան սբյն ակակիոսի մեծի վկային յեօթնաստիճան անուանեալ վայրի :

Արդ զկնի հանգստեան սբյն մետրոփանոսի՝ 'ի կատարման իննօրեայ յիշատակի նր՝ եկն եհաս աղեքսանդրոս 'ի քաղաքն . և ձեռնադրեցին զնա ՅԺԸ հայրապետքն միաբանութբ եպիսկոպոս կոստանդնուպօլսի յաթոռ մետրոփանոսի . և այնպէս ծանուցաւ երանելյն աղեքսանդրոս իբրև առաջին պատրիարգ Թգրական քաղաքին՝ ըստ կարծեաց ոմանց 'ի յոյն մատենագրաց . յորոց առեալ գրեն և ճառընտիրք և յայսմաւուրք հայոց , թէ որ երբեմն եպսարան էր բիւզանդիոն , յայնժամ եղև պատրիարգարան , 'ի կարգիլ աղեքսանդրոսի եպսապետ Տամուտ դրանն 'ի յԺԸ հայրապետացն . զի թէպէտև այս պատիւ պատրիարգութե այնր աթոռոյ տիրանայ հանդիպացաւ 'ի յաջորդ ժողովն կոստանդնուպօլսոյ առ մեծն թէոդոսիւ , այլ սկիզբն փառաւորութե նորին եղև առ մեծն կոստանդիանոսիւ յաւուրս ժողովոյն նիկիոյ : Ապա


նստու

Նստուցեալ հարցն ծբց յաթոռ հայրապետա-
կան զերանելին աղեքսանդրոս , և ողջունեալ
զտապան նորյն մետրոփանոսի , գնացին յիւ-
րաքանչիւր տեղիս ։ (4)

Իսկ երանելին աղեքսանդրոս հովուէր զե-
կեղեցիսն այ 'ի վիճակի իւրում ուղղափառ
վճպութ՝ ընդ սահմանելոյ կանոնական հրա-
մանի նիկիոյ 'ժողովոյն ․ և քաղաքավա-
րէր առաքինի սրբութ և ճգնաւորական հան-
դիսիւ ․ մինչ զի աղօթիւք նր զոյգ ընդ աղօ-
թից սրյն յակոբայ մծբնայ հայրապետի է,
զև անկարծելի սատակումն արիոսի ․ զի ոչ
գրէ նբն աթանաս ('ի Բասլըն առ սրապիոն) ,
ընդ նմին և նբն եպիփան ( հերձ․ կթ․ 10 ) , և սո-
զոմենոս և սոկրատ՝ այլովքն հանդերձ , յետ
նբյ ժողովոյն նիկիոյ՝ իբրև անցին ամք տասն ,
ժանտն արիոս՝ որ արտասահմանեալ էր յաք-
սորս , սուտ պղջումն և ապաշաւ երևեցու-
ցեալ՝ խնդրեաց զդարձ , և միջնորդութ
արքանեկաց իւրոց՝ յորս երևելի էր եւսե-
բիոս նիկոմիդացի , ընկալաւ հրաման 'ի մե-
ծէն կոստանդիանոսէ՝ գալ 'ի կոստանդի-
նուպօլիս ։ Նախվմծ ընդդէմ եկաց այսմ երա-
նելին աղեքսանդր հայրապետ կոստանդնու-
պօլսոյ , բայց ոչ կարաց յետս դարձուցա-
նել զարքունի հրամանն ։

Իբրև եկն ժամամարտն արիոս , և յանդիման
եղև ինքնակալին , եհարց զնա թգրն , եթէ
հաւանի՞ս պահել զհաւատս կաթուղիկէ ե-
կեղեցւոյն այ ․ և նա երդմամբ հաստատեաց
հաւատալ այնպէս , և ետ ևս գիր խոստո-
վան

վանութեան 'ի վերին երեսս համաձայն դաւտուց ուղղափառաց : Յայնժամ ասէ ցնա Թգ̃րն . եթէ ուղիղ իցեն հաւատք քո , ուղղութ̃ և երդուեալ . ապա եթէ ամպարշտութ̃ խորհիս՝ և տակաւին երդուեալ , ած̃ ինքնին տեսցէ զդատ քո ըս̃ երդման քում :

Որդ սովին երդմամբ անօրինին՝ հանդերձ թախանձանօք եպիսկոպոսացն արիանոսաց՝ զիջաւ կոստանդիանոս . և կոչեաց առ ինքն զաղեքսանդրոս եպիսկոպոսն Թագաւորեալ քաղաքին՝ պատուիրեաց նմա ըն̃ունել այնուհետև զարիոս 'ի հաղորդութիւն եկեղեցւոյ : Իսկ երանելին աղեքսանդրոս աղաչէր զԹգ̃րն՝ չպատրել 'ի կեղծաւոր բանից արիոսի , և տեսեալ զԹգ̃րն դժկամակեալ ըն̃ բանս իւր՝ ել յերեսաց նր̃ լռութ̃ :

Յայնժամ արիանոսք՝ որ և եւսեբեանք՝ խորհեցան բանի մուծանել զարիոս յեկեղեցի . իսկ որք հայրապետն աղեքսանդրոս պնդէր , թէ անմարթ է զհերետիկոսապետն յեկեղեցի ըն̃ունել : Բայց եւսեբեանք ասեն ցնա յոխորտանօք . զոր օրինակ ընդդէմ քո կամացդ տուաք բերել այսր զարիոս արքունի հրամանաւ , սոյնպէս և 'ի վաղիւ անդր՝ թէպէտև չկամիցիս դու , արիոս ըն̃ մեզ լինիցի յեկեղեցւոջ աստ 'ի պաշտօնն ածային . և էր շաբաթ , յորժամ զայս այսպէս խօսեցան արիանոսք :

Զայն լուեալ երանելւոյն աղեքսանդրոսի , ըկ ՝եղև տրտմութ̃ . և մտեալ յեկեղեցի՝ տարածեաց զձեռս իւր առ ած̃ , և հեղեալ

արտօսր՝ անկանէ 'ի վերայ երեսաց իւրոց , և կայր յաղօթս : Առ նմա էր և մակարիոս , որ աղօթէր ընդ նմա , և լսէր զբանս աղօթից նորա , որպէս և յետոյ բերանով իւրով պատմեաց աթանասի . զի այսպէս ասէր երանելին աղեքսանդրոս յաղօթել իւրում . Տէր , եթէ արիոս վաղիւն մտանելոց իցէ յեկեղեցի , զիս զծառայ քո արձակեա 'ի կենաց աստի . և մի կորուսանիցես զբարեպաշտոն ընդ ամբարըշտի . ապա եթէ զորդիս եկեղեցւոյ քում , և ողորմեսցիս իսկ՝ որպէս քաջ գիտեմ, նայեա՛ց 'ի բանս եւսեբեանց , և մի տար յապականութիւն և 'ի նախատինս զքո ժառանգութիւն . այլ բարձ 'ի միջոյ զարիոս . զի մի 'ի մտանել նորա յեկեղեցի՝ հերձուած նորա ընդ նմա երևեցի մտանել , և այնուհետև ամբարշտութիւն որպէս բարեպաշտութիւն համարեսցի :

Զայս աղօթեալ հայրապետին՝ դարձաւ 'ի հայրապետանոցն . և ահա սքանչելիք 'ի Տեառնէ ցուցեալ լինէր . զի մինչդեռ արիոս ելեալ յարքունի պալատանէ՝ մեծաբանութեամբ պարծէր առաջի համախոհից իւրոց՝ մտանել 'ի վաղիւն անդր յեկեղեցի , ընդ երեկս նախ քան զմտանելն արևու նեղեալ 'ի կարեաց բնութեան հանդերձ սօսափմամբ արհաւրաց իւիք , առանձնացաւ 'ի խորշ մի՝ մօտ 'ի հրապարակին կոստանդիանոսի ասացեալ , ուր էր արձանն 'ի պորփիւր քարէ . և անդէն վաղվաղակի վայթեցան աղիք նորա . և սատակեցաւ դարշելին 'ի դարշելիս անդ : Այս յայտնի եղև ամենեցուն վրէժխնդրութիւն Աստուծոյ , որ եհաս

'ի

'ի վերայ չարին 'ի զօրաւոր աղօթից նորայն Աղեք-
սանդրոսի . ոմն և բազում գովութեամբ յիշատա-
կէ զսոյն և Գրիգոր Աստուածաբանն 'ի սկզբան իւրոյ
ճառի իւրոյ առ Կոստանդնուպօլսեցիս :

Հաւուրսն յայնոսիկ՝ ( ըստ պատմելոյ Սոզոմե-
նեայ . Է . 18 ) եկին առ կայսրն Կոստանդիա-
նոս 'ի բիւզանդիոն ոմանք 'ի հեթանոս փի-
լիսոփայից , և մեղադիր լինէին նմա վասն թող-
լոյ զպաշտօն հայրենի դից , և յարելոյ 'ի
քրիստոնէութիւն . և եթէ տաս մեզ ասեն հրա-
ման , 'ի պայքար մտցուք ընդ առաջնորդի քա-
ղաքիդ վասն դենից և կրօնից . Քանզի կարծէին
յաղթել նմա ճեռնարկօք իմաստակօք : Իա-
րև յանձին կալաւ Թագաւորն , մտին առա-
ջի աղեքսանդրոսի հայրապետի կաճառք փի-
լիսոփայից , և կամէին առ հասարակ մխել 'ի
վէճ : Իսկ նա հայրապետն ասէ ցնոսա . ըն-
տրեցէք զոմն 'ի ձէնջ առաւել գիտնաւոր ,
որ բերան լիցի ամենեցուն , և այլքն նստցին
լռութեամբ : Նա իբրև յառաջ մատեաւ մի ոմն
'ի նոցանէ յանդգնագոյն յամենեսին , ասէ
ցնա երանելին աղեքսանդր . յանուն յիսուսի քրիստոսի
հրամայեմ քեզ չկարել խօսել . և ընդ ասել
նորա զայս՝ զօրութեամբ անուանն Աստուծոյ կապեցաւ
լեզու առնն , և համրացեալ պապանձեցաւ .
և այնպէս լի ահիւ և ամօթով մեկնեցան
փիլիսոփայքն յերեսաց հայրապետին և թա-
գաւորին : Սա է՝ զոր արար նման սմին նոյն
սպիրիդիոն յատենի նիկիոյ ժողովոյն . զոր
շփոթեալ ոմանց՝ ասացին , թէ զայս արա-
րեալ իցէ աղեքսանդրոսի 'ի նիկիա :

Սա

ցեալ զստուութիւն կրօնց, հաւատաց ՚ի քս , և մկրտեցաւ հանդերձ երկու որդւովք իւրովք, որոց անուանք էին պրոբոս և մետրոփանոս . և գէմ եդեալ նոքօք հանդերձ՝ եկն ՚ի բիւզանդիոն քաղաք . ուր կալաւ մտերիմ ընտանութիւն ը̅ Նբ եպսի տեղւոյն , որ կոչիւր տիմոթէոս կմ տիտոս և կմ տրատոս . և կարգեցաւ ՚ի նմանէ ՚ի դասս պաշտօնէից եկեղեցւոյ . և յետ ննջման նր̅ նստաւ փոխանակ նորա յաթոռ եպս բիւզանդացւոց ամս իբ̅ իդ̅ : Իսկ յետ նր̅ եղև եպս քաղաքին որդի նր̅ պրոբոս ամս ժբ̅ : Իսկ յորժամ հանգեաւ պրոբոս ՚ի տր , կալաւ զաթոռ նր̅ եղբայր նր̅ երանելին մետրոփանոս ամս Ժ , կմ ժդ̅ ,
և կմ ժե :

՚Ի սորա աւուրս մեծն կոստանդիանոս թագաւորն հռովմայ՝ յետ հաւատալոյն ՚ի քս՝ գնայ ՚ի պատերազմ ը̅դէմ լիկիանոսի փեսային իւրոյ ՚ի նիկոմիդիա բիւթանացւոց . և հանդիպեալ ՚ի բիւզանդիա ս̅րբյն մետրոփանոսի՝ էառ զաղօթս նր̅ , և երթեալ քաջապէս յաղթեաց լիկիանոսի . և իբրև դարձաւ անդրէն ՚ի բիւզանդիա , անդր փոխեաց ըզթագաւորութիւն ՚ի հռովմայ . և մեծացոյց զբիւզանդիոն քաղաքն՝ ամրացուցեալ պարսպաւ . և անուանեաց զայն նոր հռոմ . իսկ այլք անուանեցին ըստ անուան նր̅ կոստանդինուպօլիս , այ̅ կոստանդիանոսի քղ̅ք : Իսկ յայնմ հետէ սկսաւ մեծանալ նաև պատիւ եպսին բիւզանդացւոց կմ հայրապետին կոստանդինուպօլսոյ . զի քաղաքն այն՝

որ յառաջագոյն էր լոկ եպիսկոպոսարան՝ նուաստագոյն քան զմերձակայ աթոռս արքեպիսկոպոսաց և մետրապօլտաց , եղև աթոռ գլխաւոր մետրապօլտի , զի դիտապետոյ մայրաքաղաքին մեծի . վասն որոյ և ոմանք զնորին մետրոփանոս համարեն իբրև առաջին պատրիարգ կոստանդնուպօլսոյ . իսկ պատրիարքն անուն՝ հայրապետ Թարգմանի . մանաւանդ զի ինքնակալն կոստանդիանոս հայր իւր անուանեաց ասեն զնա հայրապետն մետրոփանոս , և եղև նմա յորդեգիր վասն ծերունի հասակին և պատկառելի սրբութեան : (2)

Յաւուրսն յայսմիկ երևեցաւ ամպարիշտն արիոս եգիպտացի՝ աւագերէց աղեքսանդրացւոց եկեղեցւոյն , որ հայհոյեաց զՈրդի երրորդութենն՝ ասելով ոչ գոլ զՈրդի ՚ի բնութէ Հօր , և ոչ համագոյ և միաբանական , այլ՝ արարած և յետ ժամանակի գոյացեալ . վասն որոյ գումարեցաւ ՚ի բիւթանիա մեծ և տիեզերական ՅԺԸ ժողովն Նիկիոյ . ուր հերքեցաւ մոլորութիւն չարին , և սահմանեցաւ հաւատք ուղղափառութեան :

Արդ քանզի յայնմ ժամանակի երանելին մետրոփանոս ծերացեալ էր յոյժ և տկարացեալ մարմնով , ոչ կարաց գնալ անձամբ ՚ի ՅԺԸ սուրբ հարանն Նիկիական , այլ՝ փոխանորդ իւր առաքեաց զաւագերէց եկեղեցւոյն իւրոյ՝ զայր գիտնաւոր և առաքինազարդ , Աղեքսանդրոս անուն . զոր և ընկալան ամենայն եպիսկոպոսունք իբրև զնոյն ինքն մետրոփանոս : Իսկ յորժամ արձակեցաւ ժողովն , առեալ

աղեքսանդրոսի զտումար ՚նսբ ժողովոյն ուղղափառ խոստովանութե՟ն՝ գայր ուրախութ՟բ 'ի կոստանդինուպօլիս . և զճանապարհայն 'ի քաղաքս և 'ի գեօղս քարոզէր և հաստատէր զուղղափառ դաւանութիւն ։ (3)

Այլ հասեալ առ երանելին մետրոփանոս՝ ետ զտումար հաւատոյն 'ի ձեռս նորա . և նորա առեալ ընթերցաւ և ընկալաւ , և ձեռնագրով իւրով հաստատեաց . և զարիոս նզովեաց , և զհերձուած ն՟ր արմատախիլ արար 'ի վիճակէ իւրմէ ։ Այնր իրի անդրէն առաքեաց զաղեքսանդրոս երիցապետ , ը՟ նմին և զպօղոս դպիր հայրապետանոցին՝ շրջիլ ը՟ ա՟մ տեղիս գաւառաց իւրոց , և յեկեղեցիս ա՟մ կղզեացն կիկղադայց , և քարոզել զուղղափառութի . զի մի իւիք տեղի գտանիցէ ուրեք մոլորութիւն արիոսի ։

Իսկ ա՟ծասէր թ՟գրն կոստանդիանոս զա՟մ եպ՟սն ՚նսբ ժողովոյն նիկիոյ հրաւիրեաց 'ի նորաշէն քաղաք թ՟գրութե՟ իւրոյ 'ի կոստանդինուպօլիս իբրև 'ի հանդէս նաւակատեաց . և ն՟ք եկեալ օրհնեցին զքաղաքն և զթագաւորութիւն բարեպաշտ ինքնակալին ։ Ապա մտեալ միաբան ՚նսբ հարցն 'ի հայրապետանոցն առ երանելին մետրոփանոս հանդերձ թ՟գրաւն , գտին զհայրապետն 'ի մահիճս անկեալ 'ի յոյժ ծերութէն . և առ հասարակ երկրպագեալ ողջունեցին զնա իբրև զկենդանի ՚նսբ . նոյնպ՟ս և թ՟գրն երկրպագեաց և ողջունեաց . և օրհնեալք 'ի նմանէ նստան . և պատմեցին նմա զա՟մ եղեալսն 'ի ս՟բ ժողովն .

զայն. և նա գոհանալով զԱ̃յ՝ օրհնեաց անդրէն զնա։

Իսկ Թէոդորն անկեալ 'ի վ̃ր՝ դարձեալ համբուրեաց զոտս աջ ն̃ր և զգլուխն, և ասէ. ահա հայր իմ երջանիկ՝ յոյժ ծերացար, և ցաւք և տկարութիւնք քո զփոխումն քո գուշակեն. արդ հրամայեա, եթէ զկնի քո ով իցէ արժանի յաջորդելոյ զաթոռ քո՝ վերընդունակ լինել քահանայապետութեան և վարդապետութեան եկեղեցւոյ քո։ Իսկ նա տարածեալ զձեռս իւր՝ ասէ. օրհնեալ է Ա̃ծ՝ որդեակ իմ և աթոռակիցք իմ, զի ոչ եմ դադարեալ առ 'ի խնդրելոյ յԱ̃յ վ̃ս այդր խնդրոյ. և եցոյց ինձ Տ̃ր՝ թէ ով է նստելոց յաթոռ իմ փոխանակ իմ։

Իսկ ն̃ք դարձեալ հարցին, եթէ ով է՝ զոր յայտնեաց քեզ Ա̃ծ։ Իսկ նա ասէ. աղեքսանդրոս աւագերէց եկեղեցւոյս, զոր առաքեցի փ̃խնկ իմ 'ի ն̃ք ժողովն. որ և այժմ մեծաւ աշխատութ̃բ շրջի Ը̃ Ա̃մ քաղաքս և Ը̃ գիւղս գաւառիս, և քարոզէ իմով հրամանաւ, և ուսուցանէ ուղղափառ հաւատս ո̃յ առաքելական եկեղեցւոյ Ք̃ի. և զԱրիոսի պիղծ հերձուածն յԱ̃մ տեղեաց հալածական առնէ։ Իսկ ն̃ք ասեն. արժանի է։ Իսկ դարձեալ հարցին ցնա և ասեն. ասա մեզ, եթէ զկնի ն̃ր ով է։ Ասէ ն̃ցն մետրոփանոս. պօղոս է՝ ընթերցողն և դպիրն իմ։

Իսկ ապա դարձաւ առ աղեքսանդրոս հայրապետն աղեքսանդրացի, և ասէ. եցոյց ինձ Տ̃ր և որ զկնի քո նստելոց է յաթոռ քո։ Իսկ



նա

նա եհարց, թէ՝ ո՞վ իցէ ։ Ասէ մետրոփանոս ․ աթանասիոս նախատարկաւագն քո, նա հովուեսցէ ուղղափառութի՛ զժողովուրդն աղեքսանդրացւոց ․ և բազում աշխատութե՛ց և հալածանաց հանդիպեսցի՝ կցորդութի՛

դպրի իմոյ պօղոսի ։

Նա զայս ասացեալ՝ հրամայեաց, և բարձին զնա մահճօքն կի՛ պատգարակօք, և իջուցին յեկեղեցին ․ և կալեալ ոք եպ՛ոացն՝ կանգնեցին զնա ՚ի վերայ ոտից իւրոց ․ և մատոյց զմ՛ծ այլին ոք խորհրդական պատարագն ․ և հաղորդեցաւ ինքն, և ապա թ՛քուոյն և ամ՛ եպ՛ոսունքն ՚ի ձեռաց նորյն ․ և ուրախացեալք գոհացան զա՛յ ընդ միաւորութի՛ հաւատոյն և ընդ հերքումն արիոսի ։ Իսկ երանելւոյ եպիսկոպոսապետին մետրոփանոսի մերկացեալ յինքենէ զձև հայրապետութե՛ հանդերձին՝ դնէր ՚ի վ՛ր նորյ սեղանոյն ա՛յ, և ասէր ցեպիսկոպոսունսն ․ ահա եղբա՛րք և աթոռակի՛ցք իմ՝ ժամանակ դարձի իմոյ փոխմանս յա՛յս մերձեալ է, և կոչէ զիս հովուապետն քս՛, և գնամ զճանապարհ հարց իմոց ․ աղաչեմ զձեզ զամենեսեան սիրով տե՛ն մերոյ յի քի՛, անսացէ՛ք ասա զկնի ննջման հանգըստեան իմոյ ցաւուրս ինն ․ զի մինչ յայն օր հասեալ լինի այսր աղեքսանդրոս ․ ձեռնադրեցէ՛ք զնա, և դուք ինքնին նստուցէ՛ք յաթոռ իմ ․ և ապա երթիջի՛ք և դուք խաղաղութի՛ ՚ի վիճակս ձեր և յաթոռս ։

Նա զայս ասացեալ՝ աւանդեաց զհոգին իւր առ ա՛ծ ՚ի յունիս ամսոյ ՚ի չորսն, ը՛ ամենց

՚ի

'ի նմին իսկ ամի ժողովոյն, որ յամի տն 325. և ըստ այլոց ուղղագոյն ևս՝ 'ի յաջորդ ամին 326. Այլ ամ եպսունքն հանդերձ թգրաւն սաղմոսիւք և օրհնութբ և երգովք գովաբանութե և արտասուօք հանգուցին զպատուական մարմինն 'ի քնարան տապանի սբց հարցն. այս է 'ի շիրիմս եպսաց նախորդաց նորա, 'ի տեղւոջն՝ որ եղև տաճար յանուն նորին սբյն Մետրոփանոսի. ուր և տօն նորա կատարիւր՝ մօտ 'ի վկայարան սբյն ակակիո-սի մեծի վկային յեօթնաստիճան անուա-նեալ վայրի:

Արդ զկնի հանգստեան սբյն Մետրոփանոսի՝ 'ի կատարման իննօրեայ յիշատակի նր՝ եկն եհաս աղեքսանդրոս 'ի քարոզուէ. և ձեռնադրեցին զնա ամ հայրապետքն միաբանութբ եպսապետ կոստանդնուպօլսի յաթոռ Մետրոփանոսի. և այնպէս ծանուցաւ երանելին աղեքսանդրոս իբրև առաջին պատրիարգ թգրական քաղաքին՝ ըստ կարծեաց ոմանց 'ի յոյն մատենագրաց. յորոց առեալ գրեն և ճառընտիրք և յայսմաւուրք հայոց, թէ որ երբեմն եպսարան էր բիւզանդիոն, յայնժամ եղև պատրիարգարան, 'ի կարգիլ աղեքսանդրոսի եպսապետ Յամուտ դրանն 'ի յԺԸ հայրապետացն. զի թէպէտև այս պատիւ պատրիարգութե այնր աթոռոյ տիրապս հանդիսացաւ 'ի յաջորդ ժողովն կոստանդնուպօլսոյ առ մեծն թէոդոսիւ, այլ սկիզբն փառաւորութե նորին եղև առ մեծն կոստանդիանոսիւ յաւուրս ժողովոյն նիկիոյ: Ապա

նստուցեալ հարցն ՚նցա յաթոռ հայրապետու-
կան զերանելւոյն աղեքսանդրոս, և ողջունեալ
զառաքեալն նորին մետրոփանոսի, գնացին յիւ-
րաքանչիւր տեղիս: (4)

Իսկ երանելւոյն աղեքսանդրոս հովուէր զե-
կեղեցիսն ա՟յ ՚ի վիճակի իւրում ուղղափառ
վրդ՟պութ՟բ՝ ը՟ստ սահմանելոյ կանոնական հրա-
մանի Նիկիոյ ՚սբ ժողովոյն. և քաղաքավա-
րէր առաքինի սրբութ՟ք և ճգնաւորական հան-
դիսիւք. մինչ զի աղօթիւք նր՟ զոյգ ը՟ընդ աղօ-
թից սբյն՟ յակոբայ մծբնայ հայրապետի ե-
ղև անկարծելի սատակումն արիոսի. զի ոմն
գրէ նրն՟ աթանաս (՚ի Թուղթն առ սրապիոն),
ը՟ընդ նմին և նրն՟ եպիփան (հերձ. կը. 10), և սո-
զոմենոս և սոկրատ՝ այլովքն հանդերձ, յետ
նրյ՟ ժողովոյն Նիկիոյ՝ իբրև անցին ամ՟ք տասն,
ժամանան արիոս՝ որ արտաքսահմանեալ էր յաք-
սորս, սուտ կղջումն և ապաշաւ երևեցու-
ցեալ՝ խնդրեաց դարձ, և միջնորդութ՟բ
արքունեկաց իւրոց՝ յորս երևելի էր եւսե-
բիոս նիկոմիդացի, ընկալաւ հրաման ՚ի մե-
ծէն կոստանդիանոսէ՝ գալ ՚ի կոստանդի-
նուպօլիս: Բազմօք ը՟նդդէմ եկաց այսմ երա-
նելւոյն աղեքսանդր հայրապետ կոստանդնու-
պօլսոյ, բայց ոչ կարաց յետս դարձուցա-
նել զարքունի հրամանն:

Իբրև եկն ժամադրուն արիոս, և յանդիման
եղև իշխանակալին, եհարց զնա թգ՟րն, եթէ
հաւանիցիս պահել զհաւատս կաթուղիկէ ե-
կեղեցւոյն ա՟յ. և նա երդմամբ հաստատեաց
հաւատալ սյնպէս, և ետ ևս գիր խոստո-
վան

վանութեն 'ի վերին երեսս համաձայն դասուց ուղղափառաց։ Յայնժամ առէ ցնա թագաւորն. եթէ ուղիղ իցեն հաւատք քո, ուղղութեամբ և երդուա՛ր. ապա եթէ ամպարշտութեամբ խորհիս՝ և տակաւին երդուա՛ր, ած ինքնին տեսցէ զդատ քո ընդ երդմանն քում։

Արդ սովին երդմամբ անօրինին՝ հանդերձ թախանձանօք եպիսկոպոսացն արիանոսաց՝ զիջաւ կոստանդիանոս. և կոչեաց առ ինքն զաղեքսանդրոս եպիսկոպոսն թագաւորեալ քաղաքին՝ պատուիրեաց նմա ընդունել այնուհետև զարիոս 'ի հաղորդութիւն եկեղեցւոյ։ Իսկ երանելին աղեքսանդրոս աղաչէր զթագաւորն՝ չպատրել 'ի կեղծաւոր բանից արիոսի, և տեսեալ զթագաւորն դժկամակեալ ընդ բանս իւր՝ ել յերեսաց նր լռութեամբ։

Յայնժամ արիանոսք՝ որ և եւսեբեանք՝ խորհեցան բռնի մուծանել զարիոս յեկեղեցի. իսկ տր հայրապետն աղեքսանդրոս պնդէր, թէ անմարթ է զհերեսիովտապետն յեկեղեցի ընդունել։ Բայց եւսեբեանք ասեն ցնա յոխորտանօք. զո՛ր օրինակ ընդդէմ քո կամացդ տուաք բերել այսր զարիոս արքունի հրամանաւ, սոյնպէս և 'ի վաղիւ՛ անդր՝ թէպէտև չկամիցիս դու, արիոս ընդ մեզ լինիցի յեկեղեցւոջ աստ 'ի պաշտօնն ածային. և էր շաբաթ, յորժամ զայս այսպէս խօսեցան արիանոսք։

Զայն լուեալ երանելւոյն աղեքսանդրոսի, ել նդև տրտմութեամբ. և մտեալ յեկեղեցի՝ տարածեաց զձեռս իւր առ ած, և հեղեալ ար-

արտօսր՝ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց, և կայր յաղօթս ։ Ընդ նմա էր և Մակարիոս, որ աղօթէր ընդ նմա, և լսէր զբանս աղօթից նորա, ոչ և յետոյ բերանով իւրով պատմեաց ամենայնի. զի այսպէս ասէր երանելին Աղեքսանդրոս յաղօթել իւրում. Տէր, եթէ Արիոս վաղիւն մտանելոց իցէ յեկեղեցի, զիս զծառայ քո արձակեա 'ի կենաց աստի. և մի կորուսանիցես զբարեպաշտն ընդ ամբարշտի. ապա եթէ ողորմիս եկեղեցւոյ քում, և ողորմեսցիս իսկ՝ ոչ քաջ գիտեմ, նայեաց 'ի բանս Եւսեբեանց, և մի տար յապականութիւն և 'ի նախատինս զքո ժառանգութիւն. այլ բարձ 'ի միջոյ զԱրիոս. զի մի 'ի մտանել նորա յեկեղեցի՝ հերձուածն ընդ նմա երևեսցի մտանել, և այնուհետև ամբարշտութիւն ոչ բարեպաշտութիւն համարեսցի ։

Զայս աղօթեալ հայրապետին՝ դարձաւ 'ի հայրապետանոցն. և ահա սքանչելիք 'ի նմանէ ցուցեալ լինէր. զի մինչդեռ Արիոս ելեալ յարքունի պալատանէ՝ մեծաբանութեամբ պարծէր առաջի համախոհից իւրոց՝ մտանել 'ի վաղիւն անդր յեկեղեցի, ընդ երեկս նախ քան զմտանելն արևու նեղեալ 'ի կարեաց բնութեան հանդերձ սոսափմամբ արհաւրաց իրիք, առանձնացաւ 'ի խորշ մի՝ մօտ 'ի հրապարակէն կոստանդիանոսի ասացեալ, ուր էր արձանն 'ի պորփիւր քարէ. և անդէն վաղվաղակի վայթեցան աղիք նորա. և սատակեցաւ գարշելին 'ի գարշելիս անդ ։ Իսկ յայտնի եղև ամենեցուն վրէժխնդրութիւն Այ, որ եհաս

'ի

'ի վճ չարին 'ի զօրաւոր աղօթից մերոյն աղեք-
սանդրոսի . ուստի և բազում գովութ. յիշատա-
կէ զնոյն և գրիգոր Ածաբանն 'ի սկզբան ԻԸ
ճառի իւրոյ առ կոստանդնուպօլսեցիս ։
Յաւուրսն յայնոսիկ՝ ( ըստ պատմելոյ սոզոմե-
նեայ . Ա . 18 ) եկին առ կայսրն կոստանդիա-
նոս 'ի բիւզանդիոն ոմանք 'ի հեթանոս փի-
լիսոփայից , և մեղադիր լինէին նմա վասն թող-
լոյ զպաշտօն հայրենի դից , և յարելոյ 'ի
քրիստոնէութեան . և եթէ տաս մեզ ասեն հրա-
ման , 'ի պայքար մտցուք ըստ առաջնորդի քա-
ղաքիդ վասն դենից և կրօնից . քանզի կարծէին
յաղթել նմա ձեռնարկօք իմաստակօք ։ Իբ-
րև յանձին կալաւ թագաւորն , մտին առա-
ջի աղեքսանդրոսի հայրապետի կաճառք փի-
լիսոփայից , և կամէին առ հասարակ մխել 'ի
վէճ ։ Իսկ սուրբ հայրապետն ասէ ցնոսա . ըն-
տրեցէք զոմն 'ի ձէնջ առաւել գիտնաւոր ,
որ բերան լիցի ամենեցուն , և այլքն նստցին
լռութ. ։ Եւ իբրև յառաջ մատեաւ մի ոմն
'ի նոցանէ յանդգնագոյն յամենեսին , ասէ
ցնա երանելին աղեքսանդր . յանուն յիսուսի քրիստոսի
հրամայեմ քեզ չկարել խօսել . և ըստ ասել
նորա զայս՝ զօրութ. անուանն Տեառն կապեցաւ
լեզու առնն , և համրացեալ պապանձեցաւ .
և այնպէս լի ահիւ և ամօթով մեկնեցան
փիլիսոփայքն յերեսաց հայրապետին և թա-
գաւորին ։ Այլ է՝ զոր արար նման սմին մեծն
սպիրիդիոն յատենի նիկիոյ ժողովոյն . զոր
շփոթեալ ոմանց՝ ասացին , թէ զայս արա-
րեալ իցէ աղեքսանդրոսի 'ի նիկիա ։

Ան

Ցուցոյց Երանելին Աղեքսանդրոս և զայլ գոր-
ծըս առաքինի և քաջ հովուի 'ի պաշտաման
իւրում. մինչ զի յաւուրս նորա միշտ անկուն
էին հեթանոսք, և արիանոսք, և ողիք ամ
ուղղափառաց կախեալ էին զնմանէ. և այն-
պէս լցեալ զաւուրս իւր 'ի փառս այ՝ վախ-
ճանէր ամաց իննսուն և եօթանց կամ ինն-
սուն և ութից, յամի տն իբր 336. ըն այլոց
339 կմ 340. (5)

Սոյլ 'ի փոխելն իւրում յՏէր՝ յանձն արար
կարգել յաթոռ իւր զընտրեալն յայն ըն յայ-
նութեն նոյն մետրոփանոսի՝ զդպիր նորա և
զերէց՝ Պօղոս Թեսաղոնիկեցի. զոր ինքն իսկ
աղեքսանդրոս սնուցեալ էր և ուսուցեալ և
ձեռնադրեալ քահանայ. և հաճոյ եղև ամ
ուղղափառաց դասուն. և նստուցին զերա-
նելին պօղոս յաթոռ հայրապետութեն կոս-
տանդնուպօլսոյ. քանզի և ծանուցեալ էր
յաչս ամենեցուն այր բարեպաշտ և երկիւ-
ղած յայ, և ամենայնին գրոց հմուտ յոյժ։ Կամք
էին արիանոսաց նստուցանել յայն աթոռ
զմակեդոն համախոհ իւրեանց. բայց ոչ յա-
ջողեցաւ 'ի ժամուն. և ձեռնադրեցաւ երա-
նելին պօղոս եպս յեկեղեցին կոչեցեալ Ե-
րինէ՝ այս է խաղաղութի, որ մերձ էր տա-
ճարի սրբոյն սոփիայ։

Իսկ Թգըն կոստանդ՝ որ և կոստանդիոս որ-
դի մեծին կոստանդիանոսի, յետ հօրն վախ-
ճանելն պատրեալ 'ի դաժան արիանոսաց այ-
լափառաց՝ եթող զուղիղ դաւանութի նր և
տիեզերական մեծի սիւնհոդոսին նիկիոյ,

որ

որ եղև 'ի հրամանէ քրիստոսասէր, և ամենապսա-կեալ հօրն իւրոյ, և զհետ գնաց ձախողա-կի օրինաց չարափառ արիանոսացն. և 'ի սա-դրելոյ նորա յարոյց հալածանս 'ի վերայ համօրէն ուղղափառ և առաքելական եկեղեցւոյ, կէ զի զապականածածուկ հնարիւք, և է զի յայտ-նի համարձակութեամբ. մինչև հրաման ետ ժողովել և ս լինել յանտիոք քաղաքի՝ պատճառ-անօք նաւակատիս առնելոյ անդ եկեղեց-ւոյն շինելոյ 'ի հօրէն, ըստ կամս արիանոսաց ընդդէմ սահմանի նիկիականն սրբ. ժողովոյն՝ առ եղծանել զխոստովանութիւն համագոյ-ութեան, և 'ի բաց ընկենուլ յաթոռոց զպօ-ղոս և զաթանաս և զձայնակիցս նորա ։ Այլ ոչ եկին 'ի չարաժողովն յայն աթոռակալքն մեծ քաղաքացն. ոչ յուլիոս հռովմայ հայ-րապետ, և ոչ մաքսիմոս երուսաղեմին. ոչ աթա-նաս աղեքսանդրու, և ոչ պօղոս կոստանդի-նուպօլսի. ոչ գնացին և ոչ ընկալան զժողովն անտիոքայ ։

Յայնժամ բարկացեալ թագաւորն՝ ընկէց յաթո-ռոյ զմեծն աթանասիոս, և կացոյց փոխա-նակ նորա յաղեքսանդրիա զգէորգիոս արիո-սեան. նոյնպէս և զպօղոս խոստովանօղն ըն-կէց յաթոռոյն կոստանդնուպօլսոյ՝ յետ նստե-լոյ նորա զամիսս վեց՝ 'ի նմին իսկ տարւոջ [illegible]ին 340. պատճառելով անոտի բազմա-[illegible], [illegible] թէ առանց գիտակցութեան իւրոյ նստեալ իցէ, կամ թէ չիցէ ձեռնադրեալ 'ի մերձաւոր աթոռոց հերակլիոյ և նիկոմի-դեայ, այլ յեպսպաց ոմանց գտելոց 'ի ժա-մուն

մասն 'ի կոստանդինուպօլիս . և նստոյց փո-
խանակ նորա զեւսեբիոս արիոսական զնի-
կոմիդացին :

Եւ յետ երկուց ամաց 'ի մեռանիլ եւսե-
բիոսի՝ դարձեալ նստուցին ուղղափառք զպօ-
ղոս՝ յորդորմամբ ասկղեպայ եպիսկոպոսին գազայ
պաղեստինու : Բայց զկնի հինգ ամսոց ըն-
կեցին դարձեալ չարափառք զերանելին պօ-
ղոս, կմ զայլ ոք հակառակ աթոռոյ նր կար-
գեցին . քանզի ժողովեալ արիանոսաց ձեռ-
նադրեցին զմակեդոն հայհոյիչ, և նստու-
ցին յաթոռն կոստանդնուպօլսի՝ ոչ 'ի մեծ
եկեղեցւոջն պատրիարգարանի, այլ՝ յայլ
եկեղեցւոջ, որ կոչի պօղոսի : Եւ յս մակեդոն
ոչ միայն էր քնամարտ իբրև զարիոս, զի ոչ
ասէր զորդի էակից հօր, այլ և էր հոգեմարտ .
զի հայհոյէր և զսբ հոգին, և ասէր զնա ա-
րար յածութէ, և ոչ էակից հօր և փառա-
կից որդւոյ . այն իսկ էր շառաւիղ դառնու-
թե արիոսեան աղանդոյն :

Իսկ կոստանդ կայսր՝ որ էր յայնժամ յան-
տիոք, եղեալ 'ի բանս արեանոսաց՝ հաւանե-
ցաւ ը ընտրութեն մակեդոնի . և առաքեաց
զերմոգենէս մագիստրոս զօրաց 'ի կոստան-
դինուպօլիս՝ 'ի բաց վարել զպօղոս : Բայց
խառնիճաղանճն ուղղափառաց 'ի վն հա-
նեալ ապրեցուցին զհովիւն իւրեանց . այրե-
ցին զապարանս մագիստրոսի, և զնա ձեր-
բակալ արարեալ՝ կախեցին չուանս զոտից,
և քարշեցին ը փողոցս, մինչև մեռաւ : Այն
լուեալ կոստանդեայ՝ եկն 'ի կոստանդինու-

պօ-

պօլիս , և արտաքսահման արար զերանելին պօղոս կապանօք , և ետ վարել զնա մինչև ՚ի միջագետս ասորւոց և ՚ի քաղաքն եմեսաւ ․ և եդ տուգանս ՚ի վ՟ր ուղղափառաց բնակչաց կոստանդնուպօլսոյ զատկն արքունի , զոր թողացուցեալ էր հայր նր՟ ․ բայց և ոչ զմակեդոն տիրամ՟ս հաստատեաց յաթոռն , այլ միայն թոյլ ետ ժողովրդեան գնալ յեկեղեցին նր՟ ։ Այլ ՚ի հասանել համբաւոյ ՚ի հռովմ , եկն հրաման ՚ի կոստասայ ինքնակալէն արեւմտից և ՚ի յուլիոսէ հայրապետէ ․ և դարձաւ պօղոս յաթոռ իւր ։ (6)

Իսկ եհաս լուր առ կոստանդ՝ որ չէր յայնժամ ՚ի թագաւորեալ քաղաքի , եթէ եկն և նստաւ անդրէն պօղոս , և յարեցաւ ՚ի նա ժողովուրդն , պատուէր յղեաց առ փիլիպպոս եպարքոս քաղաքին՝ մերժել զպօղոս յեկեղեցւոյ , և դնել յաթոռն զմակեդոն ։ Իսկ փիլիպպոս երկուցեալ ՚ի ժողովրդենէ յայտնի արտաքսել զպօղոս , խորհեցաւ հնարս ․ գնաց ՚ի բաղանիս՝ որ կոչէր զեւքսիպպայ , և անդ կոչեաց զպօղոս՝ որպէս թէ ունիցի ինչ կարևոր ասել նմա ․ և յայտնեալ նմա զհրաման կայսեր՝ ետ բանալ զմի դուռն բաղանեաց , և տանել ը՟ այն զպօղոս ՚ի պալատն ․ զի շուրջ կային զմիւս դրամբ ամբոխն ․ և ՚ի պալատանէ տարեալ եդին զերանելին ՚ի նաւակ , և աքսորեցին ՚ի թեսաղոնիկ , հրաման տուեալ գնալ և յայլ քաղաքս լիւրիկեցւոց , այլ ոչ յարևելս ։ Իսկ ապա եպարքոսն բռնութ՟ զինուց՝ զբազումս սպանանելով՝ նըր-

տոյց

տոյց զմանկեղոն յաթոռ եպիսկոպոսութեան ։
Իսկ խոստովանօղ հայրապետն պօղոս զանէծ զպարապ, և ցուցեալ երթալ 'ի թեսաղոնիկեայ 'ի կորնթոս՝ չոգաւ յիտալիա մինչև 'ի հռովմ. և եգիտ անդ զաթանաս, որոյ կանխաւ հասեալ էր անդր, և ծանուցեալ յուլիոսի հռովմայ հայրապետին զնոսա անցս եկեղեցւոյ. զնոյն լուաւ առաւելութեամբ յուլիոս և 'ի բերանոյ պօղոսի. և զեկոյց զնոսա միրատմիօջէ կոստասայ արքային հռովմայ ։ Յայնժամ եղև ժողով 'ի միդուլէ. և իբրև յայտնի եղև անմեղութիւն և ուղղափառութիւն պօղոսի և աթանասի, գրեաց կոստաս փութանակի առ եղբայրն իւր կոստանդ արքայ արևելից՝ դարձուցանել զպօղոս և զաթանաս յաթոռս իւրեանց, և ժողով առնել 'ի սարդիկէ՝ առ 'ի քննել զչարախօսս նոցա, և առ 'ի հաստատել զնիկիականն հաւատս ։ Իսկ կոստանդ առ ահի կոստասայ կատարեաց զառաջարկութիւն նոցա, և յանձն էառ զգումարումն ժողովոյն ։

Իսկ ժողովեցան յամի 347. յարևմտից երեք հարիւր եպիսկոպոսք, և յարևելից եօթանասուն և վեց. իսկ արևմտեան եպիսկոպոսունքն կամեցան զի և պօղոս և աթանաս մտցեն 'ի ժողովն. իսկ արևելեանքն ոչ կամեցան. և այնպէս հերձան 'ի միմեանց, և գնացին արևելեանքն 'ի քաղաքն փիլիպուպօլեայ, և արարեալ անդ ժողովակ ՀԸ անուամբ ժողովոյն սարդիկեայ մերժեցին զպօղոս և զաթանաս, և ն[illegible]ցին զայնոսիկ՝ որ համագոյ խոստովանէին

զՈր

զՏր երրորդութիւն . իսկ արևմտից եպիսկոպոսքն Երեքհարիւր ժողովեալքն ՚ի Սարդիկիա՝ քարոզեցին համագոյ զՏր երրորդութի, և յիշեալ անգիր թղթովք հաստատեցին զնիկիական դաւանութիւն . և զպօղոս և զաթանաս արդարացուցին . որք յայնժամ ընդ ումանց էին ՚ի Հռովմ, և ըստ այլոց առաջիկայ ՚ի ժողովն
անդ Սարդիկեայ :

Բայց քանզի միութիւն արևելից էր ՚ի ձեռս Կոստանդեայ, նա անդրէն ՚ի բանս լեալ արիանոսաց՝ ոչ եթող պօղոսի և աթանասի նստիլ յաթոռս իւրեանց, և ոչ դադարեաց ՚ի նեղելոյ զուղղափառս : Իբրև ստուգեաց զայս Սմ կոստաս Թգրն Հռովմայ, գրեաց առ եղբայրն իւր կոստանդիոս սպառնալեօք . եթէ ոչ դարձուսցես զպօղոս և զաթանասիոս յաթոռս իւրեանց, զսէր եղբայրութեանդ լուծանեմ առ է, և գամ զօրօք պատերազմիլ ընդ քեզ : Այս լուեալ կոստանդեայ՝ երկեաւ յեղբօրէն, և հաստատեաց զպօղոս յաթոռ կոստանդնուպօլսոյ՝ յեկեղեցւոջ սրբոյն Իրենեայ, զոր հին կոչէին, զի կայր և միւս այլ նոր կոչեցեալ . Նոյնպէս և զաթանաս յաղեքսանդրիա յաթոռ իւր՝ յամի Տր 348 :

Այլ յետ սակաւուց, իմն երկուց կմ երից ամաց, յորժամ մագնենտիոս՝ որ և մաքսենտիոս բռնաւոր սպան զկոստաս արքայ հռովմայ, զայն լուեալ արիանոսաց ժողովոյն՝ որ ՚ի կոստանդնուպօլիս, ուրախ եղեն յոյժ, և սկսան միւսանգամ շարժել զկոստանդ թգրն ՚ի բարկութիւն ՚ի վր պօղոսի և աթա-

նա

նասի ։ Այլ երկու դարձեալ հալածումն ուղղափառ եկեղեցեաց ի տանս երկիրն . և ընկեցին արքունի հրամանաւ զաթանաս յաթոռոյն աղեքսանդրու . իսկ զերանելին պօղոս զՀայրապետն կոստանդնուպօլսոյ արտասահմանեալ աքսորեցին 'ի կուկիսոն քաղաք փոքուն հայոց . ուր նա սկսաւ քարոզել համարձակ զնիկիական հաւատս . և հնչէր համբաւ քարոզութեան նր և սրբութեան ի նմ անդր ։

Ընդ որ զչարեալ արիանոսաց՝ որ 'ի թագաւորեալ քաղաքին , ժողովեցան առ միլիտպոս եպարքոս քաղաքին . և նա 'ի սաստելոյ դաժան արիանոսացն գրեաց առ իշխանն կուկիսոնի կորուսանել զպօղոս ։ Այնժամ փակեցին զերանելին 'ի շրջաբնակութեան տանս րին 'ի խաւարին և յանձուկ վայրի , և թողին անսուաղ՝ զի սովամահ կորիցէ . և ապա զկնի վեց աւուրց գտեալ զնա դեռ կենդանի , զի կայր 'ի գիշերային պաշտաման , և յարուցեալ սկիզբն առնէր մատուցանելոյ զկենդանարար խորհուրդն , խեղդեցին զնա 'ի ներքսագոյն սրբութեան տեղւոյն առաջի նորա սեղանոյն , արկեալ զոմոփորոնն 'ի փողսն . և այնու պարանոցեալ զփողսն՝ խեղդամահ արարին զնա՝ յամի տն 350 կամ 351 . 'ի վեցն նոյեմբերի ։ Այլ մի այսպիսի փառաւոր կատարման 'ի մէջ Ճշմարտութեան խոստովանող կոչեցաւ նորա հայրապետս պօղոս՝ քաջ հովիւն և առաքինի նահատակն . որ ըստ գրելոյ մեծին աթանասի՝ չորից արտասանա-

մանեցաւ. Նախ 'ի պաշտօն (որ կարծի լինել յառաջ քան զեպիսկոպոսութիւն). ապա 'ի սինգեր կամ 'ի սրուճ միջագետաց. ապա յեմեսա. և ապա 'ի կոկկիսոն կապադովկիոյ յանապատս կոյս տաւրոսի. թող զհինգերորդն որ 'ի թեսաղոնիկէ. և վախճան ընկալաւ վկայական 'ի կոկկիսոն։ Իսկ զաթոռ նորա 'ի բիւզանդիոն` կալաւ անդրէն հոգեմարտն մակեդոն. և յայնժամ բազում հալածանս և նեղութիւս անցուցին արիանոսքն ընդ ուղղափառս. զի և ինքն իսկ մակեդոն ոչինչ ընդհատ 'ի բռնաւորաց հեթանոսաց տայր չարչարել զուղղափառսն։

Եւ էին յաւուրսն յայնոսիկ 'ի կոստանդինուպօլիս երկու եղբարք` աշակերտք և նօտարք պօղոսի խոստովանողին. մին կիսասարկաւագ Մարկիանոս անուն, և միւսն դպիր` որ կոչէր Մարտիրիոս, որ և մարտիրոսքն կն մարտիրոսն, որք զօրաւորք բանիւ և գրով, և համարձակ քարոզք ճշմարտութե։ Սոցա լուեալ զխոստովանողական կատարումն երանելւոյն վ̄պին իւրեանց` պնդագոյն ևս սկսան ջատագովել հրապարակաւ զուղղափառ խոստովանութիւն ընդդէմ արիանոսաց, և յանդիմանել զապիրատութի եպարքոսին և զհամախոհից նր` որք մեծեցին զձեռս յանպարտ արիւն նր հայրապետին պօղոսի։ Յայնժամ բարկացեալ փիլիպպոս եպարքոսն` ետ ունել զերկոսեան զնս, և արկանել 'ի բանտ խաւարային. ուր նեղէր զնս սովու և ծարաւու` յետս կոչել զվ̄պութի իւ-

խուրեանց, և միաձայնիւ ընդ արխանոսս : Այլ
նքա ոչ տանջանօք զինջան, և ոչ ստացուա-
ծովք պատրեցան. այլ համատարածք յանձ-
պաշտութե ընդ ուղղափառ վկայուն՝ 'ի բրա-
քիոն վերին կոչման փութային, որ միայն նոյ
առաջի կայր : Իսկ եպարքոսն իբրև եգիտ
զերանելիսն անդրդուելիս 'ի հիմանէ հա-
ւատոցն ճշմարտութե, 'ի մահ դատապար-
տեաց զնս. հրաման ետ հանել 'ի վն պա-
րըսպին կոստանդնուպօլսոյ, և սրով խող-
խողել :

Յայնժմ վայրի 'զաչս և զձեռս 'ի վեր համ-
բարձեալ Դբ նոտարացն՝ այսպէս կացին յա-
ղօթս. Դու Տր ած հաստիչդ առանձինն
որտից մերոց, որ գիտակդ ես ամ խորհրդոց՝
բանից և գործոց մերոց, 'ի խաղաղուն զքո
ծառայից ընկալ զհոգիս. զի վն քո և վն
փառաց միածնի քո համագոյակցի մեռա-
նիմք, և ոչ ոչխարք սպանդից համարեալ
լինիմք. և խնդամք՝ զի զայսօրինակ մեկ-
նիմք յառաջիկայ կենացս, և յոր առ քեզն
է 'ի կեանս յօժարաքայլ ընթացիւք վերաբե-
րիմք :

Զայսոսիկ առ ածն բոլորից աղօթեալ, և
զամէնն ասացեալ, հարուածոյ սրոյ ներքոյ
արկին զպարանոցս իւրեանց. և այնպէս ըղ-
մարտիրոսականն ընդունի վախճան մարտի-
րոսն ընդ մարկիանոսի 'ի քսան և հինգ ամսեանն
հոկտեմբերի, միով ամաւ զկնի՝ զհետ եր-
թեալ սբ վկային իւրեանց պօղոսի խոստո-
վանողի : Իսկ զպատուական նշխարս նց ո-
մանք

մանք յուղղափառաց բարձեալ, և պայծառ յօրինեալ՝ սաղմոսիւք և օրհնութեամբ ամփոփեցին 'ի նշանաւոր տապանի առ պարսպաւ քաղաքին ։

Այլ էր սուգ մեծ ուղղափառաց դասուն զամս քառասուն (7), յորս կալան արիոսք և հոգեմարտք զաթոռն կոստանդնուպօլսի և զայլ ոչ սակաւ եկեղեցիս՝ յաւուրս կոստանդեայ և յուլիանոսի և վաղեսի . մինչև թ՟գրեաց բարեպաշտն և քրիստոսէրն թէոդոս մեծ . առ որով եղև նա ժողովն կոստանդնուպօլսոյ , և հալածեցաւ խաղաղուն , և ուղղափառ խոստովանութ՟ի յեկեղեցւոջ . և 'ի ժողովին անդ պայծառացաւ անուն ն՟րյն պօղոսի հայրապետի խոստովանող վկային ք՟րի ։

Նա որոյ յետ կարգելոյ յաթոռ նորա զկնի գրիգորի ա՟ծաբանի զնեքտարիոս տարսոնացի պատրիարգական պատուով՝ ձեռնադրել 'ի հարց անտի ժողովոյն , առաքեաց մեծն թէոդոս արս հաւատարիմս՝ եպ՟սունս և քահանայս 'ի խնդիր ն՟ր նշխարաց երանելւոյն պօղոսի , որ յայնմ ժամանակի փոխադրեալ էր 'ի կոկիսոնէ հայոց յանկիւրիա գաղատացւոց . ուր եկեալ բարձին զայն մեծաւ պատուով՝ բերել 'ի թ՟գրեալ քաղաքն և յիւրական աթոռն 'ի կոստանդինուպօլիս ։ (8)

Այլ իբրև եկին հասին յեզր ծովուն , և եդին 'ի մակուկի՝ հանել 'ի ցամաք բիւզանդիոյ , լուաւ թագաւորն թէոդոս և նեքտարիոս պատրիարգն , և հարք ժողովոյն՝ որոց չէր արձակեալ 'ի տեղիս իւրեանց , և ելին

էր առաջ սրբոյն նաւակօք մինչև 'ի քաղկեդոն՝ ամ բազմութբ քաղաքին, իշխանօք և եկեղեցական դասուք և միայնակեցօք՝ հանդերձ մոմեղինօք լուցելովք, ջահիւք և լապտերօք բորբոքելովք, և բուրմամբ անուշահոտ խնկոց։ Նոյն այնպէս մեծաւ փառօք պատուեցին զսրբ նշխարս երանելւոյն պօղոսի խոստովանողին քսի. և բերեալ հանգուցին մօտ 'ի պալատն արքունի յեկեղեցւոջ հնոյն Երինեայ, ուր եղեալ էր նր զհայրապետական աթոռ իւր, և անտի էր արտասահմանեալ։

Ընդ զգիշերն 'ի գլուխ հանեալ 'ի հսկմունս տօնախմբութբ և հոգևոր ուրախութբ, 'ի վաղիւն անդր նովին հանդիսիւ բազմութն 'ի ձայն երգոց և օրհնութն բերին զնշխարս սրբյն 'ի վկայարան մեծաշէն և հոյակապ եկեղեցւոյն՝ որ պօղոսին կոչեցաւ (9). զի զոր մակեդոն հոգեմարտ հալածիչ սրբյն շինեալ էր իբրև ամուր պարիսպ չարուն իւրոյ՝ ուղղափառքն նուիրեցին զայն յանուն նորին խոստովանող սբ հայրապետին, մօտ 'ի սրբուհին անաստասիա՝ 'ի թաղն մաւրիանու, 'ի ներքոյ սբյ սեղանոյն առնելով զգիրս հանգըստի վկային։ Ուր և կատարեն՝ ամէ վկայագիրն ձաւընտրաց՝ զտարեոր յիշատակ նորա ամ յամէ ծախողով բազմութբ՝ տօնախմբելով յամսեանն նոյեմբերի, որ օր վեց է. որ համարի օր նահատակութն սրբյն. կմ թէ այլոց՝ 'ի կիրակէն, որ մերձ է վեցերորդ աւուր նոյեմբերի։ Իսկ փոխադրութի նշխարացն սրբյն ասի լինել 'ի յունիսի 7. յամի տն 381. իբր

քան-

Քսանեհինգ կամ երեսուն ամօք յետոյ քան զկատարումն ։

Եւ մնաց անդ պատուական գանձն ը̄ դարս բոլորս ․ մինչև 'ի յետին ժամանակս՝ յամի Տն̄ իբր 1226 ․ փոխադրեցաւ 'ի լատինացւոց՝ որք Թ̄գ̄րեցին 'ի կոստանդինուպօլիս , ամբողջ մարմին ս̄բ̄յն 'ի վենետիկ քաղաք իտալիոյ ․ և եդաւ յեկեղեցւոջ ս̄բ̄յն լաւրենտիոսի՝ որ 'ի վանս ազնուական կուսանաց ․ ուր յետ կալոյ դար մի և երկու՝ առժամանակ մի յանձանօթս եղև տապան ն̄ր̄յն ․ մինչև վերստին գտաւ 'ի նմին տաճարի՝ յամի 1493 ․ 'ի տասներորդ աւուր ապրիլի ։ Օր 'ի կամիլ կուսանաց տալ նորոգել զմի 'ի խորանաց տաճարին՝ որ մերձ 'ի վանդակն , յորժամ քակեցին զհին խորանն , 'ի վեր երևեցաւ տապան կճեայ ․ և 'ի յիշատակարանս վանաց գտաւ արձանագրեալ , թէ յայնմ խորանի եդեալ է տապան ս̄բ̄յն պօղոսի եպ̄սի և վկայի ։ Ապա ըս̄ հրամանի պատրիարգի քաղաքին՝ որում անուն էր Թովմաս դոնատոս , շինեցաւ շիրիմ նոր 'ի վ̄ր̄ միոյ 'ի խորանաց նորին տաճարին ․ և անդր փոխադրեցաւ մարմինն ս̄բ̄յն յառաջնում աւուր մայիսի ։ Եւ դարձեալ զկնի դարու 'ի վ̄ր̄ անցանելոյ՝ յամի 1617 ․ փոխադրեցաւ յայլ նոր տապանակ ապակափեղկ , և եդաւ հանդիսապէս 'ի վ̄ր̄ խորանի նուիրելոյ յանուն նորին ս̄բ̄յն պօղոսի խոստովանողի՝ 'ի փետրվարի 1 ։ Ուր և կայ մնայ մինչև ցայսօր գրեթէ ամբողջ մարմինն ․ զի այնպէս յարմարեալ են, առ մե-

մեանս կազմութիւնք ոսկերաց նոյն, որք թէ ողջանդամ երեւին՝ բայց ՚ի դոյզն մասանց պակասելոց ։ Յայժմուս ՚ի վ՟ր արտաքին պահարանի տապանին դրոշմեալ կայ լոկ անուն նոյն. այլ փոքր մի յառաջ ընդարձակ բանիւ գրեալ էր յիշատակարանս այս. * Սոյն պաղոսի՝ կոստանդնուպօլսոյ եպսի, որ յարիանոսաց սպանաւ յամի ՟Տն 355, մարմինն եդաւ յայս տապանակ՝՝ ՚ի կաղանդս փետրվարի յամի ՟Տն 1617. ըստ վենետիկեան սովորութե, յաւուրս պատուական աւագուհւոյն և աբբասուհւոյն ադրիանայ գոնթարինեայ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Բովանդակ պատմութիւն երկոցունց մեր Հայրապետացս և երկուց նոտարացս՝ բարւոք և գեղեցիկ ճառեալ ՚ի ճառընտիրս մեր երեսին, եղև մեզ հիմն հաստատուն. յորոյ վ՟ր կառուցաք և զայլ մասնաւոր աւանդս քաղեալս յեկեղեցական պատմագրաց և ՚ի բոլանդեան քննութեց. քանզի և ոչ գոյ այլ բովանդակութիւն ընտիր քան զճառընտրաց մերոց. զոր քաղէ և սփռէ Հ. ՚ի յունուարի 4. և ՚ի հոկտ. 25. և ՚ի նոյեմբ. 6. և ՚ի նոյնս վերածին ՟Ը գոյացութե գրեալքն և ՚ի յայսմաւուրս այլոց ազգաց. որք և հին մկայաբանն յիշատակեալ ՚ի փոքրայ ՚ի մատեանն. մծգ. ՚ի նոյն ակնարկէ. զնոյն իմա և ՟Ը մկայագրին յիշատակելոյ ՚ի յաննինդայ բոլլանդեան. որք և զնոյն հաստատեն սոկրատ, սոզոմենոս, և գելասիոս կիւզիկեցի ։

(2) Ոչինչ զարմանալք, եթէ յայտնապէս հին աւանդս բեղանդացւոց նշմարեսցին մթութիւնք հնութե, միանգամայն և մեծապատճառութիք ձեռոյ բանից՝ ՚ի խօսելն զպանծալի Հայրապետացն իւրեանց մարտիրոսանալ. զի զինչ և տասացէ ոք՝ ազգ իւրաքանչիւր է մկայ հնութե իւրոյ, զոր ՟Ը կարի ջանայ պանծացուցանել ։ Զայս երկրո–

դէ



# ՏՕՆ ՍՐԲՈՑ

## Հրեշտակապետացն՝ Գաբրիէլի, և Միքայէլի, և ամ̃ երկնային զօրացն ։

Հ․ Յ․ նոյ․ 8 ։ Լ․ սեպտ․ 29․ և մայիս․ 8 ։ Բոլլանդեանն տոնլոնեց 'ի Է հատ․ սեպտ․ էջ․ 4 = 123 ։ Հարք և Մէնիէլք ։ Շնորհ․ Ներսէ․ հրեշտ ։ Բարոնիոս յամի 330․ և 493․ Լին ։

### ՆԱԽԱՃԱՌԵԼԻՔ։



ՀՐԵՇՏԱԿԱՑ ԱՆՈՒՆ սեպհականեալ երկնաւոր զօրաց հոգեղինաց, թարգմանի պատգամաւոր կ̃մ դեսպան, ք̃ն որում առաքմամբ յա̃յ առ մարդիկ՝ ծանօթացան մարդկան․ և փոխանակ առաքմանն նոյն այն իսկ է, զոր առաքեալն նշանակեաց՝ յայտնաբանելով զբնութիւն և զգործ նոցա միանգամայն․ քանզի ասէ․ * Ո՞չ ապաքէն հոգիք են հարկաւորք, որք առաքին 'ի սպասաւորութիւն՝ վ̃ն այնոցիկ՝ որ ժառանգելոց են զփրկութիւն ‖ ։

Ուստի գեղեցիկ իմաստասիրել ունիս՝ նախ, թէ հրեշտակք են հոգիք պարզք, ք̃ն անմարմին գոյացութիւնք՝ իմանալիք և իմացականք,

գերազգոյնք 'ի բանաւոր արարածս. վ՟զի և անդրանիկ եղբարք մեր անուանին, կամ դասք անդրանկաց ։ Երկրորդ՝ թէ ոչ միայն կարգեալ են 'ի պաշտօն արարչին իւրեանց, վ՟յ և պաշտօնեայք կոչին հարկաւ, և արարողք կամաց զկամս տ՟ն, այլև սպասաւորք միջնորդութեան ը՟ ա՟ծ և ը՟ մարդկան սահմանեալ՝ 'ի պէտս փրկութեան հոգւոց մերոց, ուսինց ը՟հաւա 'ի պալատականաց՝ որովք լինի այլոց մատչել առ արքայ, լսել զպատգամս արքունի 'ի բերանոյ նց, և զաղերս իւրեանց մատուցանել 'ի ձեռն նց առ Թ՟գն, և նոքօք ը՟ունել զկատարումն հայցուածոց իւրեանց. ոչ և բազմօք յայտ առնեն ա՟ծեղէն տառք ։

Երրորդ՝ թէ թէպէտև ա՟մ մարդոյ գտանի մի մի հրեշտակ պահապան, զի ա՟ծ զա՟մ մարդիկ կամի՝ զի կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն, բայց ոչ ը՟ առաքելոյն՝ տ՟րն առ փրկիչ ա՟մ մարդկան, և մանաւանդ հաւատացելոց, նոյնպէս և հրեշտակք են մանաւանդ պահապան հաւատացելոց և կարգելոց 'ի կեանս յաւիտենականս. ը՟ բանակք հրեշտակաց ա՟ն շուրջ են զերկիւղածովք իւրովք. կամ ը՟ այլում ընթերցուածոյ՝ հրեշտակ ա՟ն բանակեալ է զերկիւղածովք նր. և թէ՝ հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վ՟ քո 'ի պահել զքեզ յա՟մ ճանապարհս քո. ՂԱ ։

Եւ այս ո՞րպիսի պատիւ մերումս յետնութ՟ ունել զգերաբուն էակս հոգեղէնս՝ ա՟ծամերձս և ա՟ծանմանս՝ վերակացու և դաս-

տիա-

ախտարակ, պահապան և պաշտպան, ձեռն-կալու և միջնորդ և բարեխօս ։ Այլ ոչինչ են զարմանք առ անբաւ մարդասիրութեան նոյ․ զի եթէ ա̃ծորդին ինքնին եկն, և մարդ եղև որպ̃ զմեզ, և պաշտեաց զմեզ՝ քան եթէ պաշտեցաւ ՚ի մէնջ․ Զի, որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ, այլ՝ պաշտել, և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց․ և թէ՝ ես եմ՚ի միջի ձերում իբրև սպասաւոր․ քանի՞ոն և պաշտօնէից նոյ անկ ՚ի հրամանէ և յակն-արկուէ նր՝ պաշտել և սպասաւորել մարդ-կան, որք կարգեալ են ՚ի ժառանգել զփրկու-

կութիւն ։

Այսպէս և եթ մեզ արժանապէս ը̃նդունել զմե-ծահրաշ պաշտօն սպասաւորութեան նց ՚ի մեր օգուտ, և ոչ ունայնացուցանել զհոգևորէն աշխատութիւս նց․ զի մի՛ և զմէնջ բողոքես-ցեն, բժշկեցաք զբաբելոն, և նա ոչ բժշկե-ցաւ․ այլ առաւել յորդել զվաստակս նց, և ՚ի գութ շարժել զնա ՚ի վր մեր․ որպ̃ և արդահատեն առաջի նոյ բարեխօսութբ վս մեր․ ողորմեա՛, դու ստեղծեր, մի՛ կորու-սաներ․ միանգամայն և փոխարէն նց առ ՚ի մէնջ զպաշտօն մեծարանաց և զյարգ սպա-սաւորաց՝ իբրև վեհագունից և գերագու-նից բնութբ և շնորհօք և փառօք․ զի թէ-պէտև պաշտօնակիցք և ծառայակիցք գտա-նիցիմք նց առաջի մեծվայելչութեն նոյ, բայց մեծ է խտիր ը̃ մեզ և ը̃ նս, որպ̃ ը̃ արքայա-զունս և ը̃ սինլիքորս, որպ̃ ը̃ աւագանի և ը̃ ռամկական, ը̃ քաղաքացի և ը̃ շինական․ և

կա՛մ

Ե՛ս տեսանել անհամեմատ օրինակաւ․ զի նոքա բարձունք երկնաւորք, մեք ստորինք երկրաւորք․ նոքա հոգեղէնք, և նմանութբ՝ լուսեղէնք, հրեղէնք, բոցեղէնք, մեք մարմնաւորք և հողեղէնք․ նոքա հզօրք զօրութբ, մեք տկարք և անպիտանք ։

Այլ արդ՝ զո՛ր օրինակ պարտական եմք մեք ամ իրօք՝ յաղագս խնամարկելոյ նշ սիրով զմերս անարժանութի, և զինջանելոյ ՚ի մեր տկարութենէս և յանձանձելոյ և պաշտպանելոյ և լուսաւորելոյ յամ ժամ, պա՛րտ և արժան է մեզ հանդիսապէս փառաւորել զնոսա արժանաւոր տօնախմբութբ ՚ի յերկրի․ որպէս զի և յերկինս արժանասցուք տօնակից լինել նոցա յաւիտեան ։ Այսու զի կան և կրկին և երեքկին պատճառք առանձին տօնի համօրէն հրեշտակաց, և յանուանէ՝ սոցա հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի․

Առաջին, զի որո՛վ բանիւ տօնեմք զնոսա ՚ի մարդկանէ, նյ վս յաղթօղ լինելոյ նոցին ընդդէմ աներևոյթ թշնամւոյն, և պսակելոյ յաջոյ բարձրելոյն՝ որպէս վկայ, որպէս խոստովանող, որպէս առաքինի՝ սրբ և արդար, և միացեալ ընդ այ, Ե՛ս տեսանել այս ամ ձիրք ձրից գերօրհնակ բովանդակեալ տեսանին ՚ի սրբ հրեշտակս․ որովհետև եղեն նախագրաւ յառաջամարտիկ բանակք այ՝ վանիչք բանսարկուին և ամ հրեշտակաց չարաց ; որք հակառակ կացին այ, վմյ և սատանայ անուան ընկալան․ ուր բարի հրեշտակք կացեալք մնացեալք ՚ի հնազանդութի արարչին՝

չին՝ հաստատեցան 'ի շնորհս, և պահեցին զկայանս իւրեանց, և անպատում փառօք բարձրութե՟ պսակեցան յանմահ արքայէն՝ անարիւն մարտիրոսութ՟բ, տիրապէս խոստովանութ՟բ, առաքինի քաջութ՟բ, և ամ՟ արդարութ՟բ և սրբութ՟բ. և այս ը՟ վ՟դպացն ձահագրութե՟՝ 'ի նմին իսկ աւուր և 'ի ժամու, գուցէ և 'ի վայրկենի ստեղծման իւրեանց՝ ը՟ արարչութե՟ լուսոյ աւուրն առաջնոյ, կմ՟ ը՟ ստեղծագործութե՟ երկնի և երկրի. զի իմանալեացն ներգործութիւք են վայրկենականք՝ արագ քան զթարթել աչաց՝ ը՟ շարժման լուսոյ:

Երկրորդ, զի թէ զխումբս բազմութե՟ սրբց առաւել իմն հանդիսիւ արժան է գերահռչակել, քն՟ զվկայիցն երկուց բիւրուց, կամ զտասն հազարաց և երկերիւրոց, կմ՟ զհազարաց և երեսուն և վեցից, զի՞նչ պարտ է ասել զանթիւ բազմութե՟ս սրբց հրեշտակաց, որք 'ի գիրս նշանակին հազարք հազարաց և բիւրք բիւրուց՝ 'ի նշանակ անհամար թուոյ համարոյ նոցա, զոր ա՟յ միայն է գիտել. զի թէ մարդիկ գրին 'ի համար բազմութե՟ աստեղաց և աւազոյ ծովու, հրեշտակաց չի՛ք օրինակ 'ի նիւթականաց բազմաւորութենէ. ուր մարդկութիւս առաջի բազմերամ հրեշտակաց կոչի մի ոչխար մոլորեալ 'ի հօտէ հարիւր ոչխարաց մակաղելոց յերկնից անապատի:

Երրորդ, զոր օրինակ ոմանք ոմանք 'ի սրբց են առաւել քաջածանօթ մեզ կմ՟ մերձաւոր

և վաստակաւոր, զի առաքեալք՝ համօրէն տիեզերաց, և որք լուսաւորիչն՝ Ծխս հայաստանեայց, և կմ նշանաւորք են զայլս 'ի նոցա՝ եթէ պատուով աստիճանի յեկեղեցւոջ, և եթէ գերապանծ փառօք առաջին այ և մարդկան, և ըստ նմին՝ առաւելագունի արժանաւորք գովութեան և տօնախմբութեան, ըստ նմին օրինակի և 'ի դասուց անտի հրեշտակաց՝ գաբրիէլ և միքայէլ մեծք՝ ականաւոր գտանին ըստ նշանակելոյ գրոց նոցա՝ առաջի այ երբեք մերձակացք և յանդիմանակացք աթոռոյ ածութեան, և առաջի մարդկան իբրև ընտանեգոյն խնամածուք, ծանօթք յանուանէ, և յանուանէ տօնախմբելիք ։ Գաբրիէլ՝ որ թարգմանի այր այ, կմ ած իմ հզօր, քան զամ զօրաւորութիւնս երկնից ծանօթագոյն ցուցաւ առ ազգ մարդկան՝ ստէպ պատգամաւորութբ 'ի հին և 'ի նոր օրէնս, որպ գործակալ և դեսպան երկնաւոր արքայի՝ առաւելապէս 'ի փրկական խորհուրդս տնօրէնութե այ մարդացելոյ ։

Միքայէլ՝ որ թարգմանի, ով է որպէս ած (մեր), զօրավար երկնից ցուցեալ լինի բազմօք 'ի կրկին կտակարանս, միանգամայն և վերակացու և պաշտպան եկեղեցւոյն այ՝ որ 'ի հնումն և 'ի նորումն ։ և առանձին տորայս սքանչելիք 'ի դարս դարս՝ առիթ ետուն տօնախմբութեան մեծի, որ 'ի պատիւ նոցա հրեշտակապետաց և ամ երկնային զօրաց ։ զոր փոքր 'ի շատէ նշանակեսցուք ըստ աւանդութեան արևելեայց և արևմտեայց ։

'Ի

'Ի ժամանակս դարձի մեծին կոստանդիանոսի՝ յորժամ շինեցան 'ի նմանէ 'ի կոստանդինուպօլիս այլևայլ եկեղեցիք և վկայարանք, որ են սրբոյ սոփի՝ կամ տաճար իմաստութեան, սրբ. եւրինէ՝ կամ տաճար խաղաղութեան, և տաճար առաքելոց, և վկայարան մօվկիմայ քահանայի, և ագաթոնիկոսի, և մինասայ, և ակակիոսի, հուշակաւոր եղև և տաճարն՝ զոր ետ շինել 'ի պատիւ սրբոյն միքայելի հրեշտակապետի 'ի վոսփորոն՝ որ 'ի նեղուցն բիւզանդեան, 'ի տեղին՝ որ կոչեցաւ սոսթենիոն, այս է փրկաւէտ կամ ազատարար. այն է առ կողամբք եուշա լերին՝ ընդ մէջ եօրուսի և արձիրօնի. քանզի ասեն, եգիտ անդ աստուածասէր կայսր՝ առնապատկեր թևաւոր, (ըստ ոմանց՝ յաւուրց անտի արգանաւորդաց կանգնեալ ոչ անծանօթ պատգամաւոր երկնից՝ նիզակակից յաղթութեան), այն էր արձան երիտասարդի թևօք արծուոյ՝ 'ի ձև զօրավարի, ըստ օրինակին՝ որով սովոր էին քրիստոնեայք նկարել զնմանութիւն միքայելի հրեշտակապետին. և 'ի զարմանալ աստուածասէր թագաւորին ընդ այն՝ թէ ո՞յր իցէ պատկերս, երևեցաւ նմա 'ի քուն միքայէլ, և հրաման ետ կանգնել 'ի տեղւոջն տաճար, որ եղիցի տեղի ուխտի հաւատացելոց՝ առ 'ի գտանել յորոյ բարեխօսութենէ երկնային զօրաց զամենայն պէտս հոգւոյ և մարմնոյ:

Օրմէ այսպէս գրէ սոզոմենոս 'ի յառաջորդ դարու. (Գիրք. Բ. Գլ. Գ.) Տեսլեամբք աստ հաստատեաց մեծ զեկեղեցիս շինեալս 'ի կոս-

րէաս առաքելոյ ։

Պրեն և յայսմաւուրք, թէ յորժամ զառաջինն պատարագ մատչէր առ կոստանդիանոսիւ՛ ի տաճարի անդ՝ ընդ միքայէլի սոսթենիոն կամ սոսթենէս կոչեցելոյ, և հայրապետն վերացուցանէր զՔր. խորհուրդն, պատանեակ մի՝ ի ծնէ խուլ և համր յառաջեաց քան զսարկաւագն, և ասէ բարձր ձայնիւ. պռօսխումէն. և ապա ասէ ընդ հայրապետն. 'ի սրբութի՛ն ընդ ։ Շինեաց կոստանդիանոս և այլ եկեղեցի 'ի թագաւորեալ քաղաքի յանուն ընդ հրեշտակապետացն գաբրիելի և միքայելի ։

Այլ վասն պրօսխումէի յաւելու բասիլեան յայսմաւուրքն յունաց ('ի նոյեմբ. 8.) թէ յորժամ բանսարկուն սամոյէլ ապստամբեաց յԱյ՝ անկաւ իբրև զփայլակն, միքայէլ զօրավար երկնից ասաց ցհրեշտակս. Պռօսէխօմէն, [illegible], [illegible]. որ թէ՝ որ երեքսրբեան օրհնութիւն, նոյնպէս և պրօսխումէն՝ խորհրդաբար 'ի հրեշտակաց իցէ մուծեալ 'ի սովորութի՛ն եկեղեցւոյ ։ Պատմեալ միաբան գրեն յայսմաւուրք հայոց՝ աստանօր, և յունայն 'ի 6. սեպտեմբերի, թէ 'ի քաղաքն խոնաս կամ խոնէ՝ որ յառաջն կողոսսա կոչիւր, բնակէր այր ոմն երկիւղած յԱյ՝ արքիպպոս անուն, մօտ 'ի ջուրս բղխեալս սքանչելեօք զօրավարին երկնից. և 'ի ձեռն նշանաց եղելոց անդ դարձուցանէր և մկրտէր զբազումս. իսկ հեթանոսք բարկացեալ ընդ այն՝ դարձուցին անդր զերկուս

կուս գետոյ՝ ողողել և անհետ առնել ըզ-
լուսաղբիւրն զայն հանդերձ եկեղեցեաւն.
այլ 'ի դիմել արքիպպոսի յօգնականութիւն
նշխն միքայէլի, իսկոյն երևեցաւ նմա հրեշ-
տակապետն գաւազան 'ի ձեռին, և բախել
զվէմն՝ ընկլոյզ 'ի տեղւոջ զգետսն որ հա-
լեալ և մաշեալ. յորմէ և տեղւոյն կոչեցաւ
յայնմ հետէ խօնէ, որ թէ հալոց կմ բովք:
Աւանդին և այլ բազմապատիկ նշանք՝ զորս
արար ած 'ի պահպանութիւն քրիստոնէից 'ի
դարս դարս յերեսաց արշաւանաց այլազ-
գեաց, բարեխօսութբ և նիզակակցութբ
երկնաւոր զօրաց, և միքայէլի երկնից զօ-
րավարի. յայտնի են և օրինակք նոր գրոց՝ 'ի
պատմութ հռոմայ, եզեկիայ արքայի, մա-
կաբայեցւոց, և դանիէլի:

Աւանդեն և արևմտեայք, թէ 'ի վախճան
հինգերորդ դարու հռչակեալ եղև իբրև ուխ-
տատեղի հաւատացելոց քարանձաւն լերին
գարգանայ յապուլիա գաւառի իտալիոյ՝ վն
երևելոյ անդ նորին միքայէլի հրեշտակապե-
տի. և յառաւելուլ օր քան զօր նշանաց և
սքանչելեաց՝ կարգեցաւ ամ ամէ տօնա-
խմբութի 'ի տեղւոջ անդ 'ի պատիւ նորին
միքայէլի, և տարածեցաւ յամ արևմուտս:
Թող զի ասի, թէ 'ի հռոմմ քաղաքին կար-
գեալ էր տօն՝ վն երևելոյ անդանօր երբեմն
միքայէլի հրեշտակապետի բազմութբ երկ-
նաւոր զօրաց. և չեն ինչ զարմանք, զի և ո-
մանց ոմանց, որ և աշակերտին եղիսէի՝ բա-
ցան երբեմն աչք հոգւոյն, և տեսին նաև

# ՃԱՌ ՅՈՐԴՈՐԱԿԱՆ

## ՚ի պատիւ ամ̃ց Հրեշտակաց ։

Որդիք մարդկան՝ հողածնեալք , եղկելիք և թարմատարք , ( այսպէս ինձ թելադրեն որդիք այ̃ ՚նք Հրեշտակք՝ մուտ տանել ճառիս ՚ի զարթուցանել զձեզ ) . Որդիք մարդկան ասեմ , վայրաբնակիչք ստորին գաւառիս , երկրապիշք՝ գետնամածեալք՝ Ցածերք , ամբարձէք զաչս ՚ի բարձունս՝ յե̃ն վերին , ՚ի հրաշակերտս հայել այ̃՝ ոչ ՚ի վերնաքաղաքն եդեմ , ՚ի ժողովս անդրանկաց՝ ՚ի հոգեղէն պարս պալատականս վերին արքունեաց . և տեսանիցէք հրաշատեսիլ զարդս երկնից իմանալիս անզուգական և անհամեմատ փառաւորեացս ՚ք զզգալի դիրս տասնեղաց և զարդուց երկնից ։

Եթէ երևելի արեգակն՝ յոր զօր ամ̃ ակնարկէք , անօթ սքանչելի բարձրելոյն ձեզ ճանաչի , լուսացնցուղ , ակնապարար և գեղեցիկ , և լուսին աստեղօք համադերձ՝ գեղազուարճ տեսարան անյագելի , զի՞նչ աներևոյթ զարութք իցեն երկնից՝ իմանալիք անիմանալիք ։ Որ երկինք ՚ի հին երկինս այսօր ձեզ յանդիման լինին ՚ի տեսիս ։ Որ արեգակունք ճառագայթեալք յազգերէն լուսոյ՝ որպէս վառեալք յորդեալք յանապատ աղբերակնէ , լուսաճաճանչ հուրք լուսեղինաց՝ հրեղինաց՝

զուարթնոց հոգեղինաց լուսերամից ։ Լուսինք լրացելք յանդիմանակացք էակացն արփւոյն ․ լուսացեալք առ 'ի նմանէ , և լուսատուք ձեզ ընթալունեայց ․ ողիք զուարթունք զուարթացելք հոգւոյն այ , և մխիթարք տառապելոց հոգւոց ձերոց ։ Պատեգք անմոլարք 'ի հաստատութե երրորդ երկնից՝ դասաւորելք յիննեակ կամուրս իմանալիս ․ բևեռեալք 'ի սէրն այ անշարժութբ , և միաբան միշտաշարժք յաւաջին շարժողէն յամի 'ի բարին ․ ջահք միշտապայծառք՝ լուսով ուճացեալք ածականնաւ՝ անշիջելափառ և անաղօտափայլ վառմամբ 'ի տաճարին այ ։

Տեսէք տեսէք , զոր ակն մարդոյ ոչ եւտես , զգեղապար ակմբահոյլ դասակարգութեց հրեշտակաց զանպատում վայելչութի , յոր մնայ ձեզ երբեմն խառնիլ պարակցութբ ը̃ անսուտ խոստման ։ Կէսք 'ի թագազարդ պսակաւորաց՝ յոգւոց անստի երջանկաց՝ 'ի սպաս կան պաշտաման երկնաւոր արքային՝ շուրջ զաթոռով բնակելոյն 'ի լոյս անմատոյց ․ կէսք 'ի ծիրանափայլ լուսազգեցից՝ բարապանք վերին առագաստի անհպելի արքայարանին ․ այլք բազմաչեայ դէտք և ոստիկանք քաղաքին այ՝ միշտապատրաստք յականարկուն կամաց արարչին ․ այլք վեցթևեան արագաթև սուրհանդակք՝ սլացեալք որպէս զարծուիս 'ի լսել ձայնի պատգամաց բարձրելոյն ։ Ոմանք զօրավարք և զօրագլուխք երկնաւոր զօրաց անբաւութե՝ ճակատեալք ը̃ մէջ երկնի և երկրի՝ ը̃դէմ անմարմնին բանա

նակաց խաւարի՝ ապստամբեաց սանդարամետականաց. ոմանք իշխանք և դատաւորք՝ ատենակալք արդարութե՛, զարժանն հատուցանել բարեգործաց և չարագործաց՝ որպս պաշտօնեայք արդար դատաւորութեն Այ՝ աստ և ՚ի հանդերձելումն, այժմ և յաւուրն ահեղի ։ Իսկ առհասարակ աթոռնք և զօրութիւնք՝ հզօրք զօրութբ՝ ժիրք և գործօնեայք ակնարկութե երեքսրբեան միԱծութե. որով երկինք և երկնից երկինք վայելեն յանայլայլակ պարզութե երկնաւոր խաղաղութե, և երկիրս խնամարկի բազմօրինակ տնտեսութբ ՚ի յարափոփոխ շրջանս անցաւորութե, մինչև լինիցի փոխել յանփոփոխ վիճակ յաւիտենից ։

Դարձեալ այլք ՚ի դասուց դասուց հոգեղինաց՝ անդադար փառաբանիչք Այ՝ հոգեղէն ըղձաձայնութբ և անհատական բարբառով, և այլք նուագածուք իմանալիք ըստ բազմայեղանակ հոգևոր հնչմանց. և այլք առհասարակ ձայնակիցք և պարակիցք միաբանութե ձայնից արուեստականաց և երգոց երաժշտականաց՝ անլռելի օրհնաբանութբ. զոր ունկն մարդոյ ոչ լուաւ ։

Այլք խորհրդածուք խորոցն Այ, և յայտնիչք գաղտնեաց սքանչելեացն՝ առ խորհրդական և խնդակատար պաշտօնակիցս, լուսաւորեալք և լուսաւորիչք. ենք լուսատուք որոց Տր կարգի՝ վերուստ ՚ի վայր մինչև ցվերջինս ՚ի հրեշտակս՝ ուսուցիչս և դաստիարակիչս մարդկան. ուստի խուզ՝ զի իջանէ ՚ի գլուխն և ՚ի մօ-

զուարթնոց հոգեղինաց լուսերամից ։ Լու-
սինք լրացեալք յանդիմանակացք էական ար-
փւոյն ․ լուսացեալք առ 'ի Նմանէ, և լու-
սատուք ձեզ ենթալուսնեայց ․ ազիք զուար-
թունք զուարթացեալք հոգւոյն ա̃յ, և մխի-
թարք տառապեալ հոգւոց ձերոց ։ Աստեղք
անմոլարք 'ի հաստատութե̃ երրորդ երկնից՝
դասաւորեալք յիմնեակ կամարս իմանալիս ․
բևեռեալք 'ի սէրն ա̃յ անշարժութբ, և միա-
բան մշտաշարժք յառաջին շարժողէն յա̃մի
'ի բարին ․ Ջահք մշտապայծառք՝ լուսով ու-
ճացեալք ա̃ծակիսնաւ՝ անշիջելափառ և ա-
նաղօտափայլ վառմամբ 'ի տաճարին ա̃յ ։
Տեսէք տեսէք, զոր ակն մարդոյ ոչ ետես,
զգեղապար ակմբահոյլ դասակարգութե̃ց
հրեշտակաց զանպատում վայելչութի, յոր
մ̃նայ ձեզ երբեմն խառնիլ պարակցութբ ը̃ս
անսուտ խոստման ։ Կեսք 'ի թագազարդ
պսակաւորայ՝ յոգւոց անտի երջանկաց՝ 'ի
սպաս կան պաշտաման երկնաւոր արքային՝
շուրջ զաթոռով բնակելոյն 'ի լոյս անմա-
տոյց ․ կեսք 'ի ծիրանափայլ լուսազգեցից՝
բարապանք վերին առագաստի անհպելի ար-
քայարանին ․ այլք բազմաչեայ դէտք և ռա-
տիկանք քաղաքին ա̃յ՝ մշտապատրաստք յան-
նարկուն կամաց արարչին ․ այլք վեցթևեան
արագաթև սուրհանդակք՝ սլացեալք որ̃պ
զարծուիս 'ի լսել ձայնի պատգամաց բար-
ձրելոյն ։ Ամենք զօրավարք և զօրագլուխք
երկնաւոր զօրաց անբաւութե̃՝ ճակատեալք
ը̃ն մէջ երկնի և երկրի՝ ը̃դէմ անմարմնոյն բա-

նա

նակաց խաւարի՝ ապստամբեաց սանդարամետականաց ․ ոմանք իշխանք և դատաւորք՝ ատենակալք արդարութե, զարժանն հատուցանել բարեգործաց և չարագործաց՝ որպս պաշտօնեայք արդար դատաւորութեն այ՝ աստ և 'ի հանդերձելումն, այժմ և յաւուրն ահեղի ։ Աւ առհասարակ արթունք և զըւարթունք՝ հզօրք զօրութբ՝ ժիրք և գործօնեայք ակնարկութե երեքսրբեան միածութե ․ որով երկինք և երկնից երկինք վայելեն յանպայրայրակ պարզութե երկնաւոր խաղաղութե, և երկիրս խնամարկի բազմօրինակ տնտեսութբ 'ի յարափոփոխ շրջանս անցաւորութե, մինչև լինիցի փոխիլ յանփոփոխ վիճակ յաւիտենից ։

Դարձեալ այլք 'ի դասուց դասուց հոգեղինաց՝ անդադար փառաբանիչք այ՝ հոգեղէն ըղձաձայնութբ և անհատական բարբառով, և այլք նուէրագործուք իմանալիք ըստ բազմայեղանակ հոգևոր հնչմանց ․ և այլք առհասարակ ձայնակիցք և պարակիցք միաբանութե ձայնից արուեստականաց և երգոց երաժշտականաց՝ անլռելի օրհնաբանութբ ․ զոր ունկն մարդոյ ոչ լուաւ ։

Այլք խորհրդածուք խորոցն այ, և յայտնիչք գաղտնեաց սքանչելեացն՝ առ խորհրդական և խնդակատար պաշտօնակիցս, լուսաւորեալք և լուսաւորիչք ․ ենք լուսատուք որոց ձր կարգի՝ վերուստ 'ի վայր մինչև ցվերջինս 'ի հրեշտակս՝ ուսուցիչս և դաստիարակիչս մարդկան ․ ոչ իւղ՝ զի իջանէ 'ի գլուխն և 'ի մօ-

բուսն աՀարոնի , և 'ի մօրուացն մինչև 'ի զգրապանս զգեստու նորա ։ Ունող զիւրաքանչիւր դասուց սեպՀական զգիտութիս անճառելիս և զխորՀուրդս թաքնութեան , ըստ իւրաքանչիւր ստորիճանի իմանալի բարձրութեան և աստուածամերձ կայանից , և ըստ չափու դէմ յանդիման տեսութեան երրեակ լուսոյն անչափութեան ։ յորում ամենայն գանձ իմաստութեան և գիտութեան ծածկեալ կայ , անքաւելի և անսպառ , անսաՀմանելի և անբովանդակելի ։ և Հաղորդի միոյ միոյ ըստ պայմանի ընդունելութեան և շնորՀաց և փառաց ։ և ամենայն քաղցրութիւն և վայելք զմայլման բղխէ առ ամենեսին 'ի խորոց անտի անսաՀման ծովու երանութեան ։ որ 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ ։

Նաև ըստ այսմ գերաՀրաշ դասակարգութեան Հրեշտակ քան զՀրեշտակ առաւել է փառօք ։ ուստի և փոքր 'ի շատէ մեզ ծանուցեալ այն անուանք իններակ դասուց քաՀանայապետութեան երկնից , որ սրբազնապետութեան կոչմունք կարգի նոցունց ։ յորում է իմանալ ազգի ազգի ձիրս մեծամեծս մի քան զմի 'ի վեր քան զտեսութիւն Հողեղինաց ։ Ոի թէպէտև խորՀուրդք անուանցն առեալ 'ի աշխարՀէ և յաշակերտէն նորին 'ի դիոնեսիոսէ արիսպագացւոյ` պէսպէս այլաբանեն 'ի սոցա միջոցաց , այլ աթոռք` Հանգիստ անախտ բնութեան , սերովբէք` սէրարփիք Հրացայտք , քերովբէք բազմաչեայք , և որ այլ են պետականն և իշխանականն և տէրականն յորջորջմունք երկնայնոյն զինուորութեանց , յորս զօրութիւնք` Հասա

սարակաց և մասնաւոր դասուց են անուա-
նակոչութիւնք, որպէս և Հրեշտակապետք՝ ա-
ռանձնաւորաց, միանգամայն և գլխաւո-
րաց, և Հրեշտակք՝ ստ̃ վերջին դասու, նոյն-
պէս և համօրէն հոգեղինաց՝ սեպհականեալք,
այլ խոկութի պատուոյ նոցա և աշխատանաց՝
անըմբռնելի մեզ բնաւորին յատուկս. որք զեր-
կրաւորս ևեթ խորհիմք, և ըստ երկրաւոր
կարգի զերկնայինս իմաստասիրեմք, և զան-
նիւթականն նիւթեղէն ձևով զմտաւ ածեմք,
այլ և ո̃ իմիք երևութացան 'ի կերպարանս
կերպարանս նշանակաւ հոգեղէն ներգոր-
ծութեն խորհրդոց. մինչև հասցուք 'ի կայանս
երկնից 'ի դասակցութի ոգւոցն երջանկաց՝
երից և բիւրից երանելեաց մի ք̃ զմի գե-
րազանց փառաց ձօնեցելոց. և յայնժամ ի-
մանալ մարթասցուք զցանկալի ցանկալի մե-
ծութիւն նց̃ զանսպառականս և զգերբնաւորա-
կանս ։

Իսկ 'ի ժամուս զի՞նչ. ոչ այնչափ պէտք են
մեզ ձկտիլ հասու լինել կատարելութե բնութե
և շնորհաց և փառաց նց̃, որչափ զկանել վայ-
ելել 'ի հոգեղէն և 'ի հոգեգործ իմաստակ-
կութիւն նց̃ 'ի մ̃ծ երկրաւորացս, զորս փա-
թամն հնարիւ ձգել յերկրէ յերկինս, քան-
զոր դարանեն չար Հրեշտակք՝ դևքն ասեմ
ձգել զմեզ 'ի խորս երկրի ։ Ո ի թէ փոյթ
չարացն յառաջագայի 'ի չար նախանձուն ա-
ռաւելուլն է՝ ա̃ծատեաց և մարդատեաց մտաց,
բարի Հրեշտակացս փոյթ յառաջ եկեալ 'ի
բարի նախանձաւորութե փառացն նց̃ և փր-
կու-

կուն մարդկան՝ ննջասէր և մարդասէր մտօք, դեր 'ի վերոյ գտանի և զօրագոյն յոյժ յոյժ . մանաւանդ զի բարիքն յա̃յ սահմանեցան 'ի սոյն պաշտօն հարկաւորութե̃ մն ժառանգաւորացս փրկութե, իսկ չարքն յանձանց մեքենայեցին զչար սպասահարկութի 'ի գայթակղութի մեզ . բարիքն զա̃ծ ունին գործակից, իսկ չարքն յանդիմանին միշտ յա̃յ, և կշտամբին եւս ստէպ 'ի բարի հրեշտակաց . ըն̃, սաստեսցէ 'ի քեզ տր : Մեզ մնայ միայն ընտրել զմեր բարին, և կամակից լինել բարւոյն, և ոչ չարին : Այս արդարև ապշութե̃ է արժանի, եթէ զիա՞րդ լինիցի մեզ՝ որպ̃ և է իսկ սովորական խակամտութի մեր, անսալ չար հրեշտակաց՝ որք խնդրեն զմեր կորուստ մշտնջենաւոր, և անսաստ լինել բարեաց՝ որք խնդրեն զփրկութի մեր յաւիտենից . բա՛բէ յետին խոտորնակութեա . աւա՜ղ անչափ անմտութեա, և դժնդակ ապերախտութեանս :

Բայց արդ՝ ո՛ն եկա՛յք աւուրս շնորհի՛, բարեխօսութք ամեն սր̃ց հրեշտակաց ա̃ծախըմբ բեւրոց յեկեղեցի ա̃յ, զգաստացուք ո՛վ մանկունք սիոնի՝ յայսմ օրէ և առ յապայ . և մի՛ լինիցուք տղայք մտօք, այլ 'ի չարեաց տղայացուք . որպ̃ և յա̃մ ժամ աղդեն մեզ ներքուստ 'ի ներքս հոգեսէր այն հոգիք զառաքինութիւնս, խոտորել 'ի չարէ, և առնել զբարի . զգօն լինել և իմաստնանալ ը̃ն ա̃յ, և գնալ զճանապարհս ա̃յ ը̃ն գեղեցիկ առաջնորդութե̃ նորեանց՝ անստերիւր և անսայթաք :

Հայ

Հապա տեսցէ իւրաքանչիւր ոք՚ի մէնջ յայսմ հետէ հլու ընծայել զանձն առաջի հրեշտակացս այ, եւ առաւել պահպանողական հրեշտակին իւրոյ գործակցութ խնամակալուի ։ զի որ առ նմա անհնազանդութի լինի՝ ած ըդդէմ ապստամբութի ճանաչի ։ ոչ որ զպատգամաւորն արհամարհէ զթագաւորին, զթգրն գլխովին թշնամանէ ։ մինչ զի գեղեցիկ արդարացեալ է եւ տրունեանն առած՝ ոչ յառաջնորդս, նոյնպէս եւ՚ի տր հրեշտակս մեր ։ այն՝ թէ, որ ձեզ լսէ՝ ինձ լսէ ։ եւ որ զձեզ անարգէ, զիս անարգէ ։

Յիշեսցուք անմոռաց զբարեացապարտ եւ ըզբազմերախտ հոգաբարձուս հոգւոց եւ մարմնոց մերոց՝ զհոգեղէն իշխանս փառաւորս՝ համօրէն լրութբ բանակի նց, եւ առանձինն յականէ յանուանէ՝ զորս ճանաչեմք՚ի գրոց ։ եւ առաւել իւրաքանչիւր ոք զիւրոյ հրեշտակի յուշ կալցի զյիշատակ անմոռաց, որով արդարեւ լինի եւ նմա հրեշտականալ ։

Հայեցեալ՚ի լրումն անթիւ բազմութե զօրաց երկնաւորաց՝ վառեսցուք հոգւով նմանող լինել հրեշտակային քաղաքավարութե նց յերկինս՝ յարաժամ առաջի այ կալով, եւ նախանձաւոր լիցուք շնորհաց նց եւ ածամերձ ընտանութե, հայելատիպ ջինջ եւ անարատ սրբութե նց, աննիրհելի աչօք եւ զուարթուն մտօք անդադար փառաբանութե նց, ոչ եւ անդիմադարձ եւ յօժարափոյթ հնազանդութե նց առ ակնարկութի կամաց արարչին ։ յոր միտ իմա՛ ինձ զատեալն՚ի տէրունական աղօթս՝

զոր

զոր միշտ երկրպագեմք . եղիցին կամք քո՝ որպ յերկինս, և յերկրի :

Հայցեցէ՛ք 'ի գաբրիէլեանցն աւետաբեր սովորութե՝ ուշ կալջուք եւս դնել 'ի մտի 'ի հօվտէս տրտմութե, պատրաստ լինելով զոր ամ երթալ ընդ հրաւիրանաց նոցա զուարթնոցն 'ի կոչումն երկնաւոր Թագաւորին նոցա և մեր : Այլ արդ. ապա եթէ այս փոյթ պատրաստութե իցէ զմեօք զորհանապազ, հրեշտակականաւք փառաւք և յերկրի նախ քան զլուծեալն 'ի յերկինս . ուր է ըստ տիրական աւետեաց իբրև զհրեշտակս լինել տիրապէս :

Հայցեցաւ 'ի միքայէլեանցն արիական զինուորութե և յաղթութենի շահատակութ՝ մրրտայաղթ և անպարտելի աջով հզօրին, զգեցցուք նոր զօրութե և զգի նոր՝ ամենայնիւ սպառազինութբ հաւատոյ՝ յուսոյ և սիրոյ, որով զամ նետս մուխս չարին շիջուցանեմք . զի ած ըն մեզ է . ըն մեզ է և զօրավարն երկնից, շուրջ են զմեօք և բանակք երկնաւոր զօրաց, զօրացուցիչք մեր յամ վիշտս վտանգի, առանձնեհեր միջամուխ լինել յամ կիրս մահու և մահու խաչի : Զայս օրինակ՝ վա մեր մարդացեալն ած մարդկօրէն ձեւացուցեալ և զանձնէ զբանն՝ ասէր 'ի ժամ նահատակութե իւրոյ . միթէ՞ ոչ կարեմ աղաչել զհայր իմ, և հասուցանիցէ ինձ այժմ այսր աւելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց . որպ և մարդկապէս յանձն առնոյր՝ զի եկեսցէ հրեշտակն 'ի զօրացուցանել զնա 'ի տագնապի արեանցն քրտանց 'ի պարտիզի . զի մեզ ուսուցէ, թէ

մէ

ոչ երբէք պակասին մեզ նիզակակցութիւնք երկնային զօրաց , միայն թէ մեք մի պակասեսցուք միտադիւրութեամբ կալ յաղօթս , և աղաչել զՀայրն երկնաւոր՝ զի ընդ մեզ իցեն միշտ հրեշտակք նորա ։

Յայտնեցաւ 'ի ռափայէլեանցն հաւատարիմ ուղեկցութիւն՝ աներկիւղ և անկասկած ընթացուք ընթացս առաքինիս մինչև 'ի կէտ նպատակի կոչման մերոյ 'ի վերինն եդեմ ։ զի թէ զտոբիա այնչափ գորովանօք յանձանձեաց ռափայէլ ընդ ամենայն ճանապարհն , մինչև ոչ միայն խաղաղութեամբ հասուցանել 'ի գէմ եղեալ տեղին , ընուլ զամենայն պակասութիւն սպասաւորութեան նորա , ազատել զնա 'ի յարձակմանէ վիշապ ձկանն , և դարձուցանել ողջանդամ 'ի տուն հօր իւրոյ , այլև զկին նորա զսարա բուժել յայսոյն պղծոյ , և զհայր նորա զտոբիթ լուսաւորել , զի՞նչ ոչ առնիցէ որոց ուղևորիմք ընդ դժուարագնացն ճանապարհ յերկրէ յերկինս , և ունիմք իսկ պէտս կարևորս հանապազորդեան ազատութեան 'ի պէս պէս փորձանաց և 'ի փորձութեանց , և 'ի ձեռաց դիւաց և 'ի կորուսթէ հոգւոյ ։

Յայտնեցաւ և 'ի պահապան հրեշտակաց մերոց 'ի հոգատարութիւն՝ հոգ յանձին կալցուք զմի , լինել առեմ նոցա սան հաւատարիմ և հնազանդ ։ և եթէ այս լինիցի , ոչ միայ այնուհետև մեզ այլ ինչ հոգս ։ զի այնպիսի ունիմք դաստիարակս և վերակացուս՝ որ հոգան վասն մեր զամենայն պէտս հոգւոյ և մարմնոյ ըստ գեղեցիկ տեսչութեան և անտեսութեան վերնա-

խնա

խնամողին այ : Եւ ոչ այսչափ միայն , այլև կարեկցեալ մերումս տկարութե և աղքատութե , որոց առաջի եմք ոպ մանուկ տխմար , բարեխօսեն առաջի այ՝ դէմ ընդ դէմ չարախօսին մերոյ . բարեխօսեն տալ մեզ թողութի մեղաց , և առատութի շնորհաց և ողորմութե . բարեխօսեն գովելով զհպատակութի և զբարելաւութի սանից իւրեանց՝ առաւելուլ 'ի նս զաճումն շնորհաց և փառաց . և միշտ ուսուցանեն զսանս իւրեանց՝ աղօթել հրեշտակօրէն , կեալ հրեշտակօրէն , և անցանել 'ի դասս հրեշտակաց :

Արդ մի՛ մնասցի այսչափ վաստակ նոցա վն մեր . տացուք նց պարգեւս լինել վն մեր առաջի տն , և ցնծալ ընդ փրկութի մեր . և արդարև եթէ յայս փոյթ ճգնեսցուք , նք եւս բարեխօսութբ իւրեանց տացեն մեզ պարգեւս հանդիպիլ ատենին այ , և դասակարգեալ ընդ անմարմնական բազմութե երկնաւորաց՝ փառաւորել 'ի մի ձայն անպատում ուրախութե հոգեղէն սրբասացութբ զերեքսրբեան մի ածութի հօր և որդւոյ և հոգւոյն սբյ յաւիտեանս յաւիտենից . ամէն :



ԿԱՐԳ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Մելիտոսի անտիոքայ հայրապետին ։

Հ. Ճառընտ. և Ճաշոց հին. Նոյեմբ. 12, եւ 11. և Նոր Ժամ գիրք. 13 ։ Յ. Եռ. օգոստ. 23 ։ Լ. և Յ. Ժմ. գիրք. 12. եւ 14 ։ Ճառընտ. Լ. Ճա. Ճառ նախադասեալն ։ և Ճ. Կ. ամ. 'ի զենոնեայ. և եւ Ճ. Կ. ամբ. և Օ. յՅէ = Նէ. յաւելեբերանէ ։ Բօղլանդ յովհաննեսն 'ի Է հատ. գիրք. եղ. 585 = 602 ։ Սուրբ. տոհմ. Բենեդիկտ. Լէ ։ (1)



ՄԵԾԱՊԱՅԾԱՌ ՋԱՀ եկեղեցւոյ՝ լուսաւոր վկայութք, անշիջանելի յերեսաց հողմոց հակառակաց, իմն 'ի հալածանաց թշնամեաց և ընտանեաց հաւատոյ, ըսքանչելին 'ի հարս՝ նր հայրապետն Մելիտոս՝ որ և Մելետիոս (այս է մեղրաւէտ), եր հայրենեօք 'ի Մելտինոյ փոքուն Հայոց, և ըստ պալատիոսի՝ նաև ազգաւ հայ, ծաղկեալ առաքինի վարուք և իմաստութք, և հռչակեալ յոյժ 'ի մէջ ուղղափառաց և այլափառաց՝ յաւուրս կոստանդեայ արքայի որդւոյ կոստանդիանոսի. և այս այնչափ, մինչ զի առ կենդանութք իւր նր բազում գովութք

գրուեա

տին ։ Յայնմ ժամանակի կոստանդ արքայ
էր յանտիոք քաղաքի՝ եկեալ անդր 'ի պատ-
ճառս պատերազմաց պարսից ․ և յետ առնե-
լոյ է՛ն նա ու ժամանակ մի հաշտութիւն խաղա-
ղութեան՝ ձախողակի խորհրդով կամէր և խա-
ղաղութիւն արկանել 'ի մէջ եկեղեցւոյ , ոպ
թէ միաբանել կամելով զարիանոսս է՛ ուղ-
ղափառս , և զուղղափառս է՛ արիանոսս ։
Նմին իրի ժողովեալ անդր զբազմութիւն ե-
պիսկոպոսաց՝ ստիպէր զնա բառնալ 'ի միջոյ
զկարծեցեալ պատճառս երկպառակութեան
զդէմընդդէմ ձայնս համագոյ , և այլագոյ ․ յո-
րոց զառաջինն պինդ ունէին ուղղափառք ,
և զերկրորդն չարափառք ։ Իսկ ժողովեալքն
առաջի արկին արքային՝ նախ ընտրել հովիւ
զոք աթոռոյն անտիոքայ , և ապա համդերձ
նովաւ մտել 'ի խնդիր հաւատոյ ։ Իսկ 'ի յա-
ռաջ մատուցանել յերկոցունց կողմանց ուղ-
ղափառաց և այլափառաց զայլ և այլ անձինս՝
չմիաբանեցին և ոչ 'ի վ՛ր միոյ ուրուք 'ի նշէ ։
Յայնժամ ակակիոս եպս կեսարեայ պաղես-
տինոյ՝ աշակերտ եւսեբի կեսարացւոյ , այր
լի խորամանկութե՛մբ՝ զակատել զհետ արիա-
նոսաց , միանգամայն և հետամուտ հաճոյ
լինելոյ ուղղափառաց , խրատ ետ թագաւո-
րին ընտրել զմեծանունն մելիտոս եպս սե-
բաստիոյ ։ 'Ի նոյն խորհուրդ միաբանեցան
և այլք յեպսաց արիանոսաց՝ ակն ունելով
որսալ զնա 'ի կողմն իւրեանց ։ Մտադիւր ըն-
կալան զընտրութի՛ն նր՛ և եպսունք ուղղափա-
ռաց , յորս երեւելի էր սբն եւսեբիոս եպս

սամոսատիոյ. վ՞ս զի քաջ իրագէտք էին ողջա-
միտ վճ̃պուէ երանելւոյն մելիտոսի, և ա̃ձա-
մերձ առաքինութեցն նր̃ :

Այս միաբան հաւանութբ̃ և հաստատուն դաշամբ երկոցունց կողմանց գրեցաւ նամակ ընտրուէ մելիտոսի. և յեւակար նամակին տուեալ 'ի ձեռս նորին եւսեբի սամոսատացւոյ եպ̃սի՝ իբրև հաւատարիմ աւանդապահի. և առաքեցան հրաւիրակք 'ի թ̃գրէն բերել պատուով և արքունի երիվարօք զմելիտոս 'ի բերիոյ կ՞մ 'ի սեբաստիոյ, ուր և գտանիցեն զնա :

Իսկ զի հնչեալ էր համբաւ նրբյն 'ի լուր ամենեցուն, եւ̃ մերձենալ նր̃ յանտիոք՝ եւ̃ առաջ ելին նմա ա̃մ քահանայք և պաշտօնեայք եկեղեցւոյ՝ եթէ յուղղափառաց և եթէ յարիանոսաց, հանդերձ բազմութբ̃ քաղաքացւոց՝ ոչ միայն քրիստոնէից, այլև հրէից և հեթանոսաց, կարօտեալք տեսոյ մեծահռչակ առն ա̃յ : Իսկ այնպէս բերեալ նստուցին զմելիտոս յաթոռ հայրապետութե անտիոքացւոց՝ յամի տ̃ն 360։

Իսկ անդէն վաղվաղակի ժողով եպ̃սացն միաբանեալ խնդրոց հաւատոյ՝ ոյք վ՞ս գումարեալ էին, նախ զառաջինն մնայրն լսել 'ի մելիտոսէ՝ զինչ ինչ խօսիցի : Իսկ երանելին հայրապետն իբրև իմաստուն բժիշկ և առաքելանման քարոզ կենաց՝ յառաջնում անդ ատենախօսութե իւրում առ եկեղեցականս և առ ժողովրդականս պառակտեալս և հերձեալս՝ ոչինչ բան 'ի մէջ արկ զխնդրոց հաւատոյ.

այլ

այլ առ ժամայն բուռն հարեալ զուղղոյն և զբարեկարգութիւն վարուց՝ սկսաւ ազդու բանիւք վառել բորբոքել զունկնդիրս 'ի փոյթ առաքինութեան բարձմամբ մոլեկան ախտից հոգւոյ , և առաւելապէս յորդորել յա̃ծսիրութն և յեղբայրսիրութն , որովք ևեթ լինի և պահի խաղաղութին եկեղեցւոյ ։ Նա և ապա ոտն առ ոտն յառաջ մատուցեալ՝ զուղղափառ հաւատոյ զճշմարտութին յայտնաբարբառ քարոզէր ։ Նախ զայլագոյութին արիոսեանց անհետ առնէր՝ առանց նշանակելոյ զանուանս ն̃ց ։ և զնմանագոյութին որդւոյ ը̃ հօր՝ զոր կիսարիոսեանք ը̃ունէին , և եւնոմեանք ուրանային , անժխտելի ցուցանէր ։ և առ նմին զհամագոյութին տիրաբանէր ը̃ նիկիական դաւանութեան՝ հաստատելով , թէ բանն ոչ է արարած , այլ՝ ծնունդ հօր ճշմարիտ , ա̃ծ յա̃յ ։ ը̃ որ ականկորեն միայն դասք այլափառաց ։

Նա եւ 'ի միում նուագի հրաման ետ արքայ , զի յարուցեալ ոմանք յե̃պսաց՝ ո̃պ և զխորհ գիտենն՝ խօսեսցին յատենի եկեղեցւոյն զմ̃բութին հաւատոյ , թարգմանելով զմիտս խորհրդոց բանին առակաց ։ տ̃ր ստացաւ զիս ( զոր այլք ընթեռնուին , տ̃ր ստեղծ զիս , զի միով տառիւ է զանազանութի 'ի յոյն բարբառ ) 'ի սկիզբն ճանապարհաց իւրոց 'ի գործս իւր ։ և կարգեաց նոտարս՝ գրել զասացեալսն 'ի նոցանէ ։ Յառաջ մատեաւ նախ անամօթաբար գէորգ եպս լաւոդիկեցւոց ։ և չարաչար մտօք կամակորեալ զգիրս՝

ղարխոսին ժայթքենաց մոլորութեհ 'ի լսելիս
ամենեցուն ։

Յետ նր ակակիոս կեսարացի պատ 'ի պատ քանիւք մեկնաբանեաց ․ զի թէպէտեւ ոչ մեծացաւ 'ի հայհոյութեն հերետիկոսական , բայց և ոչ զուղղափառականն ճառեաց ճշմարտութի ։ Յայնժամ ապա յարուցեալ մեծն մելիտոս՝ իմաստութե կարգաւորութեամբ սկիզբն արար ուսուցանել զօրինաւոր կանոնս ա̃ծաբանելոյ յաղագս ա̃ծութե և տնօրէնութե բանին ա̃յ ․ և զողջամիտ վճռութի կաթողիկէ եկեղեցւոյ ը̃ն մարգարէական և առաքելական քարոզութե հաստահիմն բանիւք եդ առաջի , ոչ յաջ և ոչ յահեակ խոտորելով յարքունական պողոտայէ ճշմարտութե ։

Յայնմ վայրի սկսաւ ժողովուրդն առ հասարակ յայտնաբարբառ գովել զառ 'ի նմանէ ասացեալսն , և աղաչել զնա՝ զի հակիրճ բանիւք բովանդակեսցէ զիմաստ ճշմարտութեն առ 'ի հեշտեաւ պահելոյ նց 'ի միտ զա̃ծուտոյց վճռութի նր ։ Իսկ որ զչարեալ սարկաւագապետի եկեղեցւոյն անտիոքացւոց՝ մատեաւ առ հայրապետն , և ձեռամբ իւրով խնոյր զա̃ծաբան բերանն նր՝ դադարել 'ի խօսելոյ զայնպիսիս , զորս ոչ ախորժէին բազմութիւք եպսաց՝ որք էին յարիանոսաց , և ոչ թագաւորն ինքնին գլխովին՝ որ 'ի նց կողմն հակամիտեալ ։

Իսկ երանելին մելիտոս ձգեալ զձեռն իւր առ ժողովեալսն՝ փոխանակ բերանոյ ձեռամբ յայտնի ևս ուսուցանէր ժողովրդեան զխնդրե-

ընելին. Նախ զերիս մատունս արտաքս ձգեալ ցուցանէր. և ապա զերկուսն ամփոփեալ զմի և եթ եցոյց. զորոյ զյայտնի զխտաւորութիւն իմացեալ սարկաւագին՝ եթող զբերանն նորա, և զձեռն կամեցաւ արգելուլ ։ Յայնժամ նորին մելիտոս արձակ լեզուաւ 'ի վերայ եած զխորհուրդ մատանցն ցուցելոց՝ երրեակ և մի. երեք են ասէ՝ զորս իմանամք, այլ իբրև զմիոյ խօսիմք. յայտ արարեալ՝ եթէ մի է բնութի համագոյական որ երրորդութն ։

Ի եղեն ուրախութի դասք ուղղափառաց, և օրհնէին զած 'ի մէջ տաճարին ձայնիւ ցընծութե, և մեծամեծս գովէին զնա հայրապետն իւրեանց ։ Իսկ արիանոսք զամօթի հարեալ առհասարակ՝ գլխակոր ելին յեկեղեցւոյ հանգերձ Թֆրաւն. զի խաբեցան 'ի յուսոյ իւրեանց, և ըմբռնեցան 'ի խորագիտութե իւրեանց ։ Իսկ այնուհետև խորհուրդ 'ի մէջ առնուլին՝ փութով 'ի վայր ընկենուլ յաթոռոյ զմելիտոս. զի ոչ որպէս կարծէաք ասեն՝ ելք իրացն վճարեցան ։

Իսկ նախ արքունի հրամանաւ հանին զմելիտոս յեկեղեցւոյ՝ մի և վճպել ժողովրդեան. յետոյ կոչեցին զնա և յորդորէին՝ զի զհակառակն ասացելոց իւրոց խօսեսցի առ ժողովուրդն, և ցուցցէ զանձն զղջացեալ ի առաջին բանս իւր ։ Իսկ քաջ նահատակն և առաքինի քարոզն ճշմարտութե անդրդուելի կայր 'ի նիկիականն խոստովանութե, և ոչ դադարէր 'ի զնոյն քարոզելոյ, և 'ի յանդիմանելոյ զխոտորեալսն ։

Սոյն միաբանեալ արիմանոսաց՝ չարախօս եղեն առ թագաւորն զմելիտոսէ, թէ նա զսաբէլին խորհի խառնակութիւն դիմաց՝ միացուցանելով զերիս անձինս. և այսպիսի պատճառանօք եւ հրաման յարքայէ ընկենուլ զնա յաթոռոյ յետ երեսուն և եթ աւուրց հայրապետութեան. և այնպէս գիշերային հանեն զերանելին յանտիոքայ, և աքսորեցին 'ի հայրենիս իւր 'ի մելտինէ քաղաք. և նստաւ 'ի տեղի նր անարժանն եւզոյոս՝ որ մի էր 'ի գլխաւոր արքանեկաց արիոսի: Բայց եկեղեցին անտիոքացւոց՝ որ ամսօրեայ ժամանակ մի վայելեաց 'ի վիճակութեան սրբոյն մելետոսի, եկաց մնաց այնուհետև հաստատուն 'ի նիկիական հաւատս. և այս եղև մի 'ի մեծամեծ և 'ի պանծալի գործոց երանելւոյն մելիտոսի՝ ասէ նոյն եպիփան:

Զհետ այսորիկ գուն գործէին արիանոսք տանել 'ի ձեռաց նորին եւսեբի սամոստացւոյ զնշանակն ընտրութեան նորին մելիտոսի, և պատառել. այլ ոչ կարացին, քանզի երանելին եւսեբիոս խոյս ետ յերեսաց նոցա 'ի սամոստիա: Այլ թէպէտ արիոսեանք հաւանեցուցին զթագաւորն՝ արձակել սուրհանդակ զկնի, զի առցէ 'ի նմանէ զթուղթն. բայց եւսեբիոս արար պատասխանի առ արքունի սուրհանդակն, թէ ոչ կարեմ տալ ումեք զայն գիր, եթէ ոչ իցեն 'ի միում վայրի նոքա ամենեքին՝ որք ետուն ինձ զայն թուղթ հասարակաց դաշանց:

Զայն լուեալ թագաւորին՝ բարկացաւ, և անդ-

րէն

րէն յղեաց զսուրհանդակն հանդերձ հրո-
վարտակաւ, յորում սպառնայր հատանել
զաջն նր, եթէ ոչ տայցէ զգիրն ։ Բայց երա-
նելին եւստաթիոս ոչինչ զանգիտեալ՝ ձգեաց
զերկոսին ձեռս իւր միանգամայն, և ասէ
ցսուրհանդակն. ա՛ղէ ո՛չ միայն զաջ իմ, այլև
զձախն հատցես. զի ո՛չ տամ ես զգիր վճռոյն,
որ է յաւերժական կշտամբիչ ամպարշտութե
արիանոսաց ։ Իբրև եհաս բանն առ Թգ՛րն,
զարմացաւ և գովեաց զեւստաթիոս. և դադա-
րեաց ՚ի խնդրելոյ զգիրն ։

Այլ յետ այսչափ յայտնի ապացուցի ան-
մեղութե և ողջմտութե երանելոյն մելիտոսի՝
հասին ՚ի վ՛ր ն՛ր հալածանք յայլափառաց և
յուղղափառաց միանգամայն ։ Ոի սուր կէսք
յուղղափառաց անտիոքացւոց հաստատեալք
նովաւ ՚ի նիկիական հաւատս՝ զն՛ր կողմն ու-
նէին, և ոչ հաղորդէին ը՛ն եւզոյի արիոսեան
եպ՛ի, այլ երթային յեկեղեցին՝ որ ՚ի Թաղն
արտաքոյ քաղաքի՝ հին կոչեցեալ, կային և
այլ դասք ուղղափառաց ՚ի քաղաքի անդ՝ որք
եւստաթեանք կոչէին յանուն ն՛րին եւստա-
թեայ անտիոքացւոյ. արդ ս՛ք՝ ո՛պ խորշէին
յեւզոյոսէ, նոյնպէս և ոչ կամէին հաղոր-
դիլ նաև ը՛ն մելիտեան ուղղափառս, պատ-
ճառելով՝ թէ մելիտոս յարիանոսաց իցէ ձեռ-
նադրեալ, և մելիտեանք ՚ի նոցունց իսկ ա-
րիանոսաց իցեն մկրտեալ. և այնպէս յերկուս
բաժանեցան յանտիոք դասք ուղղափառաց ։
Արդ՝ զայնու ժամանակաւ յամի տ՛ն 361.
եղև մեռանիլ կոստանդեայ կայսեր՝ լի ստըր-

ջանօք ընդ օտարանալ իւր 'ի շաւղաց մծառէր հօրն իւրոյ կոստանդիանոսի. և տիրեաց համօրէն կայսերութեն աւրացօղն յուլիանոս. և եհան հրաման, զի ամ՟ ոք՝ որ իցէ աքսորեալ 'ի հրամանէ կոստանդեայ կայսեր, դարձցի 'ի տեղի իւր և յաթոռ իւր. յայնժամ դարձաւ և նքն մելիտոս յաթոռն անտիոքայ. այլ ոչ եգիտ խաղաղութի։

Օր մինչև հասեալ էր նքն յանտիոք, սաստկացեալ էր անդ երկպառակուի քաղաքացւոց 'ի պատճառս նորոյ եպսի եդելոյ պատճառանօք խաղաղութե։ Վասնզի երկուք ոմանք յարևմտեան առաջնորդաց, ոյք օծին եւսեբիոս եպս վերկեղայ իտալացւոց, և լուկիփեր կալարիտացի եպիսկոպոս սարդենիայ կղզւոյն, որք աքսորեալ էին 'ի կոստանդեայ արքայէ 'ի թեբայիդ եգիպտացւոց, 'ի դառնալն իւրեանց խորհուրդ արարին ընդ միմեանս՝ նախ ք՟ զերթալն յարևմուտս արկանել խաղաղութի 'ի մէջ արևելեան ուղղափառաց երկփեղկելոց յիրերաց 'ի զանազան տեղիս. Եւսեբիոս դէմ եդեալ գնաց յաղեքսանդրիա առ մեծն աթանաս խորհել ընդ նմ վն սոցին իրաց ժողովական քննութբ. իսկ լուկիփեր մեկնեալ 'ի նմանէ՝ եկն յանտիոք. և անձամբ անձին վճարել կամեցեալ զիրսն՝ սկսաւ զերկոսին կողմանս զեւստաթեանս և զմելիտեանս յորդորել 'ի մի միաբանութի սիրոյ. և տեսեալ՝ թէ եւստաթեանք պնդեալ կան 'ի բաժանման իւրեանց, անխորհրդաբար 'ի բանս նց եղեալ՝ ձեռնադրեաց զպօլի-

նոսն

ւորն նոցա զպաւլինոս երէց՝ եպս 'ի վրյ նոցա ի-
րև 'ի վրյ առանձին հօտի զատուցելոյ 'ի միւս
զանէ ուղղափառաց ․ որով հաստատեցաւ
յանտիոք կատարեալ հերձուած երկոցունց
դասուց ․ որ տեւեաց զամս ութսուն և հինգ՝
պէսպէս հակառակութբ ։ Այլ վսն այսր բանի
եւստաթեանքն կոչեցան այնուհետև պաւ-
լինեանք , ևս և լուկիփերեանք ․ որ էր ա-
նուն խիթալի ․ զի կարծիք եղեն զլուկիփե-
րոսէ յարուցիչ լինել և այլ մոլորական հերձ-
ուածոյ ․ թէպէտև տօնելի եղև յիւրում վի-
ճակի 'ի սարդենիա ։

Յետ եպսանալոյ պաւլինոսի եհաս յաղեք-
սանդրիոյ յանտիոք ոք եպսն եւսեբիոս վեր-
կեղացի ․ և տեսեալ զյետին պառակտումն
երկոցունց դասուց ուղղափառաց՝ թէպէտև
տրտմեցաւ յոյժ , և դժկամակ եղև ընդ ընտ-
րութն պաւլինոսի այնու օրինակաւ , բայց
զի ոչ թուեցաւ յանցաւոր ցուցանել զձեռ-
նադրօղն՝ լուռ եկաց , և զգուշացաւ հաղոր-
դիլ այսմ կամ այնմ կողման , զի մի բամբա-
սեսցի 'ի միւս կողմանէն ․ մինչև մարթասցի
զելս խաղաղութն տեսանել 'ի ձեռն ժողո-
վոյ եպսաց ։

Այլ մինչդեռ նա յանտիոք էր , եհաս անդր
սբն մելիտոս հարազատ հովիւ աթոռոյն ան-
տիոքացւոց՝ յամի տն 362 ․ յոր իսկ և իսկ յա-
րեցան՝ որք մնային նմա , որք են մելիտեանք ․
իսկ պաւլինեանք օտարանային 'ի նմանէ ։
Տեսեալ սբյն մելիտոսի զվարատումն հօտին
և զչարաչար բաժանումն յերկուս դասս , ոչ

գի-

գիտէր՝ թէ զի՞նչ գործեսցէ. քանի յինքն ձգել զհօտն բովանդակ՝ 'ի քաց վարելով զպաւլինոս, անմարթ էր. և թողուլ առանց հովուի զկէս ժողովրդեանն և յինքնին 'ի քաց գնալ՝ չար ևս. լա՛ւ համարեցաւ վարել զառաջնորդութի՟ իւր 'ի վ՟ր կիսոյն այնմ՝ որ արտաքոյ պարսպին, և թողուլ եւս պաւլինոսի առաջնորդել այլոց՝ որ 'ի մէջ պարսպին, ուր նստէր և եւզոյոս արիոսեանն:

Արդ այսու օրինակաւ եղեն ուղղափառաց յանտիոք երկու հօտք և երկու հովիւք. և թէպէտև հովիւքն էին անձինք երկիւղածք ա՟յ, բայց ժողովուրդքն ոչ մնային 'ի կար-գի երկիւղածութե՟. զի բաժանումն հօտի սկիզբն է ա՟մ անկարգութե՟ց. նմին իրի և ան-պակաս էին 'ի ն՟ս հեռ և նախանձ և չարա-խօսութի՟ զիրերաց. մինչ զի և երևելի երե-ւելի անձինք յեկեղեցականաց թեկնածուք այսմ կ՟մ այնմ կողման՝ ե՟ ակամբ հայէին 'ի վ՟ր միմեանց. յորում մասին մարդկային ինչ կրեաց և սքանչելի այրն ա՟յ հերոնիմոս դաղ-մատացի, որում եղև առնուլ ձեռնադրութի՟ 'ի պաւլինոսէ, և կծանել զմելիտոս և զմե-լիտեանս:

Իսկ եղև յետ կալոյ սմին մելիտոսի յաթոռ իւր յայս նուագ՝ ոչինչ աւելի քան զամսի մի, կ՟մ և՛ս նուազագոյն, եկն յանտիոք յու-լիանոս ուրացողն 'ի խաղալն 'ի վ՟ր պարսից. և զի 'ի նոյն աւուրս ապաւինեալ էր առ ս՟ն մելիտոս մանուկ ոմն որդի քրմի՝ խնդրելով զՔ՟ս մկրտութի՟, և մելիտոսի փախուցեալ էր զնա

զնա գաղտ առ նորին Կիւրեղ հայրապետ ե-
րուսաղէմի, իբրև զգացուցին զայս յուլիա-
նոսի՝ զայրացաւ յոյժ. և եդեալ 'ի վերայ սրբոյն
Մելիտոսի զայլ ևս բարբանս՝ ետ արտասահ-
մանս առնել զնա. և այնպէս երկրորդ ան-
գամ վտարանդի եղև քաջ հովիւն յաթոռոյ
իւրմէ։

Այլ յետ սակաւուց սատակի յուլիանոս 'ի
պարսս. և 'ի թագաւորել բարեպաշտին յովիանո-
սի փոխանակ նորա՝ յամի 363, դարձան հրա-
մանաւ նորա ամենայն աքսորեալքն 'ի յուլիանոսէ 'ի
տեղիս իւրեանց. ընդ որս և նորին Մելիտոս դար-
ձաւ պատուով յաթոռ իւր յանտիոք. ուր էր
յայնժամ և ինքնակալն յովիանոս. որ գի-
տակն էր սրբութեան և իմաստութեան Մելիտո-
սի, և պատուէր զնա իբրև զայր Աստուծոյ. որով
և ետ հրաման՝ առնել ժողով եպիսկոպոսաց 'ի քա-
ղաքի անդ, և հաստատել զուղղափառ հա-
ւատս ընդ Նիկիական դաւանութեան։ Յայնժամ
հարկեցան նաև եպիսկոպոսք արիանոսաց՝ յորս
գլխաւորն էր ակակիոս կեսարացի, միաձայ-
նել ընդ ուղղափառս, և ընդունել զձայնն նիկիոյ
համագոյակից. վասն զի երկիւղ 'ի թագաւո-
րէն կայր 'ի վերայ, և ակնածութիւն 'ի սրբոյն Մե-
լիտոսէ՝ որ սիրելին էր արքայի. վասնորոյ և ին-
քեանք ևս ձեռն եդին սահմանի ուղղափառ
հաւատոյ զկնի նորին Մելիտոսի և այլոց ուղ-
ղափառ եպիսկոպոսաց։

Յայնժամ յաւել թագաւորն շնորհել Մելիտոսի
իբրև հարազատ հայրապետի քաղաքին զմեծ
եկեղեցին անտիոքացւոց զշինեալն 'ի կոս-
տան-

տանդիանոսէ, և զկոչեցեալն մրտունիք տա-
կեղէն, ուր յառաջն բռնացեալ էին արիա-
նոսք. և յայնմհետէ առաւել համարձակ
վարէր մելիտոս զպաշտօն հովուութեան իւրոյ,
և քարոզէր զհաւատս ճշմարտութեան ընդդէմ
հեթանոսաց և հերձուածողաց։ Թո՛ղ և ըզ-
պաւլինոս՝ որ իբրև առանձին եպս նստէր ՚ի
քաղաքի անդ՝ ունելով զսեպհականեալ ժո-
ղովուրդ իւր. զոր թէպէտև կարօղ էր մելի-
տոս յինքն առարկանել ՚ի ձեռն կայսեր, այլ
ոչ կամեցաւ տրտմեցուցանել զպաւլինոս։
Յայնմ ժամանակի յանտիոք բազումք յերե-
ւելի արանց աշակերտեցան նրյն մելիտոսի. և
դաստիարակեցան պէսպէս օրինակաւ. յորոց
սակի ձեռնադրեցաւ ՚ի նմանէ ՚ի սարկաւա-
գութիւն բասիլիոս, որ յետոյ եղև եպս սելև-
կիացւոց, նոյն կարծեցեալ յոմանց վրիպա-
կաւ ընդ մեծին բարսղի կեսարացւոյ. զի եր-
կոքեան ևս մտերիմք էին նրյն մելիտոսի։
Այլ առաւել քան զամենեսին ձեռնասուն
աշակերտ եղև մելիտոսի բերանն ոսկի նրն
յովհան տիեզերալոյս վրդպն. որ և ՚ի նմին
իսկ ՚ի մելիտոսէ ընկալաւ զմկրտութիւն ՚ի չա-
փու հասակի. (ոպ և մայր նր անթուսա՝ ըստ
ոմանց)։ Եւ զի ոսկեբերան ընկղմեալ էր
յարտաքին դպրութիւն, սա ինքն երանելին
մելիտոս ձգեաց զնա յուսումն ածային իմաս-
տութեան. զոր թէ չէր արարեալ նր, ոսկեբե-
րանն հանդերձեալ էր յաջորդ լինել լիբա-
նիոսի իմաստասիրի ՚ի հելլենական դպրոցի.
և այնպէս զրկէր եկեղեցին յայնպիսի լու-

սաւ

նէ և յաշակերտէ նր 'ի տոհմէ Թէոսէ. այլ քանզի մետա-
փրաստես՝ ԺԸ Վեց կոչէ և զեգիպտացին, նմա կամե-
ցաւ ընծայել և զնշանագործութիս սուրբս : Այլ
մեք՝ որ 'ի ձեռագիր ճառընտիր գրատան սբյն մարկոսի
տեսաք զյունական բնագիր վկայաբանութեն մինասայ
եգիպտացւոյ՝ զորոյ զլատին թարգմանութին բերեմ առ-
բիւս, ոչ տեսաք տարընթեր զպատմութե պատկերացն,
զոր պատմէ սատանոր սուրբս 'ի նոյնմ. 11. մեք
համարիմք՝ թէ չփոթութբ այսր փոխագրեալ իցէ 'ի
պատմութէ միւս մինասայ. որզ ասասցուք անդանոր :
Միայն թէ այս չփոթութի երևի 'ի վաղուց մուտեալ,
մեք և գտանեմք 'ի փարատել. Ը որում երկոքին իսկ
սբքն եղեն երևելի և նշանագործ. քանզի տեսանեմ ինք-
նին 'ի գրատան սիրակուսայ քաղաքի սիկիլիացւոց զհին
պատկեր սբյն մինասայ (որպէս կարծիմ) եգիպտացւոյ.
յորոյ 'ի մի կողմն նկարեալ էին չարչարանք նորա, և 'ի
միւս կողմն հրաշագործութիւնք. որք թէև չիցեն նոյն
պատկերք՝ որք գրին և զմեծէն մինասայ (զի ոչ յիշեմ
որոշակի), սակայն մեծ ապացոյց են, թէ երկոքին
սբքն ծանուցեալ էին իբրև նշանագործ և երագահաս
վկայք. և մեք 'ի նոյն միտս ունիմք մնալ :

Այս չէ ինչ. այլ այն է զարմանալի, զի վարք մինա-
սայ եգիպտացւոյ՝ որ գտանի 'ի ճառընտիրն մեր Գ,
ունի զհատուած երևելի 'ի վարուց սբյն գորգիոսի հա-
բիւրապետի. իմն զայնչափ բանս՝ զորս տեսանես գրել
'ի մէնջ Ը Ա. ճառընտրի 'ի վկայաբանութե գորգիոսի.
համ. Ա. երես. 425. մինչև 'ի սկիզբն 429 երեսի : Որ
դիւրին էր մեզ ասել, թէ գրիչն մեր չփոթութբ իւիք
փոխանցեալ իցէ զայն բանս 'ի վարուց գորգիոսի 'ի
վարս մինասայ. բայց տեսանեմք՝ զի և մետափրաստես
զնոյն բանից քաղուած երկրորդէ առա 'ի վարս մինա-
սայ, դնելով և զայն վկայութ 'ի բերան սբյն՝ զոր մեծն
բարսեղ և ճառընտիրն Ա. պատմեն ասացեալ 'ի սբյն
գորգիոսէ. *յայտնի եղէ այնոցիկ՝ որ զինեն ոչ հար-
„ ցանեին, գտայ այնոցիկ՝ որ զիս ոչ խնդրեին ||, այլ
լովքն հանդերձ : Որպէս և այս չփոթութի 'ի վաղուց
է մտեալ 'ի վկայաբանութե մինասայ եգիպտացւոյ՝ վա
նմանութե ինչ գործոց նր Է գորգիոսի : Սմին իրի հարկ
եղև մեզ այնպէս ընթանալ 'ի կարգի վկայաբանութեա,
զի մի թողցուք հետս չփոթութե :

Աւ այս ընտրեցաք առնուլ ինչ ինչ 'ի ճառընտրէն և ինչ
ինչ 'ի մետափրաստեսէ, որք 'ի միոյ աղբերէ են առեալ,

այլ

# ՎԱՐՔ ԵՒ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

Սրբոյն մելքեայ կամ մեղեսի եպսի, որ և կոչի միւս Մելիտոս (1). և երկու աշակերտացն իւր՝ Աբուրայ քահանային, և Սինու սարկաւագին :

Հ. նոյ. 12 : Յ. յն. նոյ. 13 : Հռմ. 10 : Լ. ապր. 22 : Ճառընտ. Ա. ուլ = ուլէ : Ասորեաց տօնեմուտն, հատ. Բ. երես. 60 = 83 : Մենմեն տօնեմուտն. հատ. Բ. եր. 12 : Սուրմ. Է. 14 : Սարգ. կարգ. երես. 175. և 406. քաղ յայսմաւ. շրջոց. յաւուր. 25. և յեւր. 7 : (2)



ՐԹՈՒՆ ՀՈՎԻՒ ԵՒ առաքինի քարոզ ճշմարտութեան՝ ճգնազգեաց տէր հայրն մեղէս, որ և մելէ կամ մեղիտոս, էր յազգէն պարսից՝ ի ռաժիկ գաւառէ՝ ի ժամանակս որմզդի արքայի, և որդւոյ նորա շապհոյ երկայնակեցի (3), զինուորեալ յերիտասարդութենէ յարքունի դրան՝ ի կարգս պարսկական զօրաց՝ ըստ զգաստութեան, մանաւանդ թէ զարդարեալ ըստ առաքինութեան և բր վարուք. քանզի ունէր՝ ի ծածուկ զհաւատս քրիստոնէութեան, զոր յայտնի առնէր երկիւղածութեամբ և գործովք ածպաշտութե :

Նա

Այլ ապա հրաժարէր Ա̄ծային կոչմամբ 'ի զինուորութէ, և յա̄մ Ծաղբոս կենցաղոյս, և զմիանձնական վարս ողջունէր. յանապատս բնակէր պահօք և աղօթիւք, տքնութբ և արտասուօք, և գետնախշտի անկողնօք, աղաչելով զԱ̄ծ 'ի տուէ և 'ի գիշերի վ̄ս փրկութե անձին իւրոյ. Յետ այնորիկ լցեալ հոգւով ա̄յ՝ եղև 'ի սրտի ն̄ր ելանել և քարոզել անհաւատից զբանն ա̄յ. վ̄նյ եկն 'ի Մեղեպալիս կ̄մ Մելապօլիս, որ և Մեղիկերտ կ̄մ Մեզկանա քաղաք կոչի. այն է Վրգան ը̄ս Ճառընտրաց յԵլին պարսից; ուր դանիէլ մարգարէ զտեսիլն ետես. նմին իրի այլք ասեն, եանց 'ի քաղաքէն լապետայ յեղամ. յոր մերձ է ամուրն Շուշան կ̄մ Շօշ քաղաք պարսից յիշատակեալ 'ի գիրս դանիէլի. և անդ 'ի բնակչաց երկրին հարկաւորեալ՝ ձեռնադրեցաւ յեպ̄սկոպոսն լապետայ կ̄մ բիթղաբաղայ քաղաքի, 'ի նորին գաւառաբայ (որ յետոյ եղև խոստովանող և վկայ) յեպ̄սկոպոսութի քաղաքին բիթբաղակայ կ̄մ բիթրազակայ։(4)

Այլ իբրև գնաց անդ, և սկսաւ քարոզել զբանն ճշմարտութե, ոչ ընկալան զնա քաղաքացիքն այն. քանզի հրոյ և արեգականն սպաս.տանէին. և արարեալ ամս երիս՝ ոչինչ շահեցաւ ը̄ս տենչանաց սրտի իւրոյ՝ հանդերձ բազմապատիկ տառապանօք. մինչ զի բազում անգամ գանիւք խոշտանգեալ լինէր յանօրինաց, և ձգձգեալ ը̄ն փողոցս՝ կիսամահ արկեալ լինէր արտաքոյ քաղաքին. բայց երանելին անդրէն դառնայր; և քարոզէր՝

Է

է զի ումանց ոմանց առանձինն , և է զի հրա-
պարակաւ :

Բայց 'ի վերջնում նուագի 'ի հալածիլ իւ-րում անտի իսպառ՝ անէծ զքաղաքն զայն , ոչ վն հալածանաց անձին իւրոյ , այլ վն ոչ հաւանելոյ նց աւետարանական քարոզութե նր և հաւատոյն քրի . ասէ . արդ որովհետև թշուառականդ 'ի քաղաքս՝ յետին վատթա-րութբ անարգեցեր զառիթն բարեբախտութե քո , և զշնորհս կատարեալ երախտեաց իմյ առ քեզ , ահաւասիկ հուպ ընդ հուպ հասցէ քեզ թշուառաբար կորուստ անկարծելի յե-րեսաց անողորմ թշնամւոյ , և կործանումն բարձրաբերձ շինուածոց քոց , և ցրումն փա-խստեան ամբարհաւաճ բնակչացդ 'ի վայրս անդիտելիս : Այլ ահա յետ ամսոց երից բար-կացեալ թգրն պարսից 'ի վն քաղաքացեացն վն խորհրդոց ապստամբութե՝ առաքեաց զօրս երեք հարիւր փղովք , հրաման տուեալ այրել զքաղաք նց , և յատակել 'ի հիմանց . մինչև յայնմհետէ արօրադիր ես առնել ըզ-տեղին , և ցանել 'ի ներքս մանանեխ :

Իսկ երանելի եպսն մելէս գնաց յեդեմ . և անտի իջեալ յաղեքսանդրիա քաղաք՝ շրջե-ցաւ յեգիպտոս . և յայց ելեալ միայնակեցաց անապատին 'ի սկիւթ և 'ի թեբայիդ՝ ետես և զմեծն անտոնիոս զանապատականն , և զերևելին յաշակերտս նր զհայրն ամոն (5) : Այլ ոչինչ բարձեալ էր մելեսի ը ինքեան , բայց միայն աւետարան մի , և գաւազան . և հրամանաւ անտոնի երանելւոյ դարձաւ միւս-ան-

Դարձեալ ասէ ցնա Տէրն մարուգէ. երանի՜
է քեզ եղբայր իմ մեղէս, զի մերձեալ է ժա-
մանակ մարտիրոսութեան քո. քանզի նմանա-
պէս անաչառ քարոզութեան պօղոսի՝ որ պա-
կեցաւ 'ի ձեռաց ներոնի ամպարշտի, յան-
դիմանես զանօրէնս, և վկայես վ՛ն անուն քո,
և առնուս պսակ փառաց: Իսկ իբրև եկաց
առ մեզ աւուրս երկուս (ասէ վկայաբանն
Ձառընտրաց, որ է մի յեղբարց անտի վանաց
Տրբյն մարուգէի), ողջոյն տուեալ ծերոյն
առհասարակ ամ̃ եղբարցն՝ և գնաց. և յու-
ղարկեցաք զնա արտաքոյ վանացն. և ասէ
ցմեզ. աղօթս արարէք, զի արժանի արաս-
ցէ տր̃ տեսանել մեզ զմիմեանս առաջի ան̃ 'ի
հանդերձեալ կեանս անպատումս. քանզի
յայս կեանքս ոչ եմք հանդերձեալ տեսանել
այլ զմիմեանս: Իսկ իջեալ 'ի սելևկիա և 'ի
կտիսիփոն, որ է ոստան և տիեզերն մայրաքա-
ղաք թգ̃րութեան պարսից, գտանէ անդ զբազ-
մութի̃ եպ̃սաց ժողովեալ, զի վիճէին ընդ
եպ̃սապետին պապայ. և ծանեաւ Տրն մե-
ղէս, զի անիրաւութբ̃ և ամբարտաւանութբ̃
վիճէր եպ̃սապետն ը̃ եպ̃սունս իւր. և յան-
դիմանեաց զնա Տրն մեղէս գրովք և ա̃ծային
վկ̃այութբ̃ն: Իսկ ասէ անուանեալն եպ̃սապետն
ցմեղէս. ո՛վ յիմար զո՞ւ ուսուցանես զիս՝ զօր
գիտեմ: Իսկ երանելւոյն մեղիտոսի բացեալ
զաւետարանն՝ և ասէ. սա ուսուցանէ, և
ոչ ես: Իսկ եդեալ եպ̃սապետն այն զձեռն
'ի վ՛ր աւետարանին՝ ասէ հենգնելով. ասա՛
մեզ ո՛վ աւետարան, զինչ առնելոց եմ՝ ասա:

Յետ երանելւոյն Մեղէս իբրև ետես զհայհոյութիւն նր, համբուրեաց միւսանգամ զաւետարանն, և եդ ՚ի մախաղ իւր. և ասէ ցեպսն այն. որովհետև անարգեցէր զբանն տն քո, դատ արասցէ քեզ Ած ։ Յայնժամ եղև որոտումն մեծ, և եկն կայծակն հրացայտ փայլատակմամբ, և անկաւ ՚ի վր եպիսկոպոսին, և չորացաւ աջոյ կողմն նր ։ Իսկ վախճան նր ասի լինել ըստ ոմանց ՚ի նոյն տարւոջ. և ըստ այլոց՝ յերկարեալ յայն հարուած զամս երկոտասան ։

Իսկ Տրն Մեղէս շրջէր քարոզութբ աւուրս ինչ ՚ի տեղւոջն. և յանցանել իւրում ընդ մէջ քաղաքին՝ ոճ և ՃԸ գիւղս Ծին, բժմ հիւանդս աղօթիւք բժշկեաց. և բազումք յանհաւատիցն ՚ի ձեռն նր հաւատացին ՚ի քս, և եղեն քրիստոնեայք. և զոմն մի ատերդումն բորոտեցոյց առժամայն ։ Իսկ հասեալ ՚ի գետ մի անհուն՝ անհնարին խորութբ, և նշանագրեալ նշանաւ խաչին՝ անց ՚ի վր գետոյն խոնաւութե ջուրցն հողաթափօքն իբրև ՚ի վր ցամաքի ։ Զայս ամ ուղիղ համառօտեալս ՚ի ձառընտիր մերում՝ ձախագոյն գրեն հանդերձ այլ ևս սքանչելեօք Տրյն Մեղեսի վկայաբանք քաղդէացւոց և ասորւոց՝ առեալ ՚ի սբյն մարութայէ ։ (9)

Յետ ամի եկն եհաս Տրն Մեղէս ՚ի վիճակ իւր կամ յերկիր ծննդեան իւրոյ, և մտեալ ՚ի քաղաքն Մեղիկերտ՝ սկսաւ համարձակ քարոզել զբանն այ, և արգելոյր զմարդիկ երկիրպագանել արեգական, և զոհել հրոյ ։

Լուաւ վ՟ն ն՟ր իշխան քաղաքին և գաւառին այնորիկ՝ նախարար մեծ՝ միստոփարէս կամ որմիզդ գունդփրիզ անուն, զոր ոմանք Թագաւոր կոչեն. և բարկացեալ յոյժ՝ հրամայեաց կոչել զնա։ Եւ երթեալ սպասաւորաց՝ կալան զերանելին, և կապանօք ածին յատեան՝ պարաւանդեալ ձեռօք և ոտիւք։ Եւ էին ուսուրք որսոյ. և իշխանն հանդերձ եղբարբն՝ որ կոչի ներսան (10), ՚ի դաշտակողմանս լերին. անդ նստաւ դատել զնորին մեղս. և սպառնայր նմա, զի թէ ոչ յանձն առնուցու զդենն պարսից՝ ոչինչ ը հաս ՚ի գազանաց խողխողելոց ասէ լինիցիս։ Իսկ ն՟ն յանդիմանեաց զանմ՟տ մոլորութ՟ն ն՟ր, և քարոզեաց զք՟ս ա՟ծ։

Յայնժամ յարուցեալ իշխանն բարկութ՟բ մեծաւ՝ ինքնին իւրով սուսերաւն եհար ըզկուրծս ն՟րա եպսին. նոյնժամայն և ներսան եղբայր իշխանին եհար սուսերաւ զխրտ ն՟րայն։ Իսկ երանելին մեղէս գոհացաւ զա՟յ, զի արժանի եղև վկայութ՟ն կատարիլ. և ասէ ցիշխանսն բանիւ ա՟ծ. ՚ի վաղիւ՟ն յայսմ ժամու և դուք սատակելոց էք ՚ի ձեռաց միմեանց։ Եւ եղև ո՟պ ասաց երանելին. զի ՚ի վաղիւ՟ն անդր հեծեալք յերիվարս իւրեանց երկոքին իշխանքն գնային որսալ խնչ. և ահա այծեամն մի երևեցաւ առաջի ն՟ց. և ընթացեալ մին ը մի կողմ այծեմանն, և միւսն ը մի, և լարեալ զաղեղունս՝ ձգեն զնետս. և այծեմանն ոչինչ վնասեալ՝ հարկանեն զմիմեանս. և անկեալք յերիվարացն յերկիր՝ մեռան չարաչարս։

Եւ

Այսու կատարեցաւ առ նմա մարգարէութիւն սրբոյն Մեղեսի, որպէս և բան մարգարէին՝ որ ասէ . ասուրք նոցա մտցեն 'ի սիրտս իւրեանց, և աղեղունք նոցա փշրեսցին : Իսկ զնորին Մեղես բարձեալ թաղեցին աշակերտքն իւր մեծաւ պատուով . որ և ընկալաւ զանթառամ և զանապական պսակն՝ ընդ բանիւն մարուգէի, զոր յառաջ մարգարէացաւ : (11)

Բայց կալան կրակապաշտ պարսիկք զերկոսին աշակերտս սրբոյն, զքահանայն Բուրա կամ եբորիս, (զոր ասորիք աբրոսիմոս կոչեն). և զշինա կամ շենոյ սարկաւագն ( զոր յոյնք շեվրա ձայնեն ) . և քարկոծեցին իբրև զործակիցս նոյն Մեղեսի . և նոքօք բարի խոստովանութեամբ կատարեցան : Այլ երդին զնշխարս նոցա ընդ վկայիւն իւրեանց հաւատացեալք ոմանք 'ի քաղաքի անդ Մեղկանայ կամ յամուրն մաղկան . յորում բազում նշանք լինին ( աստ վկայարանն ), և ոչ ևս թշնամիք յարձակեսցին 'ի քաղաքն յայն և 'ի գաւառն :

Կատարեցաւ նա եպիսկոպոսն Մեղես յամսեանն նոյեմբերի ԺԲ կամ ԺԳ, 'ի մէջն չորրորդ դարու . զոր ոմանք դնեն յամի տն 330 . այլք 340, կամ 341, կամ 344 . և կամ 350 . (12) : Սա է՝ զոր միւսանգամ տօնեմք ընդ սրբոյն յակոբայ մծբընայ հայրապետի և մարուգէի Ծփնաւորի՝ ոմ աստ, նոյնպէս և անդ մելիտոս անուամբ . որ է հոլովականն ձայնիւս մելիտ՝ ընդ յունաց : Այլ յայս հայր արդեօք վերջաբանութիւն վկայաբանութեանս, 'ի ճառընտրի . որ ունի այսպէս . * Սա է՝ զոր յիշատակեն 'ի կատա-

յորժամ ասասցեն՝ թէ իւր ինչ ոչ յարմարին սրբոյն մա-
րութեան ; յայնժամ սուրբ գրաբանեն՝ թէ 'ի մարութեանցն
է առնել, և ոչ եթէ 'ի նմանէ գրել. յորոց մէջն կայ
մեծ խոտր:

Երկրորդ՝ թէև ասացուք մարութեան լինել. սակայն են
յետոյ լինի ժամանակաւ քան զվկայաբանն մեր՝ որ իբ-
րև ականատես խօսի և ականջալուր, և ոչ ըստ զմարտու-
թա՝ որ էր 'ի յաջորդ դարու, և հետևող վկայաբանին
մերոյ. թող և զոր այլուստ հաւաքեալ իցէ նր գրով և
անգիր. բայց անծանօթ է և 'ի կարևոր բանից՝ որ ընդ-
մէջ մտեալ և մարուգէն:

Երրորդ՝ խարգախէ այրն 'ի խոստանալ բերել զհին յի-
շատակագիրս. և հերքել զնոյն զառաջօգ բանս. զի զե
հին յիշատակագրութիւնն այն բերեալք 'ի նմանէ՝ են ա-
ռաւելապէս երկբային սէ. զի սողոմոնոս պատմիչ յոյն.
բասիլեան յայսմաւուրք յունաց, և ժամագիրք յունաց.
և այս ասասնեմք մեք՝ զի եւսեբիոս հետև յետնոյն
եւթ, որ չունի այնչափ հնութիւն կամ հեղինակութիւն. զի
զի համաձայն ասասնէ վկայաբանութեան իւրում. և հեր-
քէ առաւել զբանս սողոմոնոսի և բասիլեան յայսմա-
ւուրաց, որք որչափ են հին և վաւերական, նոյնչափ
և քաջ հետևողք ծառընտրին մերոյ. որպէս յայտ է որոց
բաղդատեսցեն. և մեք ևս նշանակեսցուք ինչ ինչ 'ի կար-
գիս: Հնար է առնել առ այժմ, թէ նաև մեծն աստեմանս
սիմոն առաւել ընտրէ զԹ. բա. քան զՅ. ժմ:

Չորրորդ՝ անսասանելի երևի մեզ ոճն երկայնաբան՝ հան-
գերձ մեկնաբանական ձևով յետին դարուց. զոր նշմա-
րեմք 'ի վկայաբանութեան եւսեբիոսի. մինչ զի չկարեմք
սիրապէս արժանի գրել սրբոյն մարութեան. այլ այլոց
ումեմն անանուն հեղինակի քաղդէացւոյ կամ ասորւոյ
(որք են գրեթէ համալեզու. թէպէտև գրով զանազա-
նին ըստ սեղւոյն), որ 'ի վր հիման մարութեան շինեալ
է զիւր ասերգաբանութիւնս. թէպէտև վայելչական:
Զայսոսիկ ոչ ասեմք 'ի սոսգանել զայն վկայաբանութ.
այլ մեղմել զչափազանց ուրախութիւն եւսեբիոսի. որ թե-
րևս ինքնին չափաւորէր, եթէ տեսանէր զև'ս ընտիր օ-
րինակն մեր: Այլ զի ասացուք ընթերցանելեաց զհա-
ռակ եւսեբեան վկայաբանութե, բաց յայլոց պիտանի բա-
նից՝ զորս ունիմք զկնի 'ի մէջ բերել. 'ի մէջ առցուք
զմասունս և զընթացս գործոյն՝ կարճելով զանհնարին եր-
կայնաբանութիւն:

Իմաստասիրաբանութեն հեղինակի նր ( մարութեայ կամ-
ծէ

ֆեցելայ) այս է. Չեմ բաւական ասէ գրել զգործս քաջ նահատակաց, որ 'ի վեր են քան զանկարութիս իմ և զանարժանութիս. այլ սէր նց և համբերութի և ամ առաքինութի սուրբն գրել Ը կարի խնդրեմ. միայն թէ խիթամ, զի մի նուաստացուցից զնոցան մեծութի. բայց լսօղք հայեսցին ոչ յիմս թերութի, այլ 'ի ճշմարտութին՝ յորմէ ոչ պակասիմ, և 'ի սքանչելի կատարումն վկայից՝ որք քնիւ զօրացեալ. որ Թագաւորն է մարտիրոսաց, զնր զչարչարանս յանձին կրեցին, և մեզ ետուն օրինակ ամ առաքինութեն. և զկնի այլոց ընդհանուր գովեստից՝ սկիզբն առնէ պատմութեն բանիւքս այսոքիւք:

* Իսկ օրինակ ընտրութե երանելոյն միղեսի եղև այսպէս:
,, Ծնեալ սբն Միղէս 'ի գաւառին ռամիկաց. յարբունս
,, հասեալ հասակի՝ եմուտ 'ի դուռն արքայի. մինչև
,, յազգմանէ շնորհացն այ՝ որ ոչն եթող զայս անօթ
,, ընտրութե կալ մնալ 'ի տղմի Ը գիրոս մարդկան, այլ
,, 'ի հրեշտակաց ոք կմ մի յերկնաքաղաքացեաց էանց 'ի
,, զինուորութի երկնաւոր արքային: Արդ սբ աւազա-
,, նաւ սրբեալ, թեւադրութբ և շնչմամբ հոգւոյն այ՝
,, զի ոչ մի ինչ շաղախումն ձգեսցէ 'ի մարմնոյ, և ամ-
,, բողջ և ողջախոհ զանձն պահեսցէ, և զմարմինն սաեղ
,, պահօք և աղօթութբ 'ի պաշտաման պինդ ունիցի, և
,, զհոգին երկնաւոր իմաստութբ արբցէ, ուսաւ՝ եթէ
,, պայծառ է ինքեան յարիւ նմին 'ի հետս շաւղացն քնի:
,, Արդ յորժամ Ը այս ընթացս կենաց բերեալ լինէր
,, երանելւոյն միղէս, առաքինութբն այ անկաւ 'ի սիրտ նր
,, և բացաւ ճանապարհ մեծամեծս գործելոյ. քանզի
,, վառեալ հոգւովն սբվ լինալէս, և զներքին հրդեհն՝
,, որ 'ի ծուծս ոսկերաց էր թափանցեալ՝ զատայն չկա-
,, բացեալ պարունակել յոգւոջ, համառօտեաց 'ի մաս
,, մեկնիլ 'ի տեղւոջէն՝ ուր հրահանգեալն էր, և զհետ
,, երթալ այ, որ կոչէր զնա 'ի հոգալ զփրկութի մերձա-
,, ւորաց.... Եւ ո՞ կարէ հաւատալ՝ թէ յայս գործ
,, քանի՞ աշխատութիս կրեաց, և քանի՞ զրպարտութիս
,, կլաւ: Ցայսմ վայրի՝ ուր և մեծապէս օգուտ լինել
,, ջինուէր եկեղեցւոյ, յանձն էառ աշխոյժանայաբար վե-
րանալ յեպսկոպոսական պատիւ. || . Ն.:

Ահա այս երկարաբանութի է, զոր գովեաց Եւագրիոս իբրև գեղեցիկ կարգաբանութի առաջին և միջին հատակի սբյն. զոր ճառընտիրն 'ի քանի մի տողս լաւ ևս բովանդակեաց Ը գրելոցս: Ըստ այսմ իմն և զբովանդակ ընթացս քաղդէացի վկայաբանութես, ոմ թէ լիցէ քաղ-

 դէա-

իշխան կոչեն, այլ միայն 'ի յայսմանուանս խոչ• զի որ 'ի Հ• գրի՝ միասնափարէս իշխան քաղաքին, որ լինէլ գնէ՝ Թագաւոր քաղաքին• ըստ Է Հ = Ց• իսկ Ց• բա• կոչէ՝ Թգրին կմ՝ արքային : Չիք՝ գլխաւոր տարբերութեան հարանց վարուց այն է, զի պատմէ՝ Թէ Ը պատահման գտաւ սրբոյն Մելէս աշակերտօք իւրովք 'ի տեղի որում երբեմն կենդանի ծածկեալ գիտովք . և այն 'ի մէջ ցանցից որսորդութեան• որ 'ի հայերէն Թարգմանութեան յետ յիշելոյ զուականին՝ եդեալ է * 'ի գամս յայն || • ուր պարտ է իմանալ արդեօք յունարէն բառն• և լա• բառսմս• այն է հետս, շաւիղ• և յայնժամ կարէ այլազգ մեկնել և յարմարել պատմութեան• բայց լատին Թարգմանն և զփոխին պարզապէս ցանց կմ՝ վարմ ասեն, որ ոչն միաբանի Է վկայաբանութեանս• ուր և ոչ նետաւահար սպանումն սրբոյն :

Որպէս և իցէ, սակայն իմանամք՝ Թէ բաց 'ի վկայաբանութենէ սրբոյն Մելեայ կայր և ուրոյն պատմութիւն նր երբեմն միաբանեցի 'ի կարգի վարուց հարանց սրբ̃ց• որում աղաչանոյց լեցի և միւս այլ գործ նորին սրբ̃յ, որ չիք 'ի վկայաբանութեանս, բայց գտանի 'ի հարանց վարս• Երէս• 406• և լա• 650• այսպէս : * Երթայր երբեմն հայրն
• Մելի (լա• Միլլիս) 'ի տեղի ուրեմն, և ետես զոմն
• կրօնաւոր, զոր կալեալ կապէին ոմանք վս̃ մարդասպա_
• նութեան• և եհարց՝ Թէ Ճշմարի՞տ իցէ ասացեալն•
• ըմբռնեալ և ծանեաւ՝ զի սուտ վկայէին• և ասէ ցու_
• նոզս նր• ուր իցէ սպանեալն այր• և նք ցուցին նմա
• զմեռեալն : Եւ իբրև մերձեցաւ 'ի նա, ասէ• յաղօթս
• կացէք և դուք• և նա համբարձեալ զձեռս առ ած•
• և առ ժամայն յարեաւ մեռեալն• և ասէ ցնա ծերն•
• ասա՛ 'ի լուր սոցա ամենեցուն, ով է՝ որ սպան զքեզ :
• Եւ նա ասէ• ես ինչս բաղում եդի 'ի պահեստ յեկե_
• ղեցին• և քահանայն՝ որ էառ զայն 'ի պահ, եսպան
• զիս, և ընկեց աստ 'ի սենեակ ծերոյս այսորիկ• այլ
• աղաչեմ, առէք զինչս իմ 'ի նմանէ, և տուք աղքա_
• տաց և որբոց իմոց : Ասէ ցնա ծերն• ննջեա՛ դար_
• ձեալ, մինչև եկեսցէ տր և յարուսցէ զքեզ• և եղև
• այնպէս՝ ուր ասացն• և ազատեցաւ եղբայրն 'ի մահ_
• ուանէ զրպարտութեան || : Եւ զայս ևս երկրորդէ յայս_
մաւուրք զփոտոց• ապր• 25 :

Այս սոմ լիցին օրինակ, Թէ առաւելութիւն և պակասութիւն անցից պատմութեան 'ի զանազան հեղինակս և 'ի մատեանս՝ ոչ սանանէ ստուգութեան վարուց սրբ̃ց• այլ միայն



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Յովհաննու Ոսկեբերան հայրապետի ։

Հ ։ սեպտ․ 13 ։ նոյ․ 13 ։ յուն․ 27 ․ եւ հոկտ․ 9 ․ եւ 30 ։ Յ․ յունր․ 27 ․ եւ նոյ․ 13 ։ Լ․ սեպտ․ 14 ․ եւ յուն․ 27 ։ Ննջէ ․ 'ի Կոմս եւր ։ Սոկրատ ռա- հեէ ․ 'ի դեսպես ծառաընտրերս ։ Սոզոմեն ։ Պալլադիոս ։ Գէորգ աղեքսանդրացի ։ Լեւոն կայսր իմաստասէր ։ Յովհ․ դամասկ ։ Մետափր ։ Անանուն հեղինակ ։ 'Ի յետին ժամանակս՝ Հերման․ Թիլլեմոն․ Մոնֆոքոն․ եւ Բոլլանդեանն յովհ․ ամբողջնկ․ 'ի Դ հատ․ սեպտ․ էջ․ 401 = 709 ։

Զ ՏԻՆ ՕՆՐԱԼՈՅՍ վարդապետիս համդերձեալք ձառել ուղիղ համառօտութի զսքանչելի եւ զգերաշխարհիկ քաղաքավարութի համդերձ յիշատակութե մեծամեծ գործոց եւ ոսկեբուղխ վարդապետութե նորա, ստիպիմք զդամասկացւոյն յովհաննու երկրորդել բարբառ 'ի սկիզբն նորուն ներբողենի ․ * Պարտ իսկ էր ո՛ Յովհաննէս համակ ոսկի, որոց 'ի քո գովեստից բերին առատացութի, լեզու ստանալ ոսկի ըստ բախտի, եւ բան յառաջ բերել ոսկեհոսան ։ Այլ 'ի վեր քան զայսոսիկ՝ քոյդ պիտէր ձայն առ-

ռա-

ռաջիկայ, որ միայն արդեօք զիւրուրոյն բա-
րեհամբաւութ՟ի օրինօք յօդէր ։

Իսկ արդ՝ եթէ առ գովեստ ոսկեբերանի՝ ոս-
կի բերան, մանաւանդ թէ ինքն բերանն ոս-
կի խնդրի, քանի՞ն և 'ի պատմել զկատա-
րեալ վարս նր՟ ճշմարտութ՟. յորմէ և յորում
է գովութի նր՟ ճշմարիտ ։ Իսկ թէպէտ յոլովք
'ի նախնեաց և յոլովագոյնք 'ի յետնոց ճշգրի՟
գրեցին զլիակատար վարս՝ զոր խնդրեմք,
բայց նոյն իսկ բազմաւորութ՟ի պատմաբանից
է՝ որ արկ զմեզ յե՟ս բազմագոյն աշխատութ՟ի,
եթէ 'ի զննել և 'ի բովանդակել զանբաւու-
թ՟ի բանից նց՟, և եթէ 'ի քննել զճշմարտա-
գոյնն 'ի նս՟ և ընտրել անաչառ ճշմարտասի-
րութ՟. և ահա զոր ինչ միանգամ մարթ
եղև մեզ զայսօրինակ ծաղկաքաղել յարձա-
կածաւալ բանից առաջնոց և վերջնոց, ունի
այսպէս ։

Սուրբս երանելի նբ՟ հայրապետն և վէճպն ե-
կեղեցւոյ Յովհան ոսկեբերան՝ էր անտիո-
քացի, ծնեալ 'ի մեծն անտիոք ասորւոց, որ
և կոչի անտիոքիա կելեսիւրիոյ՝ 'ի մէջն չոր-
րորդ դարու, այն է յամի տն՟ իբր 345, կամ
350, ըս՟ ոմանց՝ 355 կմ՟ 360 (2), յազնուական
ծնողաց. զի հայր նր՟ սեկունդոս անուն՝ ու-
նէր զպատիւ զօրավարութ՟ե կայսերական զօ-
րաց եգելոց յասորիս. և անուն մօր նր՟ ան-
թուսա՝ որ թարգմանի յունարէն ծաղիկ.
վ՟ոյ և բնիկ ազգ. նր՟ յոմանց հռոմ ասացաւ,
և յայլոց ասորի. էր և երեց քոյր մի յովհան-
նու. յիշի և հօրաքոյր նր՟ կուսան՝ սաբինիա-

նա անուն. որք համօրէն տամբ բարեպաշտ
ճանաչէին. բայց միայն անգիտելի, 'ի բնէ՞ ար-
դեօք քրիստոնեայ էին, եթէ զկնի եղեն: (3)
'Ի մանկութենէ յովհաննու մեռաւ հայր նորա,
և մնաց մայր նորա այրի մանկամարդ. այլ
պահէր զզաւակս իւր ա͞ծ պարկեշտ և առա-
քինի կարգօք. և ետ զյովհաննէս յուսումն
դպրոց և գիտութե. որ և ուսաւ սքանչելի
յառաջադիմութբ՝ ըստ գեղեցիկ բնատուր
ձրից, և ա͞ծ 'ի վերուստ տուչութե հոգւոյն
ա͞յ՝ զա͞մ գիտութի և զիմաստութի. մինչև
գերազանցել զա͞մ իմաստնովք ժամանակին,
որ 'ի հելլենացւոց և 'ի քրիստոնէից: Ի զ-
հռետորականն ուսաւ առ ոտս լիբանիոսի
սոփեստի, և զիմաստասիրութին առ ոտս ան-
դրագաթիայ փիլիսոփայի՝ ա͞ծ ա͞մ կարգաց ա-
թենացւոց. ուստի եղև ոմանց ասել՝ թէ
յաթէնս իցէ երթեալ և անդ ուսեալ, և
այլոց՝ թէ անդէն յանտիոք 'ի քաղաքի իւ-
րում, ուր ծաղկեալ էին յայնժամ դպրոցք
յունաց և ասորւոց՝ ոչինչ ը͞ն հաս յաղեքսան-
դրիոյ եգիպտացւոց:

Իսկ որ մեծն է՝ 'ի սակաւ ամս կատարեաց
զա͞մ արտաքնոց ուսմունս. մինչև ա͞ծ պալա-
ղխոսի յութսուստան ամաց հասակի 'ի բաց
կալ նմ այնուհետև 'ի սոփեստական բանոր-
սակաց, և փութալ պարապել վ͞ր պղութե ս͞բ
գրոց (4): Իսկ այս առաւել 'ի յորդորելոյ նորին
մելիտոսի անտիոքայ հայրապետի. որ եղև
ոչ հոգևոր հայր յովհաննու. ոչ ուսուցուք
'ի մօտոյ: Սորին վ͞ս լիբանիոս հեթանոս սո-
փեստ

փեսայէս աստի 'ի մեռանիլ իւրում հարցել
'ի բարեկամաց՝ թէ ո՞ լինիցի յաջորդ 'ի տե-
ղի իւր գասատու ճարտասանութե, եւ պա-
տասխանի . յովհաննէս, եթէ չկորզէին զնա
քրիստոնեայք ։ Այլ 'ի նոյն իսկ աւուրս ե-
լեց իւրոց 'ի դպրոցէ արտաքին ուսմանց՝ հան-
գուցացոյց յովհաննէս զներբողական ատենա-
խօսութի իւր հրաշալի յատենի ինքնակալաց
կամ մի͞ ինքնակալաց ժամանակին . մինչև
զարմացուցանել և զվ͞րդ իւր, ասէ նոյն իսի-
դորոս եկղս պեղուսիոյ ։ (5)

Այս էր յովհաննու սերտ բարեկամ ոգւով
չափ՝ ամ͞ գաւթի յոփսաթան՝ ուսումնակիցն
իւր բասիլիոս . զոր ոմանք է͞ սոկրատայ հա-
մարեցան լինել մեծն բարսեղ՝ որ եղև հայ-
րապետ կեսարու . բայց այլ կարծի սոսու-
գումէ, այն՝ որ եղև եպս սելևկիացւոց մօտ
յանտիոք ։ Այս զի բասիլիոս յետ աւարտման
ուսմանց եւ զանձն 'ի կրօնաւորութի, բանիւ
նի և օրինակաւ խարհէր և յովհաննէս կրօ-
նաւորիլ . թող զի ոչ կարէին բաժանիլ 'ի տե-
սութե իրերաց և ոչ դոյզն ժամանակ ։ Յաւե-
լու սոկրատ՝ թէ եւագրիոս իսկ պոնտացի ա-
շակերտ գրիգորի ս͞ծ աւաբանի՝ համարեալ էր
աշակերտակից յովհաննու . և սա յօրինակ
միայնակեցութե նր հայեցեալ՝ 'ի նոյն յօժա-
րէր ։ Բայց ոչ վաղվաղակի յարեցաւ յովհան-
նէս յայս խորհուրդ . մինչև արդեամբք 'ի
վ͞ր եհաս, թէ բազմագքոս միջակ դի խա-
փանարար է իւրումն իմաստասիրութե, առա-
ւել հոգևոր իմաստութե՝ յորոյ 'ի սէր և ս քան

զեւս վաւէր ը̅ ամձման հատուկին ։

Իր յայնմ ժամանակի ( առէ պաւլադիոս ) ե-կեղեցւոյն անտիոքացւոց առաջնորդ երանե-լին մելիտոս խոստովանող հայրապետ՝ ազ-գաւ հայ ․ որոյ 'ի միտ առեալ զյաջողակ ու-շիմութի յովհաննէս պատանւոյն , եւ հարեալ 'ի սէր գեղեցկութե հոգւոյ նր , հրամանաւ ետ նմա յետս կալ այնուհետեւ յարտաքին գրգ-ռութէ , եւ ստէպ երթեւեկել 'ի հայրապե-տարանոցն , մարգարէական լուծով նախատես եղեալ յառաջադիմութե նր ․ եւ զերիս ամս դաստիարակեալ զնա լրութե ամ հոգւոր հրահանգաց եւ վարդպետութե , մկրտեաց զնա յայնմ միջոցի ։ Իսկ զրակարդաց եւ վերծա-նող եկեղեցւոյն արար զնա կամ մելիտոս , եւ կամ յաւուրս աքսորանաց նր յերեսաց ա-րիանոսաց՝ զենոսն եղբս տիւրոսի 'ի դառնալ իւրում յեւնմ յանտիոք ․ Թերեւս այն՝ որ 'ի մեզ զենոք եղբս կոչի՝ մի 'ի գովաբանից սբյն մելիտոսի 'ի ժողովն կոստանդինուպոլսի ։

Այլ տակաւին վերծանողն յովհաննէս ոչ դադարէր յընտանի բարեկամութէ իւրմէ ընդ բասիլիոսի ․ որ ստէպ գայր առ նա , եւ խօ-սէր ը̅ նմա զհոգեւոր ճանապարհէն ․ միան-գամայն եւ յորդորէր 'ի մի վանս բնակակից լինել նմա , եւ միով ոգւով նկրտել 'ի մենակե-ցական վարս եւ յիմաստային իմաստութիւնս ։ Զնոյն ցանկայր առնել եւ յովհաննէս ․ բայց մայր նր (ը̅ պատմելոյ նորուն սակերբերանի) բզմ Թախանձանօք եւ զօրաւոր բանիւք խիղճ արկանէր նմա չԹողուլ զինքն յայրիութե իւ-

րում

րում անդորրի և անմոլութեանց. և այնպէս յեր-
կարէին խորհուրդքն 'ի գլուխ ելանել։
Բայց սակայն անդէն 'ի տան մօր իւրոյ կըր-
թէր զանձն 'ի մենաւորութիւն նման փութով ըստ
զմի 'ի միայնակեցաց. կայր լռութեամբ և հան-
դարտութեամբ, հանապազորդելով յաղօթս և 'ի
սուրբ ընթերցմունս, հանդերձ պահօք և արթ-
նութեամբ, գետնախշտի լինելով և հիւծելով
զփափկութիւն մարմնոյն. և մայրն սիրով թող-
ղոյր զնա կալ այնպէս, միայն թէ մի՛ բաժա-
նեսցի յիւրմէ. և ոչ ուրեք կամէր ելանել
յովհաննէս, բայց յեկեղեցի և 'ի հայրապետ-
տանոցն. ուր և խօսակցութիւն նորա և ընտանու-
թիւն չէր ընդ ումեք այլ՝ բաց 'ի բասիլիոսէ. և
եթէ հարկ լինէր խօսել ընդ այլում, զհոգևո-
րաց տաւել բանս 'ի մէջ առնոյր, և խափա-
նէր զնմանի խօսս։

'Ի սկզբան անդ ընդ ասուն կենաց՝ զերծաւ
յովհաննէս 'ի վտանգէ իմեմնէ, զոր ինքն
իսկ պատմէ այսպէս։ Մինչդեռ պատանին
էի՝ ասէ, եղև կասկած թռնաւորաց 'ի քա-
ղաքի մերում. որոց արձակեալ զզօրականս
ընդ ամենայն փողոցս՝ յուզէին զգիրս ինչ մոգութեանց և
գուշակութեանց (որ ընդդէմ կայսերաց). արդ՝ որ
գրեացն զգիրսն՝ ընկէց զայն 'ի գետ. և ինքն
ձերբակալ եղեալ՝ կապանօք ձգեցաւ ընդ քա-
ղաքն և պատուհասակոծ եղև։ Իսկ ես յելա-
նել իմում 'ի վկայարանն ընդ պարտէզս սա-
գետոյն՝ ունէի զոմն ինձ ընկեր. որոյ տեսեալ
զգիրսն յերեսս ջրոյն՝ էջ առնուլ զայն. այլ
ես 'ի ծաղր գայի՝ որպէս թէ չիցէ գիւտ, այլ
ինչ

խնչ մի չնչին. իսկ նա ասէ. Թո՛ղ անցցուք՝ զի՞նչ իցէ. և առեալ եսեր՝ զի մոգական բանք են. և ահա յանկարծ 'ի վ̃ր եհաս ոմն 'ի զօրականէն, որ չէր գիտակ իրացն. բայց ընկերն իմ և ես կալաք երկիւղ մեծ. զի ոչ 'ի բաց ընկենուլ կարող էաք յանդիմանս նորա, և 'ի պահելոյն վտանգ առաջի կայր յոյժ. այլ օգնականութեամբն ա̃յ 'ի բաց ընկե-
ցաք անվտանգ:

Նաև զայս պատմեցի՝ ասէ ոսկեբերանն 'ի ԼԸ. ճառ. գործ. առաք, զի եթէ ուսեք՝ թէև ոչ այս, այլ այսմ նման դիպեցցին իրք, յուշ լիցին նմա անցք մեր. քանզի և այսպիսի ըզ-գուշութիք բարեկամս առնեն զմեզ ա̃յ: Նաև ը̃ն այսմ ճշմարտակալ է՝ զոր գրեն և այլք. Է պալլադիոսի 'ի վարս հարանց, թէ յորժամ հե-ռէ մկրտեցաւ երանելին յովհան, ոչ երդ-ուաւ երբէք, և ոչ ուսեք եւս երդնուլ. ոչ ստեաց և ոչ անէծ զոք բնաւ. ոչ խեղկատակս ինչ խօսեցաւ և ոչ ծաղրաբանս: Այլ զի ազնուական էր բարուք և մեծանձն, որպա-բարոյից ոմանց թուէր յանդուգն կմ̃ անհամ բոյր կմ̃ զայրասիրտ. ուր նա զոգւոցն ջերմութի պինդ ունէր, և յա̃մ սրտէ անձին զգուշանայր՝ անբարկացող լինել, և յամի հեզ և խոնարհ վարս ցուցանել. բայց արհամարհեալ էր յաչս նր̃ Ծ̃ և Ծայինք ա̃մ. մինչև զա̃մ մեծութի և զփառս և զհեշտալիս իբրև երազ համարել. և զնոյն քարոզէր բանիւ և օրինակաւ:

Իսկ անչափութի յորդեռանդն բերման յավ-հաննու 'ի գիտութիւ ա̃ծեղէն գրոց՝ եւս նմա

յա

յաւուրս արտասահմանութե հոգևոր վ͞ճպին
իւրոյ ս͞բյն մելիտոսի՝ խնդրել զայլ վ͞ճպս·
որոց և աշակերտեցաւ իսկ առ ժամանակ մի·
յորոց մին կոչիւր կարտերիոս · այն՝ զորմէ
թուի խօսել մեծապէս գովութ͞բ ա͞ծաբանն
գրիգոր 'ի տաղս իւր , եթէ միտք ն͞ր 'ի բար-
ձունս երկնից վերանային , և մեծ էր փառք
նորա առ երկնաքաղաքացիս ։ Իսկ միւսն էր
դիոդորոս քահանայ անտիոքայ եկեղեցւոյն,
որ յետոյ եղև եպս տարսոնի , այր նրբամիտ
և ականաւոր 'ի ժամանակին · այլ 'ի գիրս
իւր երևեցաւ սերմանացան օտարոտի վար-
դապետութեց ։ Յայսպիսի վ͞ճպէ յովհաննէս
իբրև մեղու իմաստուն զընտիր ընտիր հոյզս
հոգևոր իմաստութե ևեթ քաղեաց · իսկ թէո
դորոս մոպսուեստացի , և յետ ն͞ր առաւե-
լապէս նեստոր՝ հաւաքեցին զժանտ թոյնս
մոլորութե ։

Ընդ ուսմունս ս͞բ գրոց մարզեցաւ յովհան-
նէս և 'ի վարժս կատարել միակեցական վա-
րուց · մինչ զի յետ թողլոյ իւրոյ բոլորովին
զա͞շ՝ ձգեաց 'ի կրօնաւորութի և զերկուս յա-
շակերտակցաց իւրոց , զթէոդորոս՝ որ յետոյ
եղև մոպսուեստոյ եպս 'ի կիլիկիա , և զմաք-
սիմոս՝ որ եղև սելևկիոյ եպս յիսաւրիա
(թերևս զկնի բասիլիոսի) ։ Յորոց թէոդո-
րոսն ոչ կարացեալ տանել զքաղցր լուծն
ք͞սի անարատ քաղաքավարութ͞բ՝ եթող զմիա-
կեցական վարս , և դարձաւ յա͞շ՝ մտանել 'ի
կարգ ամուսնութե · Զ͞բ որ կարեւէր խոցեալ
յովհաննու՝ գրեաց առ նա թուղթ զօրաւոր

յորժ

յոյժ և լի հոգւով միանգամ և երկիցս. յա-
րոյց շարժեալ Թէոդորոսի՝ դարձեալ եԹող
զինչս իւր և զխորհուրդ հարսանեաց, և եկն
եմուտ անդրէն 'ի կարգ միայնուԹե. (6)

Այլ յայնժամ յովհաննէս և մտերիմ հարա-
զատ հոգւոյ նորա բասիլիոս ստէպ խօսէին ի-
րերաց զշահ հոգւոյ, բասիլիոս միշտ զայն
աղաչէր՝ զի մի՛ արգելցի յովհաննէս 'ի տան,
այլ առանձնասցի ը̄ նմա 'ի մի վանս. Մինչ
այս մինչ այն՝ հնարս խորհեցաւ յովհաննէս
վս̄ ընտրուԹե բասիլիոսի յեպս̄ուԹն. զոր այս-
պէս պատմէ ոսկեբերանն ինքնին. Իբրև ասէ
համբաւ զերկոցունց զմէնջ, Թէ կամին եպս̄
զմեզ առնել. ընդ որ ոչ հաւատայի, զի ո՛չ
ի՛հիք արժանի զանձն իմ տեսանէի. բայց ան-
կաւ երկիւղ 'ի սիրտ իմ, զի մի՛ և յակամայս
յափշտակեցայց 'ի նոյն. Իսկ առաջինին այն
բասիլիոս եկն պատմեաց ինձ զայն լուր ա-
ռանձինն, ոչ Թէ չիցէ իմ լուեալ. և աղա-
չէր՝ զի 'ի սիրոյ և եԹ մի՛ բաժանեսցուք. և
խոստանայր գործակից ինձ լինել, եԹէ
փախչիլ կամիցիմք, և եԹէ միաբան յանձն
առնուլ զեպս̄ուԹի. Յայնժամ հայեցեալ իմ
'ի լաւուԹի հոգւոյ նորա և յիմս անարժանու-
Թի, եղի 'ի մտի 'ի նա և եԹ դարձուցանել
զայն պատիւ. այլ ծածկեալ 'ի նմանէ զայս
խորհուրդ՝ յորմէ ոչն ծածկէի երբէք զխոր-
հուրդս իմ, ասացի Թողուլ զայդ մտածուԹի
այլում ժամանակի, ուր յայժմուս ոչ ոք է՝
որ բռնադատէ զմեզ. և եԹէ հարկ լինիցի,
ոչինչ արարից առանց հարցանելոյ զքեզ.

Յայնմ

Յայնմ վայրի՝ այն, որ կամէրն զիս ձեռ-
նադրել, ոչ եգիտ. քանզի թաքեայ. և ըզ-
բասիլիոս կալան և ձեռնադրեցին յեպսուի:
Յետ այսորիկ տեղեկացեալ նր վասն բանի
փախստեան և թաքստեան իմոյ՝ եկն և ե-
գիտ զիս. այլ էին երեսք նր լի տխրութբ և
լալագին. և իմ գիտելով զպատճառն՝ սկսայ
ուրախութբ ծիծաղիլ, և բուռն հարեալ զա-
ջոյն՝ ջանացայ համբուրել. և գոհանայի
զայ՝ զի 'ի բարին յաջողեցին հնարք իմ. իսկ
նր տեսեալ զզուարթութի իմ, և հասու լեալ՝
եթէ խաբեցաւ յինէն, դժկամակ լինէր.
ևս առաւել՝ զի թէ յովհաննէս չխաբէր զնա,
նա ևս փախչէր. կմ յովհաննէս ևեթ ձեռ-
նադրեալ լինէր, զորմէ էր առաւել բանն,
և ինքն ազատ լինէր: Այլ յովհան շահեցաւ
զսիրտ նորա այնպէս, մինչև առաւել սիրով
կապիլ նմ քան զառաջինն. որ վս արժան է
ընթեռնուլ զոսկեբուղխ բանս յովհաննու
'ի գիրս տրամախօսութե ը բասիլիոսի. այն է
ոսկեղէն մատեանն յաղագս քահանայութե:
Արդ՝ եթէ սովին պատճառանօք թաքստեան,
և եթէ յաղագս վախճանելոյ մօրն զայնու
ժամանակաւ, առանձնացաւ այնուհետև
յովհաննէս յանապատն անտիոքայ 'ի մօտա-
կայ լերինս. ուր գտեալ զոմն խստակրօն ծեր
ասորի՝ իսիւքիոս անուն նր, հետևօղ եղև
կարգի խստամբերութե նր զամս չորս, պա-
տերազմեալ ընդդէմ մարմնոյ ընտանի թշնամ-
ւոյ. զոր և նկուն արարեալ ճգնութբ, և
առաւել ևս ածային իմաստասիրութբ, միայ-
նա-

նացաւ 'ի քարանձաւ մի՝ ղօղեալ 'ի տեսութե մարդկան. ուր եկաց զամս երկու. և մեծաւ մտաւամբ հատեալ զքուն՝ քաղէր 'ի բերան ըղ-կատակարանին քոյ, զի մի՛ տգիտութի աւրեսցէ: Նաև քանզի զայն երկեամ աւուրս՝ ոչ զտիւ և ոչ զգիշեր ընկողմանեցաւ (ասէ պալլադիոս), փոր նր միջոցս հանդերձ ոտք թէ մեաւ, և զօրութի ցանկութե բեկաւ խսպառ յերեւաց. ցրտութե: Նյլ թէ որպիսի անձառ պար-գևօք հոգւոյն և հոգևոր ուրախութք ան-ցոյց զժամանակն զայն միայնակեցութե, նշ միայն է գիտել՝ որոց պձաշակն առեալ իցէ այնպիսում հանդարտութե րս օրինակի նոցա հարցն եգիպտացւոց. յայտ է բազմօք և 'ի բանից անտի յովհաննու, ուր ասէրք յիշէ 'ի գիրս իւր զվարս միայնակեցաց երկրին ասոր-ւոց՝ լիաբերան և անյագ գովութբ րս գլխոց գլխոց ցանկալի կենաց նց:

Ընդ այն ժամանակս 'ի մեռանելն վաղեն-տինիանոսի կայսեր՝ յորժամ ինքնիշխանաբար սկսաւ վարել զթգրութին վաղէս արիանեան յամի տն 375, հրաման եհան անօրէն, զի զմ միայնակեացք ելցեն 'ի բնակութեց իւր-եանց, և գրեսցին 'ի զինուորութի. և եղև հալածումն մեծ, զի այրեցան 'ի քաղաքս և յանապատս բազում վանօրայք և խուցք մի-այնակեցաց. և ոչ սակաւք ընկալան զմահ 'ի սէր կրօնաւորութե: Օայն խոյս լուաւ յովհան, ոչ կարէր ասէ հանդարտել. և խոյս առեալ եցի՝ ասեմ յօդւոց հանելով. Նյս ան-ցոյց զայնոքիւք՝ որ զատաձայրն այրեցին. և

ոչք

ո՞յք եղեն՝ որ զայս առնէին, և է՞ր աղագաւ քարընկեց լինէին 'ի բարձունս և նետաձիգ յերկինս, և ա̃ծ ընդդէմ մարտնչէին · ո՞ւր թա-գաւորք պարսից անհաւատից թողացուցին զերոյդ սրով, զիա՞րդ թագաւորք քրիստո-նէից հրապարակաւ բառնան · և առնէր առ ա̃ծ արտասուօք · ա՛ռ զոգի իմ յինէն, զի մի՛ տեսից, և մի՛ լուա՛յց զայս չարիս :

Իսկ որ հաւրդ ես նմա ամն բարեկամ գրել գիրս մ̃ն ազգին իրաց, զի թերևս լիցի յօգուտ · ես առաքեցից առնէ զգիրս քո անձամբ, զի կան իմ ծանօթք 'ի մէջ հալածչաց · և զխոնեմ զի շա-հիմ զնա զրոյց : Յայնժամ յօրինեաց յով-հան հրաշալի գրչաւ իւրով զգիրս 'ի զովութի և 'ի ջատագովութի միակեցական վարուց · թող զայլ ճառս և զմատեանս՝ զորս շարա-գրեաց 'ի վեցամեայ հանգարտութե անա-պատի :

Պատմէ աստանօր գէորգ աղեքսանդրացի և տեսիլս և սքանչելիս յառանձնութե անգ յով-հաննու, զորովք զանց առնեն այլք · զի թէ երևեցան նմա ն̃ք առաքեալքն պետրոս և յովհաննէս · պետրոս տայր փականս 'ի ձեռս նո՝ 'ի նշանակ հանգերձեալ քահանայութե և եպսութե նր, և յովհաննէս զմատեան՝ 'ի նշան լինելոյ նր կատարել թարգման գրոց ն̃ոց · և թէ ամն յանտիոքացւոց բժշկեցաւ ա-զօթիւք ն̃ր յանբուժելի ցաւոց գլխոյ և ա-չաց · և այլ ամն 'ի բորոտութէ · և որ սոցին նման · և ոչինչ են զարմանք · զի սքանչելի է ա̃ծ 'ի ս̃րբս իւր :

Բայց

Բայց տեսչութիւն նոյն՝ որ կարգեալ էր զյոյժ հան լոյս եղի լինել, և լուսափայլ վիճակ կաթողիկէ եկեղեցւոյ, հարկեցոյց զնա ընաւորանդս թողուլ զանապատ և դառնալ յաշխարհ. վն զի 'ի խիստ ճգնութեանց անկեալ 'ի ծանր տկարութիւն յակամայ կամս էջ 'ի քաղաքն. և գտեալ զմին մելիտոս դարձեալ յաքսորանաց յետ մահուն վաղեսի հրամանաւ մեծին թէոդոսի թագաւորի, ուրախ եղև յոյժ: Իսկ յետ սակաւուց հաստատել յառողջութե իւրում՝ բռնադատեցաւ 'ի նոյն մելիտոսէ, և ձեռնադրեցաւ 'ի նմանէ 'ի սարկաւագութիւն յամի տն 380. զոր և հրեշտակօրէն պաշտեաց զամս հինգ. բայց հանդերձ նեղութեամբ բազմաւ. զի ոչ միայն զրկեցաւ 'ի հանդարտութենէ միայնակեցութե, այլև մատնեցաւ 'ի հոգս եկեղեցւոյ՝ առաւել 'ի պատճառս երկպառակութե մելիտեանց և պաւլինեանց:

Սա զի յետ վախճանելոյ նոյն մելիտոսի 'ի ժողովն կոստանդնուպօլսոյ՝ միաբանգամ բաժանեցան անտիոքացիք յերկուս. կէսք՝ նք մելիտեանք՝ ընտրեցին իւրեանց պատրիարգ 'ի տեղի մելիտոսի զփլաբիանոս զայր սրբակրօն. և կէսք՝ նք պաւլինեանք՝ կրկին և ս հաստատեցին 'ի պատրիարգութե զպաւլինոս ծերունի բարի զձեռնադրեալն յարեւմտեայց: Արդ ոչ փոքր վիշտ էր յոհաննու այս երկպառակութիւն հին և արմատացեալ, անգիտացեալ յո յարեսցի, կամ զո՛ հաւանեցուցէ 'ի մի կողմն. վսյ առաւել զառանձնութիւն

ընտրէր, և հեռանայր յամբոխէն՝ հանդար-տելով 'ի տան, կամ 'ի մերձակայ մենարանի ։ Այլ ոչ ինքն յովհան յայս առնէ, ոչ յեր-կարեաց այս խռովութեն. քանզի Փլաբիանոս հաստատեցաւ յաթոռն անտիոքայ, և ցու-ցաւ հօրն քաջ և արժանաւոր յաջորդ մելե-տոսի. Նմին իրի և սիրտ յովհաննու հանդար-տեցաւ, և յարեցաւ 'ի Փլաբիանոս, և եղև նմա ընտանի յոյժ՝ սիրեցեալ յաչս նր մեծա-պէս, այլ և յաչս ամ ուխտի եկեղեցւոյն և ժողովրդեան. Թող զբազմապատիկ վաս-տակս նր զորս 'ի հնգամեայ սարկաւա-գութեն իւրում, յորում ժամանակի եգիտ առանձնութիւն ոչ սակաւ ։

Սոյն իրաւ երթալով երթայր (ասէ պաղա-դիոս), և պայծառանայր առաքինութիւն յով-հաննու 'ի վեհութեն բանիւ և գրով, և ժո-ղովուրդն 'ի դառնութենէ կենցաղոյս քաղցրա-նայր կենցաղավարութեամբ նորա, Փլաբիանոս հայրապետն ձեռնադրեաց զյովհաննէս 'ի քահանայ՝ յամի Տեառն 386 ։ Իսկ այն ոչ առանց զքանչելեաց՝ զոր գրելոյ գետոգեայ աղեքսան-դրացւոյ և լեւոնի իմաստասիրի և այլոց բազ-մաց. քանզի 'ի պաշտել հայրապետին զպաշ-տօն գիշերայինն՝ երևեցաւ նմ հրեշտակ տն, և պատուիրեաց քահանայացուցանել զյով-հան. և յովհաննու երևեցաւ՝ պատուիրէր հրեշտակն մի կալ ընդդէմ. զի այս են առէ կամքն տն ։ Իսկ 'ի պահու ձեռնադրութեն եկն էջ հոգին սբ աղաւնակերպ տեսլեամբ 'ի վր գլխոյն յովհաննու. զոր խոնարհ լռու-

Թ̃ե յուշ առնել կամեցաւ յովհաննէս յառաջին բեմասացութե խուրում զկնի քահանայութե, յասել անդ՝ թէ ոչ մարդկային խորհրդով, այլ ա̃ծային տնտեսութ̃բ օծաւ 'ի քահանայ . և ո̃րքն ներքոյ աշակերտ յովհաննու ասէ, թէ ա̃ծային շնորհք առանձինն յայտնի եղեն 'ի վ̃ր ն̃ր :

Իսկ ո՞ կարէ պատմել զսրբախոսութի ժողովրդեան և զշինութի եկեղեցւոյ՝ 'ի համդիսանալ յովհաննու քահանայի յատեան քարոզութե . քանզի հոգեշունչ և հոգեբուղխ վ̃դպութի նորա՝ ը̃ ոսկեբերան արտասանութե, եռանդն հոգւոյն ը̃ սքանչելի համեստութե, պերճ ատենախօսութի՝ ը̃ դիւրիմաց պարզութե, քաղցրութի ը̃ զօրաւորութե, բարձրութի ը̃ խոնարհութե, և ա̃մ ձիրք շնորհաց հոգւոյն՝ արտափայլեալ 'ի բանս և 'ի գործս երանելոյն՝ յինքն ձգէր զա̃մ տեսանելիս և զլսելիս . նոր ձայն բարբառոյ յովհաննէս, և կ̃ծ ինքնին պօղոս երևէր յարուցեալ՝ փողն տարսոնեան . մանաւանդ թէ զուարթուն ոք երկնաւոր 'ի մարմնի երևեալ ցուցաւ . զի եթէ գործք նորա գրաւոր ցարդ ևս այնպիսի գոլ վկայեն զնմանէ, զի՞նչպիսի էր արդեօք բանաւորն կենդանի՝ կենդանի բարբառով :

Որդ՝ այն, որ յառաջին շարադրեալ էր ոչ սակաւ առանձին ճառս և տրամախօսութիս և գիրս աղջունի առ զանազանս՝ ա̃մ իմաստութեք հոգւոյն լի, յաւուրս քահանայութեն բոլորովին գոգցես հոգիացեալ՝ շարադրեաց բազ-

յայ

կայլոց բանից անբաւութիւն զհրաշալի մեկ-
նութի հին և նոր կտակարանաց բազում մա-
սամբ, մի քան զմի սքանչելի 'ի ձև քարոզի ։
Մինչցի ոչ է երկբայելի իմաստնոց՝ զբեղն
յընդարձակ վարս նոյն, թէ ինքնին նա ա-
ռաքեալն պօղոս երևեալ լինէր թևլադրել
'յունեկն յովհաննու զանվրէպ մեկնութի թըղ-
թոց իւրոց (7) . զնոյն իմն և զայլոց մեկնու-
թեանց՝ զորս գրեաց լուսաւոր բանիւ՛ յազդմա-
նէ շնորհաց հոգւոյն ։ Մի և նովին հոգւով
զնոյնս երկրորդէր 'ի քարոզութեան . քանզի և
առաւելագոյն մասամբ քարոզ նորա էր մեկ-
նութի ա՛ծաշունչ տառից . ըստ որում և ձայնք
նորա՝ որ յաղագս այս ինչ կամ այն ինչ կար-
գաց առաքինութեան, են տիրապէս մեկնութիւք
գրոց ս՛րց ։
Նաև որ մեծն է, զի որպէս ճշմարիտ աշակերտ
ճշմարիտ վ՛րդպետին իւրոյ քի՝ առնէր և ուսու-
ցանէր . մինչև յուսուցանել անդ եւս զառա-
քինի վարս՝ զամ՛ առաքինութի յանձին բար-
ձեալ բերէր . առաւել զխորին խոնարհութի
և զհուր սիրոյն նոյ, և զփափաք չարչարակ-
ցութե փրկչին ըստ նմանութե առաքելոց . ըստ
նմին և զօէր մերձաւորին՝ պատրաստ լինե-
լով դնել և զկեանս 'ի վ՛ր եղբօր . և այն ա-
ռանց շահասիրութե, առանց աչառանաց և
մարդահաճութե, օտար 'ի փառասիրութէ
և յամ՛ մտածութեց ըստ Ծի . ոչ յայտ է՝ որոց
դեգերին փոքր 'ի շատէ յուսկեմատեանս նր ։
Նաև քանզի ըստ ամ՛ օրինակի և մկրտչին յով-
հաննու՝ առաւելապէս զապաշխարութի և

զողորմածութիւն հնչեցուցանէր բանիւ՛ և արդեամբք, նմին իրի է զի ապաշխարութե՛, և է զի ողորմածութե՛ արդեօք վ̄ճպ ձայնէին զնա ժողովուրդն, ո̄ր որում և մատենագիրք վերաձայնեն: Այլ առաւել ևս առ ազնուափայլ և անգին և անարատ ատենախօսութե՛ բերան ոսկի, կամ ոսկի բերան սկսաւ կոչիլ յաւուրց անտի իւրոց. յորմէ եղև ստացական անուն նորա յունարէն խրիւսոստոմոս, որ թարգմանի Ոսկեբերան: (8)

Թո՛ղ զմեծագործութիւնս նորա՝ քաջ հովուի քաջավայելուչս անդատին 'ի քահանայութե. մ̄ր զի ո̄ր իւրաքանչիւր խնդրոց և հակառակութեց, երկպառակութեց և ապստամբութեց յուզելոց 'ի մէջ անտիոքացւոց, հոգւով արութե և անպարտելի առաքինութե՝ դեղ և դարման գտանէր. զոմն խրատէր, զոմն աղաչէր. էր զի յանդիմանէր, և էր զի մխիթարէր՝ առ տնկին և հրապարակաւ. ևս առաւել յատեան քարոզութեան առ ամենեսին. ոչ աչառելով մեծի և փոքու, այլ զամենեսեան ո̄ր կարի շահելով, և յանշահիցն ոչինչ զանգիտելով. որպէս և զհերետիկոսս ժամանակին քաջ յաղթահարելով: Վ̄ն որոյ և պատուաբեր և աճեցուն լինէր բան քարոզութե՛ նր տոհմականօք ևր. և համբաւ սրբութե̄ և վ̄ճպութ նր ընթանայր ըն̄ տիեզերս: Այս այսպէս զամս երկոտասան՝ սաէ պայծառ փայլեաց յովհաննէս քահանայ յեկեղեցւոջ անտիոքացւոց, և անարատ քաղաքավարութե̄ պայծառացոյց զուխտ եկեղեցւոյն, իմաստ

տու-

տութեան աղիւ̂ համեմեալ զայն, փղձկութեան լուսազարդեալ, և մտակօք նր̃ հոգւոյն ոռո-
գեալ:

Ընդ այն ժամանակս յամի տն 397. ՚ի 27. նոյեմբերի, փախճանէր նեկտարիոս պատրիարգ թագաւորեալ քաղաքին կոստանդնուպօլսոյ. և բազումք այն էին՝ որք այնմ աթոռոյ թեկն ածէին անձամբ կամ յայլոցն առաջարկուէ. այլ ժողովուրդն ամ̃ հանդերձ ուխտիւն փափաքէին զյովհաննէս զանտիոքայ քահանայն Ծաքարոզ՝ հովիւ և առաջնորդ իւրեանց ունել: Այլ և կայսրն արկադէոս որդի մեծին թէոդոսի, քանզի լուեալ ևս էր զզարմանչելւոյն յովհաննու զգովութիւն յականաւորս վկայից, և առաւելապէս յեւտրոպիոսէ ներքինապետէ՝ որ շրջեցաւ երբեմն վս̃ արքունի գործոց ՚ի կողմանս արևելից, հրովարտակ առաքեաց առ աստերիոս կոմսն արևելեան, զի լռիկ մնջիկ առանց աղմկելոյ զանտիոքացիս՝ յղեսցէ զյովհաննէս ՚ի կոստանդնուպօլիս: Իսկ կոմսն փութապէս ազդեալ յովհաննու գալ արտաքոյ քաղաքին մինչև ՚ի վկայարանս՝ որ առ դրանն կոչեցելոյ ռոմանեան, ոչ թէ ունի ինչ հարցանել ՚ի նմանէ, եհան զնա ընդ իւր ՚ի կառս արքունի, և խաղացոյց մինչև ՚ի տեղին անուանեալ պագրաս. և անդ յանձն արար զնա տանել ներքինւոյն եկելոյ ՚ի դրանէ հանդերձ մագիստրոսիւ զօրականին:

Այլ մինչչև հասեալ էր յովհաննու ՚ի կոստանդնուպօլիս, ժողովեալ էին անդր եպիս-

կոպոսանք յերևելի քաղաքաց հրամանաւ Թագրին՝ 'ի ձեռնադրել զՅովհաննէս ։ Աշկերտ էր և Թէոփիլոս՝ մեծն կոչեցեալ՝ աղեքսանդրու հայրապետ՝ երևելին 'ի պատրիարքս ։ որոյ եղեալ էր 'ի մտի՝ կարգել յաթոռ կոստանդնուպօլսոյ զԻսիդորոս քահանայ զաշակերտ իւր՝ զվերակացու աղքատանոցաց և օտարանոցաց աղեքսանդրիոյ ։ զի թերևս առժանաւոր զնա ճանաչէր՝ իբրև զայր հոգեւէր և կիրթ 'ի պարկեշտ վարս 'ի մէջ ասկիտացի միայնակեցաց, միանգամայն և առանձին երախտաւոր իւր բազմօք ։ Թող զի և պարծանք էր իւրեան և յօգուտ, զի աշակերտ իւր լինէր պատրիարք Թագրական քաղաքին ։

Սոյ իբրև եկն յՈվհաննէս, և պատրաստաւորեալ լինէր ձեռնադրութեան նորա, պէսպէս պատճառանօք յապաղումն 'ի վերայ բերէր Թէոփիլոս, և զուն գործէր խափանել ։ մանաւանդ յետ տեսանելոյ զՅովհաննէս, և լսելոյ զզօրութիւն բանս ոսկեղէն բերանոյն՝ ոչ ախորժեալ զայնպիսի հզօրագոյն որ քան զինքն հանել յայն պատիւ ։ Այլ իբրև պղտորութիւն անկանէր 'ի մէջ ժողովոյ եպիսկոպոսաց և աւագանւոյն և ժողովրդեան, որոց աչք առ հասարակ 'ի յովհաննէս էին, առեալ Եւտրոպիոս ներքինապետն՝ որ և սենեկապետ ինքնակալին՝ զԹէոփիլոս. ընտրեա՛ քեզ զմի յերկուց աստի բանից ։ կամ միաբանեա՛ ընդ այլ եպիսկոպոսն, և ձեռնադրեա՛ մեզ զՅովհաննէս, և կամ պատրաստ լեր տալ պատասխանի ամբաստանութեանց՝ որ զքէն ։ զի առ-

'ի

'ի ձեռս իմ հասեալ կան նամականի ամբաստանութեան, զորս հանել յառաջեան եպիսկոպոսաց յանձն եղև ինձ ։

Զայս լուեալ Թէոփիլոսի՝ երկեաւ. և ձեռնադրեաց զյովհաննէս միաբանութեամբ ժողովոյն. և այս եղև յամի տն 398. 'ի փետրուարի. 26. այն է 'ի չորս կաղանդացն մարտի ըստ սոկրատայ ։ Նա փաղփաղակի սկսաւ հաւելի՛ն քաջ խնամարկել հօտին, և ծաւալել զհռոմանս հոգեբուղխ պերճութեան իւրոյ յարբումն ոգւոց ծարաւեաց՝ անդստին յորէ անտի ձեռնադրութեան իւրոյ յեպիսկոպոսութիւն, ուղղեալ զամենայն բանս իւր 'ի ցրումն մոլորութեանց և անկարգութեանց ժամանակին, և 'ի ծաղկեցուցանել զամենայն կարգ ուղղութեան 'ի թագաւորեալ քաղաքի. ուր հեշտեաւ հաւաքէին յոգնադիմի պատուականութիւք, և անտուստ տարածանէին պտուղ բազումս ընդ ամենայն տեղիս ։ Այլ թէ քանի՞ հոգևոր զուարթութեամբ և հայրագութ սիրով որսայր յուռկան աւետարանին զունկնդիրս իւր, առցես օրինակ յերկրորդ քարոզէ անտի՝ զոր խօսեցաւ 'ի կոստանդնուպօլիս, սկիզբն առնելով օրինակ զայս. * Զմի ընդ ձեզ խօսեցայ օր. և յորէ անտի յայնմանէ այնպէս զձեզ սիրեցի, ոչ՟ անդստին 'ի սկզբանէ սնընդակից ձեզ լինելով. այնպէս ընդ ձեզ շաղկապեցայ սիրոյն կապանօք, որպէս բազում ժամանակօք 'ի քաղցր ձեր վայելեալ կենակցութեան. և այս եղև՝ ոչ ոչ՟ թէ սիրուն ոք եմ իցեմ և սիրելի, այլ զի ցանկալիք և տենչալիք առաւել

ղեցւոյ՝ զսերմն գեղեցիկ բանին այ ցանէր և անխափանորդէր յոգիս լսողաց ժիր մշակն ա-
ռանց ամօթոյ :

Նայև յառաջնումն ամին անդ կրեաց երանելին զխօթութիւն յերեւաց ծանր աշխատութէ, որ 'ի վշտութէ և յառաջնորդութէ թշուառական քաղաքին . գուցէ և յօդոցն փոփոխութէ . և առաւել 'ի տքնութէ և 'ի սովորական ճգնութեց անձին է այնչափ զբաղմանց . բայց անդրէն յառողջութի ածեալ՝ իսկևիսկ դառնայր 'ի գործ վշտութէ :

Այս քանզի փոյթ մեծ էր երանելւոյն տառապել զաւխտ եկեղեցւոյ կրթել 'ի բարեկարգութի, յորմէ և Տիկք դիւրաւ ամաքեն յաւղդութի, առաւել օրհնակաւ քան բանիւ քարոզէր ժառանգաւորաց՝ արժանի գնալ կոչմանն յոր կոչեցան : Այնպէս կանոնեաց ա՛ն ձին համապատգոր առանձինն ճաշակել . ոչ յայլոյ սեղանն երթալ, և ոչ զոք յիւր սեղան հրաւիրել . որով փակէին բազում անկարգութեանց ճանապարհք, և դրունք բանիցն ա՛մ բարեաց . զորս յերկար թուէ պալադիոս . թէպէտև անհամձոյ եղև առէ այս սովորութ ոմանց յաշս ամենց 'ի մեծամեծաց և յեկեղեցականաց, որք մարդկորէն և եթ խորհէին :

Այս դարձեալ՝ չընդունէր երբէք բաժին անձին իւրում 'ի հասից եկեղեցւոյ, այլ հրամայէր զա՛ն 'ի պէտս եկեղեցւոյ և աղքատաց ծախել . և զննեալ զհաշիւ կոնոմաւին՝ է անօսեափ եկեղեցւոյն իւրոյ, որ ինչ աւելորդ ծախս ռեսանէր՝ 'ի բաց հատանէր .

Նոյն

նոյնպէս և զծախս հայրապետանոցին կարձեալ 'ի գանձանակ աղքատաց և հիւանդաց տայր յաւելուլ. որով ետ շինել և հիւանդանոցս: Իսկ ինքն զօր ըստ օրէ սակաւապէտ կերակուր իւր ընդունէր իբրև ողորմութիւն 'ի մարդասիրութենէ սքանչելի այրւոյն ողոմպիադայ, որ էր կին 'ոք և աղքատասէր՝ ծանուցեալ 'ի քաղաքին. և զայս յանձն առնոյր առ առաւել ազատ կացուցանել զհայրապետանոցն յարտաքին զբաղմանց: Թող զի ինքն 'ոք հայրապետն բազում անգամ մոռանայր առնուլ կերակուր մինչև ցերեկոյ. է զի 'ի հոգս եկեղեցւոյն պարապեալ, և է զի 'ի հոգևոր տեսութիւնս և 'ի գրութիւնս ընկղմեալ:

Արդ այսպիսի օրինակօք անձին, միանգամայն և 'ի քարոզս իւր կշտամբելով զագահութիւն և զորկրամոլութիւն, եբարձ զբազում անկարգութիւնս մուծեալս յԴասս և յունայնասէր եկեղեցականս. գրեաց և պիտառնութիւնս ընդդէմ անարժան սովորութեան ոմանց 'ի քահանայից, որք պահէին 'ի տան 'ի պէտս սպասաւորութեան զքոյր կոչեցեալ կուսանս, ոմ և ընդդէմ այլոց ստերիւրելոց 'ի շաւղաց զգաստութեան:

Ստէպ խօսէր երանելին և յորդորական բանս վասն առանձնական և հասարակաց աղօթից, պատուիրելով մի ումեք զանց առնել զկանխելն յեկեղեցիս, և զկատարումն տուընջենային և գիշերային աղօթից՝ գոնէ 'ի սենեկի իւրում: Նա ինքն ոսկեբերանն կարգաւորեաց և զձայնաւոր սաղմոսերգութիւնս և

զերգս

զերգս հոգեւորս յեկեղեցւոջ . և այնչափ առաւել՝ որչափ զի ( ըստ պատմելոյ սոզոմենոսի ) արիանոսք մնացեալք արտաքոյ պարսպաց կոստանդնուպօլսոյ՝ սկսեալ էին երգել բանս ինն պաշտամանց մոլար յաւելուածովք 'ի նախատինս ուղղափառաց, շրջելով տեղւոջէ 'ի տեղի՝ առաւել 'ի շաբաթու և 'ի միաշաբաթու, և փոխ առ փոխ կարգալով ։ Այս երանելին յովհաննէս կարգեաց ընդդէմ նորորութեն նց՝ արծաթի խաչիւք և մոմեղինօք թափօրապէս կատարել 'ի քաղաքի զերգս եկեղեցւոյ ։ Ընդ որ զչարեալ արիանոսաց՝ հանին խռովութի 'ի քաղաքի, մինչև մեռանիլ ոմանց յերկուց կողմանց . ըստ որս և զբրիսոն սենեկապան թագուհոյն հարին արիանոսք քարամբ 'ի ճակատն ։ Յորմէ վս խափանեաց կայսրն իսպառ զհամարձակութիւն և զսովորութի արիանոսաց . այլ զոր կարգեացն յովհաննէս յեկեղեցւոջ ուղղափառաց՝ մնաց հաստատուն ։

**Կարգաւորեաց նա հայրապետն յովհան և զպատարագամատոյց յունաց, որ առարեալ էր և նոյն բարսղի 'ի կապադովկիա . զերկացունց իսկ միանգամայն յիշատակէ նոցին պրոկղ աշակերտ ոսկեբերանի . քանզի յետ յիշելոյ զաւանդեալն 'ի նոյն կղեմայ հռովմայ հայրապետէ, և 'ի նոյն յակոբայ եղբօրէ տն յառաջին եպսն երմի, 'ի վերայ բերէ՝ թէ բարսեղ և ոսկեբերան վերածին զնոսա 'ի համառօտն . զի մի յերկարութենէ խորշեալ ոմանց՝ յօտար կարգ պաշտամանց ձեռն արկցեն,**

ցեն , և խոստովանեսցին յառաքելական աւան-
դից :

Պատմէ աստանօր սոզոմենոս զահաւոր իմն սքանչելիս . այր ոմն յաղանդոյ մակեդոնեանց հոգեմարտից շարժեալ 'ի վարդապետութենէ երանելւոյն յովհաննու հայրապետին՝ յաւելաւ յեկեղեցի ուղղափառաց . և 'ի նոյն յորդորէր նաև զկին իւր . իսկ նորա ոչ երկիւղի հաւան ցուցեալ զանձն , և պատրել կամելով զայր իւր , բանս եդ ընդ աղախնոյ իւրում , և ել գնաց յեկեղեցի . ուր 'ի ժամ հաղորդութեան ժպրհեցաւ մատչիլ և առնուլ 'ի ձեռս խորհրդոյն . բայց ոչ ճաշակեաց , այլ ցածուցեալ զգլուխն՝ որպէս թէ յաղօթս , պահեաց և եբեր զայն 'ի տուն , և անդ կամեցաւ փորձել . և ահա ընդ ծամելն՝ անդգացաւ խորհուրդն իբրև զքար : Յայնժամ զահի հարաւ կինն , եթէ պատուհաս ինչ կրեսցէ 'ի վերայ . և փութացեալ գնաց անկաւ արտասուօք առ ոտս սրբոյ հայրապետին . և պատմեալ զյանցանս իւր՝ եցոյց և զքարն , յորում կային նիշք ատամանց . և խրատուք սրբոյն դարձաւ 'ի հաւատս ուղղափառութեան : Իսկ եթէ ոք անհաւատ լինիցի բանիցս՝ ասէ պատմաբանն , վկայ է քարն այն՝ որ պահի ցարդ 'ի գանձս եկեղեցւոյն կոստանդնուպօլսոյ . և տեսանի որպէս նիւթ անգիտելի , և անսովոր ըստ գունոյն :

Այլ 'ի հանապազորդել յովհաննու 'ի քարոզս իւր , և 'ի յանդիմանել զանկարգութիւն մեծի և փոքու , որչափ շինութիւն լինէր հա-

ւա-

ւանդացելոց, նոյնչափ և յառնէր ըդդէմ նր̅ առելոյն 'ի խառնակեցից և 'ի չարաբարոյից և յաղանդաւորաց. բայց նր̅ յանձին կալեալ մինչև 'ի մահ ձգնիլ 'ի վր̅ ուղղութե̅ և ճըշմարտութե̅, յորժամ լսէր զբամբասանս այնպիսեաց, զպօղոսին երկրորդէր նորին հոգւով. *եթէ տակաւին մարդկան հաճոյ լինէի, ապա ք̅սի ծառայ ոչ էի ‖. և ևս քան զևս համարձակ կշտամբէր զն̅ս բանիւ̂ զանուղղայ ընթացս չարաց' առանց անոհանու ուրուք 'ի նոցանէ ։ Սոյն զի զերկուս 'ի սարկաւագաց հրապարակաւ պատեալս 'ի ծանր յանցանս արտաքսեաց յեկեղեցւոյ, զմին վս̅ շնութե̅, և զմիւսն վս̅ մարդասպանութե̅. որպ̅ս և զոմանս յանարժան քահանայից առգել 'ի խորհրդոյն ։

Սրդ թէպէտև այսպ̅ս անաչառ էր և խիստ ընդդէմ անզեղջից, այլ քաղցրահայեաց և բարեգորով առ զղջացեալս և առ ամ̅ բարեսէրս. մխիթար վշտագնելոց, ապաւէն նեղելոց. յուսադիր լքելոց, յանձանձիչ կարօտելոց, և ձեռնտու ամ̅ցն յամենայն 'ի կարիս հոգւոյ և մարմնոյ. և այս ոչ միայն առ մերձաւորս, այլև առ հեռաւորս. զորոց մի առ մի ճառել' երկայն կարօտանամք բանից. մեք յերևելի գործս անդրէն դարձցուք ։

Գրէ թէոդորետոս, թէ տեսեալ յովհաննու զսկիւթացիս, իմա' զգօթացիս' բնակեալս 'ի կոստանդինուպօլիս կմ̅ յարուարձանս նր̅, զի ծրդեալ էին 'ի մոլորութի արիանոսաց, այսպիսի հնարիւք դարձոյց զն̅ս յուղղափա-

ռառ

ռուհ. ձեռնադրեաց զոմանս 'ի գոթաց ուղ-ղափառաց՝ քահանայս և սարկաւագունս և դպրակարգացս. զորս եդ յառաջնմին եկեղեցի ըստ լեզուի իւրեանց. ուր դայր և ինքն ան-ձամբ, և թարգմանաւ խօսէր զբանն այ. միայ ժողովելին անդր 'ի լուր քարոզի և գութք այ-լափառք, և որ յորէ դառնային յեկեղեցի այ. Ըստ սմին օրինակի որոց յուռկան աւետա-րանին և զայլս յօտարաց 'ի Թրակական քա-ղաքի և արտաքոյ՝ առաքելով եպսունս և քա-հանայս ազգայինս և լեզուագէտս առ զա-նազան լեզուս։ Դարձեալ ձեռնադրաւ եղև և այլոց եպսոաց եղելոց 'ի սահմանս հեթանո-սաց, որ ինչ պէտք էին 'ի ծառայել զհաւատս քնի ը ամ տեղիս՝ ուր և հաստատէր զօրութի հռովմայեցւոց. և զմեհեանն կռապաշտից՝ որ 'ի գազա պաղեստինու, ետ փակել ար-քունի հրամանաւ։

Շիջոյց և զմնացորդս խռովուե անտիոքաց-ւոց մծ երկպառակութե աթոռոյն. քանզի էարկ հաշտութի ը այլ եպսունս և ը փիլա-քիանոս հայրապետ անտիոքայ, և ընդունելի արար զնա առաջի եկեղեցւոյն հռովմայ. որով բարձաւ կռիւն՝ որ կայր 'ի բազում ամաց հետէ։

Փոյթ կալաւ երանելին յովհաննէս և վասն պայծառութե եկեղեցեաց և վկայարանաց. և ժողովել քանի մի նշխարս սրբց՝ ամփոփեաց 'ի վայելուչ դիր հանգստարանի. յորս յան-ուանէ յիշատակին նշխարք սրբոյն փոկասու, զոր ետ բերել 'ի պոնտոսէ։ Նա և եղև 'ի փո-

խա-

փոխադրել նոր հանդիսական թափօրով զպատուական նշխարս իւր 'ի մեծ եկեղեցւոյ քաղաքի 'ի նորաշէն տաճար նոյն Թովմայի՝ որ յառաջագոյն, իսկ նշանաւոր հեռի 'ի կոստանդնուպօլսոյ ԺԲ մղոնօք՝ մօտ 'ի ռուֆինեան (այն է ռուֆինիա), 'ի տեղին կոչեցեալ դրիւպիա (որ է դարապիա), յառաջնում աւուր նոր անձամբ 'ի հանդիսի եկեղեցւոյն և Եւդոքսիա Թագուհի կինն արկադեայ կայսեր . և յերկրորդ աւուր ինքն իսկ արկադէոս Թ̄գր . վոյ և նոր հայրապետին բազում գովութիւն խօսեցաւ զբարեպաշտութե̄ Թ̄գրին և թագուհւոյն 'ի ճառին, զոր ասաց յաւուրն յայնմիկ։ Այլ եղև եւտրոպիոսի ներքինապետի և սենեկապետի արքային անկանել զպատիւ հիւպատոսութե̄ յամի տն̄ 399 . և ԺԳ մեծամեծաց որ քան զօր՝ յաւելուլ մեծամտիլ, և արտաքոյ ելանել հրամանաց եկեղեցւոյ և Թ̄գրին : Առողջ բարեկամ նոր հայրապետին անդստին 'ի եկեղեցւոյն՝ բազմօք խոստեցաւ 'ի նմանէ սիրով . բայց ոչ լուաւ , այլ առաւել յանդգնեալ՝ օրէնս իմն կարգեաց Ը̄դէմ ազատութե̄ եկեղեցւոյ , զի մի որք 'ի պարտաւորաց ապաւինեսցեն յեկեղեցին՝ ազատ լիցի , այլ բռնի ձգեալ արտաքս՝ պատժեսցի :

Այլ ահա յետ սակաւուց ինքն գտաւ կարօտ եկեղեցւոյ . քանզի ըմբռնեալ 'ի քրէական յանցանս՝ մերկացաւ յամ̄ պատուոյն , և ել հրաման յարքայէ՝ զի աքսորեսցի 'ի կիպրոս : Մինչ այս մինչ այն՝ փախստական լեալ նա 'ի պաշտպանեն՝ անկաւ 'ի մեծ եկեղեցին ,

և

և ապաստան եղև 'ի գթութ հայրապետին • որ և մարդասիրութբ ընկալաւ զնա 'ի գիմաց եկեղեցւոյն • բայց յանդիման ամ ժողովրդեան խօսեցաւ ճառ խրատական 'ի վր նր , սկսանելով այսպէս • * Ապաքէն միշտ , այլ առաւել այժմ դէպ ժամանակ է ասել • Ունայնութի ունայնութեց , ամ ինչ ընդունայն է ։ Ո՞ւր այժմ պայծառ պատմուճան հիւպատոսութն • ո՞ւր լուսափայլ ջահքն • ո՞ւր ծափք և պարք , և խնջոյք և ամենաժողով տօնք • • • այն ամ տեղի ետ • և հողմն շնչեալ ուժգին՝ զտերևսն թօթափեաց , և մերկ մեզ զծառն եցոյց , և յարմատոց անտի գլխովին երերուն ‖ ։ Յուշ արար 'ի կարգին և զայն , թէ ո՞ւր են [illegible] բարեկամք , զի լքին զքեզ • ուր * եկեղեցին առ 'ի քէն պատերազմեալ՝ զգիրկսն տարածեաց և ընկալաւ զքեզ ‖ ։ Եւ ապա մխիթար բանիւք քաջալերեաց զնա , զի թէ տրն ողորմի՝ և ինքնակալն ողորմեսցի կենաց նր • որպէս և արդեամբք զդէմ կալաւ սբ հայրապետն , յորժամ սպասաւորքն արքունի կամէին բռնանալ և հանել զնա յեկեղեցւոյ ։

Բայց եւտրոպիոս իբրև անձամբ հնարեցաւ փախչել յեկեղեցւոյ յայլ տեղի , մատնեցաւ՝ ըմբռնեցաւ և աքսորեցաւ • վսյ ասէ սբ հայրապետն 'ի միւսում ճառի • * Մի՛ ասեր , թէ յեկեղեցւոյ մատնեցաւ մատնեալն • թէ չէր նր թողեալ զեկեղեցին , ոչ արդեօք մատնեալ լինէր • • • Ոչ եկեղեցին զնա եթող , այլ նա զեկեղեցի եթող • ո՛չ 'ի ներքուստ

մատնեցաւ, այլ արտաքսեցաւ ։

Ի նմին տարւոջ 'ի կատարած քառասնորդաց տեղաց յորդ անձրեւ 'ի կոստանդինուպօլիս, մինչեւ ողողել և ապականել զբազում անդաստանս. վասն հրամայեաց նորա Հայրապետն ժողովիլ ամենեցուն 'ի տաճար սրբոց առաքելոց յաւուր աւագ չորեքշաբաթու, և միաբան աղօթիւք խնդրել զողորմութիւն 'ի տեառնէ բարերարէ սրբոց նոցա առաքելոցն պետրոսի և անդրէի, պօղոսի և տիմոթէի ։ Իսկ երբեւ պարզեցաւ օդն, 'ի նմին իսկ աւագ ուրբաթու եղեն կրկէսական խաղք հեթանոսաց, և յաւուրն երկրորդի Թատրոնական տեսարանք խաղալկաց, ուր գնացին և ոմանք ոմանք 'ի քրիստոնէից. Ընդ որ չհանդուրժել նորա Հայրապետին, 'ի քարոզի զատկին խստիւ յանդիմանեաց զայնպիսիս, և սպառնացաւ ընդ բանիւ առնել զորս միանգամ իշխեսցեն յայլ նմանօրինակ զնոյն գործել. և ոչ սակաւ օգտեաց բան նր. որպէս նշանակէ 'ի յաջորդ քարոզի ։

Յաւուրսն յայնոսիկ եկին ժողովեցան 'ի թագաւորեալ քաղաքն եպիսկոպոսք ասիացւոց՝ թւով քսան և երկու. և եղեն ամբաստան առաջի Հայրապետին յովհաննու գրով և բանիւ զանտոնինոսէ եպիսկոպոսէն եփեսացւոց՝ ըստ եօթն գլխոց ծանր ծանր յանցանաց ։ Իսկ նորա Հայրապետն խրատեաց զեւսեբիոս զեպիսկոպոսն վաղենտինուպօլսոյ՝ որ բերանն էր դատախազից, մի արդեօք մարդկային ինչ կրիւք ատելութեան վարեսցի, որպէս երեւէր 'ի

նշանացն . և բազմօք քննեալ զնորան՝ ոչ եգիտ վկայս ստուգութեան : Իսկ քանզի մեռաւ ՚ի նոյն աւուրս ամբաստանեալն , յարեաւ ոսկեբերան, և անձամբ նաւեաց ընդ ժողովոյ եպիսկոպոսաց յեփեսոս . ուր գումարեցան և այլք՝ ընդ նմա եպիսկոպոսունք եօթանասուն . զի կային և այլ պէսպէս խնդիրք և հակառակութիւնք ՚ի մէջ առաջնորդաց . վասն յերկարեցին իրքն . մինչև միաբանութեամբ ժողովոյն կարգեաց ոսկեբերանն յեպիսկոպոսութիւն եփեսացւոց զՀերակղիդէս . և զվեց եպիսկոպոսս ըմբռնեալս ՚ի սիմոնականութեան ընկէց յաթոռոյ , և զայլս կացոյց ՚ի տեղի նոցա :

Սոյնպէս և ընդ նմա տեղիս՝ ընդ որ էանց , փոխեաց զանարժանս և զայլափառս , և եդ ՚ի նոցա տեղի զարժանաւորս և զուղղափառս . և վասն որոյ օր ըստ օրէ բազմացան թշնամիք նորին . զի ամ՝ որ զչար գործէ , ատեայ զլոյս . այլ որ չար են և եղև , այսպիսի չարք յինքեանս արկին և զոմանս ՚ի բարեաց ընդդէմ ոսկեբերանին . մինչև պղտորել զմիտս և ոմանց ՚ի նը եպսաց , և զթագաւորին և զթագուհւոյն գլխովին :

Արդ ՚ի դառնալ ոսկեբերանին՝ թէպէտև ուրախութեամբ մեծաւ ընկալաւ զնա ամ քաղաքն թագաւորաւն հանդերձ , բայց ծածկեցաւ գժտութիւն իմն յեկեղեցւոջ . քանզի ՚ի մեկնիլ հայրապետին՝ ընդ յանձնելոյ նմա ունէր իւր տեղակալութիւն զհօտ եկեղեցւոյն սեւերիանոս՝ որ և սեբերիանոս եպս գաբաղացւոց , այր զօրաւոր բանիւ և գրով . որ և ՚ի

'ի ձեռն ոսկեբերանի ընտելացեալ էր և սիրելի լեալ յաչս Թագաւորին և Թագուհւոյն . և 'ի բացականումն հայրապետին ընդ յոր զտեղի նորա քարոզութեան ։ Սոյ իբրև դարձաւ հայրապետն յաթոռ իւր, բանք յածէին 'ի միջ ամբոխին ( որոց երևէին հաւատս ընծայել սոկրատա և սոզոմենոս ), թէ նախանձ իմն է միջ անկեալ իցէ ոսկեբերանի և սեբերիանոսի . որ չէ՛ հաւաստի, և ոչ արժանահաւատ բան . այլ 'ի միջ եմուտ այլ պատճառ բանակռուութեան է սեբերիանոս և է սրապիոն սարկաւագն ոսկեբերանի ։

Քանզի սրապիոն պանծացեալ 'ի վիճակ իւր՝ զոր ինքն ոգւով պաշտէր, և յանձնապաստան եղեալ՝ ոչ ետ երբեմն զարժանին պատիւ սեբերիանոսի եպիսկոպոսի, և ոչ յարեաւ յոտս՝ 'ի գալ նորա առ նա . է որ դժուարեալ սեբերիանոս չարաչար կրիւք բարբառեցաւ զայս անվայելուչ բան . եթէ սրապիոն քրիստոնեայ կղերիկոս մեռանիցի, ապա Քրիստոս ոչ մարդացաւ ։ Արդ զայս բան նորա հասոյց սրապիոն յունկն ոսկեբերանի . և այլք 'ի չարալեզուաց թողեալ զառաջին հատուած բանին՝ պնդէին ստութիւն, թէ սեբերիանոս ասաց . Քրիստոս ոչ մարդացաւ ։

Իսկ երանելի ոսկեբերանն թէպէտև սաստեաց յաւելուածով չարախօսելեացն, այլ կոչեաց առաջի իւր զսեբերիանոս, և խրատեաց զնա, թէ չէր արժան իմաստութեան քում զայնպիսի բան հանել ընդ բերան . զի թէև կղերիկոս մեռանիցի սրապիոն, ոչ վնաս

ստի մարդանալն քմի ։ Յայնժամ զամօթի
հարեալ սեբերիանոսի՝ ել յերեսաց ոսկե-
բերանին ․ և ոչ ևս կամեցաւ կալ ՚ի քաղա-
քին , այլ էանց ՚ի քաղկեդոն բիւթանաց-
ւոց՝ գնալ ՚ի տեղի իւր ․ զոր իմացեալ ամբո-
խին՝ համբաւեցին , թէ հայրապետն աքսո-
եաց զնա ։

Զայն իբրև լուաւ եւդոքսիա թագուհի ,
առաքեաց փութապէս և յետս դարձոյց զսե-
բերիանոս ․ և ( ըստ պատմելոյ սոկրատայ և
սոզոմենոսի ՚ի լոյս՝ ) ՚ի տաճարի առաքելոցն
եդեալ յոտս ոսկեբերանին զնորածին ար-
քայորդին զթէոդոս ( որ փոքրն կոչեցաւ ),
աղաչեաց երդմամբ զհայրապետն՝ ընդունել
սիրով զսեբերիանոս ․ այլք ասեն , թէ ար-
կադէոս ինքնին միջնորդ եղև ․ և ոսկեբե-
րանն ոմ սիրով ընկալաւ զսեբերիանոս ․ և
ելեալ յատեան՝ խօսեցաւ զքարոզ խաղա-
ղութեն ․ և եղև խաղաղութի ։

Ի նոյն աւուրս եղև արդեօք և մկրտութի
թէոդոսի փոքու ՚ի ձեռն ոսկեբերանի ․ այլ
քանզի սկզբնաւորեալ էր ատելուն եւդոք-
սեայ թագուհւոյն ընդդէմ սբյ հայրապե-
տին , ՚ի կարծիս եղեն ոմանք՝ թէ չիցէ որ-
ճեալ նմա մկրտել զորդի իւր ․ որ է օտար ՚ի
ճշմարտութէ , ուր ոսկեբերանն ինքնին ասէ
՚ի բանն՝ որ առ թագուհին , թէ զաւակք քո
յիմ ձեռս կնքեցան ․ զոր ոչ միայն զդստե-
րացն է իմանալ , այլ առաւել ևս զթէոդո-
սէ արքայորդւոյ՝ որ ժառանգն էր թգրութե ։
Իսկ պատճառք ատելութե եւդոքսեայ թա-
գուհ-

գուհւոյն ընդդէմ Ոսկեբերանի պէսպէս մարթին լինել ընդ բանախնդրաց. այլ իբրեւ արմատ ամի պատմի՝ (յորոց գրեցինն զլիակատար վարս սրբոյն, ոմն եւ յականատես վկայէ ՚ի Մարկոսէ սարկաւագէ նորին Պորփիւրոսի եպիսկոպոսին Գազայ,) անցքն այլուոյն՝ զորոյ զայգինս բռնութեամբ յափշտակեաց Եւդոքսիա. ոյր վասն զառաջինն քաղցրութեամբ խրատեաց զնա հայրապետն, եւ ապա յանդիմանեաց (9). զնոյն իմն եւ վասն զրկանաց եղելոց առ միւս այրի կալլիտրոպէ անուն աղեքսանդրացի. Թող զի Եւդոքսիա խնդրել էր փոխ ՚ի Թէոդորիկոսէ ձոխ պատրկէ, եւ սա միջնորդ կալեալ զՈսկեբերանն՝ հրաժարեաց ՚ի տալոյն. եւ սակայն յետոյ ետ ինչս Ոսկեբերանի ՚ի պէտս օտարանոցին ։ Այլ յաղթեաց այսմ ամի աղմուկն Թէոփիլեանց՝ յորս յարեցաւ Թագուհին. ուր ոչ միայն ինքն Եւդոքսիա յանցեաւ չարաչար, այլ եւ յանցոյց զբազումս. յորս եղեն եւ երեւելի եպիսկոպոսունք գիտնաւորք եւ առաքինիք՝ մարդկօրէն գթեալք, կամ ըմբռնեալք ՚ի ծուղակս Թագուհւոյն ։

Գլուխ ոսոխաց եւ հալածչաց Ոսկեբերանի եղեւ Թէոփիլոս աղեքսանդրու հայրապետ. որ թէպէտեւ էր այր մեծանուն, եւ այլով մասամբ գովելի ցուցեալ ՚ի հարանց վերս եւ ՚ի Թուղթս Հերոնիմոսի, այլ յոխորտ բարուք, եւ յանչափս դիմակաց ընդդիմակաց երեւելոց անձին իւրում ։ Արդ՝ սա, որ ըստ նախագրելոցս՝ ակամայ ձեռնադրեալ էր զՈսկեբերանն, երբ ինքն կամէր դնել փո-

խան նր զԻսիդորոս քահանայ զիւր սիրելի իկոնոմոսն, յետ քանի մի ամաց կալաւ դըժ-տութի ընդ նմին Իսիդորոսի 'ի պատճառս դրամոց, զորս առանց հրամանի նր ծախեալ էր Իսիդորոս 'ի պէտս աղքատաց ըստ խնդրոյ ուխտաւոր ընծայաբերին. վ̃յ և Իսիդորոս 'ի ծերութե իւրում խոյս ետ յանապատ, և ծառայէր նք միայնակեցացն սկիտացւոց ։

Բայց այնչափ առաւելաւ ընդդէմ նր բարկութի Թէոփիլոսի, մինչև հալածել 'ի պատճառս նր և զմիայնակեացս, առիթ առեալ զայն՝ թէ գտանին 'ի նս մոլորեալք զհետ որոգինի. որ չէր սուտ, բայց և ոչ ստոյգ 'ի վր ամենեցուն՝ զորս հալածէր. ոպ և 'ի ժողովի իւրում՝ որ ընդդէմ որոգինեանց, դատապարտեաց զերիս կամ զչորս 'ի նոցանէ յանուանէ, և արտաքսեաց յեկեղեցւոյ՝ առանց հաստատի քննութե ։ Եւ քանզի նքն հերոնիմոս էր յայնժամ յարևելս՝ պնդագոյն յաղթահարիչ որոգինեանց, լուեալ զայսպիսի նախանձաւորութի Թէոփիլոսի՝ ոչ գիտելով զհանգամանս նախանձայուզութե նր, գրեաց առ նա գիր ուրախակցութե, և առաւել ևս վառեաց 'ի նոյն գործ ։ Ի նոյն միտս էր և նքն եպիփան եպս կիպրոսի՝ աջակից հերոնիմոսի ։

Բայց Թէոփիլոս զայնպիսի արս անուանիս և սքանչելիս համամիտ իւր տեսանելով՝ էանց ըստ չափ, և զանմեղս ընդ մեղաւորս հալածէր անխտիր ։ Մինչ զի ոչ կարացեալ ժուժել միայնակեցաց՝ ոչ սակաւք 'ի նոցանէ եկին և

անց

անկան 'ի կոստանդնուպօլիս առ ոսկեբե-
րան հայրապետն . և նա մարդասիրութբ ըն-
կալաւ զնոս ոչ վասն հարս , և ջանայր հաշտե-
ցուցանել զնոս ընդ Թէոփիլէ պատրիարգի իւ-
րեանց : Միայն Թէ ընդ պատմելոյ սոցունե .
նոսա` Թէպէտ և ոչ արգել զնոս յաղօԹելոյ
յեկեղեցւոջ , բայց զգուշացաւ հաղորդիլ
ընդ նոս 'ի սրբ խորհուրդն , մինչև իմասցի զպատ-
ճառս ժողովոյն Թէոփիլեայ ընդդէմ նց : Եւ
ինքն` ոչ ասէ պալլադիոս , գրեաց առ Թէո-
փիլոս այսպէս . * Շնորհս ինձ արա՛ յայսմ
մասին իբրև որդւոյ և եղբօր , և ընկա՛լ 'ի
սէր զարս զայսոսիկ || . ապա եԹէ դժուարին
Թուի ասէ քեզ այդ , ծանի՛ր , զի տառա-
պեալքս այսոքիկ ստիպին 'ի մէջ առնուլ
զքեզն գիր ամբաստանուԹե . ոչ և մատու-
ցեալ իսկ էր նց առ ոսկեբերանն :

Յայնժամ Թէոփիլոս խստիւ արար պնդնի .
* Կարծեմ ( ասէ ) ո՛չ անգիտանալ քեզ ըզ-
գշիռ նիկիական կանոնաց , Թէ մի՛ ոք յե-
պիսկոպոսաց դատեսցէ զվէճ արտաքոյ սահ-
մանաց իւրոց . և եԹէ անգիտանաս , ուսի՛ր .
և 'ի բա՛ց կաց 'ի մուրհակաց ամբաստանու-
Թե հակառակ իմ գրելոց . զի Թէ պարտ էր
ինձ դատիլ , յեպսացն եգիպտացւոց ունէի
դատիլ . և ո՛չ 'ի քէն` որ եօԹանասուն և հինգ-
աւուրց ճանապարհաւ 'ի բացեայ ես 'ի տեղ-
ւոջէս || :

Տեսեալ ոսկեբերանի` Թէ ոչ ուղիղ միտք
ծանուցաւ առաջարկ իւր , յետս եկաց 'ի
հաշտեցուցանելոյ զնիտրացիս ընդ պատրիար-

գլին Լուբեանց, այլ արձակեաց զնա խաղա-
ղութբ, զի ինքնին հաշտեսցին, և մի լիցին
խափան կարևոր պաշտաման իւրում՝ ի վերայ
սեպհական հօտին։ Բայց (ը̃ս գրելոյ սոկ-
րատայ) բանսարկուք համբաւ ստութե̃ տա-
րան առ Թէոփիլոս, թէ նա զառ 'ի քէն բա-
նադրեալսն ընկալաւ 'ի նը̃ խորհուրդն, և
թէ ձեռն 'ի գործ արկեալ է լինել նց̃ 'ի Թի-
կունս. վ̃յ և Թէոփիլոս զնմ̃ զցասումն իւր
դարձոյց 'ի վ̃ր ոսկեբերանին, և խորհէր ըն-
կենուլ զնա յաթոռոյ. թող զայլ անցս՝ որք
անցին ը̃ միայնակեացս։

Իսկ Ս̃ըն եպիփան՝ որ անտեղեակ էր խորհր-
դոց Թէոփիլեի, շարժեալ յօրինակէ նր̃՝ ա-
ղել և ինքն ժողովով զգիրս որոգինի. և
գրեաց առ ոսկեբերանն՝ զնոյն առնել. ո̃չ
գրեալ էր առ նա և Թէոփիլէ։ Այլ զի ոսկե-
բերանն զբաղեալ 'ի հոգս եկեղեցւոյ իւրո̃յ
յորում չգոյր որոգինեան խնդիր, անհոգա-
նալ թուէր յօտարին բանս, և ուշ ունէր մի-
այն հանապազորդեան քարոզութե̃ բանին
ա̃յ, յարեաւ եպիփան անձամբ գալ 'ի կոս-
տանդինուպօլիս, և բերան 'ի բերան խօսել
ը̃ ոսկեբերանին. Թերևս և արդարացուցա-
նել միանգամայն զԹէոփիլէ։

Ի նոյն աւուրս և Թշնամիք ոսկեբերանին
'ի կոստանդինուպօլիս՝ եթէ յիշխանաց և ե-
թէ յեկեղեցականաց, գրեալ էին առ բա-
զումս, ո̃չ և առ Թէոփիլոս՝ գալ 'ի Թագա-
ւորեալ քաղաքն, և ժողովով ընկենուլ զոս-
կեբերանն. և նա պատուէր տուեալ ե̃պաց
և-

Եգիպտացւոց վ՟ս սոցին իւրեանց՝ կամէր և ինքն անկանիլ 'ի Ձնմրհ ։ Այլ ահա հրովարտակ հասանէր առ նա յիշխանականէն արկադեա-նէ՝ ոչ վ՟ս բանին յանձնանու, այլ վ՟ս անցիցն սկիտացւոց և այլոց իւրաց՝ գալ 'ի դուռն, և տալ պ՟խնի ամբաստանութեանց եղելոց զնմանէ ։ Արդ Թէոփիլոս ել 'ի Ճանապարհ երկմիտ խորհրդով ․ իսկ եպիսկոպոսունք նր՟ վաղագոյն ու-ղևորեալ էին ․ յորոց և ոմանք յառաջ հա-սեալ քան զեպիփան 'ի կոստանդինուպօլիս՝ 'ի գալ նր՟ լցին զմիտս նորա պէսպէս պղտոր բանիւք ը՟դէմ ոսկեբերանի ։ Սմին իրի յոր-ժամ ել ոսկեբերանն ը՟ առաջ եպիփանու սիրով, և հրաւիրեաց իջևանիլ 'ի հայրապե-տանոցի, նա ոչ էառ յանձն ․ յորմէ 'ի միտ էառ ոսկեբերան, թէ բանսարկուք կան 'ի միջի ։

Ապա Թէոփիլեանք Թելադիր եղեն եպի-փանու, զի առանց ը՟ բանս ինչ ածելոյ ստի-պեսցէ զյովհաննէս 'ի դատապարտել զմ՟մ գիրս որոգինի ․ բայց ը՟դէմ եկաց այսմ Թէո-դիմոս եպս՟ սկիւթացւոց՝ այր ս՟բ, ասելով ․ զի՞նչ հարկ 'ի վր՟ կայ յայժմուս զիրացդ ․ թող զի թէպէտև մոլորութիւնք որոգինի յայտ-նի են իմաստնոց, այլ կան և բազում բանք ընտիրք և պիտանիք 'ի գիրս նր՟ ։ Այլ յոսկե-բերանէ իսկ զայս պ՟խնի ընկալաւ եպիփան, թէ գործդ այդ պէտս ունի յերկար ժամա-նակի և քննութե՟ ։ Այլ զի եկեալ էին միաբան-դամ սկիտացիք 'ի կոստանդինուպօլիս՝ ամ-բաստան լինել զԹէոփիլեայ, և արդարացու-

ցա-

ցանել զանձինս, ոսկեբերան յղեաց զնոսա առ Եպիփան՝ տեսանել թէ զի՞նչ առիցէ ։ Եհարց զնա Եպիփան, և ասէ. ո՞ էք դուք ; և զի՞նչ խնդրէք ։ Նոքա ասեն. 'ի Հարցն սկիտոյ եմք, և խրատուն խնդրեմք վասն յանիրաւի հալածելոյ զմեզ Թէոփիլէ պատրիարգին. մանաւանդ զի լուաք՝ թէ և դու 'ի նմին բանի ես. միթէ տեսեա՞լ է քո զաշակերտս մեր անկեալ 'ի հերձուած, կամ ընթերցեա՞լ իցէ քո զգիրս ինչ մոլորութեան զմեր ։ Ասէ Եպիփան. չի՛ք իմ տեսեալ, այլ՝ լուեալ ։ Սկիտացիք ասեն. մեք զհակառակն արարաք. զի տեսաք զաշակերտս քո, և զգրոց եւս քոց հանդիպեցաք, զորոց չարախօսէին այլք. բայց մեք ըստ կարի մերում արդարացուցաք զքո կողմն ։ Յայնժամ արձակեաց զնոսա Եպիփան յիւրմէ. և տեսեալ՝ թէ ո՛չ 'ի լաւ անդր բերին այս անցք, փութայր մեկնիլ 'ի տեղւոջէն, և դառնալ յաթոռ իւր ։

Յայնմ վայրի հասեալ Թէոփիլեայ 'ի քաղկեդոն՝ յինքն ձգեաց զ[illegible] յեպսաց. Թո՛ղ զիւրսն. և գտեալ զկիւրինոս քաղկեդոնի եպս եւս յիւր կողմն՝ քանզի եգիպտացի էր ազգաւ, ուրախ եղև յոյժ ։ Ուրանոր պատմեն սոզոմենոս և սոկրատ, թէ 'ի սկսանել կիւրինոսի չարախօսել զոսկեբերանն՝ իսկ և իսկ խորտակեցաւ 'ի մերուստ. Զի յաւուրսն յայնոսիկ անդր եկեալ էր ոմն մարութա եպս նփրկերտոյ՝ անցանել 'ի թգ̄րական քաղաքն վս̄ իրացն արևելեայց. և 'ի հանդիպելն կիւրինոսի 'ի խուռն կոխեաց զոտս նր.

յոր-

յորմէ ցաւագնեալ՝ ոչ կարաց անցանել ընդ Թէոփիլեայ 'ի բիւզանդիոն. և կրեաց զայն ցաւ ոտից մինչև ցմահ իւր ։

Իսկ Թէոփիլոս միաբանութեամբ ստախօսացն ոսկեբերանի, յորս անուանի էին ակակիոս, անտիոքոս և սևերիանոս եպսունք, կոչեաց զոսկեբերան 'ի ժողով եպսաց որպէս դատելի ։ Այնմի արար ոսկեբերան. նախ եկեսցէ Թէոփիլոս, և տացէ պինսն չարախօսաց իւրոց. և ապա զիս կոչեսցէ 'ի դատ. Թող զի առէր, ելցէ Թէոփիլոս 'ի ժողովոյ այտի, և այլ ոք լիցի դատաւոր անաչառ. և յայնժամ գամ 'ի ժողովդ. զի Թշնամութեան Թէոփիլոսի ընդդէմ անձին իմոյ վկայ ունիմ զբանս նր ասացեալս զինէն յաղեքսանդրիա և 'ի լիկիա, Թէ 'ի ժողով երթամ, զի ընկեցից յաթոռոյ ըզ-յովհաննէս ։

Տեսեալ Թէոփիլոսի՝ Թէ ոչինչ վճարէ 'ի քաղկեդոն, յարուցեալ էանց 'ի կոստանդինուպօլիս՝ գիտելով զԹագուհին յիւր կողմն. այլ 'ի մտանելն նր 'ի Թագաւորեալ քաղաքն՝ ոչ ոք յուխտէ եկեղեցւոյն ել ընդ առաջ նր. զի ամենեքին գիտէին՝ Թէ նա հակառակ է հայրապետին իւրեանց. բայց միայն նաւավարք և նաւաստիք աղեքսանդրացւոց գտեալք 'ի քաղաքին՝ ուրախութեամբ և պատուով ընկալան զԹէոփիլոս. վնյ և ինքն Թէոփիլոս ոչ հանդիպեցաւ յողջոյն եկեղեցւոյն, այլ դէպուղիղ գնաց 'ի պալատն արքունի ըստ կոչման եւդոքսիայ Թագուհւոյն՝ որ ժամ 'ի ժամէ մնայր գալստեան նորա. զի Թէպէտև ոսկեբե-

բերան ը՟ն կարգի անոխակալութե՟ հրաւիրեաց զԹէոփիլոս 'ի հիւրանոց իւր , բայց նա չէառ յանձն ։

Զայնվայր Թ՟գ՟րն արկադէոս 'ի կողմն էր ոսկեբերանին . վ՟ոյ հրաման ետ նմա , զի եկեալ 'ի պալատն՝ հատցէ զդատ Թէոփիլոսի և ոսոխաց ն՟ր . բայց ոսկեբերան 'ի բաց հրաժարեաց՝ ասելով . Թո՛ղ դատեսցի յատենի եպ՟սաց իւրոց յերկրի իւրում , և ո՛չ 'ի մէնջ յաթոռ մեր ։

Իսկ Թէոփիլոս զերիս եօթնեակս մեքենայէր ը՟ն համախոհս իւր և ընդ եւդոքսիայ թագուհւոյն՝ քակտել զուխտ եկեղեցւոյն 'ի յովհաննէ , և գտանել իրաւունս առ ընկենուլ զնա յաթոռոյ . և արդարև ձգեցին զոմանս յուխտէն 'ի կողմն իւրեանց , մանաւանդ զյանցաւորս . և գտին բանս ամբաստանութե՟՝ զբարի բարի գործս ն՟ր 'ի չարն խեղաթիւրելով ը՟ն թելադրութե՟ ատելութե՟ , զ՟ի թէ յովհաննէս նորաձևութիւնս մուծանէ յեկեղեցին , զի ինքնին առնէ և այլոց ուսուցանէ՝ յետ հաղորդելոյ ն՟ք խորհրդոյն առնուլ սակաւ մի ջուր 'ի բերան , կամ ծամել ինչ , զի մի՛ մնասցէ մնացուած 'ի խորհրդոյն 'ի բերանի . սոյնպ՟ս և այլ ինչ բազում ։ Յաւէլ առաւել թագուհին եւդոքսիա պատճառէր , թէ ո՟չ բազում անգամ 'ի քարոզի ընդ վայր հարկանէ զկանայս՝ զիս կամելով թշնամանել , նոյնպէս և յաւուրս յայտնիկ խոստագոյնս բարբառեալ է ը՟դէմ անձին իմոյ . և արդարև խօսեցեալ էր սակայն , բայց ո՛չ ը՟դէմ թա-

Թագուհւոյն, այլ և ըղձեմ անկարգութեանց եղելոց 'ի մէջ կանանց ազգի։ Իսկ ահա առաւելապէս այսուիկ կանացի պատճառանօք շըրջեաց եւդոքսիա և զմիտս անարի կայսեր արկադեոսի. և ստիպէր օր մի յառաջ ընկենուլ յաթոռոյ զյովհաննէս։

Կոչեաց եւդոքսիա և զսբն եպիփան, և բռնադատէր զնա միաբանել յանկումն յովհաննու. և յոյժ հաւանել սմին առնել զայն անպատճառ, ասաց սմին եւդոքսիա մոլեգնութեամբ. եթէ ոչ ընկենուք զյովհաննէս, տամ բանալ զտաճարս կռոց։ Յայնժամ սբն եպիփան ել յատենէ անտի՝ ասելով, անպա՛րտ եմ ես առաջի այ. և փութացաւ մտանել 'ի նաւ, և գնալ յաթոռ իւր 'ի կիպրոս։ Պատմեն աստանօր միաբան սոկրատ և սոզոմենոս ընդ այլ ոմն գրիչս վարուց ոսկեբերանի, թէ յայսմ՝ վայրի մարգարէացան երկոքին սրբքն՝ եպիփան և ոսկեբերան զլինելոցն միմեանց. զոր այսպէս առաջի առնէ ճառընտիրն մեր։ Հրամանաւ թագուհւոյն զգացուցին (ասէ) յովհաննու, եթէ եպիփան գրեաց ձեռնարկութեամբ իւրով ընդ թեոփիլեանս վն անկման քո և արտաքսմանն. ընդ որ տրտմեալ յովհաննու՝ գրէ առ եպիփան այսպէս. Ով սքանչելիդ եպիփան՝ որ յօժարեցար յանկումն իմ, մի՛ հասցես դու յաթոռն քո. մանաւանդ զի և արտաքոյ առաքելական սահմանադրութեանն և կանոնելոյ գործեցեր՝ առնելով զձեռնադրութիւն յիմում վիճակին. և զկապեալսն բանիւ իմով արձակեցեր

թաղայիւք ։

Այս կոչեաց ժողովականն զաւրուտ եկեղեցւոյն կոստանդնուպօլսոյ, և հարկեցուցանէր միաբանիլ յանկումն յովհաննու. մինչ զի որ ոչն հնազանդէր, անկցի 'ի պաշտամանէն. յայնժամ գտան ոմանք 'ի քահանայից՝ որք միաբանեցան ԼԶ նմ, և էին երևելիքն արսակիոս աւագերէց (որ եղև յաջորդ ոսկեբերանի), և ատտիկոս և ելպիդիոս և ակակիոս երիցունք ։

Ժողովեալ էին և 'ի կոստանդինուպօլիս այլ եպիսկոպոսունք քառասուն 'ի կողմն ոսկեբերանի. յորոց մի էր և պաղադիոս, որ պատմէ զայսոսիկ. արդ մինչդեռ նստէաք ասէ 'ի հայրապետարանացի, երանելին յովհան լցեալ հոգւով՝ ասէ ցմեզ. Աղօթս արարէք եղբարք վս իմ. և եթէ սիրէք զքս, մի ոք 'ի պատճառս իմ լքցէ զեկեղեցի իւր. զի իմ ժամանակ լցեալ է ըս պօղոսի, և որպէս կարծեմ՝ թողից զլր տառապանօք կեանս իմ. քանզի գիտացի զդաւաճանութի բանսարկուին, որ ոչն կարաց ժուժել ծանրութե բանից իմոց ընդդէմ նր ։ Իսկ եպիսկոպոսացն յարտասուս հարեալ համբուրէին զնր գլուխ նր և զշնորհալի բերանն ոսկի. և ոչ կարացեալ տանել ողորմ դիպուածոյն, զի բանաւի թագաւորոյն կայր 'ի մտի, կէսք կամէին 'ի բաց գնալ, և կէսք ոմն մեղուք զփեթակաւն տատանէին ։

Ասէ յովհաննէս. նստարուք աղաչեմ 'ի տեղիս ձեր. դադարեցէք 'ի լալոյ, և մի ձմլեցուցանէք զսիրտ իմ. զի ինձ կեանք քս է,

և

և մեռանել շահ. յիշեցէք զոր միշտն ասէի ձեզ, թէ ճանապարհ է կենցաղս. որոյ ուրախալիք իւր և տրտմալիք միօրինակ անցանեն. և շահավաճառ է Տս, գնեմք և վաճառեմք, և 'ի բաց չուեմք. միթէ լաւ ինչ իցեմք քան զնահապետս և զմարգարէս և զառաքեալս, զի անմահ մնասցուք յաստիս: Նու յասել նմ̃, թէ որք մնամք 'ի քէն, և եկեղեցիդ մնայ այրի, եւ պխնի. ոչ լինէն սկիզբն էաւ պաշտօն քարոզուԹ, և ոչ լիս դադարեսցէ. ոչ մովսեսի յաջորդեաց յեսուս, սամուէլի դաւիթ, երեմիայ բարուք, եղիայի եղիսէ. պօղոսի տիմոթէոս և տիտոս և ապօ-

ղոս և այլք անթիւք:

Յայնժամ ասէ եւղիւսիոս եպս ապամոյ բիւթանացւոյ. եթէ կամիցիմք մնալ յեկեղեցիս մեր՝ ոչ պատուիրես, հարկ լինի մեզ հաղորդիլ ԸՆ հակառակորդս, և ձեռն դնել 'ի մուրհակս ամբաստանութ նց զքէն: Ասէ սբն. հաղորդիլ հաղորդեցարուք, զի մի պատառիցէք զեկեղեցին. այլ մի ձեռնագրեք. զի ես ոչինչ գիտեմ զանձին իմոյ չարութիւն, որ մի արժան իցէ ինձ անկանիլ

յաթոռոյ:

Յայնժամ պահու հասին նուիրակք թէոփիլեանց՝ երկու նորընծայ եպսունք՝ դիոսկորոս և պօղոս, և մատուցին առ ոսկեբերան նամակ այսպիսի. Սբ ժողովս՝ որ 'ի կաղնիս, յովհաննու. Մուրհակս ընկալաք զքէն՝ անբաւ յանցանօք լի. արդ եկ այսր, բերել ԸՆ քեզ և զարապիոն և զտիգրիոս երիցունս

 և

և զպօզոս վերծանօղ․ զի պիտոյ են ։

Նա այս պատճառի ետուն եպսունք՝ որ Ը ոսկեբերանի․ Նսացէք ցԹէոփիլոս եպս ( որ և ոչ եպս կոչեալ զյովհաննէս )․ մի խանգարեր և մի պատառեր զեկեղեցի, որ վն ըմ երևեցաւ ’ի մարմնի․ յուշ լիցին քեզ կանոնք Նիկիոյ․ և դու անց ’ի Թեբրակիան քաղաքս․ և մի կոչեր ’ի դաշտ՝ ուր կայեն զհարբէլ․ զի մեք նախ լուիցուք զդատ քո․ քանզի կան առ մեզ մուրհակք ամբաստանութե վն քո յեօթանասուն գլուխս ծանր ծանր բանից․ և մեք ժողովեալքս ’ի խաղաղութի եկեղեցւոյ շնորհօքն այ՝ բազումք եմք քան զքոյսդ․ զի դու երեսներորդ վեցերորդ ես ’ի միոյ նահանգէ․ իսկ մեք քառասուն թուով յայլ և այլ գաւառաց, յորս են և եօթն մետրապօլիտք ։

Իսկ ոսկեբերանն ասէ ցիւրսն․ դուք զոր գիտէք՝ ասացէք․ այլ ինձ պէտք են պատճառի առնել զրոյն․ և գրեալ երանելին, թէ ես թէ պէտ ոչինչ գիտեմ զանձին, բայց գամ ’ի ժողովդ, եթէ հանջիք նախ արտաքս զյայտնի թշնամիս անձին իմոյ․ արդ սք են՝ զորս որոշեմ․ Թէոփիլոս, ակակիոս, անտիոքոս և սեւերիանոս․ որք ոչ կարեն լինել դատաւոր իմ․ ապա եթէ դատախազք իցեն, զորայց ինձ արարէք․ զի գիտացից պատրաստ լինել՝ արդեօք իբրև ընդդէմ ոսոխաց, եթէ իբրև ընդդէմ դատաւորաց։ Եւ արդարև եկից յայս ժամ՝ ոչ միայն առ սէրդ ձեր, այլև առ ամ ժողով չորից ծագացդ․ և արդ գիտասջիք,

զի թէ և բիւրիցս անաքեալջիք առ իս, ոչինչ աւելի ունիք լսել յինէն: Ընոյն պինի ա-րար 'ի գալ պատգամաւորաց երկոց և չորիցս: Այն եղև պխնի ութ՟յն և առ նուաճիրակն եկեղ 'ի դրանէ յանուն եւդոքսիայ թագուհւոյն և արկադեայ կայսեր:

Յայսմ վայրի գրեցան այլևայլ նամականի յոսկեբերանէ և 'ի թէոփիլեանց առ գահն հռովմայ և առ այլ աթոռակալս տեղեաց տեղեաց: բայց մինչ չև եկեալ էր պխնի 'ի նոցունց, փութացոյց եւդոքսիա զթէոփի-լոս՝ ընկենուլ զյովհաննէս, որ բողոքէր առ ժողով ԺԲ հանուր: մինչ և ժողովակն թէոփի-լեանց գրեաց ԽԶ եմ յովհաննու զվճիռ անկ-մանն յաթոռոյ. և յղեաց զպատճէնն առ թա-գաւորն արկադեայ՝ յաւելուածով յայտնի չարախօսութե, ոչ թէ գործեալ իցէ յովհան-նու և քրէական յանցանս ԽԶ եմ թշնութեդ, և յեզաբէլ անուանեալ զթագուհին:

Այս առհա եկին յարքունուստ զօրականք, և կոմս մի ընդ նմ՝ հանել զերանելին յովհաննէս յեկեղեցւոյն և 'ի հայրապետանոցէ. և նա յօժարութբ կամէր գնալ ընդ նմ. զի և հասեալ իսկ էր ասեն յականջս. նա չոր սպառնալիք թագուհւոյն, թէ 'ի կալ մնալ յովհաննու՝ բանալ զմեհեանս: Բայց ժողովուրդ քա-ղաքին իմացեալ յերեկոյէ զիրսն՝ զգիշերն ողջ հսկէին զեկեղեցեաւ չթողուլ տանել զհայրապետն 'ի բաց: Իսկ երանելին յառաւ-ուտուն քարոզի յեա գումելոյ զառաքինի փոյթ հօտին իւրոյ 'ի վր հովուին՝ յորդորեաց զնո

սա

խաղաղիլ, և մի լինել խռովընդդանին աքսորա-
նաց իւրոց. զի տն է ասէ երկիր լրիւ իւրով.
այլ ես և 'ի մահ պատրաստ եմ վն անուանն
տն. և դուք հաստատունն կայցէք 'ի տր ամ-
բիծ հաւատով և անարատ վարուք. զի այս
է ինձ պսակ պարծանաց, և մխիթարութի և
օծութի և կեանք և անմահութի:

Բայց տեսեալ՝ թէ ոչ թողուն զնա ժողո-
վուրդն, և լինի աղմուկ և արիւնհեղութի,
զայն որ դեգերեցաւ 'ի հայրապետանոցի. և
յաւուրն երրորդի զմիջաւուրբ ետ զանձն 'ի
ծածուկ 'ի ձեռս արքունի սպասաւորաց, զի
մի երևեսցի հակառակ կալ թգրական իշ-
խանութե. և յայնմ երեկոյի եդին զերանե-
լին 'ի նաւ, և գիշերայն առաքեցին 'ի Պռե-
նետոսն բիւթանիոյ, որ և հերոն կոչի. Եւ
ո՞ կարէ պատմել աստանօր զբողոք և զլալիւն
ժողովրդեանն՝ հանդերձ անիծաբանութե ընդ-
դէմ թէոփիլեանց:

Իսկ թէոփիլեանք ոչ թէ յաղթանակ կանգ-
նեալ՝ եկին 'ի թագաւորեալ քաղաքն. և
առ ամենեսին չարախօսէին զյովհաննէ: և
կամէին դնել զայլ ոք յաթոռ կոստանդնու-
պօլսոյ. յորում առաւել ևս դղրդեցաւ քա-
ղաքն ընդդէմ թշնամեաց յովհաննու: Եւ
քանզի իշխեաց սեւերիանոս ասել 'ի քարոզի
զայն, զոր և ակակիոս էր ասացեալ 'ի ժողո-
վակի անտ իւրեանց, թէ թէև ազատ լինէր
յովհաննէս յամ յանցաւորութէ, դատապար-
տելի էր վն հպարտութե իւրոյ. զի տր՝ որ
թողու զամ մեղս, ամբարտաւանից հակա-

ռակ կայ , Է այս չհանդուրժեալ ժողովրդ-
դեան՝ ամբոխ արարին յեկեղեցւոջ , և 'ի
դուրս վազեալ՝ դիմեցին բազմութբ 'ի դուռն
արքունի , և ձայն բարձեալ աղաղակէին գու-
ժալով և կոծելով . յետս կոչեցին սբ հայ-
րապետն մեր յովհաննէս :

Յայնժամ վայրի Թէոփիլոս բռնացեալ արքու-
նի զօրականօք՝ կալաւ զերևելի եկեղեցիս
քաղաքին , տալով հարկանել զամբոխն սու-
սերօք և բրօք . մինչև լինել արիւնհեղութե
և այլ ևս գործոց բռնակալութե : Նա և յաղ-
թեաց բռնաւորութե գոչումն աղօթից բովան-
դակ քաղաքին առ ած . մինչև մեղմանալ և
սրտի եւդոքսիայ թագուհւոյն 'ի բողոքմա-
նէն հասարակաց : Նայց տր դարձոյց զսիրտ
թագուհւոյն և յայտնի սքանչելեօք . քանզի
'ի գիշերին յայնմիկ՝ առէ թէոդորետոս , եղև
ահագին շարժումն երկրի . և ահ մեծ ան-
կաւ 'ի վր եւդոքսիայ . կմ ըս ասելոյ սոկրա-
տայ՝ 'ի վաղիւ ոնդր եղև պատուհաս իմն
յարքունի սենեկի անդ . և կմ ըս պալադիո-
սի՝ արհաւիրք անկան 'ի տնէ 'ի վր թագուհ-
ւոյն : (11)

Սորին վր յերկրորդ աւուր անդ ստիպեաց
ինքնին եւդոքսիա զարկադէոս՝ յղել պատ-
ուիրակս , և դարձուցանել զյովհաննէս յա-
թոռ իւր : Յայնժամ գրեաց թգրն թուղթ
խոնարհական առ սբն , թէ ես չէի կցորդ
չարախօսաց և դաւաճանողաց անձին քո . և
թէ յարգեմ զքեզ որպ քահանայ այ և հայր
հոգևոր . և յղեաց վաղվաղակի 'ի ձեռն բրի-

սռ

տանի հաւատարիմ ներքինւոյն և բարեկամին յովհաննու, զի դարձուսցէ զնա հայրապետն 'ի տեղւոջէ աքսորանաց 'ի բիւթանիոյ (այն է մուտանիա)։

Գրեալ էր և եւդոքսիա չքմեղութ՟ն զանձնէ այսպիսի (ի̃ւ յառաջ բերելոյ նորուն ոսկեբերանի 'ի ձեռս իւր՝ որ զկնի դարձին). * Մ՛ի համարեսցի սրբութ՟ն քո՝ գիտակ լինել ինձ իրացն գործեցելոց. անպարտ եմ ես յարենէդ քումմէ. չար և անզգամ մարդիկ զայդ մեքենայեցին. այլ իմոյս արտասուա՛ց ա՟ծ վկայ, ում մատուցանեմ պատարագս... յիշեմ, զի զաւակք իմ 'ի ձեռս քո կնքեցան ||, այլովքն հանդերձ ։

Արդ 'ի գալ կոչողին 'ի պրենետոն բիւթանիոյ՝ որ է յանդիման նիկոմիդեայ, ոչ կամեցաւ յովհաննէս իսկ և իսկ դառնալ 'ի թագաւորական քաղաքն. այլ զտեղի էառ 'ի գիւղն մարիանայ. մինչև յայտնի լիցի ասէ իրաւացի քննութ՟բ ժողովոյ անմեղութիւն դարձելոյն ։ Բայց քանզի մի զհետ միոյ ընթանային պատուիրա՛կք, մինչև բազմանալ յոյժ նաւաց և նաւակաց 'ի վերայ ծովուն, հարկեցաւ ս՟բ հայրապետն յետ քանի մի աւուրց գալ անցանել 'ի կոստանդինուպօլիս. այլ իբրև եւ 'ի կալուա՛ծ թագուհւոյն՝ անապլոն ասացեալ, դարձեալ սպասէր, զի նախ արդարացուսցեն զինքն եպիսկոպոսունք, և ապա մտցէ յեկեղեցին ։ Իսկ ժողովուրդն իմացեալ զայն՝ վերստին վառեցաւ բորբոքեցաւ ընդդէմ եպ՟սաց. նմին իրի և ոսկեբե-

բանին անդանդաղ եկն եմուտ յեկեղեցին ։ Յայնժամ վայրի խոյս տուեալ փախչէին Թաքչէին հակառակորդք յովհաննու՝ որ յեպիսկոպոսաց և ՚ի քահանայից ։ և Թէոփիլոս ինքնին փաղստգոյն քան զամենեսեան աճապարեալ էանց յաստիակողմն ։ և անդ կամէր զատ տանել ՚ի վր հերակղիտոսի եպսին ՚ի բացակայութենն ։ այլ ՚ի լինել աղմկաց ՚ի մէջ կոստանդնուպօլսեցւոց և աղեքսանդրացւոց մինչև ցհեղումն արեան, գաղտագնաց եղև և անկաւ յերկիր իւր՝ իւրովքն հանդերձ ։

Իսկ երանելին յովհաննէս ոչ մտանել յեկեղեցի իւր՝ առ օրին խօսեցաւ առակաւք բանս մխիթարութե առ ժողովուրդն ։ և ՚ի մաղիմ անդր Ձոխաքար ՚ի կիր արկեալ զբռկիաբուղխ վէպսութիւն՝ սքանչացոյց զամենեսին ոչ անօտխակալ և ոչ անայլայլելի առաքինութի անձինն, ոչ սէրն՝ զոր ունէր ՚ի վր հօտին, և ոչ զուարթութի հոգւոյն՝ որով զօհանայր զա՞յ ՚ի վր անցիցն անցելոց ։

Նորդ այս ճառ խաւսուիք՝ որ ոչ դէմ ունեբերանի, եղեն յամի տն 403 և 404 ։ Իսկ արտասահմանութին ևեաց օր մի ևեթ ։ զի յերկրորդ աւուր յետս կոչեցաւ ։ և յաւուր երրորդի կամ չորրորդի եմուտ ՚ի քաղաքն ։ Յայնժամ ժողովեցան եպսունք իբր վաթսուն ։ և հաստատեցին զանմեղութի քահ հովուին, և ՚ի դերև հանին զնմ զբրաբառութիւ ժողովակին Թէոփիլեանց ։ և եղև առ ժամն խաղաղութի ՚ի Թգրական քաղաքի ։

Նոյլ յետ անցանելոյ երկու ամսոց՝ միւսան-

գամ

դամ արծարծեցաւ 'ի փչմանէ չարին Թշնա-
մութեան եւդոքսիայ թագուհւոյն ընդդէմ ոսկե-
բերանի. քանզի 'ի խլատել հայրապետին
զեւդոքսիա 'ի բաց բառնալ զարձան իւր՝ զոր
կանգնեալ էր 'ի վերայ սեան յանդիման եկե-
ղեցւոյ սրբոյն սոփիայ, ուր և հեթանոսական
խաղք լինէին, ըմբռնացաւ թագուհին, և
խորհէր չարիս 'ի վերայ յովհաննու: Իսկ նա 'ի
քարոզս իւր ընդ առաքելական համարձակախօ-
սութեան խօսէր բանս ազդուս 'ի կշտամբութիւն
անկարգութեանց մեծի և փոքու. իսկ եւդոքսիա
համարէր՝ թէ զինքն կծանէ նա յամենայն բանս
իւր: Մինչ զի գտանի և ճառ յանուն ոսկե-
բերանի յաւուրց անտի նորա 'ի մէջ յունաց.
որոյ սկիզբն է. * Դարձեալ հերովդիադա
մոլի. դարձեալ խռովի, դարձեալ կաքաւէ,
դարձեալ զյովհաննու զգլուխ 'ի վերայ սկտեղ ա-
նուլ ցանկանայ ||:

Իմացեալ հակառակորդաց ոսկեբերանին ըզ-
ծանրացաւութիւն լինել թագուհւոյն 'ի վերայ նորա,
գրեցին վաղվաղակի առ թէոփիլոս, զի կամ
անձամբ վերստին եկեսցէ, և կամ առաքեսցէ
զոմանս յիւրոցն առ 'ի միանգամ հանել
յաթոռոյ զյովհաննէս. և նա առ ահին ոչ
եկն, այլ յղեաց միայն զերիս եպիսկոպոսս. ե-
կին և այլ առաջնորդք յասորւոց, 'ի պոնտաց-
ւոց, 'ի փռիւգացւոց և 'ի կապադովկացւոց.
զորս արկադէոս թոյլ էր կոչել 'ի կողմն ոսկե-
բերանի, և եւդոքսիա ընդդէմ նորա. ուստի և ար-
դեամբք պառակտեցան 'ի մէջ իւրեանց. զի
ոմանք յեկելոց անտի հաղորդեցան ընդ ոսկե-

բերանի, և այլք 'ի բաց կացին 'ի հաղորդու-
թենէ նորա․ և զթագաւորն գլխովին յետս նա-
հանջեցին, զի մի՛ երթայցէ յաւուր տօնի
հրաշափառ ծննդեան Տեառն յեկեղեցի նորա։ Իսկ
նորանոր պատճառանօք կուտեալ 'ի ժողովս
իւրեանց ընդդէմ երանելւոյն, թէ դարձ նորա
չեղև օրինօք, ոչ գրեալ էր և թեոփիլոս,
շրջեցին զմիտս թագաւորին․ մինչև ետուն նմա
առաքել պատուիրակս առ յովհաննէս, զի
ելցէ յեկեղեցւոյ։

Յայնժամ ոսկեբերանն արար պատասխանի՝ ըստ գրե-
լոյ պաղատիօսի․ * Ես յիսուսէ փրկչէն ընկալայ
զայս եկեղեցի՝ հոգ տանել փրկութեան ժողովր-
դեան․ և ո՛չ կարեմ թողուլ զայն․ ապա ե-
թէ քեզ այդպէս կամք իցեն, քանզի ըստ քո
իշխանութիւն է քաղաքս, բռնութեամբ արտաքսեա՛
զիս․ զի իշխանութիւն քո ինձ լինիցի անմեղադա-
րութիւն թողլոյ զիմ կարգ ||։ Ապա եկին ոմանք
յարքունի դրանէ, և զգուշութեամբ առեալ տա-
րան զնա յեկեղեցւոյ 'ի հայրապետանոցն․
և անդ թողին զնա։

Իսկ 'ի ճրագալուցի զատկին՝ յորում ինքնին
մտեալ էր կին կամէր մտանել ոսկեբերան յե-
կեղեցին ընդ թախանձելոյ ուխտին և ժողո-
վրդեան, հասին 'ի վերայ զօրք արքունի, և հա-
րին ցրուեցին զամենայն ամբոխն քահանայիւք
հանդերձ 'ի տաճարէ անտի․ և 'ի փախչիլ
նոցա ընդ երեկս յընդարձակ մկրտարանն՝ կոստան-
դիանոսի կոչեցեալ, 'ի մէջ գիշերի եկին զօ-
րականք, և անտի ևս հանին վարեցին զնոսա
'ի բաց․ ըստ նմին օրինակի հալածեցին զնե-

ուորք

ուրոյք յաւուր զատկի զբազմութիւն նորակն-
նունք ժողովրդեան՝ որք շրջէին արտաքոյ
քաղաքին 'ի հանդերձս սպիտակս, զարս և
զկանայս. մինչև զոմանս 'ի բանտ արկանել
և 'ի կապանս ։

Պատաւ և ամն յարբանեկաց չարին, որ դիւա-
հար ձևացեալ՝ գողեալ ունէր զսուսեր, զի
պատահել ումեմն հայրապետին՝ սպանցէ զնա.
այլ ըմբռնեցաւ 'ի սպասաւորաց ատենի՝ ածաւ
առ քաղաքապետն. զոր լուեալ սքանչելւոյն
յովհաննու՝ փութապէս առաքեաց զոմն յե-
պիսկոպոսաց իւրոց, և ազատեաց 'ի պատժա-
պարտութէ զդաւադիրն կենաց իւրոց ։ Ըմբռ-
նեցաւ և ծառայն ելպիդիոսի երիցու, այն՝
որ յարձակեալ էր սուսերամերկ 'ի հայրապե-
տանոցն, և ոչ կարացեալ առնել ինչ յովհան-
նու՝ զոմանս 'ի ժողովրդենէն կարեվէր խո-
ցեալ էր. ուստի և կուսակիցք յովհաննու
պահ եդեալ զգուշութբ պահէին զհայրա-
պետանոցն զցայգ և զցերեկ ։

Իսկ զկնի պենտեկոստէին 'ի յունիսի. 20.
յամի տն 404. եկն առ սբ հայրապետն պատ-
րիկիոս արքունի նոտար բանիւ արկադեո-
սի կայսեր, և ասէ. ակակիոս, անտիոքոս,
սեւերիանոս և կիւրինոս եպիսկոպոսունք ասացին
ցիս, թէ 'ի մեր գլուխ եղիցի անկումն յով-
հաննու. արդ յանձն արարեալ զքեզ այ՝ ել
յեկեղեցւոյ և 'ի քաղաքէս ։ Այս պատ-
գամ արքայի լուեալ երանելի հայրապետն՝
գոհացաւ զայ. և յարուցեալ ողջոյն ետ ե-
պիսկոպոսաց և քահանայից եղելոց առ նմ,
և

և հրաժարեաց 'ի նոցանէ արտասուօք ․ և արք դրանն յափշտակեցին զնա , և եդին կապանօք 'ի նաւակ մի փոքր՝ հանդերձ երկու ընկերօք կերպակոսիւ և եւղիւսիոսիւ , պատուէր տուեալ փութանակի անցուցանել զնա 'ի նիկիա բիւթանացւոց , և անտի փութացուցանել 'ի սահմանեալ տեղի աքսորանաց ․, զի անյոյս մնասցէ ժողովուրդն 'ի միւսանգամ դարձէ անտի նր̃ ։

Այլ եղև առ օրին պատուհաս 'ի ա̃ծնէ 'ի քաղաքին ․ զի 'ի նմին աւուր յանկարծակի հուր անկաւ յեկեղեցին , և յետ հրդեհելոյ զայն՝ էանց 'ի պալատն , և այրեաց զընդարձակ ապարանս սինկղիտոսին՝ որ փողոցաւ զատեալ կայր հանդէպ նր̃ ը̃ե հարաւակողմն ․ զորոյ զպատճառն ( ասէ սոզոմենոս ) այլ 'ի վերայ եղբօր իւրոյ արկանէր ․ զի թշնամիք յովհաննու առէին չարեկամն նր̃ , թէ դուք արարիք վայդ հրձգութի ․ իսկ նոքա , թէ դուք կամէիք և զմեզ այրել ընդ եկեղեցւոյն , և տակաւին այսպէս խօսէք ։

Իսկ ստուգագոյնս գրէ պալլադիոս , թէ 'ի նշանակ ցասմանն ա̃յ բոցն ել յանկարծակի յաթոռոյ անտի՝ ուր նստէրն սբ̃ հայրապետն , և 'ի վրէժխնդրութի ճշմարիտ քարոզի բանին ա̃յ՝ զորոյ ոչ ծանեան զլսելն , ծախեաց զեկեղեցին ․ և անցեալ ը̃ե օդս՝ կալաւ զապարանս ծերակուտին ․ և յերիս ժամս յաճիւն դարձոյց զբազմամեայ գործս ։

Իսկ որ զարմանալին է , ը̃ե հասանել ոսկեբերանի 'ի բիւթանիա՝ ժամանէր զկնի նորա

լուր

լուր հրդեհին եղելոյ 'ի Թագաւորական քա-
ղաքին , որպէս թէ նա և ընկերք նր̅՝ որ ը̅ նմա ,
իցեն պատճառք այնմ . այլ վ̅ս սպառնալին
նոյն զօրականք . և զընկերս նր̅ կապեալս
յետս դարձուցին՝ դատել 'ի կոստանդինու-
պօլիս . զորս և անպարտ գտեալ արձակե-
ցին ։ Իսկ ոսկեբերանն գրեաց առ ոսոխս
իւր զայս ինչ . Թէպէտև այլով մասամբ չե-
տուք ինձ առէ տեղի զանձն արդարացուցա-
նելոյ՝ որպէս օրէնն էր , գէթ յիրս եկեղեցւոյ
եղեց լսելի . և յայնժամ ծանիջիք , արդեօք
պատճառ իցեմ ես հրդեհին , որպէս ասէք ։
Բայց զինուորքն՝ որք տանէին զնա , ոչ թո-
ղացուցին գրել զոր կամէր . այլ կարծեալ
զբանս նոյն՝ խաղացուցանէին զնա զցայգ և
զցերեկ՝ տանել 'ի սահմանեալ տեղին հե-
ռաւոր , այն է կոկիսոն փոքուն հայոց ։
Յայսմ միջոցի եհաս լուր ամ̅ եղելոցս յա-
կանջս եկեղեցւոյն հռովմայ , և ոնորիոսի
կայսեր՝ որ նստէր 'ի հռովմ . ուստի եկին
նամակք յիննովկենտիոսէ պապէն առ ուխտ
եկեղեցւոյն կոստանդինուպօլսոյ , և յոնո-
րիոսէ առ եղբայր իւր արկադէոս՝ լի մեղա-
դրութ̅բ ը̅դէմ վնասակարացն յովհաննու ,
և արդարացուցիչք առն այ̅ ։ Գրեաց և նմին
նեղոս աբբայ աշակերտ ոսկեբերանի առ ար-
կադէոս՝ յայտ առնելով , թէ այս ամ̅ պա-
տուհասք ժամանակիս են նշանակք բարկու-
թեն այ̅ 'ի վ̅ր ձեր ։ Այլ յայտնագոյն պա-
տուհաս ծանուցաւ ամենեցուն , զի 'ի նմին
տարւոջ 'ի վերջին աւուր սեպտեմբերի տե-

ղաց

ղաց կարկուտ սաստիկ՝ երևելի մեծութբ 'ի կոստանդինուպօլիս և 'ի սահմանս նր. և յաւուրն չորրորդի եւդոքսիա թագուհին վճարեցաւ 'ի կենաց ։

Իսկ որ հայրապետն յովհան յարտասահմանութեն իւրում ուրախութբ ընթանայր զճանապարհ իւր. և ուր և իջևանէր՝ ոչ դադարէր 'ի քարոզելոյ զբանն այ, և 'ի գրելոյ թուղթս զօրաւորս առ բազումս. յորս յայտառնէ զսքանչելի համբերութի իւր յամ տառապանս և զկատարեալ ներողամտութի. մինչև գովութբ խօսել և զարանց՝ որք տանէին զնա յաքսորս. գրեաց և բանս մխիթարութեն առ եպսունս և առ քահանայս՝ որք 'ի պատճառս իւր բանտարկեալ էին 'ի կոստանդինուպօլիս ։

Պատմէ 'ի թուղթս անդ և զվիշտս երկարութեն ճանապարհին, զոր արար յաւուրս եօթանասուն. քանզի էանց 'ի նիկիոյ ընդ ՇՆ գաղատացւոց և կապադովկացւոց. մինչև հիւանդացեալ 'ի ճանապարհի, և հանապազօրեայ տենդիւ տապացեալ՝ հազիւ եհաս 'ի կեսարիա ։ Եւ անդ զտեղի կալաւ փոքր մի. և յայնմ հետէ բնակիչք հեռաւոր տեղեաց՝ կարեկից մեզ ասէ լինէին. զի ուր 'ի կողմանս յունաց ընդ ակամբ հայէին 'ի մեզ, 'ի հեռագոյն սահմանս * որք միանգամ ընդառաջ լինէին մեզ՝ կէս մի յարևելից, կէս մի 'ի հայոց ՇԷՆ, և որ 'ի կողմանց կողմանց, ազբիւրս հեղուն արտասուաց՝ ընդ հայելն 'ի մեր վշ, և յոգւոց հանեն. և ընդ ամ ճանա-

պարհն

պարհն կոծելով և աշխարելով զհետ մեր ըն-
թանան ։ Այլ այսոքիկ մի այն յիշատակեցան
'ի մէնջ ( աստ 'ի Թուղթն . Է . առ Ողիմպիադա ) ,
ոպ զի ծանիցես' թէ բազումք են առ մեզ ,
որք 'ի նոյն ցաւակցութ դեգերին ոպ զձեզ .
Եւ այս ոչ սակաւ բերէ մխիթարութի ‖ ։
Գրէ 'ի բազում Թուղթս իւր և զայլ ազգի
ազգի նեղութիւ' զորս կրեաց հանդերձ ներ-
քին և անպատմելի մխիթարութբ հոգւոյն ։
Նախ յորժամ հասաք աստ 'ի կոկիսոն , ( որ
եղև յելս օգոստոսի , ) անդ զերծաք 'ի տեն-
դէ և յամմ տառապանաց , ոպ և յերկիւղէ
բարբարոսաց . զի 'ի կեսարիոյ մինչև 'ի կո-
կիսոն երկիւղ մեծ էր 'ի սոկարեանց իսաւ-
րացւոց ։ Այլ 'ի կարգի բանիցն յետոյ զայս
բան . * Փառք այ յաղագս ամի . զի յամի'
որ ընդ իս անցանեն , ոչ դադարեցայց զայս
բան երկրորդել ‖ . ուստի ասի առեալ այն
մաղթանք եկեղեցւոյ . * Փառք քեզ Տր ,
փառք քեզ . յաղագս ամի Տր փառք քեզ ‖ ։
Եւ եղև 'ի հանդարտիլ սքյն 'ի կոկիսոն
գրեաց անտի եւս բազմագոյն Թուղթս 'ի զա-
նազան տեղիս ։ Եկին անդր առ նա և ոմանք
'ի բարեկամաց իւրոց . և հնարէին միջնոր-
դել առ պահապանս նր' ոպ թէ 'ի լաւ ևս
տեղի փոխեսցեն զնա յանշուք և յաղքատին
աւանէ անտի . բայց նքն հաճեալ էր ընդ այն
տեղի , և ոչ կամէր ուրեք երթալ . մանա-
ւանդ զի և հայք բնակիչք տեղւոյն սիրով
մեծաւ կապեցան ընդ նա' հանդերձ եպսաւ
իւրեանց' որում անուն էր եղբայր , ընդ յու-
նաց .

նաց առաւելփառ , որ էր առաքելական սրբոյն ։ Սա
և այլ ամն վրդ Հայոց և ենքս դիտաւորաս ա-
նուն 'ի պարթևական ցեղէ նր լուսաւորչին
սիրելի և ընտանի եղև յոյժ սրբյն . և 'ի խորհ-
րդոյ սորա՝ որպս և ժողովրդեան՝ խոստացաւ
ոսկեբերանն միանգամ և երկիցս ճառ ներ-
ղական գովեստի 'ի պատիւ սբյն գրիգորի
Հայաստանեայցս լուսաւորչի , և ուրախ ա-
րար զորդիս նր 'ի քն՝ յաւուր տօնի նր ։ (12)
'Ի Հասանել ձմերայնոյ՝ 'ի մուտս ամի տն
405 . խօթացաւ երանելին . այլ 'ի Հասա-
նել գարնայնոյ դարձաւ յառողջութիւն , և
դարձեալ սկսաւ պարապիլ 'ի գրութի և 'ի
քարոզութի բանին այ . վսյ ասէ պաղադիոս .
* երանելին յովհաննէս զտարի մի ( և զա-
միս իբր չորս ) կացեալ 'ի կուկիսոն՝ զբազում
աղքատս կերակրեաց 'ի Հայս , ոչ այնչափ
Հացիւք , որչափ բանիւք ։ ։ Մնացեալ թշնա-
մեացն յովհաննու՝ թէ նա Հաստատեցաւ յա-
ռողջութե , և Հանգիստ իւր եգիտ 'ի կուկի-
սոն , ետուն փոխել զնա 'ի տեղւոջէն , և
տանել ընդ տառապանօք յամայի ամուրն
արաբիսոն 'ի սկիզբն յաջորդ ամի 406 . ոչ
դիպուղիղ Հասուցանելով 'ի դղեակ անդր ,
այլ աստ անդ շրջեցուցանելով 'ի լերինս և
յանտառս յաւուրս ձմերայնոյ . որով նորո-
գէր Հիւանդութի նր . որպ յայտ է 'ի թղթոց
սբյն , յորս յիշէ զանհնարին վիշտս իւր յերկ-
ւաց խօթութե , աղքատութե , և աւազա-
կաց . մինչև եկին յարաբիսոն ։ Նոյն գրեաց
գրիչն ոսկի զսքանչելի զայն գիրսն 'ի ձև նա-

մա

մանկի՝ մանկագրեալ ։ * Որ ոչն վնասէ անձինն իւրում, ոչ ոք կարէ զնա վնասել ։ Թող զայլ թուղթս ուղղեալս 'ի կոստանդնուպօլիս, 'ի Հռովմ, և առ առաջնորդս տեղեաց տեղեաց ։

Բայց քանզի ոչ 'ի կուկիսոն, նոյնպէս և յարաբիսոն փառաւոր արար ա͞ծ զնա ոսկեբերանն, տալով ն͞մ շնորհս առաջի ամենեցուն՝ բանիւ և մխիթարութ͞բ և պէսպէս նշանօք, զայս լուեալ ստոխացն ն͞ր՝ ոչ կարացին տանել ։ Վ͞նյ դարձեալ հրաման հանին 'ի դրանէ, զի վարեսցի 'ի կողմանսն Հայոց 'ի սահմանս պոնտոսի մինչև 'ի գիւղն կոչեցեալ պիտիւսյոն յերկրին ճնեաց յեզր սեաւ ծովուն 'ի մէջ բարբարոսաց ։ Եւ զինուորքն՝ որք փութացուցանէին զս͞րբն 'ի ճանապարհի, ասէին ցնա ։ եթէ մեռցիս զճանապարհայն, մեծամեծ պարգևք կան մեզ 'ի դրանէ ։ Եւ վ͞նկ իսկ յածեցուցին զնա ը͞ն անկոխ տեղիս զամիս երիս ։

Իբրև մերձեցան 'ի սահմանեալ տեղին, ոչ կարաց ս͞րբն յառաջ երթալ առ տկարութե ։ քանզի և հետի ընթացուցանէին զճգնաւոր նահատակն ք͞ի ։ Վ͞նյ իբրև ժամանեցին 'ի կոմանա քաղաք պոնտոսի (զոր սողոմենոս կոչէ կոմանս հայոց), կամեցան հանգչել առ փոյր մի ։ Եւ անցեալ ը͞ն դուռն քաղաքին իբրև մղոնս հինգ կամ վեց, օթեցան արտաքոյ պարսպաց 'ի վկայարանի ս͞րբյն բասիլիսկոսի ։ 'Ի նմին գիշերի երևեցաւ վկայն ք͞ի երանելւոյն յովհաննու, և ասէ ։ զօրացիր, և

քա՛ջ

քանզի չէր եկեալ յովհաննէս , զի փառիւքն 'ի միասին լինիցիմք ։ Դարձեալ էր նա 'ի վկայն . և երիցու վկայարանին , և ասացեալ . պատրաստեա՛ տեղի եղբօր մերում յովհաննու , զի գայ ։

Օրացաւ նա ոսկեբերանն 'ի տեսլենէ անտի և միխիթարեցաւ յոյժ . և 'ի փառիւ անցր աղաչէր զզինուորսն մնալ նմա մինչև 'ի հինգերորդ ժամ աւուրն . բայց նոքա ոչ լուան նմա , այլ առեալ զնա գնացին . այլ յետ երթալոյ իբրև ասպարէզս երեսուն՝ իբրև տեսին , թէ մեռանի , եւ աղաչելոյ նորին դարձուցին զնա անդրէն 'ի վկայարանն՝ ուստի ելեալ էին . և գտին անդ զբազմութիւն հաւատացելոց ։

Յայնժամ հանեալ նորա զհանդերձս ճանապարհին՝ ետ որոց անդն կային . և ինքն իբրև յաւուր ուրախութեան զգեցաւ զնորն մինչև 'ի կօշիկս ոտից . և հաղորդեալ նա խորհրդոյն՝ արար զվերջին աղօթս իւր 'ի վկայարանի անդ . և ապա երկրորդեալ զսովորական զիւր բարբառ , փառք այ յաղագս ամի , և ասացեալ զամէնն , տարածեաց զոտս իւր , և աւանդեաց զուարթութ զհոգին 'ի ձեռս այ ։

Այլ որ սքանչելին է , եւ ասելոյ պատշաճաւոր՝ յայնմ ժամու այնչափ բազմութիւն ժողովեցեր անդ միանձանց և կուսանաց և այլոց գիտակ եղելոց սրբութեան երանելւոյն յովհաննու յԻւէն պոնտացւոց , հայոց , ասորւոց և կիլիկեցւոց , մինչև բազմաց կարծել՝ թէ

զապետոյն իւրոյ լուծեալ յիշատակէ ոչ՛ ար-
քայն նեղոս 'ի թուղթն առ անաստասա եպիս․
ուր առէ այսպէս․ * Բիւզանդացւոց մեծի
եկեղեցւոյն, մանաւանդ թէ համօրէն տիե-
զերաց լոյսն, յովհաննէս սքանչելի քահա-
նայ՝ կորովատես աչօք, բազում անգամ հայ-
եցեալ ետես՝ գրեթէ յամ ժամս զՏէրունին
(զս զառաձայն ոյ) շրջափակեալ պահպանութ.
հրեշտակաց, և ոչ երբէք լքեալ 'ի նոցանէ,
առաւել 'ի ժամ ոք և անարիւն պատարա-
գին․ Ուր նա ինքն՝ զարմացմամբ և ուրա-
խութ. լցեալ՝ պատմեաց հարազատ և հա-
զեկցորդ բարեկամաց իւրոց՝ մեկուսի յամ-
բոխէ․ Վասնզի ասէր նա, թէ ը սկսանիլ
քահանայի մատուցանել զոհ ընծայման՝ յան-
կարծակի բազմութիւնք յերանելի իշխանու-
թեանց իջեալ 'ի յերկնից, և պայծառափայլ
իմն զգեստուք շուրջ պատեալ, բոկ ոտիւք,
և անթարթափ աչօք, և խոնարհ երեսօք
պարառեալ զսեղանովն, պատկառանօք մե-
ծարանաց և բազում հանդարտութ. և լռութ.
յանդիման լինէին մինչև ցկատարումն ահա-
ւոր խորհրդոյն․ և ապա ցրուեալ յամ կող-
մանց զպատուական տէրունեան՝ մի մի 'ի նո-
ցանէ սպասաւորեն, օգնեն, և զօրացուցիչ
լինէին անդ եղելոց եպսաց և քահանայից և
իւրաքանչիւր սարկաւագաց, որք բաշխեն
այլոց զմարմինն և զարիւնն պատուականն։
Սովիմք է իմանալ ը նեղոսի և զայլ տեսու-
թիւս և զհրեշտակային քաղաքավարութիւս սրբոյ
ոսկեբերանին։

Հա

Հաւատարիմ է և 'ի տեսիլս՝ որք առ այլս ե-
զեն վն նոյն, այն՝ որ եղև յետ փոխմանն նր՝
առ ատելփոս տր եղբայր եպս 'ի կոկիսոն.
զի սա յետ լինելոյ աստնջական ոսկեբերա-
նի 'ի տան իւրում՝ յորժամ լուաւ զկատա-
րածն նորա 'ի կոմանա, կարօտէր տեսանել
զնա, թէ յո՞ր փառս իցէ հասեալ. և տե-
սեալ հոգւով զնր հայրապետս և զվդպս
յարքունիս երկնից՝ սյն խնչ նայէր տեսանել
'ի մէջ նց զոսկեբերանն յովհան, և հարցա-
նէր՝ թէ ո՞ւր իցէ, լուաւ՝ զի ասէր ցնա հրեշ-
տակն. զյովհաննէս խնդրես զապաշխարութե
վդպն. զնա ոչ ոք կարէ տեսանել 'ի մահկա-
նացու մարմնի. վն զի նա անդ է՝ ուր աթոռն
է այ ։ Եւ այս է՝ զոր նուագէ եկեղեցի 'ի
պանծալի գովեստ սբյն 'ի շարականոցի. * Ան-
յանճառելին մերձեալ 'ի լոյս հուպ երրոր-
դութեն՝ ո՜վ երանելի տր վդպ. այսօր տօնէ
եկեղեցի զհանգստեան քո նր զյիշատակս.
մաղթեա փրկողին զթողութիւն մեղաց մե-
րոց ։ (14)

Պատմէ նոյն յովհան դամասկացի և զայս
կարեւոր հրաշս՝ 'ի 4 ճառն պատկերաց ։ * Նե-
ղաւ (ասէ) թէոփիլոս, զոսկեբերանն զյով-
հան զրպարտեալ առ եւդոքսիայ թագուհ-
ւոյն ... արդ վն այդց մեղաց թէոփիլոս չկա-
րէր տալ զհոգին ('ի ժամ վախճանին, որ
եղև յամի տն 412). մինչև բերաւ առ նա
պատկեր ոսկեբերանին. որում իբրև երկիր-
պագ, արձակեաց զոգին ։. և զայս աւան-
դէ ասէ խոխոլոս սարկաւագ 'ի ճմկագրութե

զի 'ի Կոստանդնուպօլիս եհաս 'ի յունվա-
րի . որ մի էր աւուրն որ եւս սահմանեցաւ տօ-
յսմս ։ Մարկեղինոս կոմս զառաջին հաս-
տատութիւն տօնախմբութեան Ոսկեբերանին դնէ-
լինել յամի Տն 428 . այն է տասն ամօք յա-
ռաջ քան զփոխադրութիւն նշխարացն . Թող-
զի բազմօք յառաջ երանելին Իննովկենտիոս
հռովմայ հայրապետ 'ի թուղթս իւր ան-
ուանեալ էր զնա Սբ , որպ̃ եւ մեծն Օգոստինոս ։
Իսկ փոխադրութիւն մարմնոյ Ոսկեբերանին
եղեւ 'ի լ̃ ամի Թգ̃րութեան Թէոդոսի փոքու
որդւոյ Արկադեայ , եւ 'ի պատրիարգութեան
Սբյն Պրոկղի 'ի Կոստանդնուպօլիս . զի բե-
րեալ պատուով 'ի Կոմանայ Պոնտոսի 'ի Թա-
գաւորեալ քաղաքն՝ համբուրեցին մեծաշուք
փառօք 'ի տաճար Սբ առաքելոցն , 'ի 27 յունվա-
րի , յամի Տն 438 ։ Իսկ թէ որպիսի ուրա-
խութիւն եւ որպիսի տօնախմբութիւն եղեւ յա-
ւուրն յայնմիկ հանդերձ բազմապատիկ
սքանչելի հանգամանօք՝ գրեալ է յընդար-
ձակ պատմութեան նր̃ . մեզ շատ լիցի ասելն
Թէոդորետոսի . * Յետ ժամանակաց ինչ
փոխադրեցան նշխարք մեծի վրդպին 'ի Թա-
գաւորեալ քաղաքն . եւ դարձեալ ( որպ̃ երբեմն
'ի դարձի նրյն յաքսորանաց ) հաւատացեալ
ժողովուրդն հաւատարիմ զծովն ցամաք ա-
րարեալ առ բազմութեան նաւակաց՝ ջահազ-
գեաց յօրինեաց զդուան Վոսփորոնի մինչեւ
'ի կողմն Պրոպոնտոսի ։ Եւ զայս զանձ հա-
գեւոր ընծայաբերեաց Թգ̃րական քաղաքն
այն՝ որ այժմս զինքնակալութիւն ունի , որ

և՛ զանուն հաւուն յանձին բերէ, և զանձապաշ-
տութ նր անմթերի և անարատ պահէ: Արդ
սա զայս և զճակատն մերձեցուցեալ 'ի տա-
պանակ անդր (մարմնոյ նըյն), աղերս մատ-
թանաց արկ առաջի վն ծնողաց իւրոց, խնդ-
րելով թողութի շնորհել մեղացն անգիտութե̃ կ:
Յետ դարուց բազմաց մարմին նըյ ոսկեբե-
րանին ասի փոխաբերեալ 'ի նորոյն հռովմայ
'ի կոստանդինուպօլսոյ 'ի հինն հռովմ, և
եդեալ 'ի վատիկան 'ի տիեզերահռչակ տա-
ճարի նըյն պետրոսի, ընդ առանձին խորա-
նաւ. և այսպէս տեղափոխեալ յայլ խորան կի
յեկեղեցի: Նայց զգլուխ նըյն առ իւրեանս
ունել ասեն մեսսինացիք 'ի սիկիլիա, գաղ-
ղիացիք 'ի փարէզ, իտալացիք 'ի փլորենտիա,
և գերմանացիք 'ի մոգունտիա. յայտ է թէ
կամ զհամանուն սըն յոհաննէս կոչմամբ
յոսկեբերանն տանելով, և կամ զմասն մասն
գլխոյն` բոլորական անուամբ զգլխանն ափոյն
գլուխ կոչելով:

Բնողից ասել զայլևայլ մասանց նըր նշխա-
րացն, որ գտանին սփռեալ ըն տմ տեղիս.
յորս երկոքին անգին մասունք նըր աջոյ նըր
գրչականք, մ բոյթն և ցուցամատն` անա-
րատ և անապականն պահին 'ի վենետիկ. ա-
րաւ ականատես եղաք և արժանի գտաք
համբուրելոյ յամի տն 1801. ընդ մարմնոյ
նըյն աթանասի` 'ի թաղն կոչեցեալ ալա-
ծուէքա. իսկ յաւուր յայսմիկ` յամի 1812.
պահին 'ի մէջ քաղաքին վենետկոյ 'ի հոյա-
կապ տաճարի նըյն զաքարիայ:

Ո. Մ.

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Եթէ 'ի խնդիր պատմական ստուգութեան հնագոյնն 'ի մատենագիրս է նախապատիւ, 'ի կարգի քննութեան՝ նորագոյնն 'ի մէջ քաջ քննչաց է վերապատուեալ. և ահա այսմ պատուոյ արժանի գտաւ արդեօք 'ի ժամուս յովհաննէս սուրլարինդ թոլլանդեան, որ քան զամ խուզարկուս և զբանախնդիրս ճոխագոյն և խստագոյն քննեաց զվարս սրբոյն յովհաննու ոսկեբերանի. և մեք ըստ կարի զնորա զհետս կալաք. որպէս և նա խոստանայ զվաւերական բանից զհետ երթալ, այսպիսի գնելով կարգ հեղինակաց՝ որոց անուանս:

Զառաջին տեղին ունի սա՝ բուն գրուած ոսկեբերանի. և յիրաւի. զի ոչ սակաւ տեղեկութիւնս եղանեն 'ի գրոց նորա վս վարուց նորա. և յայսմ մասին ընտրէ զվերջին տպագրութիւն գործոց նորա յն. և լա. 'ի ձեռն բեննարդոսի մոնդֆոկոնի երևելւոյ առն՝ համեմատեալ զնոսա այլ և տպագրութեանց և ձեռագրաց: Զերկրորդ տեղին առոյ իւրև. օկանմասես վկայք՝ պալլադիոսի եպիսկ 'ի պրամախոսութեան իւրում ը. թէոդորոսի հռովմայ սարկաւագի. և համարի (որ է անգիտելի) թէ սա այլ իցէ 'ի միւս անուանի պալլադիոսէ եպիսկն հեղինակութեան, որ էր 'ի նոյն ժամանակի. այն է՝ որ 'ի հարանց վարս յերը կոչեցեալ գլքս՝ հայլին պալլադի, հեղինակ վարուց ոմանց 'ի հարանց: Զհետ պալլադիոսի գրեցին զոսկեբերանէ սոկրատ, սոզոմենոս և թէոդորիտոս, երեքին և ժամանակակիցք մտաւորքը՝ առ փոքրն թէոդոսիւ:

Այլ լրագոյն քան զամենեսին գրեաց սա է զպատմութիւն սրբոյն՝ հաւաքելով 'ի սոցանէ առհասարակ, և յանուանեն՝ 'ի պալլադիոսէ, գէորգ աղեքսանդրացի. որոյ գործն գտանի տպագրեալ յունարէն և լատիներէն: Իսկ այն է (զոր ոչ գիտէ քննիչն), որ կայ և 'ի միջի մերում՝ թարգմանեալ 'ի ձեռն սրբոյն գրիգորի վկայասէրի՝ գործակցութե աշակերտին իւրոյ մատթէոսի, և թէոփիստոսոյ յոյն իմաստասիրի. զորոյ և ունիմք զհին օրինակ գրեալ 'ի ժամանակս նոյն թարգմանութե. թող և զայլ օրինակ 'ի Ճառընտրի. որպէս և զայլ վարս յայլմէ անանուն հեղինակէ 'ի Ճառընտիրս:

Զայս գէորգ աղեքսանդրացի յիշատակէ և փոտ պատր-

բոլորդ յունաց, և զժամանակն նորա անդխատանալ ասէ զամենէ. որ է նշանակ հնութեն յոյժ. բայց արդէք որոշեն լինել յեօթներորդ դարու՝ անստոյգ կարծեօք. զի 'ի կարգս պատրիարգաց աղեքսանդրու յայնմ դարու ևեթ կայ գէորգ անուն. այլ ո՞ գիտէ՝ թէ սա այն իցէ, կամ թէ այլ պատրիարգ իցէ. զիարդ և իցէ՝ այսպէս եդեալ. լինի երկու դարուք յետոյ քան զսկեբերան: Յետ գէորգեայ յիշի պատմիչ վարուց ոսկեբերանի (մանաւանդ ճառօրէն) սոփրոնիոս պատրիարգ եճմի 'ի Է դարու. յովհան դամասկացի 'ի Ը դարու. լեոն կայսր իմաստասէր 'ի Թ դարու. թող և զանանուն հեղինակն 'ի Ժ դարու, և զորս զկնի. ոչ և զանուանիս, այլ անգիտելիս՝ թէ կայցեն այժմ գրուածք նց զոսկեբերանէ. ԺԳ մարտիրոս պատրիարգ եճմի, և եւագր ճգնաւոր: Իսկ 'ի մէջ արդի կմ յետին կրխախաց. որք քննուք և ընտրանաւ հանելն զվարս սէյն իբրև 'ի բուն աղբերաց քան 'ի վտակաց, և զոր կամեին ընտրեցին՝ միաբան կմ անմիաբան կարծեօք, բաց 'ի բազմաց այլոց՝ երևելի եղեն չորեքին սոքա. հերմանոս, տիլլեմոնոս, մոնտփոկոն, և ստիլտինգ. յորոց վերջինն է քննիչ և առաջնոցն. ուստի և մեզ մնայ քննել զբանս նր. ոչ և այլոց զմերն: Արդ առ 'ի տալ զճաշակ ինչ անաչառ քննուք ստիլտինգայ՝ լուր զառաջիկայս հատուած:

Գիտեմք ասէ ստիլտինգ, զի երևելի քննիչք՝ սաւիլիոս, պետաւիոս, հերմանոս, տիլլեմոնոս և մոնտփոկոն ընդվայր հարկանեն զգէորգ աղեքսանդրացի զհեղինակ լիակատար պատմութեն վարուց ոսկեբերանի. և մեք ևս չեմք հաւան նմա ի բմ բանի. բայց քանզի վճիռ եհատ մոնտփոկոն զգէորգեայ այսպէս, * սա ցածուն և ան-
« շուք ոճով անհամար առասպելս պատմէ, 'ի բաց ա-
« ռեալ զայնս՝ զորս 'ի փոխ էառ 'ի պալադիոսէ և 'ի
« սոկրատայ ||, խրատեմք 'ի վեր բերել ստիլտինգ, և
ասէ.

* 'Ի բաց առնուլ արժանէ և զայն բանս, զորս կարօղ եղե-
« նա քաղել 'ի թէոդորետոսէ, 'ի սոզոմենոսէ և յայլոց
« Ժամակից մատենագրաց, որք ի մասին ծանօթ են մեզ,
« և ի մասին անծանօթ: Այպա ուրեմն 'ի պատմել զվարս
« սէյն՝ չունիմք զայլ ծանրակշիռ թիկունս օգնակա-
« նութեն՝ բաց 'ի գրուածոց անտի սէյն, և 'ի տրամա-
« խօսութէ պալադիոսի, և 'ի գրելոցն թէոդորետեայ
« սոկրատայ և սոզոմենայ, և 'ի սակաւ բանից այլոց
« քանի մի Ժամակից արանց նախայիշատակելոց: Եւ
« սա-

քննեալ երկու կամ դժուարահաւանելի իմաստից ձեւ
յայժմու ժամի. մինչ զի եթէ ոք հաւատասցէ այս ինչ բա-
նի, կամ արասցէ և տասցէ զայն ինչ յայժմու, ծաղր լի-
նի. ապա ուրեմն ոչ են հաւատացեալ այնպիսի իրաց և
նախնիքն. կամ չեն արարեալ և տուեալ զայնպիսի ինչ:
Իբր աչա այս անխոհեմութիւն՝ խոհեմութիւն կարծեցեալ ոմանց
յարգելոց՝ տայ նոցա ԺԲ մասն և ԺԲ կամս ընդունել, կամ չըն-
դունել. անպատճառ զայս և զայն գործ և զգրուած ա-
ռաջնոց. այլ չէ նա է անմիաբանութիւն նոցա 'ի սմին զանազան
'ի նոցանէ.

Թողեալ զանթիւ օրինակս՝ թէ որք հարք հաւատային
այնց պատմութեանց և հրաշից, որոց ունիմք աւանդն արդէք.
առ քեզ տպացոյց 'ի վարուց սրբոյն Ոսկեբերանին. զի
ահա որ յովհան գամաւորացի իբրև տոյց ընթադրե-
լով զբանս գրեալս յՊատմաւորական վարս Ոսկեբերանի՝ բա-
զում ինչ քաղէ անտի 'ի ներբողեանն իւր 'ի վերայ Ոսկեբե-
րանի. վերյ և քննիչք մեղադրիր լինին նմին. և չունելով
այլ ինչ պատճառել՝ ասեն, թէ մատենագիրք միջին դա-
րուց քանի մի գարուց գինի Ոսկեբերանին՝ հաւատային
այսպիսի բանից. և զիա՞րդ ինքեանք յերկելեան դարուս
անհաւատանան. յայտ է թէ Ը նմանին հաւատոց և
մարդկային հաւատք նուաղեալ են յԹէ. զի զՄին է
բան ՄՆ, իսկ որդի մարդոյ եկեալ՝ գտանիցէ՞ արդեօք
հաւատս յերկրի:

Զորրորդ՝ յիշեցուցանեմք սովորինգայ զբանս պալա-
գիուսի անժխտելիս, զորս առանց Ը բանս ինչ ածելոյ՝
բերէ նոյն իսկ աստանօր 'ի հանդէս. 1339. երես. 663. և
664: Ասէ. * Վա այդր բանի, (զի՝ որպ մեկնէ և ինքն
,, սովորինգ, վա բարեհամբաւութեան Ոսկեբերանի 'ի կո-
,, կիսոն) նախանձեալ Ը նա եղբայրապատնից՝ փոխե-
,, ցին զնա յարաբիսոն, (և անտի կամէին վարել 'ի
,, պիթիոս)... Վա զի (քաջ միտ դիր) տեսանէին զան-
,, մոռաց եկեղեցին 'ի հայաստան փոխադրեալ, և ան-
,, տի դարձեալ յանտիոք քարոզեալ զամենահրաշ իմաս-
,, տասիրութիւն յովհաննու ||. եՆ: Տեսանե՞ս, որպէս
հիմն 'ի վերայ տապալին ընթադրութիւնք սովորինգեան վա
չխօսելոյ սրբոյն քարոզ յԱրին հայոց. և որպէս բացայայտ
ցուցանէին, թէ Ոսկեբերան նաև 'ի մէջ հայոց ցուցա
Ոսկեբերան. և արդարև բերանն ոսկի միայն կարէ խօ-
սել և զայն պանծալի գովեստ 'ի վերայ լուսաւորչին, և
ոչ այլ ոք:

Իսկ չունի ոք ասել, թէ յոր լեզու քարոզէր սրբն 'ի հայս

,, որք միաբանեալ հաւատովք են: Ասորիքն ցուցանեն,
,, թէ ոսկեբերանն ոչ միայն հաւատայր՝ թէ հրաշք լի-
,, նէին յեկեղեցւոջ յաւուրս իւր, այլեւ ճշմարտանման
,, առնեն՝ թէ նորին իսկ օծութ̃ առողջանային հի-
,, ւանդք: Այս ոչ երբեք ժխտելի գոլ ոսկեբերանի շը-
,, նորհաց ազգանշելեաց. զի եւ ոչ լռութիւն պալլադիոսի,
,, սոկրատայ, սոզոմենոսի եւ այլոց ժմկակցաց մեծապէս
,, տանիցէ, ուր ոչ ոք 'ի նոցանէ պատմեաց կամ ձեռն
,, էարկ պատմել զգործս սորին զօմ, եւ կմ̃ նաեւ զբազումս
,, 'ի գործոցն ||: Յորմէ ունիս իմանալ՝ թէ այլ է ըզ-
գործս ինչ ուրուք գրել 'ի կարգի պատմութեան, որպէս
եւ առնեն հասարակօրէն պատմաբանք այսպիսիք, եւ այլ
է զամբողջ վարս շարագրել. զի յայնժամ 'ի մի հաւա-
քին գրեալքն յամենեցունց՝ հանդերձ պէսպէս գրա-
ւոր եւ անգիր յիշատակօք. ոպ̃ եւ որ ինչ այսօր գործի
երեւելի յերեւելի արանց՝ ոչ յամ̃ մարդոյ լսելիս հասա-
նէ. բայց որ հաւաքէ 'ի բազմաց՝ մատենիւք չափ նիւթ
գտանէ. շատ է՝ թէ չիցէ հակառակ այլոց ժամանա-
կակից գրչաց, թէեւ պակասեսցի ինչ ինչ առ նոսա. ոպ̃
եւ յայտ է:

(14) Զայս տեսիլ եւս, զոր բաց յայլոց պատմէ եւ հա-
րանց վարք յունաց բանիւք յովհաննու մոսքոսի 'ի Է գա-
րա, առ հռոսուէյդեայ. երես. 901. թէպէտեւ ոմանք կա-
մեցան Է անստոյգս գտանել. բայց բաղմք պնդէ տիլ-
մոնդ յերես. 689. եւ 690, թէ չիք ինչ զօրաւոր պատ-
ճառ 'ի սուտ հանելոյ զայդ:



## Ս չարչարանք սրբոցն Գուրիասայ և Սամոնայ :

Ի ժամանակս դիոկղետիանոսի թագաւորի՝ այր ոմն էր Գուրիաս անուն. յերկրէն եդեսացւոց, որ է ուռհայ 'ի միջագետս, 'ի գեղջէ որ կոչի սարկիդիմայ, երկիւղած յյ և ամ առաքինութբ զարդարեալ, ունելով զամն համաշունչ իւրոյ բարեպաշտութեն 'ի նոյն գեղջէ կմ՝ 'ի գանադայ [2], որում անուն Սամոնաս կմ սամանաս կոչէին, երկոքեանն իսկ ամենևին վարժք և հմուտք պատուիրանացն այ. որք ոչ դադարէին հանապազ սերմանել զբանն կենաց, և զգուշացուցանել զհաւատացեալսն՝ որ 'ի քս՝ 'ի մոլորութե կռոցն, և մի զարհուրել և երկնչել յերկիւղէ մահու և սպառնալեաց բռնաւորաց :

Զայս լուեալ բռնաւորին՝ որոյ հրաման առեալ էր 'ի թագաւորէ տանջել զքրիստոնեայս կողմանցն այնոցիկ, և անուն նր անդոն կամ անտոնիոս՝ դատաւոր եդեսիոյ [3], առաքեաց դասս զինուորաց՝ բերել զնս վրկայսն. և ածեալ լինէին հանդերձ այլ ևս բազմութբ քրիստոնէիւք, և հրամայեաց արկանել 'ի բանտ, և պահել զգուշութբ, մինչև պարապով քննեսցէ զնոսա : Իսկ յետ աւուրցն այնոցիկ եւ հրաման 'ի թագաւորէն կմ 'ի դատաւորէն, զի արձակեսցեն զամենեսեան՝ զաննշան և զաղքատ մարդիկն յիւրաքանչիւր տեղիս և 'ի գեօղս. իսկ զնսն

դուրիսս և զսամեխսս ոչ արձակեցին · այլ արգել դատաւորն զնոն միայն 'ի բանտին · և նք ուրախ եղեն յոյժ, զի ոնց յաղագս բազմաց լուծան՝ որք յաւուրսն յայնոսիկ վկայեցին 'ի քս, ակն ունէին և ինքեանք նոյնպէս կատարիլ ըստ ջերմ փափաքանաց իւրեանց ։ Յայնժամ անօրէն դատաւորն նստէր յերդեսացուց քաղաքին՝ հրամայեաց ածել զնոսա զառաջեաւ, և ասէ · զայս գիտասջիք, զի պարտ է ձեզ լսել բաջի որանց ինքնակալին հրամանաց, և զոհել կռոցն, և լինել կարգօք և կրօնիւք հելլենացւոց իբրև զմեզ, և 'ի բաց կալ 'ի սնոտի պաշտամանց, և փրկիլ յառաջիկայ տանջանաց՝ զոր կրելոց էք ։ Սրբքն ասացին · որ քեզ սնոտի պաշտօն կարծի, և ունայնութի թուի խաւարելոյդ հոգւովդ լոյսն ճշմարտութե, զի ոչ կարես հայել և նկատել, մեզ այն՝ կեանք են յաւիտենականս, և առօղ կենդանութե · վասնզի և 'ի տանջանացդ՝ զոր սպառնաս, մեք ոչ երկնչիմք, և լսել քեզ երբէք ոչ կամիմք ։

Դատաւորն ասէ · ամ իրօք գիտէք զհրամանս ինքնակալին, որ հրամայէ ձեզ քրիստոնէիցդ կամ զոհել, կամ մեռանել · արդ յառաջ քան զտանջանսն փութասջիք կատարել զհրամայեալսն ձեզ ։ Սրբքն ասացին · մեք զապականացու զթգրի զհրամանս անօրէնս ոչ կատարեմք, մանաւանդ՝ որ զտարերս ածս համարի · այլ զանմահ թգրին փութամք պահել զպատուիրանսն՝ որ ասէ, թէ որ ուրասցի զիս առաջի մարդկան, ուրացայց զնա

ա-

ռաջի հօրն իմոյ՝ որ յերկինս է ։ Իշխանն ասէ ․ արդ ո՞չ կամիք առնել զկամս Թ̃գրաց մերոց ։ Սրբքն ասեն ․ ո՛չ ։ Իշխանն ասէ ․ վ̃ն յամառութե̃ ձերոյ բազում տանջանարանս պատրաստեմ ձեզ ։ Սրբքն ասացին ․ Թէպէտ և 'ի տանջանաց մեռանիմք զառժամանակեայ մահս, այլ անստուերին հասանեմք լուսոյ յաւիտենականն և անվախճան կենացն, զոր խոստացաւ ա̃ծ սիրելեաց իւրոց ։ Յայնժամ բարկացեալ դատաւորն՝ հրամայեաց արկանել զն̃ս 'ի բանտ ։

Իսկ յետ աւուրց՝ յորժամ եկն յեդեսիա մուսոնիոս դատաւոր անտիոքայ, դարձեալ ածին զն̃ս յատեան ․ և ասէ ցնոսա դատաւորն ․ բազում ներողութի̃ իմ և երկայնմտութի̃ ոչ ածին զձեզ 'ի հաւանութի̃ ․ արդ այսուհետև յաճախեմ 'ի վ̃ն ձեր նեղութիս ․ և մատնեմ 'ի չարաչար տանջանս՝ ո̃պ արժանի էք, 'ի քանցումն քերանաց կողից ձերոց, և 'ի կիզումն մարմնոյ հրով, և կախել 'ի ձեռաց, և այլ զանազան տեսիլ տանջանաց կուտելոց 'ի վ̃ն ձեր ։

Սրբքն ասացին ․ գրեալ է, մի՛ երկնչիք յայնմանէ՝ որ զմարմին սպանանէ, և զոգի ոչ կարէ սպանանել ․ արդ ո՛չ եմք հաւանելոց ձեր խաւարասէր կրօնիցդ՝ առ 'ի մատնիլ անշէջ հրոյն տանջանաց ․ այլ՝ պա՛րտ է մեզ չարչարիլ, ո̃պ տ̃րն մեր վ̃ն մեր չարչարեցաւ ․ զի փառաց նո̃ր լինիցիմք հաղորդք ։ Ասէ դատաւորն ․ մի՛ շաղակրատիք, այլ զոհեցէ՛ք և երթիջի՛ք յիւրաքանչիւր տունս ձեր ։ Սրբքն ա-

զպատճառս անդանօր գրելոյն . ասէ .

* Նաս թէպէտեւ արտաքոյ իւրոյն սահ- մանաց ( յանտիոք կատարեցաւ ), միանգա- մայն պաղեստինացի գոլով՝ ՚ի պաղեստինաց- ւոցն արժանի եղեւ վկայից ՚ի թիւ համարոյ անցանել ։ Որդ այսօրինակ զայսօրինակ գոր- ծեցան յառաջնում ամի (մեծի հալածանաց), մինչդեռ ընդդէմ նախագահից միայն եկե- ղեցւոյ էր յարուցեալ հալածումն ||. այն է ամ ՟Քին 303, կմ՛ ըստ ոմանց 304։ Իսկ զօր կա- տարման սրբոյն գրէ լինել ՚ի ԺԷ դիոսի ամ- սոյ, որ է ասէ յառաջ քան զԺԵ կաղանդացն դեկտեմբերի . որ է ասել՝ ՚ի կէսն կմ՛ ՚ի 16. նոյեմբերի . ըստ որոյ ՚ի մեզ դնի ՚ի նոյեմբերի 14. այլք եդին , 18, կամ 16 ։

Յետ ամաց ինչ շինեցաւ եկեղեցի ՚ի վը տա- պանի սրբոյն . զոր զկնի դարուց նորոգեաց վասիլ կայսր արշակունի, ըստ պատմելոյ կեդ- րենոսի ։ (5)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Նախաւէր գրի ՚ի մեզ ռոմանոս՝ համաձայն այլոց ազգաց, և ռոմանոս՝ առաւել ըստ ազգային սովորութե. ոմք և սամանոս՝ փոխել առելոյ սամոնաս. ևն ։ Իսկ այն՝ զի միայնակեաց ասի ՚ի տօնացոյցս, որպէս և առ մեր իմէլ՝ Ճգնաւոր կմ՛ միայնակեաց, և ՚ի Հ. աբեղայ. ոչ ընդդէմ ելանէ գոլոյ նր սարկաւագ. միայն այն է վրիպական՝ ՚ի քաղուած տօնացոյցս, զի վը տօնակից գոլոյն Է գուրիա- սանց՝ նաև զսա դնեն յուռհայ կատարեալ. որ ըստ ամենայն յանտիոք վկայեաց ։ Իսկ անունն մանկանն խոստա- վանողի հասարակօրէն չյիշի . բայց ոմանք ՚ի վկայագրաց



բա-

տակ ժամ քարոզելոյ հայրապետին, ցի փլաբիանոսի պա-
տրիարգին անտիոքայ :

Այլ որ զարմանալին է, բարոնիոս Է ժամագրոցյու-
նաց՝ ոչ բարուք գիտելով զերկեն գրութիս եւսեբի և
ռակեբերանի, զմի ռոմանոս յերկուս արոհել կամեցաւ՝
արտաքոյ ամենայն ուղղութեան ամենեցուն. ուր և Ց. բ. զմի
ռոմանոս ճանաչէ : Շատ լիցի առ այս՝ գրելն յենորե-
կոսէ վաղեսիոսէ 'ի ծանօթութիս եւսեբի՝ 'ի զանազան
հատուածս, սկսեալ յէջէս. 359. զի ասէ. * Ցոյնք 'ի
,, ժամագիրս՝ երկու ռոմանոս վկայս որոշեն. մին յանե-
,, րեպիադիոյ դատաւորէ դատապնդեալ յանտիոք առ
,, գաղերիոսին, և միւսն սարկաւագ կեսարացի՝ զորմէ
,, աստ եւսեբիոս խօսի. զոր և առ գիտելեկիանոսին
,, ասեն նահատակեալ : Այլ քանզի զերկաքանչիւրն
,, իսկ 'ի մի և 'ի նոյն աւուր կատարեալ խոստովանին,,
,, և նոյնպիսի տանջանօք վճարեալս, (քանզի ասեն՝ թէ
զլեզուան հատին սորա և նր, և երկոքին ևս խօսեցան
յետ հատման լեզուին, և 'ի վախճանի 'ի բանտի խեղդա-
մահ եղեն), ո՞ ոչ տեսանէ՝ թէ 'ի զուր որոշեն երկու
,, ռոմանոսս : Այլ զարմանամ, թէ այս կարծիք հաճոյ
,, լեալ է բարոնիոսի 'ի ծանօթ. վկ : Եթէ արդարև եր-
,, կու համանուն վկայք եղեն ռոմանոսք, և երկոքին
,, ևս 'ի նմին աւուր մարտիրոսացան յանտիոք, զի՞ է՝ զի
,, եւսեբիոս աստէն զմին Լեթ յիշեաց : Աւելցէ ոք թէ-
,, րեւս. եւսեբիոս խորհէր յայս գիրս խօսել զվկայից
,, պաղեստինու եւեթ. վնյ զռոմանոս սարկաւագ միայն
,, յիշատակեաց, զի էր պաղեստինացի : Բայց սակայն
,, եւսեբիոս նաև այլուր յիշէ զայս վկայ, ցի յերկրորդ
,, գիրս՝ որ յաղագս յարութե և համբարձման քի. ուր
,, զռոմանոսի վկայութիւն ճոխագոյն և ճառօրէն պատ-
,, մագրէ.... և մի ռոմանոս ճանաչէ, որ մարտիրոսա-
,, ցաւ յանտիոք ||

(3) Կարօղ էր ոք կարծել, թէ համաձայնութի բառիս
աաճար, որ ասի Ը տեղւոյն զեկեղեցւոյ նոյ, և Ը տեղ-
ւոյն զմեհենէ կռոց, չփոթութի ինչ լեալ իցէ պատմու-
թեց. բայց վկայութիք նախնեաց կրկնակի անցս ցու-
ցանեն : Առաջինն է այն՝ որ գրի 'ի Հ. թէ դատաւորն
ասկղեպիադէս * կամէր մտանել յեկեղեցին նոյ որ յան-
,, տիոք. և նա աբեղայն ռոմանոս Ըդէմ եկաց, և ոչ
,, տայր թոյլ մտանել. քանզի ասէր, որ զկենդանի Այծն
,, պաշտեն, նոյ է արժան մտանել աստ, և ո՛չ քեզ՝ որ
,, զմեռեալսն կուռսն պաշտես || : Զայսն կարաբագրեն Ճա-
խա-

,, Զմակարեանս՝ բան ծընողին,
,, երբև խնծան՝ գրգեալ ուժգին,
,, եօթնիցս վանէր ըզթշնամին,
,, եօթամբք եօթնիցս յաղթող անկին։
,, Իմում մնայ մի զաւակին,
,, առնել՝ զոր կայ 'ի քում ձեռին.
,, զիս բարեյաղթ և բազմայաղթ՝
,, տալ հռչակել յամէն կեանս իմ։
,, Վասն արգանդիս հիւրանոցին,
,, ասպնջական քո մտերմին,
,, վասն անուշակ իմոյ կաթին,
,, հեղիկ գրկաց, և օրոցին,
,, Հաստատուն կաց հաւատարիմ,
,, և այն՝ պարգևք ինձ մեծ գրին...
,, Երախտագէտ լեր անկողին,
,, ոյր ինձ պարգև՝ ես առանձին.
,, դարձցին անդրէն ըստ արժանին,
,, տուրք առ տուողդ քոյոյ անձին։
,, 'Ի նուաճագել մօրն զստինն՝
,, լսէր մանկիկ զուարթագին.
,, ծաղրէր զպաւօք սատորիկ գանին,
,, և զշատաշամամբ դաւաղանին։
,, Անդ յասուցեալ դատաւորին,
,, բանտ սահմանէ երեխային.
,, չարեացպարտոդ՝ ասէ, ուժգին՝
,, այդ ռամանոսդ է տանջելին....
,, Այլ կատարած, ասէ, բանին,
,, կորուսանել զիմ դանդաղիմ,
,, ըզվարդապետն՝ ընդ տղային,
,, ըզհամախոհս՝ յիւրեանց դենին.
,, սուր ըզգլուխ հասցէ գորին՝
,, գետ անմարդի երեխային.
,, հուր վառեսցի վասն ուսուցչին,
,, օրհնիս հասցէ՝ երկուց կրկին։
,, 'Ի կատարման ածեալ անդին,
,, մանուկն 'ի մօր կրիւր գրկին.
,, 'Ի նուիրել, գոգ, արարչին՝
,, զիւր անդրանիկ ըզախրելին,
,, պատարագաւ սջ̃ աբէլին,
,, զընտիրն 'ի մէջ խաշանց հօտին։
,, Արդ 'ի խնդրել զմանուկ՝ դահճին,
,, 'ի ձեռըս տայ մայրըն ինքնին.

ոչ ուղ. Մ

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Հիւսիքոսի զինուորին ։

Հ. մարտ. 10. կամ ըստ հին ճաշոցի. նոյեմբ. 15. կամ 19 ։ Յ. մայ. 10 ։ Լ. նոյեմբ. 18 ։ (1)

ԲԱԶԶՕՐԱԿԱՆՆ ԵՒ յաղթօղ վկայն Քրիստոսի սուրբն Հիւսիքոս կամ Իսիւքիոս, որ Թարգմանի լռեալ կամ հանդարտեալ, էր զինուորեալ 'ի դուռն արքունի Մաքսիմիանոսի կռապաշտ արքային, քրիստոնեայ հաւատով և երկիւղած 'ի ծնէ, հաւատարիմ առ Աստուած և առ մարդիկ. որով յառաջադէմ եղեալ 'ի տան կայսեր՝ կարգեցաւ մագիստրոս և գլխաւոր յիշխանս պալատանն ։

Եւ եղև՝ յորժամ յԱնտիոք էր Մաքսիմիանոս, հրաման եհան՝ զի քրիստոնեայ ոք մի՛ գտցի 'ի զօրուն. և որ միանգամ քրիստոնեայք իցեն հաւատով յիւրում տանն, լուծցեն զկամար գօտի իշխանութեան. և անկցին 'ի պատուոյն, և ելցեն յարքունեաց ։ Յայնժամ բազումք 'ի զօրականէն և 'ի պալատականաց վասն սիրոյն Քրիստոսի կամաւ թողին զպատիւս իւրեանց, և ելին արտաքս, լաւ համարեալ զանփառունակ կեանս՝ քան զպա-

տիե՜ն կորստական ։ Ընդ որս և երանելին հիւսիքոս ինքնակամ յանդիման եղեալ ինքնակալին՝ ծանոյց զքրիստոնէութի՛ իւր , և համեալ եդ զգօտին առաջի Թագաւորին , և հրաժարական ողջոյն ետ նմա ։

Յայնժամ բարկացեալ Թ՛գւորին՝ Թշնամանեաց զնա վ՛ս հաւատոցն Ճշմարտութե՛ . և կամելով առաւել ի՛մն նախատինս տալ սր՛բյն՝ հրամայեաց մերկացուցանել զնա 'ի պատուական հանդերձիցն , և զգեցուցանել նմա կանացի անարգ զգեստ , և կողոբ այծեայ . և այպն արարեալ զնովաւ՝ անարգաբար առաքեաց զնա առ աղախնայս , զի մանեսցէ իլիկ , և փոստակեսցէ յոստայնս ։

Իսկ երանելին հիւսիքոս փառս համարեցաւ անձին զնախատինս՝ որ վ՛ս անուան ք՛սի . և ուրախութ՛բ տանէր զմի . և եկաց այնպէս 'ի կարգի անարգութե՛ ժամուրս ոչ սակաւ . և բազում՛ք 'ի սիրելեաց նո՛ երթային առ նա 'ի տեսութի՛ , և ոչ կարէին շրջել զմիտս նորա 'ի կամս Թագաւորին ։

Այս լուեալ մաքսիմիանոսի , Թէ անտրտունջ սիրով տանի հիւսիքոս զնախատական զայն պատուհաս , կոչեաց զնա առաջի իւր , և ասաէ . ո՛վ մագիստրոս ո՞չ ամօԹ իցէ քեզ յայդպիսի անպատուե՛ութե՛ կալ մնալ՝ ատարացեալ 'ի սիրոյ մերմէ . Թէ՞ր Թողեր զպատիւն քո , և լսող լինիս քրիստոնէից և հաւանիս կրօնից նց . մինչ կարող իցեն զայն պատիւն տալ քեզ՝ զոր յինէն ընկալար , և հանդերձեալ էիր ևս քան զևս փառաւորիլ 'ի մէնջ .

Ասէ նմա Հիւսիկոս . քո պատիւն և փառքն և պարգևքն առ ժամանակ մի են, բայց կա-րուսան յաւիտենական . իսկ խոստումն քո փրկչին իմոյ և երկնաւոր Թագաւորի՝ անըն-դատ է և կեանք անմահական ։ Ընդ որ դառ-նացեալ անօրէնն՝ հրամայեաց երկանաքար ծանր կապել 'ի պարանոց նորա, և ընկենուլ 'ի գետն որէնդին՝ որ և արոնտէս . և այնպէս կատարեցաւ երանելին, և ընկալաւ զան-թառամ պսակն վկայութեան յերկնաւոր հանդի-սադրէն յամի տն իբր 300 ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Գիտելի է նախ, զի անուանս Հիւսիկոս, որ է Ը յունաց խիւզբիոս, գրի նաև եւսիւզբիոս, կամ սիւզբիոս. և նոյն է Է անուանս սուզբիաս. և Ը նմին՝ ոչ 'ի վերա այնր սուզբիասայ գրի 'ի մեզ, թէ նշանակէ համագարատա-ցեալ, զնոյն ասեն ազատանօր և յոյնք ընդ խուզբիոսի զը-րականի. (յորմէ և 'ի տճկ. սուզուլթ ասի՝ լռիկն, կամ լռութիւն)։

Գիտելի է երկրորդ, զի յոյնք 'ի մայիսի 10. տօնեն զխուզ-բիոս զօրականն. և յարեն առ նմին զյիշատակ այլոյ խու-սիւզբիոսի ճգնաւորի 'ի սահմանաց Ցին հայոց. և կըր-կին եւս յիշեն զնոյն կամ զհամանունն ճգնաւոր 'ի մարտի 9. կամ 6. և ահա ասացի տաւեալ՝ շփոթութիւն եղեալ է 'ի Հ. Հիւսիկոս զինուորն 'ի մարտի 10. ուր 'ի հին ճա-շոցս ուղիղ դնի զկնի քառասնից 'ի նոյեմբ. ժԹ. կամ ժԵ. այլ և 'ի Լ. նոյեմբ. 18։ Ընդ հակառակն՝ ուր դըս-ջորդ տօն փիլիպպոսի առաքելոյ դնեն Հ. և Ց. 'ի նոյեմ-բեր. Լ. կարգէ յամսեանն մայիսի։

Գիտելի է երրորդ. զի թէպէտև չիք առ այլս յիշա-տակ սոյն սուզբիասանց՝ ըստ որում են ազգի մերում եւեթ ծանօթք, բայց թուի թէ յոյնք 'ի հեռաւոր լըոյ

որ և զնախանձայեալ ձգէր առ յն, նկ և տես
ասելով. և էր լըբրև 'ի համարի առաջակայից
փրկչին: Որոյ զօրինակն է տեսանել 'ի
խօսել նր ԺԲ ամն իւրում և վճպի հոգւովն
և համարձակութբ վն նկանակաց հացին, որ
'ի պէտս ժողովրդեանն յանապատի. և յաղ-
դել անդ ընդ անդրէի առ նր զփափաքս հե-
թանոսացն եկելոց 'ի տես նր. ևս առաւել
'ի խնդրելն կարօտով 'ի յոհ յընթրիս զետ-
րին խորհուրդ ամծարանութէ, եթէ ցոյց մեզ
զհայր:

Որ և յետ չարչարանաց փրկչին և հրաշալի
յարութե և համբարձմանն՝ լցեալ հոգւովն
սբվ, ընթացաւ ԺԲ տիեզերս 'ի քարոզութի
աւետարանի, և զառաքելականն փառաւոր
արար զպաշտօնն՝ մինչև ցօր կատարման իւրոյ
վկայականն հանդիսիւ: Նաև թէ զիա՞րդ և
որո՞վ օրինակաւ, բզմ են բանք և երկարա-
պատում յընտրել և 'ի տուգել զաւանդս
անստոյգս. որք թէպէտև առ ամն գրիչս իւ-
րաքանչիւր ազգի 'ի հնախօսից փոխանցեալ
իցեն, բայց հանդերձ աւելորդ և տարադէպ
հանգամանօք՝ զորս պատճառաստեցին կեղա-
կարծելի մատենագիրք առաջինք՝ ստայօղ
գործս յարմարելով միոյ միոյ յառաքելոց,
կամեցեալ իմն թեկն ածել ամծեղէն գքուէ
Ճշմարիտ գործոց առաքելոցն 'ի սբյն ղուկայ
աւետարանչէ: Այլ առաւելապէս խիթալի
պատմութիք աւանդեցան զսբյն փիլիպպո-
սէ առաքելոյ՝ 'ի հետևողացն պապիայ եպիս-
կոպոսին յերապօլսոյ. որ թէպէտև այր բա-
րի

րի և սրբ Ճանաչի՝ ոչ առաքելական հայր , այլ առ պարզմտութեան առաջնորդ եղև մոլար կարծեաց հազարամեայ անուանելոցն , որք ոչն ուղիղ իմանային զբանս յայտնութեան յովհաննու :

Միայն այս ինչ սորայ համարեալ է յաւանդութիւնս պապիայ միաբանութ այլոց 'ի նախնեաց՝ թէ յառաջ բերելոյ եւսեբի կեսարացւոյ յեկեղեցական պատմութեան , թէ ոչ փիլիպպոս աւետարանիչ մին յեօթանց սարկաւագաց ունէր չորս դստերս մարգարէս կուսանս , նոյնպէս և սորին փիլիպպոսի մեծի առաքելոյ եղեն դստերք կուսանք քանի մի , և այլ ևս դստերք ամուսնացեալք . և թէ յետ շրջելոյ սրբ առաքելոյն ընդ հեռաւորս մինչև 'ի սկիւթս ասիացւոց , յորժամ եկն 'ի յերապօլիս փռիւգիոյ՝ անդ արար առաւել զօրութիւնս սքանչելեաց , և դարձոյց զբազումս 'ի քս՝ գործակցութ բարթուղիմէոսի միոյն յեօթանասնից , և քեռ իւրոյ կուսանի՝ մարիամնէ կոչեցելոյ , և երկուց կուսան դստերաց իւրոց : Նա յետ ապրելոյ 'ի քարկոծմանէ և յայլ ևս տանջանաց վս անուանն քի՝ գլխի 'ի վայր կախեցաւ զփայտէ խաչին , և այնպէս կատարեցաւ յաւուրս տրայիանոսի կայսեր՝ յամի քի իբր 100 . և անդ 'ի յերապօլիս թաղեցաւ . ուր և յետ ժամանակաց երկոքին դստերքն նր առ նմա . որոց ականատես և խօսակից եղէ ասէ նա ինքն պապիաս յերապօլսոյ եպս : Նշխարք ինչ յայսմ վայրի շատ լիցի . թող զոր ունիմք յառաջ բե-

ըեւ բազմօք՝ ի կարգի ծանօթութեանց մեր տօնիցն իւրաց ։ (2)

"Նշխարք սրբ՛ առաքելոյն փիլիպպոսի կային 'ի յերապօլիս մինչեւ ցաւուրս ոսկեբերանի. Յն՛ որում այսպէս խօսի նա 'ի ճառն ժբ՛ առաքելոց. * փիլիպպոս պահէ սքանչելեօք զյերապօլիս ։ Յետ ժամանակաց աւելին բերել 'ի կոստանդինուպօլիս, եւ մասն ինչ անտի փոխադրեցաւ 'ի հռոմ. ուր եւ ցուցեալ լինի ցարդ եւ ի յեկեղեցւոջ առաքելոց մասն նշխարաց սրբոյն փիլիպպոսի. յորս երեւելի է մի յոտից նորա մասամբն հանդերձ. այն՝ զոր Քս՛ 'ի վերջին ընթրիսն լուաց, ասեն բոլլանդեանք, սրբեաց եւ համբուրեաց ։ Իսկ այլ սրբոյն փիլիպպոսի 'ի կոստանդնուպօլսոյ տարեալ 'ի պաղեստին՝ փոխադրեցաւ յետոյ 'ի փլորենտիա յամի տն՛ 1204. հանդերձ սքանչելեօք, որ եղեն անդ ։ Յայնմ ժամանակի քանզի լատինք թգաւորէին 'ի կոստանդնուպօլիս, իբրեւ ընտրեցաւ կայսր բաղդուինոս կոմս փլանդրիոյ՝ առաքեաց նա 'ի պարգեւս եկեղեցւոյն տրեկայ 'ի ձեռն գառների եպսի տեղւոյն զսկաւառակ գլխոյ սրբոյն փիլիպպոսի. Թող զի այլեւայլ մասունք գլխոյ նորա ասին լինել 'ի տոլոզա, 'ի փարէզ, 'ի լուսիտանիա, եւ յայլ տեղիս, հանդերձ այլ եւս նշխարօք՝ որք իցեն միոյ 'ի համանուն սրբոց փիլիպպոս կոչեցելոց ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Բանողք ճառընտիրն և ճաշոցն և յայսմաւուրքն մարտանին գտնել զտօն փիլիպպոսի առաքելոյ յայսմ ամսոյն նոյեմբերի՝ զկնի նախակարգել ոչ գուրիասանց են, որք և յոյնք 'ի նոյեմբ. 14, ոչինչ չփոխթուեն պարտի տալ ումեք գոյզն տարբերութե օրինակաց տօնացուցից 'ի պատճառս տասներորդ կիրակէի առեալորդաց. զոր և չէր արժան 'ի յետին տուուրս մեր մուծանել ըզ-նորաձևար խառնակութե տօնից՝ առընթեր փիլիպպոսի գտանելով զանգրէսս. և 'ի քուն տեղւոջ անգրէի 'ի վերըն նոյեմբերի կարգել զքարոզութիւնս և զյուզաս՝ խախտելով 'ի տեղեաց իւրեանց. զի գործ է առնել զկարգաւորութի՝ հետևողութք նախնեաց, և ոչ նորաձևութք:

(2) Զէ պարտ զարմանալ ը տարադէպ ասանդութիս՝ որ զփիլիպպոսէ առաքելոյն, որք և զոմանց ոմանց յառաքելոց. զի 'ի վաղ ժամանակաց անտի տեսեալ արանգաւորաց կամ կասկածելի արանց, թէ չէք որոշ քան զքարոզութէ և զկատարմանէ նը 'ի մը գիրս, հնարեցին առայօք գործս 'ի վերայ նը. ը որում և ոմն 'ի հնոց հարց՝ մելիտոն կմ մելիտոս եպս լաւոդիկեցւոց 'ի չորջաբերական նամակին առ համօրէն եպիսկոպոսս եկեղեցեաց ուղղափառաց զգուշացուցանէր զամենեսին 'ի սուտ գործոց առաքելոց, զոր գրեալ էր լեւկիոս կմ ղուկիոս և կմ զենոնգիոս ոմն մանիքեցի. և զասնիւր սոսա և անգ 'ի գ և 'ի ե գարու, ամենցուցեալ և յայլոց յանուն առգիտոյ ուրումն՝ որ լեալ իցէ եպս քարեկոնի առ առաքելովք. և աշակերտ նր եւտրոպիոս թարգմանեալ իցէ զգործ նր յերբրայականէ 'ի յոյն: Արդ յոյսպիսի անվաւերական մատենից ածանցեալ տեսանեմք, որ ինչ աւանդութի կայ յմն աղգս զսէյն փիլիպպոսէ առաքելոյ. առ հայս՝ յասորւոց առաւել առեալ՝ ճոխագոյն և անլի. առ յոյնս՝ կէս մի թօթափեալ, և փոքր մի ողողկեալ և հարթեալ, և կէս մի առաւել անհեթեթ. և առ լատինս համառօտեալ և սրբեալ. բայց 'ի նմին ալերէ զանգեալ. զորս ժամ է մի առ մի յառաջ բերել՝ ոչ 'ի հաստատել, այլ առ 'ի հրաժարեցուցանել:

Լոփ

„ րէն, և զբարթողոմէոս Ետես փիլիպպոսի․ և բևե-
„ ռեցին զձեռսն ի դուռն տաճարին։

„ Եւ տեսեալ զգինեանս փիլիպպոս և բարթողոմէոս՝
„ ժպտեցան․ զի ոչ էին ինչ 'ի չարչարանս։ Կամեցան
„ և զմարիամին կախել․ և տեսին զնա բոց վառեալ․
„ Թողին և փախեան։ Ասէ փիլիպպոս ցբարթողոմէոս․
„ աղաչեսցուք զնա և առաքեսցէ հուր յերկնից, և այ-
„ րեսցէ զսոսա․ Ասեն բարթողոմէոս և մարիամին․
„ ո՞չ մեր յս քս պատուիրեաց օրհնել զթշնամիս, և ոչ
„ անիծանել, և ոչ հատուցանել չար փոխանակ չարի․
„ և ինքն չարչարեցաւ և գանեցաւ և ապտակեցաւ և
„ խաչեցաւ, և ոչ հատոյց չար, այլ՝ աղօթեր առ հայր,
„ և ասէր․ Թող սոցա, զի ոչ գիտեն՝ զինչ գործեն։

„ Ասէ փիլիպպոս․ Թո՛յլ տուք ինձ, զի ոչ հանդուր-
„ ժեմ գոցա 'ի գլխիվայր կախաղանիս․ և սկսաւ անի-
„ ծանել զժողովուրդն եբրայեցւոցն, և ասէ․ բացցէ
„ անդունդք զբերան իւր, և կլցէ զանօրէն զժողովուրդս
„ զայս։ Եւ յասել փիլիպպոսի զբանսն՝ բացան ան-
„ դունդք, և ընկղմեաց զատեանն՝ յորում էին քուրմքն
„ և բագինքն․ և զքուրմսն և զդպրեսն, և այլ բազում,
„ անձինս եօթն հազարս։ Եւ տեղին՝ յորում էին սբ
„ առաքեալքն և սուրբէոս և Նիկանովրա և հաւատա-
„ ցեալքն, անշարժ մնաց։ Եւ լուեան ձայնս ողբոց յանդն-
„ դոց՝ որ ասէին․ ողորմեա մեզ խաչեալդ ածդ փիլիպ-
„ պոսի․ յս քս երևեցիր մեզ, և օգնեա մեզ, և հան
„ զմեզ 'ի կենդանի տապանակմանէս․ և հաւատասցուք յա-
„ նուն քո։

„ Եւ երևեցաւ տր փիլիպպոսի, և ասէ․ ո՛վ փիլիպպէ
„ ո՞չ լուեար 'ի պատուիրելն իմում, թէ մի հատուցա-
„ նէք չար փոխանակ չարի․ և դու այդչափ ոգիս կո-
„ րուսեր անխնայաբար․ Ասէ փիլիպպոս․ Ընդէ՞ր բար-
„ կանաս ինձ տր, զի անիծեցի զթշնամիս քո, որ ոչ կա-
„ մեցան քեզ թշուառել 'ի վր խաչանց․ և ոչ ընկալան
„ զքարոզութիւն բանից իմոց և հաւատացին յանուն քո։
„ Ասէ տր․ վն զի ոչ պահեցեր զպատուիրանս իմ, և
„ անիծեցեր զթշնամիս քո, արդ յետ կատարման քո՝
„ արգելցիս արտաքոյ հանգստեան արդարոց, ոչ եղեալ
„ 'ի տեղւոջ հանգստեան․ և յետ քառասուն աւուր 'ի
„ հանգստեան եղիցիս 'ի չարչարանաց այտի․ և բար-
„ թողոմէոս երթիցէ 'ի լիկոնիա, և անդ խաչեսցի․ իսկ
„ մարիամին մարմինն թաղեսցի 'ի յորդանան գետ։
„ Եւ արար տր ձեռաքն իւրովք զնշան խաչին 'ի վր երկ-
„ րի․

„ րէ. և բացան անդունդք. և ձայնեաց, ելէք ամենե-
„ քեան զինի լուսաւոր խաչիդ՝ որ եկ առ ձեզ. քանզի
„ առաքեալն փիլիպպոս զԹագաւ առ ձեզ: Եւ ելին
„ ամ բազմութիւն յանդնդոց. և մնաց միայն 'ի դժոխս
„ բդեշխն և բադինքն: Եւ յորժամ ելին 'ի լոյս, տե-
„ սին զփիլիպպոս կախեալ զխաչին. և զբարթողոմէոս
„ բեհեռեալ. և գնացին իջուցանել զփիլիպպոս. և ոչ
„ ետ նց Թոյլ. զի անդ կատարեսցի. և կոծեցան ժո-
„ ղովուրդքն կոծ մեծ: Տեսին և զմարիամնի և զառա-
„ քեալս և զամ հաւատացեալսն շուրջ զփիլիպպոսիւ.
„ և աղաղակէին, մեծ է ած քրիստոնէից՝ զոր քարո-
„ զէին արքս այսոքիկ. Ճշմարտութք մի է ած. որ առա-
„ քեաց զդոսա վս մերոյ փրկութե. զղջանամք ընդ մեծ
„ մոլորութիւն մեր. այժմ հաւատամք, զոր աւասիկ մեծ
„ սքանչելիս, որ եհան զմեզ յանդնդոց:
„ Եւ անկան ամենեքեան և երկիր պագին փիլիպպոսի.
„ և երկնչէին՝ Թէ մի՛ երբէք այլ ինչ չար արասցէ նց:
„ Եւ փիլիպպոս 'ի կախաղանէն ասէ. ես վս ձեր քառա-
„ սուն օր արտաքոյ հանդստեան եղէ. և արար առ ձեզ
„ քս ողորմութի, և եհան 'ի խաւարէ 'ի լոյս. և այլ
„ բազում վնասութք ուսոյց նց, և հաստատեաց 'ի հա-
„ ւատոն քսի. և հրամայեաց և լուծին զբարթողոմէոս
„ 'ի կապանացն և 'ի բեեռացն: Եւ ասէ փիլիպպոս.
„ եղբայր բարթողոմէէ Թաղեա զիս 'ի տեղւոջս յայս-
„ միկ, և մի կատուղս. և դրեա զպատմութիս 'ի քար-
„ տիսի, և այնու պատեա զմարմինս իմ, և ընդեա
„ պրտունով. և շինեա 'ի տեղւոջս եկեղեցի. և պատ-
„ ուիրեա ժողովրդեանդ, զի ծառայեսցեն նիկանով-
„ րայ մինչև ցմահ իւր ('ի տեղի ասան նր բդեշխի). Եւ
„ ստաքէոս ձեռնադրեսցի եպս. և քառասուն օր վասն
„ իմ աղօԹս արարէք, մինչև բացցի ինձ դուռն արքայ-
„ ուԹեն: Եւ աղօԹեաց առ ած 'ի բազում ժամս. և 'ի
„ կատարիլ եօԹն աւուրն 'ի կախաղանին զխաչին՝ ա-
„ ւանդեաց զհոգին իւր առ ած 'ի նոյեմբերի ամսեանն
„ 'ի ժդ:
„ Եւ բարթողոմէոս և մարիամնի իջուցին զառաքեալն
„ քսի փիլիպպոս, և Թաղեցին 'ի նոյն տեղւոջ. ոչ և
„ հրամայեաց. և բուսաւ բարունակ, և եբեր պտուղ.
„ և զքառասուն օր ուխտ կատարեցին 'ի վն գերեզմա-
„ նին ա՛ հրամանի առաքելոյն: Եւ ձայն եղև յերկնից.
„ եԹէ փիլիպպոս առաքեալն պսակեցաւ անԹառամ
„ պսակաւ. և հաւատաց ամ քաղաքն յերկրապագելս 'ի քս.
„ և

„ և հրամայեաց Բարթողոմէոս առաքելոյ եղբօրն, և մխի-
„ թարեաց զամենեսեան :

„ Եւ յետ կատարելոյ քառասուն աւուրն երևեցաւ Տէր
„ Բարթողոմէոսի և Մարիամնի, և ասէ. բացաւ դուռն
„ արքայութեն, և եմուտ Փիլիպպոս. երթիջիք և դուք
„ 'ի հանգիստ ձեր : Եւ թողին 'ի քաղաքին զՍտաքէոս,
„ և զնիկանովրա յեկեղեցին. և ելեալ անտի գնացին
„ Բարթողոմէոս 'ի Լիկայոնիա, և Մարիամնի 'ի Յորդա-
„ նան գետ. և անդ կատարեցան 'ի քս յն 'ի Տր մեր.
„ որում փառք յաւիտեանս, ամէն ||:

Այսպէս անբերելի են իմաստուն քննողաց հանգամանք պատմութեն, որք հային 'ի նախատիպս քան 'ի պատճէնս առաքելոյն. եթէ զայլմէ ուսեմնէ լինէր բանս, վայելչապէս որդարանայր, եթէ մեղաւ, և կրեաց զապաշխարանս առ և 'ի հանդերձեալն զաւուրս քառասուն, և ապա' աղօթիւք եկեղեցւոյ եանց 'ի հանգիստ արքայութե. իսկ զառաքելոց ընտրելոց քաւ լիցի ասել զայդպիսիս. նմին իրի և Լամբրոնացին 'ի մեկնութե պատարագի ոչ հաւանի այդմ պատմութե Փիլիպպոսի առաքելոյ. և յայտ է թէ այս պարագայ յարմարեալ է 'ի սովորութէ կատարելոյ զպաշտօն ննջեցելոց քառասնօրեայ, որպ և եդաք 'ի Ա. հատ. Երես. 140. զասելն Ամբրոսիոսի. * են որ զօրն երրորդ և զերեսներորդն, և
„ են որ զեօթներորդն և զքառասներորդն սովորեցան
„ ասել ||. որպ և նախնիք հաշուէին զաւուրս սգոյ. և չէք տարակոյս' թէ առաքելական աւանդութի է աղօթել և պատարագել վն օժանդակութե ննջեցելոց : Այլ դու տես ինձ զզարմանալին, զի որպ թէ բաց 'ի պարագայէ այսմ չկայցէ այլ ինչ ուղղագրելի յայդմ պատմութե, զայդ եւեթ թօթափել են յոյնք, և զայլ ամ բանս պահեալ. որպ տեսցի վաղվաղակի :

Ըստ յունաց :

'Ի ճառընտիրս յունաց նոյն պատմութի Փիլիպպոսի առաքելոյն մետափրաստեան ոճով այսպէս գրի. * Մերձ-
„ եալ առաքեալս վիճակաւ շրջեալ յասիա, և յածեալ
„ ԺԵ ամ քաղաքս և ԺԵ գեօղս' զանթիւ բազմութի ած 'ի
„ բարեպաշտութի. զորս առ հասարակ լուսաւորեալ
„ և կնքեալ միրոնին ծննդեամբ' միաբանեաց առ հայրն
„ երկնաւոր. և զդժնդակս 'ի հիւանդութեց և յախտից
„ և զառ 'ի յայսոց չարաչար լլկեալս' բանիւ եւեթ և
„ դրաւ-

,, ժեցաւ, և դղրդիւն եղև անսովոր. և անկաւ ահ 'ի
,, վ՛ր ամ՛ցն' որ 'ի տեսիլ անդր կային զբօսանօք. 'ի հի-
,, մանց տապալեցաւ բովանդակ տեղին, և խորք բա-
,, ցան երևելի. կլեալ լինէր միանգամայն ժողովուրդն,
,, և էր 'ի վտանգի ողորմ կորստեան։ Արդ այն ինչ սո-
,, սահեալ էին առ հասարակ, և ոչ գիտէին' թէ զինչ
,, արասցեն, անագան ուրեմն 'ի միտ առին' թէ զպէտս
,, լուծանեն զանիծանաց և զանարգանաց, զոր արարին
,, փիլիպպոսի. և կացեալ զնովաւ շուրջանակի' փրկիչ
,, կարդային զնա, և աղաչէին աջ կարկառել նմ՛, և մի
,, անտես առնել զնոս' որ 'ի նո՛ սակս ևեթ վտանգեալ էին։
,, Պատմի, թէ յորժամ այսպէս յաղերս կանխեցին, և
,, բազում պաղատանօք ոչ դադարէին յանելոյ բանս
,, շարժիչս 'ի կարեկցութի, գթացեալ յնէ յեղեալսն՝ մա-
,, տոյց նմ՛ զունկն իւր մարդասէր, և յանկարծակի ե-
,, րևեցաւ. և թէ այնու երևմամբ վաղվաղակի դադա-
,, րեաց վտանգն. և երկիրն ցայն վայր զդողանի հա-
,, րեալ՝ եկաց անշարժ. և այնոցիկ' որք ողորմ մահու
,, ակն ունէին, նմանագոյն իմն զօրութի երևեցաւ.
,, իբրև սանդուղք ինչ լինելով և դիւրին վերելս ըն-
,, ծայելով։ Եւ այս անցք' որ եղեն անհաւատից ճանա-
,, պարհ հաւատոց 'ի փրկութի, մեծ ցուցին զփիլիպպոս,
,, և մեծ ևս զՏէրն' զոր նա քարոզէր։
,, Եւ ազատեալքն փութային հանել զաշակերտսն 'ի
,, կապարանաց, և զնո՛ փութով իջուցանել 'ի փայտէն.
,, այլ իբրև արձակեցին զբարթողիմէոս, արգել փիլիպ-
,, պոս' զի մի և ինքեան արասցեն զնոյն. վ՛ զի գիտէր
,, զանձն իւր հանգերձեալ իսկ և իսկ փոխիլ առ այն'
,, որում ցանկայր. վ՛յ կախեալ զփայտէն' զօրն ողջոյն
,, խօսէր Է քաղաքացիս վ՛ փրկութե նմ՛. և հաստատէր
,, զանձինս նմ՛ յորդորանօք, և աղօթս արարեալ վասն
,, նմ՛, սրբութ՛ 'ի մէջ սր՛ բանից մեկնեցաւ և փոխեցաւ
,, առ սիրելին իւր Տր՛' աւանդելով զհոգի իւր 'ի ձեռս
,, Նորա։
,, Իսկ պատուական մարմին նր՛' 'ի բարթողիմէոսէ և 'ի
,, մարիամնեայ, յետ օրինօք կատարելոյ նմ՛ զհմ՛ սովո-
,, րութի թաղման, ամփոփեցաւ երիցովք և սր՛ պաշտա-
,, մամբք 'ի տեղի մի սր՛ և վայելուչ. 'ի չորեքտասան ա-
,, ւուր նոյեմբերի։ Իսկ բարթողիմէոս և մարիամնէ սա-
,, կաւ մի ժամանակ կացեալ անդ, և դարձեալ զերգս
,, և զպաշտամունս գեղեցիկ օրինօք կատարեալ 'ի վ՛
,, պատուական մարմնոյն, հաստատեցին և ևս զորս

,, անդն

,, առաքեալ զամս քսան քարոզեաց զաւետարանն հեթա-
,, նոսաց յՅին սկիւթացւոց: Եւ իբրեւ կալան զնա հե-
,, թանոսք, և ածին առ արձանն արեսի ( կմ մարսի ),
,, և ստիպէին զոհել, եւ 'ի ներքուստ խարսխին ( կամ
,, բագնին՝ ) յորում կայր արձանն արեսի . վիշապ ահա-
,, գին, և եհար զորդի քրմապետին՝ որ մատակարարէր
,, զհուր զոհին. եհար և զերկոսին ատեանս (կմ զհա-
,, զարապետս՝) որք վերակացու էին Յին. որոց սպա-
,, սաւորք հանդերձեալ էին 'ի կապանս առաքել զՍրբն
,, փիլիպպոս. և 'ի շնչմանէ վիշապին ամենեքին հարեալ
,, ախտիւք՝ սկսան հիւանդանալ չարաչար:
,, Յայնժամ սրբն փիլիպպոս ասէ առ նոսին. լուարուք
,, խրատու իմում, և ընկալջիք զառողջութի. և որք մե-
,, ռեալքն իսկ են՝ կենդանասցին. և վիշապ վնասատու
,, ձեզ՝ անուանմբն այ փախիցէ: Ասեն ցնա ամքն. ասա
,, մեզ, զի՞ գործեսցուք. ասէ ցնս առաքեալն փիլիպ-
,, պոս. 'ի վայր ընկեցէք զայդ արես, և փշրեցէք. և 'ի
,, նորա տեղի՝ ուր արձանացեալ կայ, հաստատեցէք զխաչ
,, տն մերոյ յսի քսի, և նմին երկիր պագէք: Յայնժամ
,, նեղեալքն սկսան աղաղակել. առասցուք զառողջութի,
,, և ընկեսցուք զարէս:
,, Եւ իբրեւ լռութի եղև, ասէ առաքեալն. պատուէի-
,, րեմ քեզ վիշապ յանուն տն մերոյ յսի քսի, ել 'ի տեղ-
,, ւոջէ աստի, և երթ դադարեա՛ յանապատ տեղւոջ,
,, ուր չիք հետք մարդոյ, և ոչինչ պիտանացու մարդ-
,, կան, զի մի ումեք վնասեսցես անդ: Յայնժամ չարա-
,, շուք վիշապն ելեալ՝ սկսաւ գնալ շտապաւ, և այլ
,, ոչ եւս երեւեցաւ: Իսկ փիլիպպոս զորդի քրմապետին,
,, որ զհուրն գնէր զոհին, և զերկու ատեանսն՝ որք
,, մեռեալ էին, յարոյց. և զամ ամբոխն՝ որ անկեալ էր
,, յախտս 'ի շնչմանէ վիշապին, դարձոյց յառողջութի.
,, վսյ ամքն զհետ եկեալ առաքելոյն փիլիպպոսի՝ ապաշ-
,, խարեցին, և ած համարեալ զնա՝ երկրպագանէին:
,, Իսկ նա պատարի մի անդադար ուսուցանէր զնս....
,, և հաւատացին նմա բազում հազարաւորք մարդկան,
,, և մկրտեցան: Եւ կարգեալ նց կղերիկոսս, եպսն,
,, քհնյս և սարկաւագունս, և եկեղեցիս յոլովս շինեալ,
,, 'ի ձեռն յայտնութե դարձաւ սրբն փիլիպպոս յասիա.
,, և եկեալ 'ի քաղաքն հերապօլիս՝ անդ ցածոյց զչար
,, հերձուածն եբիոնիտաց, որք ուսուցանէին՝ թէ ոչ
,, ճշմարտապէս ծնեալ 'ի մարիամայ կուսէն որդին այ
,, մարմին էառ: Եւ անդ էին նորա երկու դստերք սրբ

